# ԼԻԱԿԱՏԱՐ ՎԱՐՔ

## ԵՒ ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Ս Ր Բ Ո Ց

Որք կան 'ի հին Տօնացուցի Եկեղեցւոյ
Հայաստանեայց :

Յօրինեալ հաւաքական բանիւք ճառընտրաց մերոց
և այլոց ազգաց, հանդերձ ծանօթութեամբք :

'Ի Հ. Մկրտիչ վարդապետէ Աւգերեան, յաշակերտութենէ մեծին Մխիթարայ Աբբայհօր :

Հրամանաւ Տն Տն Ստեփաննոսի Ագոնց՝ Աբբայի և
Արքեպիսկոպոսի :

Արդեամբք ծախաւէր Մանուկ Աղայի Կարնեց_
ւոյ մահտեսի Աճատուրեան :

## ՀԱՏՈՐ. Ժ.

Միջոց Խաչին 'ի կիսոյ և անդր՝
ցԳիւտ Խաչ :

'Ի Գրեգորեան տոմարից կՅուլիսէ՝ մինչ 'ի Դեկտեմբերիս
և 'ի բաժանկիսս :



1813. 'Ի ՎԵՆԵՏԻԿ. ՌՄԿԲ.

'Ի Վանս Սրբոյն Ղազարու :



Լուսաւորիչն ազգին մերոյ.
Ճգնիւր ի լեառն սեպուհոյ:



# ԳԻՒՏ ՆՇԽԱՐԱՑ

## Սրբոյն Գրիգորիսի աղուանից կթղկսի:

Ճ. սեպտ. 30. և ծարր. 6: Ճառընտիր Ի. երես. նճէ = նէգ. և Գ. աղէ = ամհէ.
Յայսմ. երևելեաց. հոկ:



ՍՔԱՆՉԵԼԻ ԳԻՒՏ նշխարաց նորին գրիգորիսի, որ մն առանձին տօն սահմանեցաւ յեկեղեցի հայաստանեայց և աղուանից, եղև յամի տն իբր 489. հարիւր և քառասուն եօթն ամօք յետոյ քան զկատարումն նր, ըստ օրինակիս ըստ այսմիկ: Յաւուրս մարզպանութե հայոց՝ մեծին վահանայ մամիկոնէի, և թագաւորութե զենոնի կայսեր յունաց, թագաւորէր յաղուանից ծին 'ի սերընդոց հայկազունեաց բարեպաշտն վաչագան կմ վաչականն որդի վաչէի որդւոյ արսվաղենայ, այր առաքինի և գովելի յոյժ: Սա բաց յայլոց ծաչէն գործոց, և 'ի գեղեցիկ տնտեսութեանց 'ի պայծառութի եկեղեցւոյ, մեծամբ տենչանօք ցանկացաւ գտանել

հայցել միաբան յամենողորմն ա̄յ՝ որ տայ ա-
ռատապէս զտուրս բարիս այնոցիկ , որք ճըշ-
մարիտ հաւատով խնդրեն :

Նա նոյնժամայն առնէր հրովարտակ թղ̄թն
է̄ ա̄մ կողմանս իւրոյ տ̄րուե̄ն օրինակ զայս ·
Առ եպ̄սունս և երիցունս և սարկաւագունս
և անապատաւորս և բոլոր ուխտ եկեղեցւոյ
ողջոյն : Յուշ լիցի ամենեցուն ձեզ՝ անյա-
պաղ գալ ժողովիլ առ մեզ՝ պաշտել և պա-
հել և աղօթս առնել առ մարգասէրն ա̄ծ ,
զի շնորհեսցէ ինձ զանձկալի գիւտ մեծի
գանձին ծածկելոյ՝ առաքելագործ լուսա-
ւորչին մերոյ գրիգորիսի · ողջ լերուք :

Զայսպիսի հրաման արքային ընկալեալ
ա̄մ եպ̄սաց և քահանայից՝ չու առնէին կղե-
րիկոսօք , համդերձ նշանաւ ն̄ք խաչի և եկե-
ղեցական զարդուք , և առհասարակ հասա-
նէին փութապէս 'ի սեպհական գիւղն ար-
քունի՝ դուստական կոչեցեալ · քանզի և պա-
տուհաս մեծ 'ի վ̄ր կայր՝ որոց դանդաղիցին
գալ · և անդ աւուրս երիս յոքնահռչակ կա-
տարէին զյիշատակ ս̄բյն · ուր և ինքնին թա-
գաւորն է̄ր բարեպաշտ սովորութե̄ն ստնա-
կացութե̄ սպասաւորէր սեղանոյ եկեղեցա-
կանացն ժողովելոց :

Նա 'ի կատարել կանոնէն այնմիկ՝ կամ եղև
արքայի առնուլ է̄ իւր մասն 'ի նշխարաց ս̄բյ
հօրն մերոյ գրիգորի լուսաւորչի , և զփառա-
ւոր կուսանացն հռիփսիմեայ և գայիա-
նեայ , զորս բերեալ էր յաղուանս տ̄ր մատ-
թէ , որ և մատթէոս երէց՝ աշակերտ երա-

նեղւոյն յովհաննու մանդակունւոյ , և եդեալ
էր 'ի գեօղն դարահոծ՝ կնքեալ մատանեաւ
իւրով․ վասն առաքեաց զնա ինքն զտէր մատթէ
հանդերձ այլովք երիցամբք՝ բերել զայն
սրբ․ նշխարս 'ի բանակն․ զի միջնորդութբ նո-
ցին յաջողեսցէ ա̃ծ զկատարումն փափաքա-
նաց իւրոց ։

Իսկ 'ի մերձենալ նոցա 'ի գիւղն դուտական՝
ընդառաջ ելանէր սրբ․ նշխարացն նա ինքն բա-
րեպաշտ թագաւորն հանդերձ քսասէր դըշ-
խոյիւն և ա̃մ բազմութբ ժողովելոց՝ 'ի ձայն
սաղմոսաց յիւրաքանչիւր դասուց և բուր-
մամբ խնկոց՝ հանդերձ խաչիւք և աւե-
տարանօք․ և մերձեալ անձամբ առ երէցն՝
որ զնշխարս բարձեալ ունէր , սպասաւորէր
յարգութ̃ ինքնին թագաւորն․ մինչև ածին
զսրբ․ նշխարսն 'ի հանգստարան սրբյն զաքա-
րիայ և պանդալէոնի , ուր 'ի վկայարանին՝ ուր
կային և նշխարք ինչ երկոցունց սրբցս ։ Յայն
ժամ զուարձացեալ թագաւորն վրացական ,
և վստահ լեալ յիւր մեծահաւատ խնդիրն
և'ի մաղթանս ժողովելոցն՝ ասէ առ ամե-
նեսեան․ գիտեմ հաստատուն , զի տայ
ինձ ա̃ծ 'ի ձեռն մեծիսցս այսոցիկ սրբց զնշ-
խարս սրբյն գրիգորիսի ։

Բանայր այնուհետև թագաւորն զբազմու-
թիւն ժողովոյն , և ա̃մ շքով մեծահանդէս
թափորաց ճանապարհ առնէր յաւանն ամա-
րաս․ և զի էր ժամանակն գարնանային անձ-
րևաբեր հոսմանց , կամեցաւ թգ̃րն թո-
ղուլ 'ի դուտական զծատիկն ուր զթագու-
հին ․

հին . բայց նա ոչ հաւանեցաւ , այլ մեծաւ փութով փափագեալ՝ զկնի ընթանայր 'ի խնդիր սորին : Նա էր 'ի մէջ Թափորոյն բարձեալ 'ի պաշտօնէից դեսպակ մի գանձուց հնդեցւոց սրբոցն . այն է գահաւորակն՝ յօրումեդեալ կային նշխարք մի լուսաւորչին , հախճապակեայ , դայլանեայ , զաքարեայ և պանդալէոնի , զարդարեալ Թզիրական հանդերձիւք և անուշահոտ ծաղկօք և խնկենեօք , արտաքոյ պատեալ շէկակարմիր մորԹով , և 'ի վերոյ յարմարեալ սպիտակ կտաւով. և խաչ ոսկի մեծագնի ակամբք յօրինեալ 'ի վերոյ դեսպակին , և դասք պաշտօնէից բակ առեալ զնովաւ խաչ 'ի ձեռս՝ անհատական բարբառով նուագէին զփառաբանութիւն նոյ 'ի պատիւ սրբոցն :

Ընդ որս երգակից լեալ և լիակատար հաւատով մեծաւէր արքայն՝ երԹայր առ դեսպակին եպիսկոպոսօք հանդերձ : Նա էր պատուէր եդեալ յարքայէ հաւանութեամբ եպիսկոպոսին՝ անսահման կալ ամենեցուն մինչև յերեկոյ , և յայնժամ հացիւ միայն վճարել զպէտս կերակրոյն . զի աղօթիւք և պահօք արժանացին զխնդրելին գտանել զգանձ . որպէս և եղև իսկ սքանչելի տեսլեամբք հանդերձ :

Յղեալ էր Թագաւորն յառաջագոյն զմատԹէ գարահօձայ երէցն այլ և քահանայիւք և պաշտօնէիւք 'ի տեղի մի սոհ կամ սոհակոչեցեալ՝ գիշերապաշտօն առնել յեկեղեցին , որ կոչիւր գիսայ կին որոդիսայ , և անդ պատարագ մատուցանել 'ի պատիւ յիշատա-

կինքց ։ Այլ մինչդեռ զառաւօտին կատա-
րէին պաշտօն յատն կալով նիրհեաց մատթէ
երէցն ․ և լսէր ձայն ուժգին՝ որ ասէր ․ ըզ-
սուրբն խնդրէք զգրիգորիս ․ գտանէք յա-
րևելս կոյս եկեղեցւոյն ։

Այլ դարձեալ ՚ի հասանել արքային բազմու-
թ̃ ժողովոյն ՚ի դուռտական աւանէ ՚ի գեօղ
մի արածանս անուն , անդ յովէլ սարկաւագն
այր պարկեշտ ըմբռնեալ ՚ի քնոյ ՚ը առաւօտն՝
տեսանէր յանուրջս , իբրև թէ բաց ունիցի
յուս իւր ․ և խնդրիցէ զտեղի գերեզմանին
գրիգորիսի ։ Այլ ահա նոյն ինքն ՚սբն գրիգո-
րիս ՚ը առաջ եղեալ նմա յաբեղայի կերպա-
րանս՝ այլ ՚ի սպիտակ զգեստ , ասէ ․ զի՞նչ
խնդրես ․ և յասել յովելայ սարկաւագի ,
թէ արքայ և ա̃մ ժողով եկեսաց և բովան-
դակ գունդն աղօմնից զգրիգորիս խըն-
դրեմք , և ոչ գիտեմք՝ ո՞ւր իցէ , կալաւ ս̃րն
զձեռանէ սարկաւագին , և ակն յայտնի ըզ-
տեղին ցուցեալ՝ ասէր ․ զոր խնդրէքն՝ աստ
գտանի ․ և հրամայէր բրել զտեղին ։ Յայն
ժամ նախթան երէց՝ եղբայր սարկաւագին ,
և միւս երէց գեդէոն անուն բրէին զայն տե-
ղի , մինչդեռ յովէլ իջեալ ՚ի ծունկս՝ դի-
տէր զգուշու̃թ ․ և գտեալ զնշխարսն՝ սկսան
գնալ խնդու̃թ ։ Բայց տեսանէր յովէլ ,
զի ՚ի տեղւոջ անդ կայր բլրիկ մի փոքրիկ ,
և խաչ ՚ի վ̃ր նր ․ և երթեալ երանելին գրի-
գորիս ՚ի բլուրն՝ կայր առ խաչին հուպ ․ և
ձայնեալ զկնի երիցանցն՝ ասէր ․ կողքս և
զստկունքս դեռ ևս ՚ի տեղւոջս են , առէք
՚ի

'ի ձեզ . և նոցա անդէն դարձեալ՝ տանին և
զայն ։

Յայնժամ զարթուցեալ յոմէլայ սարկաւագի 'ի քնոյ՝ պատմեաց արքայի զտեսիլն . և թէպէտ չէր տեսեալ նր̃ յառաջագոյն զամարաս գիւղն , բայց 'ի ձեռն յայտնութե̃ն եղելոյ հաստատէր՝ թէ գիտեմ զտեղին ։ Նոյնպէս և մատթէ երէց եկեալ պատմեաց արքայի զիւր տեսիլն , որով ծանուցաւ մի և նոյն տեղի ։ Ուճարձացեն այնուհետև արքայն՝ փաղփաղակի առաքէր զմատթէ երէց և զյովէլ սարկաւագ. յամարաս նախ քան զիւր երթալն . և նշ̃ հասեալ անդր՝ գտին զտեղին նշանակեալ 'ի տեսլեանն ։ Եւ մինչդեռ սպասէին գալստեան թագաւորին և որոց ը̃ նմա , ետես յովէլ սարկաւագ միւս ևս տեսիլ յայնմ տեղւոջ , զի կային արք չորք ծերագոյնք 'ի ձև աբեղայի , և գրիգորիս մանկագոյն 'ի զգեստս սպիտակս ը̃ նս̃ , շուրջ կացեալ զտեղեաւն՝ զոր բրել հրամանն էառ ։ Եւ յահէ նշ̃ պակուցեալ յերկիր անկաւ սարկաւագն . և յորժամ կանգնեցաւ և կամէր հարցանել ինչ , նոքա եղեն աներևոյթ ։

Իսկ թագաւորն և ա̃մ բանակն՝ որ ը̃ նմա , հասեալ յագարակ մի քարուէձ կոչեցեալ , անդ կատարէին զպաշտօնն գիշերոյ ։ Յայնմ վայրի 'ի նիրհել թագաւորին՝ եղև առ նա ձայն , զի ասէր . զոր դու հայցես աղաչանօք , անդ երևեցաւ . և 'ի միտ էառ արքայ՝ թէ յամարաս ևս երևեալ է ն̃ք̃ այնոցիկ ,

զորս

կի՛ծոց ։ Այլ մինչդեռ զառաւօտին կատա-
րելին պաշտօն յոտն կալով՝ նիրհեաց մատթէ
երէցն ․ և լսէր ձայն ուժգին՝ որ ասէր ․ ըզ-
սուրբն խնդրեք զգրիգորին ․ գտանէք յա-
րևելս կոյս եկեղեցւոյն ։

Այլ դարձեալ 'ի հասանել արքայլին թագմու-
թեան ժողովոյն 'ի դուստական աւանէ 'ի գեօղ
մի արածանս անուն , անդ յովէլ սարկաւագն
այր պարկեշտ ըմբռնեալ 'ի քնոյ Է առաւօտն՝
տեսանէր յանուրջս , իբրև թէ բաց ունիցի
յուս իւր ․ և խնդրիցէ զտեղի գերեզմանին
գրիգորիսի ։ Այլ ահա նոյն ինքն սբն գրիգո-
րիս ընդ առաջ եկեալ նմա յաբեղայի կերպա-
րանս՝ այլ 'ի տպխտակ զգեստ , ասէ ․ զի՞նչ
խնդրես ․ և յասել յովէլայ սարկաւագի ,
թէ արքայ և ամ ժողով եկաց և թախան-
դակ զաւնդն աղօթանիւ զգրիգորիս խըն-
դրեմք , և ոչ գիտեմք՝ ո՞ւր իցէ , կալաւ սբն
զձեռանէ սարկաւագին , և ածն յայտնի ըզ-
տեղին ցուցեալ՝ ասէր ․ զոր խնդրէքն՝ աստ
գտանի ․ և հրամայէր բրել զտեղին ։ Յայն-
ժամ նաթան երէց՝ եղբայր սարկաւագին ,
և միւս երէց գեղջէոն անուն բրէին զայն տե-
ղի , մինչդեռ յովէլ իջեալ 'ի ծունկս՝ գի-
տէր զգուշութ․ ․ և գտեալ զնշխարսն՝ սկսան
զնալ խնդութ․ ։ Բայց տեսանէր յովէլ ,
զի 'ի տեղւոջ անդ կայր սրբիկ մի փաքրիկ ,
և խաչ 'ի վր նր ․ և երթեալ երանելին գրի-
գորիս 'ի բլուրն՝ կայր առ խաչին հուպ ․ և
ձայնեալ զկնի երիցանցն՝ ասէր ․ կողքս և
զստկանիքս զեռ եւս 'ի տեղւոջս են , ասէք
'ի

՚ի ձեզ . և նոցա անդէն դարձեալ՝ առին և զայն ։

Յայնժամ զարթուցեալ յամէնայն սարկաւագն ՚ի քնոյ՝ պատմեաց արքային զտեսիլն . և թէպէտ չէր տեսեալ նր յառաջագոյն զամարաս գիւղն , բայց ՚ի ձեռն յայտնութեան եղելոյ հաստատէր՝ թէ գիտեմ զտեղին ։ Նոյնպէս և մատթէ երէց եկեալ պատմեաց արքային զիւր տեսիլն , որով ծանուցաւ մի և նոյն տեղի ։ Ուարձակեցէն այնուհետև արքային՝ վաղվաղակի առաքէր զմատթէ երէց և զյովսէփ սարկաւագ . յամարաս նախ քան զիւր երթալն . և նք հասեալ անդր՝ գտին զտեղին նշանակեալ ՚ի տեսլեանն ։ Իսկ մինչդեռ սպասէին գալստեանն թագաւորին և որոց ընդ նմա , ետես յովսէփ սարկաւագ միւս ևս տեսիլ յայնմ տեղւոջ , զի կայցէն արք չորք ծերագոյնք ՚ի ձև աբեղայի , և գրիգորիս մանկագոյն ՚ի զգեստս սպիտակս ընդ նս , շուրջ կացեալ զտեղեաւն՝ զոր բրել հրաման էառ ։ Իսկ յահէ նր պակուցեալ յերկիր անկաւ սարկաւագն . և յորժամ կանգնեցաւ և կամէր հարցանել ինչ , նոքա եղեն աներևոյթ ։

Իսկ թագաւորն և ամենայն բանակն՝ որ ընդ նմա , հասեալ յագարակ մի քարուէձ կոչեցեալ , անդ կատարէին զպաշտօնն գիշերոյ ։ Յայնժամ վայելի ՚ի նիրհել թագաւորին՝ եղև առ նա ձայն , զի ասէ . զոր դու հայցես աղաչանօք , անդ երևեցաւ . և ՚ի միտ էառ արքայ՝ թէ յամարաս ևս երևեալ է նշանն այնոցիկ ,

զորս



Լուսաւորիչն ազգին մերոյ.
Ճգնէր ի լեառն Սեպուհոյ:



# ԳԻՐՔ ՆՇԽԱՐԱՑ

## Սբյն Գրիգորիսի աղուանից կաթողիկոսի.

Հ. սեպտ. 30. և մարտ. 6: Յառաջնորդէր Բ.
Երես. Նշխ = Նշր. և Գ. աշխ = աշխե.
Յոհն. երուսաղէմ. գով:



## ԱՌԱՋԻՆ ԳԻՐՔ

Նշխարացն սրբոյն գրիգորիսի, որք էր առաջնորդն տան սահմանեցաւ յեկեղեցի հայաստանեայց և աղուանից, եղև յամի տն իբր 489. հարիւր և քառասուն եօթն ամօք յետոյ քան զկատարումն նր, ըստ օրինակիս ըստ այսմիկ: Յաւուրս մարզպանութեան հայոց՝ մեծին վահանայ մամիկոնէի, և թագաւորութեան զենոնի կայսեր յունաց, թագաւորէր յաղուանից ծէն 'ի սերնդոց հայկազունեաց բարեպաշտն վաչագան կամ վաչական որդի վաչէի որդւոյ արսուաղենայ, այր առաքինի և գովելի յոյժ: Սա բաց յայլոց ծաչէն գործոց, և 'ի գեղեցիկ ձեռնտուութեանց 'ի պայծառութիւն եկեղեցւոյ, մեծաւ տենչմամբ ցանկացաւ գտանել

զնշխարս լուսաւորչին աղաւամնից , քանզի նոյն գրիգորիսի առաջին կաթուղիկոսի աղուանից՝ թոռին նոյն հօրն մերոյ գրիգորի լուսաւորչի , գիտելով զնոյն յորդոր մեծ լինել բարեպաշտութեան ընակչաց նորին խորոյ : Արդ՝ թէպէտև տեղեկացեալ գիտէր արքայ զդրաւոր և անգիր աւանդութ̃ , թէ յետ կատարման նորին գրիգորիսի 'ի վաղնեան կամ 'ի վաղնիանեան դաշտի յեզր կասպից ծովուն՝ աշակերտք նորա բերին և թաղեցին զմարմին նորա 'ի փոքր աւանիս յամարաս գիւղն մօտ յեկեղեցին հիմնարկեալ 'ի մեծէն գրիգորէ լուսաւորչէ և զարդարեալ 'ի նմին գրիգորիսէ , բայց կամ նոքին իսկ՝ որք թաղեցին , աննշան արարեալ էին զտեղին , զի մի բարձցի յօտարաց , և մի ոտնակոխ լիցի հեծնից , և կամ 'ի բազմութ̃է ամաց անցելոց անյայտ իմն եղեալ էր : Ապա խորհուրդ կալեալ թագաւորին ընդ իւրոյ դրան երիցունս՝ հնարս ինչ գտանել մի գիւտի խնդրոյն , որում էրն ցանկացող , կոչեաց զվանաց երէց գեղջն ամարասայ , և հարցանէր՝ թէ կայ՞ ինչ նշան գերեզմանի սրբոյ առ եկեղեցեաւն : Եւ նա ասէ . յուլով եմ գերեզմանք մերձ յեկեղեցին . բայց տեղին է աւերակ՝ ոտնակոխ լեալ յերեսաց հինախաղաց ժամանակին : Յայնժամ խորհեցաւ ամ̃ծաւէր թ̃ըրն , և ասէ . եթէ զհող տեղւոյն 'ի բաց հրամայեմ պեղել , գուցէ տապանին ոչ գտանի մարմինն նոյն 'ի բազմութէ գերեզմանացն . այլ պայծառ և արժանն է ապաստան լինել յաղօթս և 'ի պահս , և

հայ-

հայցել միաբան յամենողորմն այ՝ որ տայ ա-
ռատապէս զտուրս բարիս այնոցիկ, որք ճըշ-
մարիտ հաւատով խնդրեն :

Եւ նոյնժամայն առնէր հրովարտակ թգրն
ըդ ամ կողմանս իւրոյ տէրութեն օրինակ զայս ·
Առ եպսունս և երիցունս և սարկաւագունս
և անապատաւորս և բոլոր ուխտ եկեղեցւոյ
ողջոյն : Յուշ լիցի ամենեցուն ձեզ՝ անյա-
պաղ գալ ժողովիլ առ մեզ՝ պաշտել և պա-
հել և աղօթս առնել առ մարդասէրն ած,
զի շնորհեաց ինձ զանձկալի գիւտ մեծի
գանձին ծածկելոյ՝ առաքելագործ լուսա-
ւորչին մերոյ գրիգորիսի · ողջ լերուք :

Զայսպիսի հրաման արքային ընկալեալ
ամ եպսաց և քահանայից՝ չու առնէին կղե-
րիկոսօք, հանդերձ նշանաւ տրն խաչի և եկե-
ղեցական զարդուք, և առհասարակ հասա-
նէին փութապէս 'ի սեպհական գիւղն ար-
քունի՝ դուտական կոչեցեալ · քանզի և պա-
տուհաս մեծ 'ի վր կայր՝ որոց դանդաղեցին
գալ · և անդ աւուրս երիս յոքնահոչակ կա-
տարէին զյիշատակ սբյն · ուր և ինքնին թա-
գաւորն ըդ բարեպաշտ սովորութեն ոտնա-
կացութբ սպասաւորէր սեղանոյ եկեղեցա-
կանացն ժողովելոց :

Եւ 'ի կատարել կանոնին այնմիկ՝ կամ եղե
արքայի առնուլ ըդ իւր մասն 'ի նշխարաց սբյ
հօրն մերոյ գրիգորի լուսաւորչի, և զփառա-
ւոր կուսանացն հռիփսիմեայ և գայիա-
նեայ, զորս բերեալ էր յաղուանս տր մատ-
թէ, որ և մատթէոս երէց՝ աշակերտ երա-

նելւոյն յովհաննու մանդակունւոյ, և եդեալ
էր 'ի գեօղն դարահոճ՝ կնքեալ մատանեաւ
իւրով. վնյ առաքեաց զնա ինքն զտէր մատթէ
հանդերձ այլովք երիցամբք՝ բերել զայն
սրբ. նշխարս 'ի բանակն. զի միջնորդութբ նո-
ցին յաջողեսցէ ած զկատարումն փափաքա-
նաց իւրոց:

Այլ 'ի մերձենալ նոցա 'ի գիւղն դուստական՝
ընառաջ ելանէր սրբ. նշխարացն ինքն բա-
րեպաշտ թագաւորն հանդերձ քսասէր դշ-
խոյիւն և այլ բազմութբ ժողովելոց՝ 'ի ձայն
սաղմոսաց յիւրաքանչիւր դասուց և բուր-
մամբ խնկոց՝ հանդերձ խաչիւք և աւե-
տարանօք. և մերձեալ անձամբ առ երէցն՝
որ զնշխարս բարձեալ ունէր, սպասաւորէր
յարգութբ ինքնին թագաւորն. մինչև ածին
զսրբ. նշխարսն 'ի հանգստարան սրբյն զաքա-
րիայ և պանդալէոնի, ք 'ի վկայարանն՝ ուր
կային և նշխարք ինչ երկոցունց սրբցս: Յայն-
ժամ զուարձացեալ թագաւորն փաշական,
և վստահ լեալ յիւր մեծահաւատ խնդիրն
և 'ի մաղթանս ժողովելոցն՝ ասէ առ ամե-
նեսեան. գիտեմ հաստատուն, զի տայ
ինձ ած 'ի ձեռն մեծացս այսոցիկ սրբց զնշ-
խարս սրբյն գրիգորիսի:

Բանայր այնուհետև թագաւորն զբազմու-
թիւն ժողովոյն, և այլ շքով մեծահանդէս
թափօրաւ ճանապարհ առնէր յաւանն ամա-
րաս. և զի էր ժամանակն գարնանային ան-
ձրևաբեր հոսմանց, կամեցաւ թգրն թո-
ղուլ 'ի դուստական զծատիկսն ք զթագու-
հին.

հին. բայց նա ոչ հաւանեցաւ, այլ մեծաւ փութով փափագեալ՝ զկնի ընթանայր 'ի խնդիր սրբոյն : Եւ էր 'ի մէջ Թափորոյն բար-ձեալ 'ի պաշտօնէից դեսպակ սբ գանձուց հնդեցուոց սրբոցն. այն է գահաւորակն՝ յո-րում եդեալ կային նշխարք սբ լուսաւորչին, Հռիփսիմեայ, գայիանեայ, զաքարիայ և պանդալէոնի, զարդարեալ թգրական հան-դերձիւք և անուշահոտ ծաղկօք և խնկե-նեօք, արտաքոյ պատեալ շիկակարմիր մոր-թով, և 'ի վր յարմարեալ սպիտակ կտա-ւով. և խաչ ոսկի մեծագնի ակամբք յօրինեալ 'ի վր դեսպակին, և դասք պաշտօնէից բաց առեալ զնովաւ խաչ 'ի ձեռս՝ անհատական բարբառով նուագէին զփառաբանութին այ 'ի պատիւ սրբցն :

Ընդ որս երգակից լեալ և լիակատար հա-ւատով ածասէր արքայն՝ երթայր առ դես-պակին եպսօք հանդերձ : Եւ էր պատուէր եղեալ յարքայէ հաւանութբ եպսայն՝ ան-սուաղ կալ ամենեցուն մինչև յերեկոյ, և յայնժամ հացիւ միայն վճարել զպէտս կե-րակրոյն. զի աղօթիւք և պահօք արժանաւ-ցին զխնդրելին գտանել զգանձ. որպ և եղև իսկ սքանչելի տեսլեամբք հանդերձ :

Յղեալ էր թագաւորն յառաջագոյն զմատ-թէ գարահօձայ երէցն այլ ևս քահանայիւք և պաշտօնէիւք 'ի տեղի մի սոհ կամ սոհա-կոչեցեալ՝ գիշերապաշտօն առնել յեկեղե-ցին, որ կոչիւր գխայ կմ որոդխայ, և անդ պատարագ մատուցանել 'ի պատիւ յիշատա-

կի՛րց ։ Այլ մինչդեռ զառաւօտին կատարէին պաշտօն յատն կալով՝ Նիրհեաց Մատթէ երէցն ․ և լսէր ձայն ուժգին՝ որ ասէր ․ ըղձուրեան խնդրէք զգրիգորիս ․ գտանէք յարևելս կոյս եկեղեցւոյն ։

Այլ դարձեալ ՚ի հասանել արքային բազմութն ժողովոյն ՚ի դուստական աւանէ ՚ի գեօղ մի արածանս անուն, անդ յովէլ սարկաւագն այր պարկեշտ ըմբռնեալ ՚ի քնոյ Է առաւօտն՝ տեսանէր յանուրջս, իբրև թէ բաց ունիցի յաւս իւր ․ և խնդրեցէ զտեղի գերեզմանին գրիգորիսի ։ Այլ ահա նոյն լիսքն ՚րմն գրիգորիս Է առաջ եկեալ Նմա յարքեղայի կերպարանս՝ այլ ՚ի սպիտակ զգեստ, ասէ ․ զի՞նչ խնդրես ․ և յասել յովէլ սարկաւագի, թէ արքայ և ՚րմ ժողով եկեալ և բազմադակ զաւնդն աղօթանից զգրիգորիս խնդրեմք, և ոչ գիտեմք՝ ո՞ւր իցէ, կալաւ ս՛րն զձեռանէ սարկաւագին, և ած յայտնի ըզտեղին ցուցեալ՝ ասէր ․ զոր խնդրէքն՝ աստ գտանի ․ և հրամայէր բրել զտեղին ։ Այս ժամ Նաթան երէց՝ եղբայր սարկաւագին, և միւս երէց գեղջէոն անուն բրէին զայն տեղի, մինչդեռ յովէլ իջեալ ՚ի ծունկս՝ գիտէր զգուշութ ․ և գտեալ զնշխարսն՝ սկսան գնալ խնդութ ։ Բայց տեսանէր յովէլ, զի ՚ի տեղւոջ անդ կայր բլրիկ մի փոքրիկ, և խաչ ՚ի վ՛ր նր ․ և երթեալ երանելին գրիգորիս ՚ի բլուրն՝ կայր առ խաչին հող ․ և ձայնեալ զկնի երիցանցն՝ ասէր ․ կողքս և զատկանքս գտաւ ես ՚ի տեղւոջս են, առէք ՚ի

’ի ձեզ . և նոցա անգէն դարձեալ՝ աւերն և
զայն ։

Յայնժամ զարթուցեալ յովէլայ սարկաւագի ’ի քնոյ՝ պատմեաց արքային զտեսիլն . և Թէպէտ չէր տեսեալ նր յառաջագոյն զամարաս գիւղն , բայց ’ի ձեռն յայտնութեն եղելոյ հաստատէր՝ Թէ գիտեմ զտեղին ։ Նոյնպէս և մատթէ երէց եկեալ պատմեաց արքային զիւր տեսիլն , որով ծանուցաւ մի և նոյն տեղի ։ Ուրախացեալ այնուհետև արքայն՝ փաղփաղանկի առաքէր զմատթէ երէց և զյովէլ սարկաւագ. յամարաս նախ քան զիւր երթալն . և նք հասեալ անդր՝ գտին զտեղին նշանակեալ ’ի տեսլեան ։ Իսկ մինչդեռ սպասէին գալստեան Թագաւորին և որոց ը նմա , ետես յովէլ սարկաւագ միւս ևս տեսիլ յայնմ տեղւոջ , զի կային արք չորք ծերագոյնք ’ի ձև աբեղայի , և գրիգորիս մանկագոյն ’ի զգեստս սպիտակս ը նս , շուրջ կացեալ զտեղեաւն՝ զոր բրեալ հրամանեաւ ։ Իսկ յահէ նց պակուցեալ յերկիր անկաւ սարկաւագն . և յորժամ կանգնեցաւ և կամէր հարցանել ինչ , նոքա եղեն աներևոյթ ։

Իսկ Թագաւորն և ամ բանակն՝ որ ը նմա , հասեալ յագարակ մի քարուէձ կոչեցեալ , անդ կատարէին զպաշտօնն գիշերոյ ։ Յայնմ վայրի ’ի նիրհել Թագաւորին՝ եղև առ նա ձայն , զի ասէր . զոր դու հայցես աղաչանօք , անդ երևեցաւ . և ’ի միտ էառ արքայ՝ Թէ յամարաս ևս երևեալ է ոքն այնոցիկ ,

զորս անդր առաքեաց յառաջագոյն . մ̅ջ որոյ փութայր հասանել 'ի տեղին : Յայնժամ և Յովէլ քահանայ անապատաւոր՝ որ էր ը̅ արքայի , պատմեաց նմա , թէ տեսի և ես յայսմ գիշերի , զի 'ի նոյն տեղւոջ ամարատայ աղբիւր մի ելանէր 'ի նորբագոյն ականէն , և յառաջ խաղացեալ՝ յոյժ յորդագոյն լինէր . ը̅ որ զարմացեալ կայր , թէ յայսնիշ տեղւոջ բնաւ ջուր ոչ էր , և զիա՞րդ յորդագոյնս գնայ :

Իսկ եղև 'ի չուե՛լ բանակին 'ի քարուիձայ , իբրև մօտ եղեն յամարաս , տեղաց անձրև սաստիկ . և 'ի կոխելոյ բազմութե̅ երիվարաց զերկիր՝ դժուա՛րագնալի եղև ճանապարհն որոց ձեպէին զկնի նց̅ : Ընդ քնանէր արքայն՝ քաջ և արի հաւատով իջեալ յերիվարէն՝ շրջէր 'ի մէջ բանակի եպսաց և այլոց եկեղեցականաց . և ոչ թողլ տայր նց̅ իջանել յերիվարաց , այլ համդարտիկ և ը̅ կարգի հրամայէր գնալ . և թուէր ինքեան՝ թէ 'ի մ̅ջ փափուկ ծաղկանց ընթանայցէ , և ո՛չ 'ի կաւի , և 'ի տղմի . և փառս անձին համարէր սպասաւորել դեսպակի Տրդն՝ որ շքեղազարդ. երթայր 'ի մէջ բանակին :

Իսկ իբրև հանդերձեալ էին մտանել յամարաս գիւղ , անյագ փափաքմամբ վառեալ արքայն 'ի սէր Տրդն՝ ո՛չ հանդուրժեաց անցանել ը̅ կամուրջն , որ կազմեալ էր 'ի մ̅ջ փոքրիկ գետոյ խաղացելոյ ընդ մէջ շինին , այլ ինքնին կայսերակերպ զգեստուքն իջեալ անցանէր ը̅ ջուրն , և անցուցանէր զդեսպակ Տրդն՝

որոյն՝ ոչ թողացուցեալ զսպասաւորութիւն յայլ ոք : Ապա հասեալ ամ̃ բազմութբ̃ 'ի նշանակեալ տեղին ը̃ երեկս՝ անդէն հարին զխորանսն արքունի . և ամենեքեան ծնրադրութբ̃ 'ի խնդրուածս լինէին , և սպասէին հաւատով գտանել զխնդրելին 'ի վաղուեան աւուր :

Յայնմ վայրի 'ի խօսել արքայի ընդ երիցու գեղջն և ը̃ ծերս տեղւոյն , իբրև եհարց զնա՝ թէ զի՞նչ ինչ աւանդութիւն կայցէ առ ձեզ վ̃ն նշխարաց ս̃րյն գրիգորիսի , նոքա սկսան պատմել և ասել . Յոր ամ̃ այր ձգնաւոր և յոյժ առաքինի վարուք՝ որ ունէր զշնորհ առաքելական, և բազմաջան աշխատութբ̃ դարձոյց 'ի հեթանոսութէ̃ 'ի քրիստոնէութիւն զմեծ գաւառ մի ձ̃ին արձախոյ՝ պարզկանք կոչեցեալ , սա բազում անգամ եկեալ այսր յամարաս՝ կատարէր զյիշատակ ս̃րյն գրիգորիսի . և ասէր երկիցս և երիցս առաջի բազմաց , թէ թագաւոր հաւատացեալ յառնելոց է յաղուանից ձ̃իս . նա առնէ խնդիր տեղւոյս , և ս̃ր նշխարացն գրիգորիսի : Դարձեալ այլ ամ̃ անապատական հիւր եկեալ առ մեզ՝ կամեցաւ ննջել 'ի բլրակիդ . և 'ի քնոյն յարուցեալ՝ իսկ և իսկ կազմեաց խաչ , և կանգնեաց 'ի տեղւոջդ , պատուէր տուեալ չքառնալ ումեք զայն , այլ այգոյն և երեկոյն անխափան առնել աղօթս խնկարկութբ̃ . զի մեծամեծ սքանչելիք տեսանեմ ասէ 'ի տեղւոջս յայսմիկ :

Իսկ յետոյ եկեալ ամ̃ 'ի խաբերայից յաբե-

ղայի

դայլի կերպ , և մարդասիրութեամբ գտեալ 'ի մէնջ՝ գողացաւ զբաժակ մի մեծագին . զոր վաճառեալ՝ տայ զգին նորա 'ի թոշակ դպրոցին , ուր ուսանէր . և ապա տեսանէ յանուրջս զտղին այն , զի առ խաչին կանգնեալ յաննապատաւորէն նստեալ կայր 'ի վերայ գերեզմանի եպիս մի ահագին տեսլեամբ , որ ետ հրաման որոց մերձն կային կապել զինքն և տանջել ուժգին : Այս յարուցեալ զտղայն 'ի քնոյ՝ զտաւ սաստագանս հարուածեալ , մինչև բազմաց ցուցանել զմարմին իւր կապուտակեալ 'ի սաստիկ գանից . և 'ի կրկնել նոյն հարուածոց որ ԺԸ օրէ՝ զնաց 'ի Տր. քաղաքն եկեղ զտանել բուժումն տանջանացն . բայց և անդ կրեալ զնոյն անցս սաստկագոյն և՝ լուծաձայն , զի ասէր . չէ՛ք քեզ հնար զերծանել 'ի պատուհասէդ , եթէ ոչ երթեալ խոստովանեսցիս 'ի տեղւոջն՝ ուստի զբաժակն գողացար . վասն զորոյ արար անդրէն յամարաս , և խոստովանեալ վանաց երիցուն զմեղս իւր , և վճարեալ եկեղեցւոյ զգինս բաժակին , պատմեաց զնոյն անցս՝ որք անցին ընդ նա . եցոյց և զտեղին՝ ուր զհարուածսն եառ , յորրում էր խաչն առ գերեզմանաւ եպիսն . և ինքն այնուհետև բժշկեցաւ 'ի ցաւոցն , և ազատեալ 'ի պատուհասէն՝ զնաց 'ի տեղի իւր : Այս այլ եւս բազում սքանչելիք և ջերմեռանդ 'ի նմին վայրի 'ի ձեռն լոյս հողոյն ընդունելին զառողջութիւն . ոմն և անդէորդք անզաւակք 'ի բազում գիւղից զայլին ուխտիւ 'ի տեղին , և առեալ հող հաւատով՝ որդե-

## Գրիգորիոս աղաչանօք յԵղիոյ․ գեծնուն հանդիպելին։



Մինչդեռ զայս ամ պատմէին առաջի արքային ծերքն ամարասայ, յառաջ մատեաւ և խոճկորիկ անուն կողմնապահ տեղւոյն, որ և արժանացեալ էր տեսանել զմեծն զաքարիա և զպանդալէոն ՚ի ցրի աւանի, և պատմեաց զնոր տեսիլն՝ որ եղև նմա ՚ի նմին աւուր․ զի յորժամ ՚ի քուն կայի ասէ զհասարակ աւուրբ, տեսի արս եօթն սպիտակազգեստս առ դրան եկեղեցւոյ, և ասեմ ցնոս․ որհնեալք դուք արք ... ոչ ցուցանէք զնշխարս նոցին գրիգորիսի․ զի ՚ի մեծի ձգան կայ արքայ և ամ ժողովն, և ոչ գիտեմք զտեղին։ Եսուն պխնի միաբան, և ասեն․ Նշան ինչ ոչ տեսեր։ Եւ ես ասեմ․ ո՛չ։ Յայնժամ մի յեօթանցն առաջնորդեալ ինձ՝ եած ՚ի տեղի մի, ուր երկիրն էր պատառեալ, և ՚ի ներքս երևէր ձրագ լուցեալ, և բոց ձրագին բաժանեալ յերկուս։ Յորմէ ՚ի միտ առեալ իմ, թէ անդ է մարմին նոցին, ասեմ ցայրն՝ որ զտեղին եցոյց․ Երթամ պատմեմ արքային զիրոդ․ և նա ասէ․ երթ պատմեա։ Բայց իբրև եկի ՚ի պաղատն արքունի, թուէր ինձ թէ ՚ի քուն կայ արքայդ, և ոչ իշխեցի զարթուցանել․ և անդրէն դարձայ առ այրն, և պատմեցի նմա՝ թէ չկամեցայ արթնել արքային, զի ՚ի քուն կայ․ և այրն այն ասէ ցիս․ յորժամ զարթիցէ արքայ, սասաջի՛ր․ և ինքն ստամբն զպատառուածն կամեցաւ ծածկել, և արգելուլ զլոյսն։ Յայնժամ բուռն հարեալ իմ զառնելն՝ արգելուլի զնա, ասելով․

մի առներ՝ մինչև արքայս տեսցէ. իսկ նա ոչ հաւանեալ՝ անյայտեաց զտեղին, և ասէ. դու պատմեսցես արքայի. և առժամայն զարթեայ 'ի քնոյ:

Զայս ամ լուեալ բարեպաշտ արքային վաչականայ՝ անցուցանէր զգիշերն զայն յաղօթս հսկմամբ յաղօթս ամ բազմութբն հանդերձ. և ը այգանալն ամ ժողովն եկեալ 'ի տեղին՝ արարին մեծահանդէս պաղատանս միաբանական բարբառով: Եւ ապա առաջինասէր թագաւորն հողանեալ՝ էառ բահ 'ի ձեռն, և քաջապէս սկիզբն արար բրելոյ, և այլքն եղեն գործակից. և նոյն իսկն թագուհին թգւրական զգեստուքն կրէր ըղհողն ջերմեռանդն փութով. նոյնպէս և եպսունք և քահանայք, եւս և նախարարք և կանայք նախարարաց իւրաքանչիւր զգեստուք կրէին 'ի դուրս զհողն պեղեալ:

Եւ յոյժ խորագոյնս փորեալ՝ ոչ գտին ինչ զառաջինն. զի խոտորեցան 'ի կողմն հիւսիսոյ, և ոչ գիտէին՝ թէ նշխարքն յարևելից կուսէ էին. որով թէպէտև առ ժամն լքանէր թգրն տրտմութբ, բայց ապա քաջալերեալ հաւատով՝ ասէ. անսխալ է ամենակալին այ բանն, երկուց և երից ժողովելոց 'ի նր անուն՝ վաղվաղակի գտանել զխնդիրն, թող թէ այսչափ ժողովելոցս 'ի բոլորեցունցն այ յանունն. հաստատուն գիտեմ՝ որ ոչ անփոյթ արարեալ մերժիցէ զմեզ ամօթով:

Յայնժամ հրամայեաց դնել առաջի բրածին զնշխարսն սրբյն՝ զորս բերեալ էր ը բա-

նակին , և սկիզբն առնել բերելոյ յարևելից կուսէ ․ և ահա փութանակի պատահեցան ցանկալի գանձուն ․ զի գտին զտապան նոցին հանդերձ խորանաւ , և լցան անպատում հրճուանօք արքայն և որք ընդ նմա ․ և ամբոխն ընդ լսելն՝ թէ եղև գիւտ նոցա նշխարացն , առ հասարակ զեղեալ դիմէին ՚ի տեղին՝ կամէին քակել զբովանդակ կազմուածն գերեզմանին և զխորանն ․ մինչև արտաքս ելանել թագաւորին , և հազիւ ուրեմն հանդարտեցուցանել զնոսա ։

Իսկ ՚ի բանալ գերեզմանին , և յերևիլ նշխարացն , անընդելական ինչ հոտ անուշութե բուրեալ՝ ծածկեաց զյօրով խնկարկութեցն զազնուութի ․ ընդ որ ՚ի զարմացման լեալ արքայ՝ հարցանէր որոց մերձն կային , թէ՝ և ձեզ հարկանի՞ անուշիցս այս հոտ , ո՞ր ինձս ․ նք ետուն պխնի , թէ նոյնպ և մեզ ․ և առ հասարակ փառաւոր առնէին զտուօղն այնպիսի մեծագոյն բարեաց ։

Նստաւ այնուհետև թագաւորն ՚ի վր երկրի առ գերեզմանի նոցին , և հրամայեաց բերել ՚ի պատուական և ՚ի զանազան սպասուց արքունի ․ և եդեալ զսպատակն ՚ի վր ծնկաց իւրոց՝ յօյժ երկիւղածութբ սպասէր ընդունել զնոսն ՚ի գոգ իւր ․ և երիցունքն հանեալ զնշխարսն՝ հաւաքէին ՚ի սպասն ՚ի վերայ ծնգաց մեծասէր թագաւորին ։ Արդ բաց ՚ի նշխարաց նոցին գրիգորիսի նշանակելոյ յանուանէ , գտան ՚ի տապանի նր և երկու չիչք ապակիք ․ ՚ի միումն կայր յարենէն նոցին զա

քարիւք հօրն յանձնանս կարապետին, զոր
բերեալ էր Եւստաթէի առաքելոյ յաղօթանս,
և 'ի միւսումն 'ի նշխարաց նորին պանդխտելե-
նի բժշկին, զոր բերեալ էր նորին գրիգոր լու-
սաւորիչն մեր, և տուեալ թոռին իւրում
գրիգորիսի ։

Արդ և հանին զայս ամ 'ի դուրս, մի առ մի
ողջունէին համբուրիւ յարգութեան ամ բազ-
մութիւն ․ և թագաւորն կնքեալ զնոյն ար-
քայական մատանեաւ՝ պահէր զգուշութեամբ
'ի սապատի մինչև ցվաղիւն ։ Արտա և միւս
այլ ապակի մի 'ի գերեզմանի անդ՝ յորում
կայր հեղանիւթ ինչ ըմպելի ․ այլ ոչ յայտ-
նէ պատմութիւն՝ թէ զի՞նչ այն էր ։ Իսկ 'ի
վաղիւն, անդր հրամայեաց թագաւորն լուա-
նալ անոյշ գինւով զնշխարս նորին գրիգորիսի
'ի մէջ ոսկեղէն մաղզմայից, և ցամաքեցու-
ցանել յարկաւ՝ եդեալ 'ի վերայ թեքրականն վա-
ռին իւրոյ ։

Յայնժամ գողացաւ մասն ինչ 'ի նշխարաց
անտի առաքելոյ մի 'ի վանացն ամարասայ ․ իսկ
նորին գրիգորիս երևեցաւ մեծափայլելուչ փա-
ռօք այլոյ ուխտին, և սաստեաց զեղեալ գողու-
թիւն և զանուն առաքելոյն ․ որ և հարցեալ
յարքայէ՝ խոստովանն եղև, և եբեր եդ առա-
ջի նոր զկորուսեալ մասնն ։ Յետ այսորիկ հրա-
մայեաց թագաւորն տալ մասն իւրաքանչիւր
եպիսկոպոսաց 'ի նշխարաց նորին՝ առ 'ի բաշխել վի-
ճակելոցն իւրեանց ․ և մեծագոյն ինչ մասն
անդէն յամարաս եթող ․ և զմնացեալն առ
իւր պահեաց ։ Այլ մինչդեռ էր մեկնեալ 'ի տեղ-
ւո

ւոյն՝ հրաման ետ արկանել հիմն նորոյ մատրան 'ի վր գերեզմանի սբյն, և փութապէս աւարտել, և կոչել զմատուռն զայն՝ սբ գրիգորիս ։

Իսկ այր մի ժանտ 'ի քարակրաց հայհոյեաց վն աշխատութե զնահատակն քնի՝ ասելով, մեզ նեռն յայտնեցաւ գրիգորիսն այն · և իսկոյն եհաս նմա պատուհաս յայ · զի հարաւ զգետնի, և յետս դարձան երեսք նր · և ոչ զերծաւ 'ի լլկանաց անտի զաւուրս բազումս, մինչև եկեալ արտասուօք 'ի գերեզման սբյն՝ խնդրեաց զթողութի · և առեալ հող 'ի տեղւոյն՝ բժշկեցաւ ։ Նովաւ յառաջագոյն անկաւ ահ մեծ 'ի վր ամենեցուն, և ամենայն փութով գործէին զշինուած մատրանն ։

Եւ 'ի կատարել տճրի՝ յաւուրն չորրորդի մատուցեալ զփրկական խորհուրդ պատարագի 'ի տեղւոջն, չոքէր ամ բանակն ը առաջին կարգադրութեան հոգևոր ուրախութբ · և եպիսկոպոսացն օրհնեալ զխառնիճաղանճ բազմութին՝ հրամայէին գնալ յիւրաքանչիւր տեղիս ։ Իսկ թագաւորն տարեալ ընդ իւր զդասս եպսաց և երիցանց և պատուական արանց մինչև ցքարուէճ յօթի տեղի, գոհութիս և շնորհակալութիս մատուցանէր եկեղոցն 'ի նր հրամանն և 'ի գործակցութի գիւտի նշխարաց սբյն գրիգորիսի · և փառս վերառաքէր այ շնորհողին զցանկալին ամենեցուն ։

Եւ նց միաբան օրհնեալ զթագաւորն՝ թա-

գուհեաւն հանդերձ և ամ̃ դրամբն, ասելին. զա̃մ բարի՝ զոր խնդրես դու յա̃յ 'ի ձեռն նր̃յն գրիգորիսի, տացէ քեզ. և շնորհեսցէ մեզ զբարեպաշտութիւնդ ը̃ երկայն աւուրս, լինել խաղաղութ̃ 'ի շինութիւն ծ̃ի և 'ի փառազարդութիւն եկեղեցեաց՝ առաւելագոյն փութով օրըստօրէ. և զվախճան ձեր կնքեսցէ քրի̃ խոստովանութ̃ կենարար ա̃ծ՝ նորին

հայրն երկնաւոր :

Այս առեալ Թ̃րին ը̃ իւր զաւագ եպսա-պետն շուփխաղիշոյ, որ և շուփհաղիշէ կաթողիկոս աղուանից և արքեպս պարտաւայ, եկն 'ի սեպհական գիւղն դուտական. և անդ հանդոյց զմասն ինչ 'ի նշխարաց սր̃յն՝ մեծագին իւղովք անուշիւք օծեալ, կատարելով զյիշատակ նր̃ փառօք : Այս էր սորին վաչականայ արքայի դուստր մի դեռաբոյս՝ խնձիկ անուն՝ սիրելի յոյժ յաչս հօր իւրոյ. մինչև շինել և դաստակերտ յանուն նր̃. ետ և նմ̃ մասն 'ի նշխարաց սր̃յն՝ դնել 'ի դաստակերտի անդ, և կատարել պատուով ամ ը̃ ամէ

զյիշատակ սր̃յն :

Նաև արքայ և ինքեան մասն մի, զոր միշտ 'ի բանակի շրջեցուցանէր ամ̃ յարգութ̃ ը̃ նշխարաց զաքարիայ և այլ սր̃ց. և զմնացեալսն 'ի նշխարաց կնքեալ մեծաւ զգուշութ̃ եդ 'ի պահեստի. մինչև կատարեցաւ վկայարանն՝ զոր ետ շինել 'ի դուտական աւանի յանուն սր̃յն պանդալեոնի. և անդ փոխեաց զշիշն՝ ուր կային նշխարք նորա, ը̃ նմին և զմասն 'ի նշխարաց սր̃յն գրիգորի

րիսի , կարգեալ անդ պաշտօնէայս 'ի սպաս սրբոցն :

Այլ ինքն հրամայէր Թագաւորն երկիցս անգամ 'ի տարւոջն կատարել զյիշատակ նորին Գրիգորիսի՝ զերիս երիս աւուրս . յայտ է թէ նախ 'ի պատիւ կատարման նորա , և երկրորդ 'ի յիշատակ գիւտի նշխարաց նորա . և զնոյն տանել պատուիրէր ամենեցուն՝ որոց եւ մասն 'ի նշխարաց նորին : Այլ նոյն գեղեցիկ սովորութիւն՝ որպէս յաղուանս , նոյնպէս և 'ի Հայս եկաց մնաց հաստատուն մինչև ցայսօր . այս է՝ երկիցս 'ի տարւոջ տօնախմբել զյիշատակ նորին Գրիգորիսի աղուանից կաթողիկոսի , 'ի փառս այն՝ որ փառաւորէ զսուրբս իւր , և փառաւորեալ է 'ի նոսա յաւիտեան :





# ՎԱՐՔ ՍՐԲՈՑ

Հարցն մերոց՝ Թաթլոյ, և Վարոսի . և Թովմասու :

Հ . սեպտ . 30 . և դեկտ . 30 :

ԱՆՄԱՐՄԻՆՔ 'Ի ՄԱՐմնի՝ անարատ քաղաքավարութբ և հրաշալի ճգնութբ, կըրկին հարազատք ի մարմնոյ և ի հոգւոյ, որք հայրն մեր Թաթուլ, և աւագ եղբայրն իւր Վարոս, աշակերտք էին որք հայրապետաց մերոց Թարգմանչաց՝ սահակայ և մեսրովպայ, սնեալք կատարեալ գիտութբ և առաքինութբ 'ի ձեռս նց, և նմին հետևողք վարուց նց : Սք զկնի փոխման նց վճպաց իւրեանց տեսեալ զհրդեհ դառնութե հայոց որ էին յերեսաց կրակապաշտ ազգին պարսից՝ փոյթ էին ի կարի չիջուցանել զբոցն անօրէնութե, ձեռնտու լինելով ուխտապահաց, յանձանձիչ նեղելոց, և խրատիչ ստահակելոց :

Այլ յետ կատարման նոցա վարդանանց՝ որք զարիւնս իւրեանց հեղլին 'ի նորոգումն եկեղեցւոյ, յորժամ կալանաւորեցան 'ի պարսից երիցագոյնքն յաշակերտս նոցին յովսեփ և

եւ սրբն ղեւոնդ , եւ պատուհական նախարարքն վարեցան յօտարութ , այնուհետեւ բազումք յերկիւղածաց փախչէին թաքչէին յամուր տեղիս , զի մի հաղորդ լիցին գործոց անհաւատից եւ ուրացելոց 'ի նո յարելոց . մինչ զի յոլովք յանձանօթ վայրս կատարեցին ըղկեանս խստամբեր ճգնութբ :

Յորոց միջի իբրեւ աստեղք լուսափայլք երեւեցան երկու այս եղբարք Թաւթուլ եւ վարոս . քանզի առանձնացեալ 'ի սահմանս գաւեղենից մերձ 'ի քաղաքն կաղզուհանայ՝ բնակեցան 'ի տեղին վիշապաձոր կոչեցեալ՝ 'ի մէջ ահագին եւ դժուարին քարանձաւաց , ուր ազգի ազգի գազանք եւ վիշապք որջացեալ էին . այլ յայնմ հետէ հալածեցան անտի աղօթիւք սրբցն :

Օ այն տեղի իբրեւ յայ պատրաստեալ 'ի բնակութ իւրեանց համարեցան երանելիքն . եւ 'ի մերձակայ հովտաց գտեալ բանջարս եւ մրգս վայրի՝ նովիմբք շատանային . եւ առաւելապէս հոգեւոր կերակրով զանձինս պարարէին . եւ զորքանոհէր աղօթս իւրեանց հանապազորդ ըստ նմանութեան հոգեղէն զուարթնոցն յերկինս առաքէին՝ պատարագ բանական , զոհ անմարմին , ողջակէզ անկեզելի , զենումն անվախճան , եւ ընծայ բոլորանուէր՝ անուշահոտ եւ հաճոյական այ քան զամ խունկս եւ զպատարագս ստուերական օրինաց , անթերի կատարելով զասացեալն 'ի մարգարէին . վն քո մեռանիմք զօրհանապազ , համարեցաք որպ զոչխար 'ի զենումն :

Յետ կալոյ ժամանակս ինչ գեղեցիկ միաբանութեան երկոցունց ընդ միմեանս՝ խորհուրդ 'ի մէջ առին զառաւելագոյն փութոյ բուռն հարկանել կատարելութեան, բնակելով 'ի զատ 'ի միմեանց երկոցունց կամաւ. և այնպէս սրբն վարոս մանաւանդ առաւել սիրոյն Աստուծոյ որոշեցաւ 'ի թաթլոյ, և միայնացաւ հեռագոյնս ուրեք յայլ քարանձաւ. զի դժուարակուրն լիցի մենամարտիցն պատերազմ ընդդէմ դիւացն գնդի, և զի առաւել վարձուց արժանասցին 'ի քէն Աստուծոյ, և Աստուած միայն լիցի մխիթարութիւն իւրեանց՝ հաստատելով զառ 'ի միմեանց տեսութենէ սփոփանս :

Այնուհետև սաստկագոյն յարուցանէր պատերազմ ընդդէմ առանձնականաց հակառակորդն արդարութեան. և նոքա առաւել քաջապէս արիացեալք յաղթող լինէին մենամարտութեան. և առնուին զօրութիւն 'ի վերին շնորհացն, և տեսութիւնս անճառելիս : Մինչ զի զմեծին և զերանելոյն անտոնի զառաքինութիւնս յինքեանս բերելով՝ հանապազ մարտ եղեալ ընդ դիւացն կռուէին և յաղթէին. և հատուցումն բարի 'ի քէն ընդունէին :

Օ այսօրինակ կրօնաւորեալ բազմաժամանակեայ աւուրբք՝ կային անյայտ 'ի մարդկանէ. մինչև յայտնեցաւ զառաջինն յորսորդաց նոքին թաթուլ, և հռչակեցաւ համբաւ սքանչելի առաքինութեան նորա ընդ գաւառն. ուստի փութով մարդիկն անդր հասանէին 'ի տեսիլ նորա ճգնաւորին թաթլոյ. և նոքին 'ի նախանձ բարի բերեալք՝ աշակերտեցան նմա

յո

յոլովք սիրով : Այլ անդէն վաղվաղակի հինն արկեալ շինեցին եկեղեցի 'ի մօտակաց վայելուչ վայրի, և խուցս պատշաճաւորս ձգնաւորաց . և արարին վանս միաբանակեցաց՝ կարգեալ իւրեանց հայր և առաջնորդ զայրն այ զԹաթուլ . յորմէ և անուն տեղւոյն կոչեցաւ Թաթլոյ վանք : Իսկ հոգեբուղխ խրատուք նորա հօրն, և ածահաճոյ կարգաւորութեամբ նորա վարժեցան դասք առաքինեաց յոյժ գեղեցիկ կրօնս բարեպաշտութեան :

Այլ առաւել գտաւ քան զամենեսին մի ոմն յեղբարց անտի, որոյ անուն էր Թումաս կամ Թովմաս, անմեկնելի պաշտօնեայ վարդապետին իւրոյ, յոյժ բարեսէր, ածապաշտ և երկիւղած, հեզ և խոնարհ, հանդարտ և հնազանդ, ամենեցուն հլու և կամարար յոյժ . միանգամայն և հետևող կարգաց և կրօնից կատարեալ ձգնութեան մեծին Թաթլոյ խաչակրօն խստամբերութեան : Օ այսպիսի յառաջադիմութեան Թումասու տեսեալ երանելին Թաթուլ՝ ուրախ եղև յոյժ . և խորհեցաւ հաստատել զնա առաջնորդ վանացն 'ի տեղի իւր . զի ինքն ցանկայր 'ի միայնութեան վճարել զընթացս իւր :

Այս ժողովեալ զեղբարսն՝ յայտ արար նոցա, Թէ այսուհետև զսիրելի եղբայրն մեր զԹումաս ծանիջիք ձեզ հայր հասարակաց . և զնա ձեռամբ նորա հնազանդ լինիջիք յոյժ՝ անվեհեր փութով 'ի ծառայութիւն այն և 'ի սէր առ միմեանս . և որ ինքնին օգնական լիցի նմա և ամենեցուն ձեզ : Ապա յառաջ կո-

չեալ

չեալ զԹուման՝ սկսաւ դքն Թաթաւլ աւանդ-
գել նմա անվրէպ կանոնս և արդուս խրատս
յանկաւորս իւր ոչ առաջնորդի՝ Թելադրութք
հոգւոյն սբյ, այսպէս ասելով.

Որդեակ իմ Թումաս, այսօր կոչեաց զքեզ
հոգին սբ յառաջնորդութի եղբարց քոց.
արդ՝ երկայնամիտ լեր և ողորմած իւ նմա-
նութն հօրն երկնաւորի. զի շահել կարաս-
ցես զեղբարսդ քո, և դու պսակիս 'ի քնէ:
Ոչ յանուանդ ես կոչեցեալ, նոյնպէս և 'ի
գործդ լեր: Լուր դը առաքելոյն պօղոսի 'ի
խրատել զաշակերտսն իւրասէր. որ ամենե-
ցունց հիւանդութիւն ինքն վշտանայր, և ոչ
հրով այրէր դառնակսկիծ աղետիւն: Աշա-
կերտ ես երկնաւոր հօրն. նմանն լեր նմա:
Հայր հասարակաց ես. և 'ի գործոյն մի վեր-
ջանար: Ամ բարեձևութեց օրինակ զքեզ
ցոյց եղբարցն: Սրբութբ խրատեա, սիրով
մխիթարեա, յուսով դարմանեա: Սրբոյն
վկայ՝ գործքն է, և առաջնորդին՝ հաստա-
տութիւն: Հաստատուն կաց, և երկայնամիտ
լեր ընդ սխալանաց եղբարցն 'ի բանս և 'ի
գործս: Բայց կամապաշտիցն ամենևին մի
անսար, և ոչ սակաւ մի. զի ամենևին օտար
է 'ի մարմնոյն քնի, և չէ 'ի գործ ոչ եկեղ:
Որդեակ զոր ինչ յեղբարցն քոց պահանջես,
զայն 'ի քեզ ցոյց: Սակաւ խօսեաց, և յոլով
արդիւնացս. քարոզ զգործդ ցոյց:

Առաջնորդն ծնօղ է և բժիշկ. և հիւանդա-
ցեալն կարօտ է սիրոյ և առողջութե: Որ-
դեակ, որ սխալէ, և չէ իւրն սովորութե, մի

պատ

պատժեր զնա․ այլ հոգւոր ցաւակցութեամբն բժշկեա ։ Ի մանկագոյնսն 'ի հնազանդութիւն կրթեա, եւ յաշխատութիւն ։ Ի ծերսն 'ի սաղմոսերգութիւն, եւ 'ի ձեռագործս, եւ 'ի բանս խրատու առ մանկագոյնսն ։ Հոգւոր առաջնորդն՝ աստուածային հուր է, լուսաւորիչ մաքրիչ եւ ջեռուցիչ․ զապականարար ախտս այրէ, զգիջութիւն ցամաքեցուցանէ, կրօնաւորական հանդիսին քննէ, եւ ոչ զոսկի 'ի բովս անաղտ սրբութեամբ զեղծեալսն ոգւոյ ընծայէ․ եւ ինքն թագաւորէ 'ի մէջ տասն քաղաքաց ։ Մեղս եւ գինի՝ կրօնաւորաց ոչ է ուտելի․ այլ ճաշակելի է որոց պէտք են ։ Որ յախտ հիւանդութեան անկանի, զընական կարգն թուլացո, եւ զսովորական դարմանն ըստ պիտոյից առատացո ։ Յաւելորդին մի՛ անսար, որ չէ մեր ։ Պիտոյ է ժուժկալել՝ որչափ հնար է․ յուսով աղօթել, հաւատով աշխատել, գոհութեամբ ճաշակել ։ Մերձեակ նզովք մի՛ ելցէ ընդ բերան քո ։ Խստապէտս եղբայր է, կամ որդի, 'ի մի մահիճ մի՛ ննջեսցեն ։ Որ խէթ ունիցի 'ի մտի, չէ պարտ աղօթել, ոչ ճաշակել եւ ոչ ննջել ։ Որ երդնու, որ չէ մեզ օրէն, արտաքոյ սրբութեացն լիցի ըստ չափոյ ։ Մի՛ խառներ ընդ խրատն բարկութիւն․ զի մի՛ ընկղմեսցի սխալեալ եղբայրն 'ի բարկութեան խրատուն ։ Ի ծառերն իւր մնացն եւ խորհրդոցն եւ կամացն՝ ոչ թշնամւոյ զգուշանայ ։ Մերձեակ յորժամ 'ի մահիճսն քնոյ ելանես, այնպէս համարեա թէ 'ի գերեզմանն իջանես ։ Հալածեա զխորհուրդս եւ զբանս՝ որք 'ի անտ-

տիս

տիս ընթանան ։ Նուաճեա՛ զքեզ յերկիւղն այ ․ և ա՛ծ զմտաւ զերկիւղ դատաստանին ։ Երկիւղիւն նովաւ ․ և զարթուցեալ օրհնեա՛ զած , և գոհացի՛ր զայ , որ պահեաց զքեզ 'ի գիշերային խաւարանէր չարէն ։ Փութացի՛ր 'ի տեղի աղօթիցն ․ և ծնրադրեա՛ երիցս անգամ , և աւելի ․ և ապա 'ի ծունկս անկեալ , և զերեսդ 'ի յերկիր եդեալ՝ հայցեա՛ քեզ օգնութիւն 'ի տեառնէ այ ․ և ապա սկսի՛ր զկանոնեալ սաղմոսն ։ Աղաչեա՛ զած՝ բանալ զբերանդ , և բարբառել զայն՝ զոր այծ սիրէ ։ Մի՛ պղտորեր զխորհուրդ սրտի քո ․ մի՛ ընդարձակեր զբանսդ ․ մի՛ թողացուցաներ զձեռսդ ․ մի՛ դառնար յարևմուտս , որ չէ՛ քեզ սահման ․ մի՛ պարարեր զակնդ շրջածութե՛ ։ Զբոլոր զգայարանօքդ ընդդակազմ քաջութե՛ ընդդեալ վառեա՛ ․ այլև զբովանդակ եղբայրութիւնդ քաջալերութե՛ զինեա՛ ։ Այն է պատերազմն , և որք յաղթեսցեն՝ պսակին ․ Թոյլքն և անարիքն ո՛չ յաղթեն և ո՛չ պսակին , և ո՛չ բնաւ պատերազմին ։

Որդեակ իշխանութե՛ մի՛ վարի՛ր առ եղբարսն ․ և զոր դու ոչ կարես առնել , զայն յեղբարցն մի՛ պահանջեր ։ Զմի ոք միայն մի՛ առաքեր 'ի վանացն 'ի բան , այլ՝ երկու ․ զի վա՛յ է միումն 'ի ճանապարհին ․ եթէ գլորեսցի , ո՞վ կանգնեսցէ զնա ․ զի շատ փորձք լինին 'ի միոյն ։ Եղբայր ոք՝ որ ախտանայ հոգւով , թէպէտև բազում բժշկութե՛ պէտս ունի , 'ի սրբութե՛ն միա՛յն արգե՛լ ․ և այլ ամ կարգն ը եղբարցն լիցի ։ Երկիւղածն 'ի սիրոյն ա-

ռաւ

ռաւել պատկառի՝ քան 'ի պատուհասէն :
Զգեստն ( լիցի ), որպէս եւ հանդիպի . եւ
չափն՝ որ զվտանկսն բառնայ : Զոր դու յեղ-
բարցն պահանջես , ծերոցն զնոյն հատո . զի
մի անկանիցիս յերկնաւոր շնորհացն՝ զկամսդ
քո պաշտելով : ('Ի կատարել) զպատարա-
գին աղօթսն եւ զերեկոյինն՝ պարապեցո ըզ-
ձեռն քո յաշխատութ̃է : Որ գոհութ̃ աշ-
խատին , արժանի են նք խորհրդեանն . եւ
տրտնջօղն ընաւ իսկ ո՛չ :
Որդեակ յորժամ եղբայր ոք ստահակիցի ,
մի անփոյթ առներ զնր̃ կորստեամբն . համ-
բերեա նր̃ չար վարուցն եւ ատելի գործոցն .
ո՛չ եւ քո պարզ հոգիդ ախտակից լինի մարմ-
նոյդ : Մ՝ի բաւական համարիր զհամբերելն
միայն , այլ ձեռն տուր , եւ ջանա յարուցա-
նել զնա . եւ յաղօթելն քո արտասուեա վ̃
նր̃ : Առանձինն յանդիմանեա , առաջի ծե-
րոց աղաչեա , 'ի մէջ եղբարցն խրատեա .
յուշ արա նմա զփառս արդարոցն , եւ զտան-
ջանս մեղաւորացն . առաջի դիր նմա զահեղ
դատաստանն, եւ զարհուրեցո զնա գեհենոյն
տանջանօք . Թերեւս հնար լիցի նմա դառ-
նալ 'ի ստահակութ̃էն : Զայս քո արար , եւ
մեզ ուսոյց . եւ ոմն առաջնորդ՝ որ այսքան
երկայնամիտ է , քնի է նման . ապա թէ ան-
փոյթ առնէ , չզգաստի 'ի պատուհասէ : Զեր-
կիւղածն մեծարեա , զի արժանի է . եւ զստա-
հակն սիրով խրատեա , զի հիւանդ է : Այ-
գուն եւ երեկոյին զխոստովանութ̃ի պահան-
ջեա : Զծաղր եւ զկատակ եւ զցոփաբանութ̃ի
ար

արդեամբ ։ Զառանձին կամաց ատեամ, թէ-
պէտև բարի է ։ Զմանկունս մի՛ ժողովեր ․
ապա թէ ոչ՛ դիւրեաւ յաղթիս ։

Որ զինքն ուրացեալ է, և 'ի լուծ պատուի-
րանացն մտեալ, բառնալ պարտի զխաչն քնի ։
Չէ՛ պարտ ընտրութիւն առնել հրամանաց ա-
ռաջնորդին, այլ անսալ երկիւղիւ ։ Տե՛ս, զի
պետորս չօգտեցաւ յընտրութենէն ( յատնա-
լուծայն ) ։ Զոր լուծար յինէն, և տեսեր յիս,
և ուսեալ ես 'ի նմա գրոց, և ստացեալ ունիս
վարս, զնոյն և հաստատուն կալ, մինչ բարե-
ձևութիւն պահեալ զչափ և զկէտ ։ Յորժամ
տակաւ մի անցանես ընդ սահմանն, աւելորքն
պակասեն ։ Որ զպատուիրանն պահէ, հա-
մարձակ կայ առաջի նոյ, և ասէ ․ զորս ետուր
ցիս տէր, ոչ կորուսից 'ի նոցանէ ․ և ապա թա-
գաւորէ զանսահման մեծութիւն ։ Արդ զօ-
րացի՛ր և քա՛ջ լեր որդեակ ․ և հոգին նմա վե-
րակացու լիցի եղբարցդ քև ։

Զայս տէր իբրև լուաւ երանելին Թումաս
'ի նմա հօրէն Թաթուլոյ, եւ պինի ցածութեամբ,
և ասէ ․ Խոդունի՛ արա ինձ հա՛յր տէր, և տէր
իմ հոգևոր, զի տակաւ մի խօսեցայց առաջի
քո ։ Ահագին է դատաստան առաջնորդին ․
և ես ոչ կարեմ ընդդիմանալ հրամանաց քոց ։
Բաւական է ինձ 'ի փրկութիւն սպասաւորու-
թիւն քում սրբութեանդ ․ զի այր տգէտ եմ և
տխմար, և չկարեմ շահել զոք ։

Ասէ Թաթուլ ․ Որն հաստատուն պահէ՛ 'ի
քեզ զոր ունիս ։ Որ տկար և տգէտ չէ, չը-
կարէ ապաւինել 'ի գեհեննոյն ։ Զի որ նոյ 'ի

պէտք

պէտք է, այդ զօրաւոր է 'ի քեզ և լինի. աշխարհի զօրութիւն և գիտութիւն հեռի լիցի 'ի քէն ։ Որ երկնչի յայ, և երկնաւոր փառացն ցանկայ, նաբիւրուց առաջնորդութի առնէ ։ Մարմնաւոր գիտութի և զօրութի հակառակ է կամացն այ ։ Զպատուիրանն կամքն կատարէ և յօժարութիւն, և ոչ թէ գիտութիւն և զօրութի ։ Առաջնորդութիւն ընտրութի է այ, և ոչ հեռացումն, թէ պահեսցէ զպատուիրանն. իսկ եթէ աներկիւղ է, թէպէտև միայն բնակէ, չօգտի ինչ ։ Առնոք տկարութք մարմնոյ ընտանացան (կմ ընտրեցան) այ, և առաջնորդութք պսակեցան 'ի քնէ այ ։ Ի խրատես մի զարհուրիր որդեակ. և դու խրատ նմա տուր՝ որ ունիցի պէտս խրատու ։ Որ խրատու պէտս ոչ ունի, նմա գաւազան լաւագոյն է քան զխրատ ։ Քաղցր է մեղրն, բայց ախտացելոյն վնաս է. օգտակար է խրատ, և կարի լաւագոյն. բայց որ զդէմն յարևմուտն ունի, նմա օգուտ ոչ է ։

Վստահ եմ 'ի հոգին սբ, որ առատացոյց յառաքեալսն զշնորհն իւր, նոյնպէս և 'ի քեզ հեղցի. զի և դու զգործս այն գործեսցես ։ Զէնք հեռի 'ի միմեանց, այլ հանապազ տեսանեմք զմիմեանս. և այծ զմեզ տեսցէ և զեղբարսդ այն ։ Եւ զոր պակասութի գիտես 'ի քեզ, զայն՝ հնազանդութիւն լնու ։ Զի զճանապարհս՝ որ ը աջմէ են, գիտէ տր և ճանաչէ. երթ, և տր եղիցի ը քեզ ։ Զոր ասացի քեզ որդեակ, համառօտ բա-

նիմ աւարտեմ. Զսէր և զերկայնութիւն մնաց բնութիւն արամ քեզ, և զերկիւղն այ գործակից. և զամ առաքինութիւն դիւրեաւ կատարես:

Զայս ամ խոստեցաւ որ հայրն Թաթուլ, (և ոչ երևի՝ եթող և գրով,) յառաջին անապատի իւրում՝ ուր զվանսն շինեաց. և յետ կարգելոյ զԹումաս 'ի տեղի իւր՝ առանձնացաւ 'ի նոր մենարան 'ի տեղի կոչեցեալ մայրոյ ձոր. և անդ ոչ զանմարմին՝ զառանձնական հանդէսն իւր կատարէր. մինչև հասեալ 'ի խոր ծերութիւն՝ փոխեցաւ յԱյ 'ի նոյն մենարանին մայրոյ ձորոյ. ուստի բարձին զնշ մարմին նորա, և տարեալ 'ի վանս հանգուցին ընդ արժանեացն մեծաւ պատուով:

Իսկ երանելին Թումաս արժանաւոր յաջորդ եղեալ վիճակին իւրոյ յառաջնորդութեան վանացն, քաղաքավարէր ընդ այյամ առաքինութեան՝ զհետ երթեալ ամենայն խրատու. և վարուց որ հօրն Թաթլոյ. և ամ բարեձևութեամբ զարդարէր զմիաբանութիւն ուխտին, բնակեցուցանելով 'ի նմա զբազմութիւն եղբ րց միաբանից ընդ այ. և կեցեալ հրեշտակակրօն վարուք ամս բազումս՝ եհաս 'ի բարիոք ծերութիւն, և խաղաղութեամբ հանգեաւ 'ի Քս. և եդաւ մերձ հօրն Թաթլոյ:

Իսկ սբն վարոս յետ մեկնելոյ յառանձնութիւն 'ի սրբոյն Թաթլոյ՝ բնակեալ էր 'ի քարանձաւ լերինն՝ որ կոչիւր դլից մայրի, խստաբուռ եղեալ, և վայրի մրգօք շատացեալ ժամա-

Ի. նակս

նակս բազումս, անծանօթ 'ի մարդկանէ և ծանուցեալ յայ. մինչև զտուրն և զնա արք ամենք իւ խնամոցն այ. և խնդութե լցեալ 'ի տեսանել զայրն այ՝ կոչէին զանուն նորա Գնար. այլև զտեղի նր շինեցին վանս միայ-նակեցաց, որ անուանեցաւ Գնարի վանք. և անդ եւս բազմացան կրօնաւորք և փառաբա-նիչք այ ի առաջնորդութե նր հօրն վարո-սի. որ և կատարեալ զընթացս իւր ամ ամա հաճոյ կարգօք, և աւուրբք և արդեամբք փոխեցաւ յՔս յանանց կեանսն ։



# ՎԱՐՔ ՍՐԲՈՑ

## Միանձանց՝ Անտոնի և Կրօնիդեայ ։

Հ. սեպտ. 30 ։ Ճառընդ. Ի. երես. նէր = նչ. և Օ. խէ = ծղ ։ Օ կնոէ. և Յովէ. ժամէն-նեան ։



ԵՐԿՆԱՀԱՆԳԻՍ հրեշտակք յերկրի՝ սրբասնեալ միանձունքն Անտոն և Կրօնի-դէս՝ էին վանականք անուա-նիք 'ի մէջ յունաց՝ յԾին կեսարու կապա-դովկացւոց ։ Սոր իբրև եկն նր լուսաւորիչն մեր Գրիգոր, և ձեռնադրեցաւ 'ի օծյն ղեւոն-դեայ,

աղօթից 'ի տանն այ , և աղքնութեն և ժուժ-կալութեն հպատակ կայլին․ և օրինակաւ վա-րուց իւրեանց քան բանիւք կրթէին և զայլս 'ի ճգնողական վարս․ և երբեք երբեք առանձ-նացեալ 'ի մերձակայ անտառ՝ ճգնէին յա-ռանձին խուղս ։ Առ որս և ը̄ պարապոյ ժա-մանակի յայց եղանէր սբ լուսաւորիչն , և ու-րախ լինէր 'ի տեսանել զնս․ և ևս քան զևս յորդորամիտ գործէր զինքնայորդոր փոյթ նց յամ առաքինի վաստակս ։ Եւ ոչ այսչափ միայն , այլև 'ի գրել սբյն գրիգորի շնորհա-գիր նամակ շնորհակալութեն առ սբն զևոն-դիոս վս ընդունելոյ 'ի պարգևի մասին զնշ-խարս սբյ կարապետին և զմարմին սբյն ա-թանագինեայ, մեծամեծ գովութիւ արձանա-գրեաց և զերկոցունց միանձանցս , ոպ թէ և զնս հանդէտ նշխարաց սբց ունիցի յծին հայոց , այսպէս ունելով բանին ։

* Իսկ զերկուս կենդանի վկայսն քսի՝ զոր
,, դու յղեցեր ընդ ինձ՝ զանտոն և զկրօնիդէս ,
,, թողի 'ի տեղւոջն՝ ուր գիսանէսն ( կուռք )
,, կործանեցաւ , զոր տեղի Իննակնեանն կո-
,, չեն ։ Որոց կէտ եդեալ զվարս իւրեանց
,, ծի․ զի խաչեցեալ իսկ են զմարմինս իւրեանց
,, ընդ քսի․ և արդ մնան վս բազմաց փրկութե ։
,, Զորս իբրև զանգիւտ մարգարիտս հա-
,, մարիմ զնս տուեալ ինձ ։

Որ և սբն զևոնդ 'ի պատասխանին առ սբ լուսաւո-րիչն ասէ․ * Եւ 'ի սբյն անտոնէ ( ընկերէն
,, կրօնիդեայ ) առաւել ուսցիս զվարս ճգ-
,, նութե , որ ոչինչ պակաս է 'ի հրեշտակաց ։

չեալ զԹովմաս՝ նկսաւորձն թաթաւել աւան-
դել նմա անվրէպ կանոնս և ազդու խրատս
յանկաւորս սրբոյ առաջնորդի՝ թելադրութեամբ
հոգւոյն սրբոյ, այսպէս ասելով.

Որդեակ իմ Թովմաս, այսօր կոչեաց զքեզ
հոգին սուրբ յառաջնորդութիւն եղբարց քոց.
արդ՝ երկայնամիտ լեր և ողորմած սրբոյ նմա-
նութիւն հօրն երկնաւորի. զի շահել կարաս-
ցես զեղբարսդ քո, և դու պսակիս ՚ի քէն:
Որպէս յանուանդ ես կոչեցեալ, նոյնպէս և ՚ի
գործդ լեր: Լուր որք առաքելոյն պօղոսի ՚ի
խրատել զաշակերտսն իւրասէր. որ ամենե-
ցունց հիւանդութեամբն նոքին վշտանայր, և սրբ
հրով այրէր դառնակսկիծ աղետիւ: Աշա-
կերտ ես երկնաւոր հօրն. նմանն լեր նմա:
Հայր հասարակաց ես. և ՚ի գործոյն մի՛ վերա-
ջանար: Սր բարեձևութեանց օրինակ զքեզ
ցոյց եղբարցն: Սաստիւ խրատեա, սիրով
մխիթարեա, յուսով զարմանեա: Սիրոյն
վկայ՝ գործքն է, և առաջնորդին՝ հաստա-
տութիւնն: Հաստատուն կաց, և երկայնամիտ
լեր ամ սխալանաց եղբարցն ՚ի բանս և ՚ի
գործս: Նայեց կամապաշտիցն ամենևին մի՛
անսար, և ոչ սակաւ մի. զի ամենևին օտար
է ՚ի մարմնոյն քրի, և չէ՛ ՚ի գործ այ եկեղ:
Որդեակ զոր ինչ յեղբարցն քոց պահանջես,
զայն ՚ի քեզ ցոյց: Ականէ խօսեաց, և յոլով
արդիւնացո. քարոզ զգործդ ցոյց:

Առաջնորդն ծնօղ է և բժիշկ. և հիւանդու-
ցեալն կարօտ է սիրոյ և առողջութեան: Որ-
դեակ, որ սխալէ, և չէ՛ իւրն սովորութ, մի՛
պատ

պատժեր զնա . այլ հոգևոր ցաւակցութեն
բժշկեա՛ : Ο մանկագոյնսն 'ի հնազանդու-
թի կրթեա՛, և յաշխատութի : Ο ծերսն 'ի
սաղմոսերգութի, և 'ի ձեռագործս, և 'ի
բանս խրատու առ մանկագոյնսն : Հոգևոր
առաջնորդն՝ ամենայնի հայր է, լուսաւորիչ
մաքրիչ և ջեռուցիչ . զապականարար ախտն
այրէ, զգիջութին ցամաքեցուցանէ, կրօ-
նաւորական հանդիսին քննէ, և ոչ զոսկի
'ի բովս անաղտ սրբութե զեղբարսն իւր ըն-
ծայէ . և ինքն թագաւորէ 'ի մէջ տասն քա-
ղաքաց : Միս և գինի՝ կրօնաւորաց ոչ է ու-
տելի . այլ ճաշակելի է որոց պէտք են : Որ
յախտ հիւանդութեան անկանի, զընական
կարգն թուլացո՛, և զսովորական դարմանն
ըստ պիտոյից առատացո՛ : Յաւելորդին մի՛
անսար, որ չէ մեր : Պիտոյ է ժուժկալել՝
որչափ հնար է . յուսով աղօթել, համառօտ
աշխատել, գոհութե ճաշակել : Որդեակ
նզովք մի՛ ելցէ ընդ բերան քո : Թէպէտև եղ-
բայր է, կամ որդի, 'ի մի մահիճ մի՛ ննջեսցեն :
Որ խէթ ունիցի 'ի մտի, չէ՛ պարտ աղօթել, ոչ
ճաշակել և ոչ ննջել : Որ երդնու, որ չէ՛ մեզ
օրէն, արտաքոյ սրբութեցն լիցի ընդ չափոյ :
Մի՛ խառներ ընդ խրատն բարկութի . զի մի՛
ընկղմեսցի սխալեալ եղբայրն 'ի բարկութե
խրատուն : Ծառայքն իւր մտացն և խորհր-
դոցն և կամացն՝ ոչ թշնամւոյ զգուշանայ :
Որդեակ յորժամ 'ի մահիճսն քնոյ ելանես,
այնպէս համարեա՛ թէ 'ի գերեզման իջանես :
Աղաղեա՛ զխորհուրդս և զբանս՝ որք 'ի մտա-

տրս

տիս ընթանան ։ Բևեռեա՛ զքեզ յերկիւղն Այ ․ և ա՛ծ զմտաւ զերկիւղ դատաստանին ։ Երկիւղի՛ն նմջեա՛ ․ և զարթուցեալ օրհնեա՛ զԱծ , և գոհացի՛ր զԱյ , որ պահեաց զքեզ 'ի գիշերային խաւարաւէր չարէն ։ Փութացի՛ր 'ի տեղի աղօթիցն ․ և ծնրադրեա՛ երիցս անդամ , և աւելի ․ և ապա 'ի ծունկս անկեալ , և զերեսդ 'ի յերկիր եդեալ՝ հայցեա՛ քեզ օգնութի՛ 'ի Տէ Այ ․ և ապա սկսի՛ր զկանոնեալ սաղմոսն ։ Աղաչեա՛ զԱծ՝ բանալ զբերանդ , և բարբառել զայն՝ զոր Ած սիրէ ։ Մ՛ի պղտորեր զխորհուրդ սրտի քո ․ մի՛ ըարձակեր զբանսդ ․ մի՛ թողացուցաներ զձեռսդ ․ մի՛ դառնար յարևմուտս , որ չէ՛ քեզ սահման ․ մի՛ պարարեր զականդ շրջածութի ։ Զ բոլոր զգայարանսդ պնդակազմ քաջութի պնդեալ վառեա՛ ․ այլև զառվանդակ եղբայրութիւնդ քաջալերութի զինեա՛ ։ Բա՛ջ է պատերազմն , և որք յաղթեսն՝ պսակին ․ թոյլքն և անարիքն ո՛չ յաղթեն և ո՛չ պսակին , և ո՛չ բնաւ պատերազմին ։

Մ՛րդեակ ի՛շխանութի մի՛ վարի՛ր առ եղբարսն ․ և զոր դու ոչ կարես առնել , զայն յեղբարցն մի՛ պահանջեր ։ Զ մի ոք միայն մի՛ առաքեր 'ի վանացն 'ի բան , այլ՝ երկու ․ զի վա՛յ է միումն 'ի ճանապարհին ․ եթէ գլորեսցի , ո՛վ կանգնեսցէ զնա ․ զի շատ վնասք լինին 'ի միոյն ։ Եղբայր ոք՝ որ անտանեայ հոգւով , թէպէտև բազում բժշկութե պէտս ունի , 'ի սրբութէն միա՛յն արգե՛լ ․ և այլ Այ կարգն ընդ եղբարսն լիցի ։ Երկիւղածն 'ի սիրոյն ա-

աա

ռաւել պատկառէ՝ քան 'ի պատուհասէն ։ Զգեստն (լիցի), որպէս և հանդիպի. և չափն՝ որ զվտանգսն բառնայ։ Զոր դու յեղբարցն պահանջես, ծերոցն զնոյն հատո. զի մի անկանիցիս յերկնաւոր շնորհացն՝ զկամօք քո պաշտելով։ ('Ի կատարել) զպատարագին աղօթսն և զերեկոյինն՝ պարապեցո ըզձեռն քո յաշխատութէ ։ Որ գոհութիւն աշխատին, արժանի են ոչ խորհրդեանն. և տրտնջօղն բնաւ իսկ ոչ ։

Որդեակ յորժամ եղբայր ոք ստահակիցի, մի անփոյթ առներ զնորա կորստեանն. համբերեա նորա չար վարուցն և ատելի գործոցն. ոչ և քո պարզ հոգիդ ախտակից լինի մարմնոյդ ։ Մի բաւական համարիր զհամբերելն միայն, այլ ձեռն տուր, և ջանա յարուցանել զնա. և յաղօթելն քո արտասուեա վասն նորա ։ Առանձինն յանդիմանեա, առաջի ծերոց աղաչեա, 'ի մէջ եղբարցն խրատեա. յուշ արա նմա զփառս արդարոցն, և զտանջանս մեղաւորացն. առաջի դիր նմա զահեղ դատաստանն, և զարհուրեցո զնա դեհենոյն տանջանօք. Թերևս հնար լիցի նմա դառնալ 'ի ստահակութենէն ։ Զայս քո արար, և մեզ ուսոյց. և ոմն առաջնորդ՝ որ այնքան երկայնամիտ է, քան է նման. ապա թէ անփոյթ առնէ, չազատի 'ի պատուհասէ։ Զերկիւղածն մեծարեա, զի արժանի է. և զստահակն սիրով խրատեա, զի հիւանդ է։ Լոյգուն և երեկոյին զխոստովանութիւն պահանջեա։ Զծաղր և զկատակ և զցոփաբանութիւ

ար

արգելլ ։ Զառանձին կամսն ատեա՛, թէ- պէտև բարի է ։ Զմանկունս մի՛ ժողովեր · ապա թէ ոչ՝ դիւրեաւ յաղթիս ։

Որ զինքն ուրացեալ է, և 'ի լուծ պատուի- րանացն մտեալ, բառնալ պարտի զխաչն քնի ։ Չէ՛ պարտ ընտրութիւն առնել հրամանաց ա- ռաջնորդին, այլ անսալ երկիւղիւ ։ Տե՛ս, զի պետրոս չօգտեցաւ յընտրութենէն ( յոտնա- լուա՛յն ) ։ Զոր լուար յինէն, և տեսեր յիս, և ուսեալ ես 'ի սբ գրոց, և ստացեալ ունիս վարս, ընդ նոյն և հաստատո՛ւն կալ, ժմ բարե- ձևութբ պահեալ զչափ և զկէտ ։ Յորժամ սակաւ մի անցանես ընդ սահմանն, աւելիքն պակասեն ։ Որ զպատուիրանսն պահէ, հա- մարձակ կայ առաջի այ, և ասէ · զորս ետուր ցիս տր, ո՛չ կորուսի 'ի նոցանէ · և ապա թա- գաւորէ զանսահման մեծութիւն ։ Արդ զօ- րացի՛ր և քա՛ջ լեր որդեակ · և հոգին սբ վե- րակացու լիցի եղբարցդ քև ։

Զայս ժմ իբրև լուաւ երանելին Թաւմաս 'ի սբ հօրէն Թաթլոյ, ետ պնդի ցածութբ, և ասէ · Մնողութի՛ արա ինձ հա՛յր սբ, և տր իմ հոգևոր, զի սակաւ մի խօսեցայց առաջի քո ։ Հազին է դատաստան առաջնորդին · և ես ոչ կարեմ ընդդիմանալ հրամանաց քոց ։ Դաւական է ինձ 'ի փրկութի ստպասաւորու- թի քում սրբութեդ · զի այր տգէտ եմ և տխմար, և չկարեմ շահել զոք ։

Ասէ Թաթուլ · Ե՛ս հաստատուն պահե՛մ 'ի քեզ զոր ասնիսդ ։ Որ տկար և տգէտ չէ, չը- կարէ ազատիլ 'ի գեհենոյն ։ Զի որ ժմ 'ի պէտք

պէտք է, այդ զօրաւոր է 'ի քեզ և լինի․
աշխարհի զօրութիւն և գիտութիւն հեռի
լիցի 'ի քէն ։ Որ երկնչի յայ, և երկնա-
ւոր փառացն ցանկայ, նաքիւրուց առաջնոր-
դութի առնէ ։ Մարմնաւոր գիտութի և զօ-
րութի հակառակ է կամացն այ ։ Զպատ-
ուէրանն կամքն կատարէ և յօժարութիւն,
և ոչ թէ գիտութիւն և զօրութի ։ Առաջնոր-
դութիւն ընտրութի է այ, և ոչ հեռացումն,
թէ պահեսցէ զպատուէրանն․ իսկ եթէ ա-
ներկիւղ է, թէպէտև միայն բնակէ, չօգտե
ինչ ։ Ամոքք տկարութք մարմնոյ ընտանա-
ցան (կմ ընտրեցան) այ, և առաջնորդութք
պատկեցան 'ի քնէ այ ։ 'Ի խրատես մի զար-
հուրիր որդեակ․ և դու խրատ նմա տուր՝
որ ունիցի պէտս խրատու ։ Որ խրատու պէտս
ոչ ունի, նմա գաւազան լաւագոյն է քան
զխրատ ։ Քաղցր է մեղրն, բայց ախտացե-
լոյն վնաս է․ օգտակար է խրատ, և կարի
լաւագոյն․ բայց որ զդէմնն յարևմուտն ու-
նի, նմա օգուտ ոչ է ։

Աստծ եմ 'ի հոգին մք, որ առատացոյց
յառաքեալսն զշնորհն իւր, նոյնպէս և 'ի
քեզ հեղցի․ զի և դու զգործս տն գործես-
ցես ։ Զեմք հեռի 'ի միմեանց, այլ համա-
պազ տեսանեմք զմիմեանս․ և տծ զմեզ տես-
ցէ և զեղբարսդ տմ ։ Իսկ զոր պակասութի
գիտես 'ի քեզ, զայն՝ հնազանդութիւն լնու ։
Զի զճանապարհս՝ որ ընդ աջմէ են, գիտէ
տր և ճանաչէ․ երթ, և տր եղիցի ընդ քեզ ։
Զոր ասացի քեզ որդեակ, համառօտ բա-

նի՛ աւարտեմ. Զսէր և զերկայնութ̄ն միաց բնութ̄ն ա՛րա՛ քեզ, և զերկիւղն ա̄յ գործակից. և զա̄մ առաքինութ̄ն դիւրեաւ կատարես:

Զայս ա̄մ խօսեցաւ ո̄ր. Հայրն Թաթուլ, (և ոչ երբէք՝ եթող և գրով,) յառաջին անապատի իւրում՝ ուր զվանսն շինեաց. և յետ կարգելոյ զԹումաս 'ի տեղի իւր՝ առանձնացաւ 'ի նոր մենարան 'ի տեղի կոչեցեալ մայրոյ ձոր. և անդ ոչ զանմարմին՝ զառանձնական հանդէսն իւր կատարէր. մինչև հասեալ 'ի խոր ծերութ̄ի՝ փոխեցաւ յա̄յ 'ի նոյն մենարանին մայրոյ ձորոյ. ուստի բարձին զս̄ր մարմին երանելոյն, և տարեալ 'ի վանս հանգուցին ը̄ղ արժանեացն մեծաւ պատուով:

Իսկ երանելին Թումաս արժանաւոր յաջորդեղեալ վ̄դ̄պին իւրոյ յառաջնորդութ̄ն վանացն, քաղաքավարէր ը̄ղ ա̄յ յա̄մ առաքինունութ̄իւ՝ զհետ երթեալ ա̄մբ̄ք խրատու. և վարուց ո̄ր. հօրն Թաթլոյ. և ա̄մ բարեձևութ̄բ զարդարէր զմիաբանութ̄ն ուխտին, բնակեցուցանելով 'ի նմա զբազմութ̄ի եղբ̄ ՟ց միաբանից ը̄ղ ա̄յ. և կեցեալ հրեշտակակրօն վարուք ամս բազումս՝ եհաս 'ի բարիոք ծերութ̄ի, և խաղաղութ̄բ հանգեաւ 'ի ք̄ս. և եդաւ մերձ հօրն Թաթլոյ:

Իսկ ս̄րն վարոս յետ մեկնելոյ յառանձնութ̄ն 'ի ո̄րյն Թաթլոյ՝ բնակեալ էր 'ի քարանձաւ լերինն՝ որ կոչիւր դից մայրի, խոտաբուտ եղեալ, և վայրի մրգօք շատացեալ ժամա-



նակս

նակս բաղումս, անծանօթ 'ի մարդկանէ և ծանուցեալ յԱյ. մինչև զտոյն և զնա որք ամենք Էն խնամոցն Այ. և խնդութբ լցեալ 'ի տեսանել զայլոյն Այ՝ կոչէին զանուն նորա Գիւտ. այլև զտեղի նր շինեցին վանս միայ-նակեցաց, որ անուանեցաւ Գիւտի վանք. և անդ եւս բաղմացան կրօնաւորք և փառաբա-նէինք Այ Է առաջնորդութբ նր հօրն վարո-ոփ. որ և կատարեալ զընթացս իւր ամ Այծա-հաճոյ կարգօք, լի աւուրբք և արդեամբք փոխեցաւ յՔս յանանց կեանսն :



# ԿՐԻՔ ՄԻՐՈՅ

## Միանձանց՝ Անտոնի և Կրօնիդեայ :

Հ. սեպտ. 30 : Ճաշուն. Բ. եբրս. նք = նը. և Ս. խք = ծղ : Ս ենոք. և Յովհ. ճառեն-նեան :



Ն ՐԿՆԵՀԵՆԳԻՍ հրեշտակք յերկրի՝ սրբասնեալ միանձունքն Անտոն և Կրօնի-դէս՝ էին վանականք անուա-նիք 'ի մէջ յունաց՝ յԵրին կեսարու կապա-դովկացւոց : Սոր իբրև եկն սբ լուսաւորիչն մեր գրիգոր, և ձեռնադրեցաւ 'ի սրբոյն ղեւոն-դեայ,

դեալ, ընտրեաց զերկոսին զսոսա, և հաւանեցոյց գալ ընդ իւր յաշխարհն հայոց մեծաց՝ հանդերձ քանի մի աշակերտօք իւրեանց. զի ընիցին ինքեան գործակից 'ի ծաղկեցուցանել զկարգ միանձնական 'ի հայաստան աշխարհ, և անդ փորձ և կիրթ անձինք՝ լինիցին վարժապետք հոգևորք դասուց կրօնաւորաց:

Արդ ըներեալ զնոյն գրիգոր մինչև յերկիրն տարօնոյ, հիմնարկեաց անդ զեկեղեցի և զվանս յանուն նորա կարապետին 'ի տեղին ինն աղբերան կոչեցեալ. որ և անուանեցաւ գլակայ վանք յանուն զենոբայ եպսի ասորւոյ՝ գլակ մականուանելոյ, որ եղև առաջին առաջնորդ այնր վանաց: Անդ եթող առ նմա և զերկոսին միայնակեացսն զանտոն և զկրօնիդէս. որք պայծառացուցին զեկեղեցի նորա կարապետին, և զմիաբանս ուխտին կրթեցին յամս բարեկարգութիւն կրօնաւորական վարուց: Եւ օր քան զօր բազմացան անդ արք ընտիրք աշակերտեալք ընդ ձեռամբ նոցա. թո՛ղ զորս 'ի սկզբան անդ նա ինքն նոյն գրիգոր եթող 'ի տեղւոջն կրօնաւորս ընտրեալս 'ի կեսարիոյ քառասուն և չորս. և զեպիփան աշակերտն անտոնի և կրօնիդեայ հաստատեաց հայր վանաց՝ իբրև տեղապահ զենոբայ եպսի. որ և յետոյ զբուն իսկ զառաջնորդութիւն ընկալաւ զկնի մահուն զենոբայ:

Իսկ երանելիքն անտոն և կրօնիդէս հոգևոր միաբանակցութեան և դաստիարակութեան միայն ուշ ունէին. և հանապազորդեան պաշտաման

աղօ

աղօթից 'ի տաճարն այ , և տքնութն և ժուժ-
կալութն հպատակ կային . և օրինակաւ վա-
րուց իւրեանց քան բանիւք կրթէին և զայլս
'ի ձգնողական վարս . և երբեք երբեք առանձ-
նացեալ 'ի մերձակայ անտառ՝ ձգնէին յա-
ռանձին խուցս ։ Ըւ որս և ընդ պարապոյ ժա-
մանակի յայց ելանէր ընդ լուսաւորիչն , և ու-
րախ լինէր 'ի տեսանել զնա . և ևս քան զևս
յորդորամիտ գործէր զինքնայորդոր փոյթ
նդ յամ առաքինի վաստակս ։ Եւ ոչ այսչափ
միայն , այլև 'ի գրել նորին գրիգորի շնորհա-
գիր նամակ շնորհակալութն առ նորին զևոն-
դիոս վն ընդունելոյ 'ի պարգևի մասին զնշ-
խարս նորա կարապետին և զմարմին նորին ա-
թանագինեայ , մեծամեծ գովութս արձանա-
գրեաց և զերկոցունց միանձանցս , որք թէ
և զնա հանդէտ նշխարաց նորա ունիցի յծին
հայոց , այսպէս ունելով բանին ։
* Իսկ զերկուս կենդանի վկայսն քնի՝ զոր
,, դու յղեցեր ընդ իս՝ զանտոն և զկրօնիդէս ,
,, թողի 'ի տեղին՝ ուր գիտանէսն ( կուռք )
,, կործանեցաւ , զոր տեղի լինսակնեանն կո-
,, չեն ։ Որոց կէտ եդեալ զվարս իւրեանց
,, ծի . զի խաչեն իսկ են զմարմինս իւրեանց
,, ընդ քնի . և արդ մնան վն բազմաց փրկութն ։
,, Օ որս իբրև զանդիւտ մարգարիտս հա-
,, մարիմ զնա տուեալ ինձ ‖ ։
Որք և նորին զևոնդ 'ի պինին առ նորա լուսաւո-
րիչն ասէ . * Եւ 'ի նորին անտոնէ ( ընկերէն
,, կրօնիդեայ ) առաւել ուսցիս զվարս ձգ-
,, նուին , որ ոչինչ պակաս է 'ի հրեշտակաց ‖ ։

Եւ եղեւ յետ ամաց ինչ՝ յորժամ տրդատ ար-
քայ և Տրն գրիգոր գնացին յողջոյն մեծին
կոստանդիանոսի այն ինչ դարձելոյ 'ի Հա-
ւատս, 'ի դառնալ իւրեանց 'ի Հռովմայ յամի
Տեառն իբր 319, եկեալ 'ի Հայս, և Հասեալ
յիննակնեան տեղիս 'ի վանս գլակայ, խնդիր
արարին Տրյն անտոնի և կրօնիդեայ: Իսկ
պաշտօնեայքն ասեն. այս ամ մի է՝ զի ոչ
եմք տեսեալ զնոս: Եւ տրտմեցաւ Թագա-
ւորն յոյժ. զի 'ի վաղնջուց ցանկայր տեսա-
նել զնոսա: Իսկ Տրն գրիգոր առաքեաց
խնդրակս 'ի խուցս առանձնութեան նոցա
զալէքիանոս եպս Հարքայ Հանդերձ երկու
սարկաւագօք, տուեալ նմա խրատ, թէ յա-
ռաւօտուն պահու ելանեն յանտառէն 'ի բլ-
լուրս ուրեք. և դուք անդ կացէք զգոյշ, զի
մի զձեզ տեսեալ փախիցեն. և նմա երթեալ՝
ոչ կարացին գտանել զաւուրս չորս:
Իսկ 'ի լուսանալ աւուրն Հինգերորդի լուեան
զձայն սաղմոսերգութե նմա, զի գային յան-
տառէն յարեւելից կուսէ 'ի քաղցրահամ աղ-
բերէն՝ դէմ եդեալ 'ի տեղին, որ կոչիւր ա-
րեւու բլուր. զի անդ էին փարափոր խցկունք
նմա: Եւ իբրև մերձեցան 'ի գլուխ բլրոյն,
սկսան անդ սաղմոսել այսպէս. լսելի արա
ինձ առաւօտուց զողորմութիս քո, զի ես 'ի
քեզ Տր յուսացայ. իսկ ալէքիանոս ասէ. Հո-
գի քո բարի առաջնորդեսցէ ինձ յերկիր ու-
ղիղ. յայնժամ զտեղի առին անտոն և կրօ-
նիդէս. և աղօթեալ անդ՝ նստան ը եպսին:
Ասէ անտոն ցալէքիանոս. բարի եկիր Ճանա-

պար

պարհորդ խաղաղութե . և նա ասէ . բարի և խաղաղութի ը ձեզ մշակքդ տյ և օթեվանք հոգւոյն սբյ . այլև աւետիք ձեզ, զի տրն գրիգոր և տրդատ 'ի բնակութիս ձեր եկեալ են, և յոյժ խնդրեն զձեզ ։ Իսկ նք ասեն . նաև ձեզ եմ առաւել ուրախութի և աւետիք, զի այսպիսի բարիք ած 'ի ձերում ժամանակի յայտնեաց, և զսատանայ կործանեաց, զհոգևոր խաղաղութի քի պարգևելով արարիչն յաւիտենից ։

Եւ իսկոյն առաքեաց աղբիանոս զսարկաւագունսն առ հայրապետն աւետաւորս 'ի վանս գլակայ . և տրն գրիգոր արձակեաց առ տրդատ աւետաւորս 'ի ստորոտ արձան լերինն զնոյն սարկաւագունսն ։ Զոր լուեալ տրդատայ՝ լի եղև յոյժ ուրախութք, և փութացաւ գալ 'ի վանսն հանդերձ գլխաւորօքն. այլ 'ի տեղւոջն՝ ուր զաւետիսն ետուն նմա, հրամայեաց վէմս ժողովել 'ի կարկառ երևելի, որ կոչեցաւ 'ի բնակչաց տարօնոյ՝ աւետեաց խաղ ։

Յայնմ վայրի յառաջեաց տրն գրիգոր երթալ 'ի տես անտոնի և կրօնիդեայ, առեալ ընդ իւր զդասս պաշտօնէից և զնշան տրունեան խաչին՝ հանդերձ քահանայիւք և անուշահոտ խնկօք . ուր ձայն ուրախութե պաշտօնէիցն զանտառսն հնչեցուցանէր ։ Իբրև մերձ եղեն սոքա 'ի բլուրն՝ ուր կային անտոն և կրօնիդես, նք ըառաջ փութացան գալ տրյ հայրապետին . և միաբան ելեալ 'ի բլուրն՝ աղօթեցին ։ Եւ յետ ողջունին՝

միաւանդամանէ ցնա Ս՟բն Գրիգոր. բարեաց
գտաք զձեզ և խաղաղութի՟ւ՝ տաւուծոյք բա-
րեաց. և Ն՟ք ասեն. բարի եկիր արուսեակդ
արդարութե՟ն, որ զտիեզերս լուսաւորես՝
մշակ առաւնց ամօթոյ 'ի քէն, և աշտանակ
բարձրագոյն քան զերկինս : Այլ այսպիսի
բանիւք սիրոյ և հոգևոր մեծարանաց իջին
'ի բլրոյ անտի, որ յայնմ հետէ կոչեցաւ ա-
ւետեաց բլուր, և եկին 'ի գլակայ վանս :
Այլ 'ի մտանել Ն՟ց յեկեղեցին՝ հանդիպեցաւ
Ն՟ց ամենասէր Թագաւորն տրդատ, և ծունր
եդեալ հայցէր օրհնել 'ի կենդանի ս՟րբցն յան-
տանէ և 'ի կրօնիցեայ. և յարուցեալ ձե-
ռամբ Ն՟ց՝ համբուրեաց զնա : Ապա եկեալ
նստան առաջի վկայարանին. և Ն՟ք բազում
վճայութ՟ք խօսէին ը՟ն արքայի և ը՟ն նախա-
րարս Ն՟ր, գովելով զփոյթ ամենպաշտուն Ն՟ց,
և ուսուցանելով ևս քան զևս առաւելուլ 'ի
սրբութե՟ն կրօնս : Իսկ Թագաւորն մեծ գո-
հութի՟ն ո՟չ մատուցանէր. և կացեալ 'ի տեղ-
ւոջն զաւուրս տասն և հինգ՝ ապա յետ այ-
նորիկ գնաց 'ի բուն կայեանն արքունի 'ի
վաղարշապատ քաղաք :

Իսկ Ս՟բն Գրիգոր եկաց այլ ևս աւուրս տա-
սըն. և ապա գնաց շինեաց վկայարան և
վանս 'ի սարոյոտո լերինն տորոսի. ուր հանդ-
գոյց զնշխարս առաքելոցն՝ զորս եբեր 'ի
հռովմայ. վ՟սյ և կոչեցաւ տեղին առաքելոց.
այլ և յանուն եղիազարու եղբօրն զենոբայ,
զոր կարգեաց առաջնորդ տեղւոյն, կոչեցաւ
եղիազարու կա՟մ ղազարու վանք :

Յետ

Յետ ամաց ինչ անցելոց՝ յորժամ վախճա-
նեցաւ զենոբ գլակն կոչեցեալ՝ հայր գլակայ
վանաց, կացեալ յառաջնորդութե ամս ի,
’ի տասներորդ ամի յաջորդի նր եպիփանու
եկն սբն գրիգոր առ անտոն և կրօնիդէս՝
բնակել առ նս յանապատին. և եղև առ նս
իբրև ամիս երիս յաւետեաց բլուրն ։ Իսկ
նք հանեին անտի՝ ասելով. գնա յանծանօթս
ուրեք, զի մի ասա փառաւորութի մատու-
ցանեն քում սրբութեդ. և սբ հայրն մեր
երթեալ բնակեցաւ ’ի լեառն սեպուհոյ ’ի
մանեայ այրսն. ուր յետ իբր եօթն ամաց
փոխեցաւ առ քս, մինչդեռ տակաւին կեն-
դանի էին անտոն և կրօնիդէս. որք և կե-
ցին զկնի այլ ևս ոչ սակաւ, փայլեալ նշա-
նագործութք՝ բժշկելով զհիւանդս և զցա-
ւագարս անուամբ տն ։

Սորա տեօին և զվախճան աշակերտի իւ-
րեանց եպիփանու՝ որ վարեաց զառաջնոր-
դութի գլակայ վանացն ամս Է. որում յա-
ջորդեաց ստեփաննոս աշակերտ նորին եպի-
փանու ամս ԺԵ ։ ’Ի սորա չորրորդ ամին, այն
է յամի տն իբր 355, և ’ի վերջին ամի կա-
թողիկոսութե սբյն վրթանիսի՝ վախճանե-
ցաւ սբն անտոն. և յետ երկու ամաց սբն
կրօնիդէս. կացեալք զառաջինն ամս հնգե-
տասան ’ի բուն յիննակնեան վանս գլակայ,
որ և վանք սբ կարապետին. և ապա այլ ևս
ամս քառասուն ’ի մերձակայ անտառն նոյն
վանաց. զորոց զպատուական մարմինս բե-
րեալ թաղեցին ’ի վանս անդ գլակայ ’ի մէջ

գրախտին՝ սակաւ ինչ հեռագոյն յեկեղեց-ւոյն ՍԲ հարաւոյ կուսէ ։ Պնեղեցիկ հանդի-պեցաւ և այն, զի մի և երկու ամաւ յետոյ քան զփոխումն նորյն անուանի և կրօնիդեայ 'ի հայս՝ եղև վախճան և սբ հօրն անուանի անապատականի յեգիպտոս, որ էր նշյ ժա-մանակակից և հասակակից ։ (1)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Ճ'առընտիրք մեր պահեն զհարազատ գրութն զե-նոբայ՝ ըստ հնագոյն և ուղղագոյն օրինակաց, ունելով վերնագիր այսպիսի. * Պատմութն զենոբայ եպիսի, զոր „ արարեալ է վն անուանի և կրօնիգեայ և այլոց ճգնա-„ ւորացն ||. ոմ և վն խոստաճարակաց սան, * 'ի տա-„ րօնոյ պատմութե ||, իմն 'ի գրոց յովհաննու մամիկո-նէի ։ Ուր 'ի տպագրեալ օրինակի գրոց սոցա, ոմ և յապաւագ ձեռագրի վարդան վճպի յոհաննեան լեհաց-ւոյ՝ նոր և նորասէր գրչի, ոչ սակաւ խոտոր է ընթերց-ւածոց. եւս՝ թէ գոցէ ամբողջ օրինակ հին, ոմ յա-ջողեցաւ մեզ գտանել զայսոսիկ հաստուածս 'ի ճառըն-տիրս՝ որոց հետևեցաք ։ Ապացոյց լիցի այն, զի ուր ըստ ճառընտրաց անուն ընկեր կրօնիգեայ սաի լինել 'ի սբյն զենոնգեայ ոչինչ պակաս 'ի հրեշտակաց. տես զինչ գրէ նոր օրինակն վարդանեան. * զոր և 'ի սբյն անգո-„ նէ ուսցիս զկարգ ճգնաւորութե, որ ոչինչ պակաս է „ առաջին անդամէն ||: Նոյնպէս և տպագրեալ օրինակն. * որ և 'ի սբյն անասնէ ուղղոր զկարգ ճգնութե, զի „ ոչ ինչք պակաս է քան զառաջինն անուան ||. որ է մտացածին գիւտ յետնոց, որոց չէ ածեալ զմտաւ՝ թէ ըստ իմիք հնագոյն է անուան ընկեր կրօնիգեայ քան զան-տոն անապատականն, վՍյ չկարէ սա կոչիլ առ նմա առաջին ։

Դրձլ՝ ուր տպագրեալ օրինակն համգոյն ճառընտրաց ունի այսպէս, * 'ի տեղին՝ ուր զուարախն ևտուն, հրա-„ մայեաց վէմս ժողովել, զոր կոչեմք աւետեացխաղ ||, վարդանեան օրինակն ըստ մասի եղծեալ է այսպէս. * 'ի տե-

տեղին՝ ուր զաւետիսն ետուն, հրամայեաց զվէմս ժո_
„ ղովել բլրաձև, և անդ կանգնեաց զնշան խաչի. զոր
„ կոչէն աւետեաց խաչ ||. որ է ոչ միայն անհաւատար_
մութեն, այլև չփոթութեն ը այլում տեղւոյ՝ աւետեաց
խաչ կոչեցելոյ յաւուրս ոսկեանց և սուքիասանց 'ի սահ_
մանս ծաղկեոյ լերին յակունս եփրատայ ։

Զբանս լուսաւորչին՝ որ զսէն անտոն և զկրոնիդես
կոչէ անգիւտ մարգարիտս իբրև զկենդանի նշխարս ,
յովհ. երզնկ. 'ի շարականի նոցա վերածեալ է 'ի բուն
նշխարս սբյ կարապետին բերեալս ը նն 'ի հայս , յա_
ռելն. * մեզ մարգարիտ բերին անգին՝ զնշխար սբյ կա_
„ րապետին || ։

Այլ կարևոր քան զամ 'ի գիտել այն է, զի ը նոր օրէ_
նակաց զենոբայ այս ամ անցք անտոնի և կրոնիդեայ
ասին լինել 'ի գնալ տրդատայ և լուսաւորչի 'ի հռովմ.
իսկ ը ճառընտրաց՝ ը որոց և մեքեդաք, եղեն 'ի դառ_
նալ նց 'ի հռովմայ ։

# ՎԱՐՔ ԵՒ ԿԱՏԱՐՈՒՄՆ

## Սբց Եօթն Խաչաճարակաց ։

Հ. սեպտ. 30 ։ Դ՛աղեդր. Օ. ծէ=կէ ։ Յով_
հաննէս Սարկաւագեան ։

ԽՈՐՀՐԴԱԿԱՆ ԹՈՒՈՅ եօթն նը ձգնաւորքս լուսա_
փայլ վարուք՝ խորհրդով ասին
'ի շարականս նմանն լինել եօթ_
նաթիւ մոլորականացն երկնից կամարայ. զի
էին արդարև լուսաւորք ընտիրք տարփելի
վառ_

վտարանդութեան յանապատի մոլորեալք , 'ի խնդիր լինելով կամակատար լինել արարչին իւրեանց , ուր և կամք իցեն նմա ցուցանել ինքեանց տեղի հանդարտութե . և ած եած զնս յանապատ սբյն անտոնի և կրօնիդեայ . մնյ և ընդ նս եղեն տօնելի , Թէպէտև բազում ժամանակաւ յետոյ էին քան զնս :

Որդ՝ 'ի վախճան վեցերորդ դարու , 'ի ժամանակս որմզդի պարսից արքայի և որդւոյ նր խոսրովու , և յաւուրս մօրիկ կայսեր յունաց , առ որովք զմարզպանութի հայոց Յհն ունէր սմբատ բագրատունի՝ բազմայաղթն կոչեցեալ , և զառանձին իշխանութի կամ զմարզպանութի տարօնոյ վարէր քաջն մուշեղ՝ գործակից ունելով զդայլ վահանն , պայծառացաւ յոյժ վանքն սբյ կարապետին 'ի մուշ տարօնոյ՝ որ և գլակայ վանքն : Ի զկնի ութամեայ առաջնորդութե հօրն բասլի կարգեցաւ 'ի տեղի նորա հայր վանաց՝ աշակերտ նորին Թոդիկ , այր սբ և ճգնաւոր , որդի մեծատան և ազնուական . որ ձեռն էարկ վերստին շինել զհին վանսն և ընդարձակել . և բազում արս ընտրեալս և ճգնաւորս 'ի բանաւոր փարախ անդր ժողովեաց՝ Թըւով իբրև երեք հարիւր յիսուն և ութ :

Եւ այնչափ մեծացաւ անուն սբյ ուխտին գլակայ , մինչև չորք արք խոտաճարակք անուանի ճգնաւորք 'ի սահմանաց յունաց ( կմ 'ի մասնէ բաժնի յունաց , ուր նստէր յովհան կթղկս բագարանցի , ) անդր եկին հասին . զորս բազում մարդասիրութե ընկալեալ սբ

հօրն

հօրն Թոդիկայ՝ պատուեաց զնս իբրեւ արս ըն-տրեալս յԱյ . եւ նք հաճեալ յոյժ է բարե-կարգութի տեղւոյն՝ կամեցան մնալ 'ի վանսն առնել զճգնարանս իւրեանց . եւ զի հաճոյ թուեցաւ նոցա վայրք տեղեացն անտառին՝ բնակեցան 'ի նմա ։

Իսկ յետ երկուց ամաց գալստեան նց լուան եւ այլք ոմանք երեք 'ի կողմանց սադաստա-նի, եւ եկին 'ի վանս գլակայ . եւ 'ի շրջիլն 'ի մերձակայ վայրս՝ հանդիպեալ չորից խոստա-ճարակաց, յաւելան եւ նոքեանք 'ի նս, եւ դադարեցին 'ի նմին անտառի բազում ճգնու-թբ եւ խոտաբուտ կենօք, որոշեալք յամ մարմնական գրգանաց, եւ 'ի խաչ հանեալ զանձինս իւրեանց կենդանւոյն է քի ։ Եւ երբեք երբեք գային 'ի վանս առ նբ հայրն Թոդիկ՝ շահելով 'ի նմանէ, եւ շահեցուցա-նելով զեղբարս հոգեւոր բանիւք եւ օրինա-կաւ իւրեանց . միանգամայն եւ հաղորդ լի-նէին նբ խորհրդոյն . եւ անդրէն դառնային 'ի ճգնարան իւրեանց . եւ այսպիսի ածահա-ճոյ վարուք կեցին ամս քսան ։

Եւ եղեւ յետ այնորիկ 'ի յարձակիլ խոսրո-վու 'ի վր փոկասու կայսեր յունաց՝ 'ի վրէժ արեանն մօրկայ, կոչեաց եւ զմուշեղ մամի-կոնեան լինել իւր նիզակակից . եւ յոչ առնուլ նր յանձն՝ բարկացաւ թագաւորն . եւ 'ի դառ-նալ իւրում 'ի յունաց յաղթութբ եւ բազում աւարաւ, առաքեաց զմիհրան զքեռորդի իւր՝ աւերել ասպատակութբ զերկիրն տարօ-նոյ, եւ զմուշեղ ձերբակալ առնել ։ Իսկ միհ-

րան

քան Թէպէտև չկարաց իւիք սասանել մու-
շեղայ, բայց գունդ մի 'ի զօրաց միհրանայ
գտեալ իւրեանց առաջնորդ՝ խաղացին գալ
հասանել 'ի գլակայ վանս, կոտորել զաբե-
ղայս, և կողոպտել զսպասս եկեղեցւոյ։
Տեղեկացեալ եօթն խոտաճարակաց որ հա-
սանելոյ հինին մերձ յինքեանս, աճապարեալ
եկին 'ի վանս, և փախուցին զմիաբանս առ-
հասարակ յամուրն ողկան. միայն զսպասա-
ւոր եկեղեցւոյն և զհայր վանացն զԹոդիկ
մնացուցին առ ժամանակ մի 'ի տեղւոջն. և
ինքեանք հաղորդեալք մարմնոյ և արեանն
ք̃ի՝ զտեղի կալան յեկեղեցւոջ անդ. զի մի
անբնակ գտեալ հինից զտեղին՝ 'ի խնդիր լի-
ցին բնակչացն. և եԹէ վտանգ 'ի վ̃ր հաս-
ցէ, յանձն առին սիրով դնել զանձինս 'ի վ̃ր
եղբարց, և մեռանիլ վկայական մահուամբ
'ի ձեռաց անհաւատից՝ վ̃ս բարւոյ բովան-
դակ ուխտին։ Իսկ յետ աղօԹելոյ լուսն̃ յե-
կեղեցւոջ, մին 'ի նոցանէ՝ որ կոչիւր Թէոփն,
էառ տոմս, և գրեաց զաղօԹական բանքս՝
զոր զկնի միաբանն մատուցին, տարածեալ
զձեռս իւրեանց առաջի ն̃րա սեղանոյն։
Տ̃ր ա̃ծ զօրուԹեց, և արարիչ յաւիտենից,
որ ստեղծեր զմարդն 'ի պատկեր քոյոյ բա-
րերարուԹեդ, և կացուցեր զնա իշխան 'ի
վ̃ր երկրի, և ետուր նմա զփառս և զպատիւ
յաւիտենական և անմահ։ Ընդ որ մախա-
ցեալ բանսարկուին՝ կործանեաց զնա 'ի փառ-
սացն. Ը̃ որում եմուտ մեղք յ̃ծ, և 'ի մե-
ղացն մոռացումն, և 'ի մոռացմանէն կորուստ
յա

յաւիտենական . ուստի զորդեգրութիւն՝ որ Է՟ծ էր , ընկեցաք պատրանօք մեղացն . և փրկութե ճանապարհն բարձեալ եղև , և մահ թագաւորեալ :

Իսկ դու Տ՟ր բարերար գթացար 'ի ստեղծուածս ձեռաց քոց , և առաքեցեր զմիածին որդիդ քո 'ի փրկութի արարածոց քոց . որ եկն և ծնաւ 'ի կնոջէ 'ի մեր նմանութիս . և ոչ ունելով իւր զմեղս՝ դատապարտեաց զմեղս 'ի մարմնի իւրում , և եբարձ զանէծս 'ի վ՟ր խաչին . և ոչ ծառայելով ն՟ր ապականացու բնութես՝ եբարձ զապականութի մահու՝ 'ի գերեզմանի դնելով . և իշխան գոլով 'ի վ՟ր մահու՝ զմահ գերեաց , և զդժոխս աւերեաց , և զարգելեալսն ազատեաց , և ճանապարհ յերկինս ուղղեաց՝ առաջնորդելով ամենեցուն յառաջին անմահական վիճակն : Օ այս Տ՟մ արարեալ՝ զմարմինն իւր ետ Տ՟մ հաւատացելոց 'ի կերակուր , և զարիւնն յըմպելի . և զմահ ն՟ր պատմեն Տ՟մ հաւատացեալք , և զմահն՝ որ վ՟ անուան նորա , առ ոչինչ համարին , և՛ զանձինս իւրեանց մատնելով տանջանաց վ՟ երկնային յուսոյն հատուցմանց : Ա՟յ և մեք այսօր Է՟ նոցայն նախանձելով՝ մատնեմք զանձինս մեր 'ի մահ վ՟ փառաւորեալ անուանդ քո . զի դու իսկ ասացեր , թէ որ զիս պաշտիցէ՝ 'ի հալածանս կացցէ :

Որդ աղաչեմք զքեզ , մի տար զեկեղեցի քո Տ՟ր 'ի ձեռս անօրինաց . զի մի ասիցեն՝ թէ ո՞ւր է Ա՟ծ ն՟ց , յոր յուսացան ն՟ք : Յի-

շեա

չեաւ Տէր զգլխով արեան որդւոյ քո, և փրկեալ 'ի ձեռաց նեղչաց զհաւատացեալս անուանդ քո։ Ամրացո Տէր զժողովուրդս քո․ հովուեա և բարձրացո մինչև յաւիտեան։ Պարսպեա Տէր խնամատար աջով քով, տալով օգնականութիւն 'ի նեղութեան 'ի դէպ ժամանակի։ Զգեա Տէր զամփոփածածուկ աջ քո 'ի վ՟ր բանաւոր փարախիս այսորիկ, և մի տար զժառանգութիւս քո ('ի) բնակութիւն անհաւատից․ այլ եղիցի ձեռն քո 'ի զօրացուցանել զհաւատացեալս, և որ դաւանեն զանուն քո խոստովանութեամբ առաջի ազգաց օտարաց։ Պարբապեա Տէր զյուսացեալս 'ի քեզ, և փրկեա յարոգայթից թշնամւոյն, որք ապաւինին ընդ հովանեաւ եկեղեցւոյս այսորիկ սրբ՟յ։ Տուր անձանց մերոց ժառանգութիւն 'ի վերինն քո յեդեմ․ զի վ՟ն քո մեռանիմք զօրհանապազ․ և զանձինս մեր փոխեա անչափական մարդասիրութեամբ քո 'ի տանջանս մատնեցաք․ այլ խնչ ոչ ունիմք պարտուցս այսորիկ վճարումն,
բայց միայն յՏի սաստ զնեղութիւն կրել։

Լուր Տէր աղօթից մերոց, և խոնարհեցո զունկն քո 'ի մաղթանս ծառայից քոց՝ բարեխօսութեամբ Տէր կարապետիս և մկրտչիս քո․ և աղաչանօք սորա պահեա զեկեղեցի հաւատացելոց անդրդուելի և անսասանելի․ զի հաստատուն կացցէ հիմն հաւատոյ 'ի վերայ հիման առաքելական և մարգարէական քարոզութեան, մինչև երևեսցիս 'ի դատաստան համօրէն Տի։ Եղիցի փառք քո Տէր 'ի տաճարի սմա, զոր ընտրեցեր հիմնարկութեամբ օծն

դրի

զԳրիգորի՝ բնակութ՟ի Տ՟ր կարապետին . և կաց-
ցէ մնացէ փառք ն՟րյ երրորդութե՟դ 'ի տեղ-
ւոջ աստ : Առաքեա՛ տ՟ր զօգնութ՟ի 'ի բար-
ձանց . զի որք գայցեն 'ի սա վ՟ս կարեաց ան-
ձանց իւրեանց , ողորմեսցիս և բժշկեսցես
յիւրաքանչիւր ախտից . բայց եթէ կամք
իցեն քո թողուլ 'ի ցաւսն , զի աշխատեալքն
մարմնով՝ ապրեսցին հոգւով 'ի հանդերձեալ
աւուրն :

Եւ որք հաւատով յիշեսցեն զանուն Տ՟ր եկե-
ղեցւոյս 'ի նեղութե՟ իւրեանց կա՟մ 'ի վիշտս
կա՟մ յանձկութ՟իս չարեաց ; կա՟մ 'ի լլկանսն այ-
սոց , կա՟մ 'ի գետավիժութ՟ի , կա՟մ 'ի գազանա-
բեկութ՟ի , կա՟մ 'ի վիհս անհնարին որոգայթից ,
դու տ՟ր ա՟ծ մեր լուիցես ն՟ց մարդասիրութ՟բ
քով , և ողորմեալ զերծուսցես զն՟ս . զի քո
արարածք են : Մ՟ի վ՟ս մեղաց նոցա դատեր
զն՟ս , այլ գթութ՟բ քո խնայեա՛ , և մարդա-
սիրութ՟բ քո ողորմելով բժշկեա՛ , որ աննա-
խանձ ամենեցուն մատակարարես ը՟ս իւրա-
քանչիւր պիտոյից :

Ընկա՛լ տ՟ր զաղաչանս մեր , և տո՛ւր շնորհս
բնակչաց ս՟ր , որ ը՟ս պանդուխտ կենաց գնայ-
ցեն 'ի կեանս յայսմիկ , և ո՛չ ըստ մարմնոյ
քնքշանաց . թո՛ղ զյանցանս ն՟ց բարեխօսութ՟բ
Տ՟ր կարապետին , և մեր հեղման արեանս .
գրեա՛ զն՟ս յորդեգրութե՟ ս՟բցն 'ի լոյս : Այո՛
աղաչեմք , զի և մեղաւորաց ողորմեսցիս 'ի
կալ առաջի Տ՟ր եկեղեցւոյս , և յունել բա-
րեխօս զՏ՟ր կարապետս . և մեր նահատա-
կութ՟բս հաշտեսցիս ը՟ն ն՟ս . և մի՛ անտես առ-

ներ զաղաչանս մեր , և զմեղաւորացս թող զմեղս , և զվիրաւորացն ողջացո զվէրս ։ Որք ՚ի կենդանութեան իւրեանց ապաւինեցան յայս տեղի , և գործեցին բարիս առ այս եկեղեցիս , դու հատո նց բարեխօսութբ սրբ կարապետիս ։

Մնասցէ սր փառք և զօրութիւն քո ՚ի վր վիմիս այսօրիկ . ոչ յառաջ հիմնարկեցաւ սա քան զամ եկեղեցիս հայաստանեայց Տր , և են փառք մեծութեդ շուրջ զսովաւ , սոյնպէս և մնասցէ ՚ի սմա , մինչև գայցես ՚ի նորոգել զերկիր . և յայնժամ գտանիցես զսա նորոգ և անապականութբ զարդարեալ՝ ոչ զխորանն՚ի հնումն ներքոյ և արտաքոյ։ Այլ և՛ զմեր մահս ընկալ ՚ի հաճոյս քոյոյ սրբութեդ . զի դու կարող ես յամ . և քեզ փառք յաւիտեանս ։

Եւ ի ասել երանելեացն զամէնն՝ եկն ձայն յերկնից , որ ասէր . եղիցի ձեզ որպէս և կամիք . և որք ծառայեսցեն խնձ ՚ի ձեռում տասցելոցդ՝ հատուցից նց հատուցումն բարեաց յաւուրն այցելութե . և զմեղս թողից նց . վն զի մարդասէր եմ առ ամ դարձեալս . և դուք եկայք ՚ի տեղիս լուսաւորս , զոր պատրաստեցիք ձերով ճգնութբդ ։ Եւ լուեալ զայս՝ երկրպագեցին սբյ սեղանոյն ։

Եւ արտաքս ելեալ պօղիկարպոս մին ՚ի նոցն՝ գնաց առաջի խաչին կանգնելոյ արտաքոյ վանաց , և սկսաւ անդ աղաչել զԱծ վն խաղաղութե Տր , և զեկեալ թշնամեան խորտակելոյ , և աղքատացն մնալոյ ՚ի տեղիս իւրեանց ։

րեանց ։ Յայնմ վայրի յանկարծակի հասին անդր զօրքն պարսից . և իբրև տեսին զպօղիկարպոս , վաղվաղակի հատին զպարանոց ն̄ր , և ընկեցին առաջի խաչին ։ Եւ ինքեանք եկին փութապէս 'ի դուռն եկեղեցւոյն , և տեսեալ զայլսն ձեռնատարածս՝ սուր 'ի վ̄ր եդեալ կոտորեցին ։

Եւ էին անուանք համօրէն ն̄ր ճգնաւորացս խոստովանողաց՝ այսոքիկ ։ ա̄ . Սուքիաս ։ բ̄ . Պօղիկարպոս ։ գ̄ . Սիմէոն ։ դ̄ . Յովհաննէս ։ ե̄ . Ափիփան ։ զ̄ . Պռեմաքիոս ։ է̄ . Նարկեսոս ։ Սոքա եօթանեքեան կատարեցան 'ի զօրացն պարսից յամի տ̄ն իբր 604 . և 'ի թուին հայոց ծ̄գ . յամսեանն քաղոց՝ որ օր ժ̄գ էր , ( որ և 'ի ժամանակին յայնմիկ անկանի 'ի ի̄բ օր հոկտեմբերի , ) յաւուր հինգշաբաթու յիններորդ ժամու ։

Եւ մնացին բարբարոս զօրքն 'ի վանս անդ զայն գիշեր մինչև յառաւօտն , եդեալ 'ի մտի կողոպտել և զեկեղեցին և աւերել . այլ տ̄ր փակեաց 'ի նոցանէ զդուռն եկեղեցւոյն , և ոչ կարացին գտանել . և սկսան մրճօք հարկանել այսր անդր , և ոչինչ օգտեցան . և ապա ըմբռնեալք յարհաւրաց և զարհուրեալք իբրև այսահարք փախեան տագնապաւ 'ի տեղւոջէ անտի ։

Իսկ նշխարք ն̄ցն անկեալ կային անթաղ զաւուրս երիս . և յետ երից աւուրց եկն սպասաւոր եկեղեցւոյն , և հայրն Թոդիկ՝ (որ կայրն 'ի Թաքստի , ) տեսանել զիրսն . և գտին զն̄ս կատարեալ , և յարտասուս եղեալ



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Յիշ̃ն Անանիայ առաքելոյ ։

Ն̃ . հոկտ . 2 ։ Յ . հոկտ . 1 ։ Լ . յունվար . 25 ։ Բոլլանդ . յունիս . անդ ՚ի Է հատ . յնչ . էջ . 913 . և 1151 ։ Մենոլոգ . ստ . սուրբմանց . հոկտ . 1 ։ Ն̃արբ և Մինէոնս ։ (1)



ԱՆՈՒԱՆԻՆ ՅԱՇԱ-կերտս, և երևելին ՚ի մէջ դա-սուց ընտրելոց Սր̃ առաքելոյն անանիաս՝ մի էր յեօթանասունն և երկու աշակերտացն քն̃ի ։ բայց միանգա-մայն աշակերտ ասի և Սր̃ առաքելոյն պետ-րոսի և անդրէի՝ իբրև գործակից նց̃ ՚ի քա-րոզումն իւրս ։ մինչև ձեռնադրիլ նմա ՚ի վիճակն հաւատոյ եպս դամասկոսի (2), որ կարծի լի-նել երկիր ծննդեան նր ։ Սա էր անանիաս փառացի մարմնով, այլ յոյժ հեզ և համ-բերող սրտիւ, լի հոգւովն այ̃, առատ ՚ի բանս և զօրաւոր ՚ի գործս ։

Յայտ կատարեալ գովութիւն նր բովանդակի ՚ի գործս առաքելոց, ՚ի պատմել անդ սր̃ն ղուկայ, եթէ յիրաւի երևեցաւ նմա տր̃, և ընտրածի բանիւ հրամանս ետ երթալ գտա-նել զսօղոս՝ զայն լինէ եկեալն ՚ի դամաս-

կոս, և մկրտել զանօթն ընտրութեան. այն՝ որ 'ի տեսլեան զնորուն իսկ անանիայի զկերպարանս տեսեալ՝ սպասէր գալստեան նորա 'ի բժշկել զինքն 'ի կուրութենէ հոգւոյ և մարմնոյ. և թէ որպէս անվեհեր խնդրեաց և ընկալաւ անանիա 'ի տեառնէ ողջախական համարձակութիւն զլուծումն տարակուսանաց իւրոց, ընդ որում խիթալի էր ամենեցուն անուն սօղոսի. և ապա տիրաբար չոքաւ քարոզեաց նմա, և դարձոյց զսօղոսն 'ի պօղոս. քանզի ձեռն եդեալ լուսաւորեաց զխաւարեալ աչս նորա, և մկրտեաց զնա, և զօրացոյց լինել քարոզ ճշմարտութեան. մինչ զի վճարին հեթանոսաց ամենապարգև վարժապետ ճանաչի մեծն անանիա, և ընդ նմին ամենայն արդեանց վաստակոց նորա հաղորդ։

Սորին վասն և պօղոս ինքնին յատենի հազարապետին յանդիման ամենայն հրէից յերուսաղէմ (3) պարծանօք պատմէր զգործ իւր 'ի ձեռն անանիայի, ասելով. * Անանիա ոմն այր երկիւղած ըստ օրինաց, վկայեալ յամենայն բնակչաց՝ որ 'ի դամասկոս հրէայքն էին, եկն եկաց առ իս, և ասէ. սաւուղ եղբայր 'ի վեր հայեաց։ Եւ ես նոյնժամայն 'ի վեր հայեցայ 'ի նա. (այս է, բացան կուրացեալ աչք իմ, և տեսի զնա.) և նա ասէ ցիս. Աստուած հարցն մերոց յառաջագոյն ընտրեաց զքեզ՝ ճանաչել զկամս նորա, և տեսանել զարդարն, և լսել բարբառ 'ի բերանոյ նորա. զի եղիցիս վկայ նորա առ ամենայն մարդիկ՝ որոց տեսերն և լուար. և արդ զի՞ հեղգաս. արի՛ մկրտեա՛ց և լուա՛

զմեղս քո 'ի կարդալ զանունն ն՟ր ‖ ։ Զայս վայր 'ի մեր գրոց․ իսկ վկայաբանք աւանդեն զորս զկնի՝ այսպէս ։

Արդ՝ ս՟բ առաքեալն անանիա Թէպէտեւ զաթոռ իւր ունէր 'ի դամասկոս, ուր կային աշակերտք եւ հաւատացեալք ոչ սակաւ, բայց ստէպ քարոզէր զաւետարանն եւ 'ի շրջակայ տեղիս երկրին ասորւոց եւ պաղեստինացւոց, առնելով նշանս եւ արուեստս անուամբն ք՟սի հալածանօք հանդերձ յերեւաց հրէից եւ հեթանոսաց զամս բազումս ։ Եւ եկեալ 'ի շրջիլ ն՟ր քարոզու՟ք յելեւթերուպօլիս ( որ թարգմանի ազատ քաղաք ) եւ 'ի շէնս ն՟ր, կալան զնա կռապաշտք բնակեալք յաւանն բեթագաւրայ՝ յարեւմտից յորդանանու, որ եւ ըստ ոմանց բեթղաւիմ՝ միով մղոնաւ հեռի յելեւթերուպօլսոյ յիջանելն 'ի գաղայ․ եւ կացուցին առաջի դատաւորի տեղւոյն, որ կոչիւր լիկիանոս կամ ղուկիանոս, այր թշնամի յոյժ անուանն ք՟սի, եւ պնդագոյն ջատագով չ՟ածոցն՝ զորս կայսերքն պաշտէին ։ (4)

Եւ զառաջինն քաղցրու՟ք խօսել սկսաւ ը՟ ս՟բ առաքելոյն անանիայ, եւ ասէ․ ո՛վ այր դու, տեսանեմ զքեզ սքանչելատեսիլ՝ իմաստուն եւ հանճարեղ․ արդ եթէ լուիցես ինձ, բազում բարութեց հանդիպիս դու․ հա՛պա մատիր եւ զոհեա՛ ա՟ծոցն, եւ մի կորուսաներ զանձն քո չարչարանօք ։ Պ՟խնի ետ ս՟բն անանիա, եւ ասէ․ կուոց ես ո՛չ զոհեմ, եւ խուլ եւ համր բագնաց երկիր ո՛չ պագանեմ, որ բնակարան են դիւաց․ այլ երկիրպագանեմ

յոր ք͞ի տ͞ն իմոյ և ա͞յ ճշմարտի , որ եղև մեզ լոյս գիտութեան , զոր և աչօք իսկ մերովք տեսաք . զի նա եկն մարմնով յ͞ա , և ազատեաց զմեզ 'ի մոլորութենէ կռոցն . վ͞յ և ես պատրաստ եմ 'ի տանջանս և 'ի մահ , քան թողուլ զճշմարտութիւն և մոլորիլ զհետ խաբէութեան : (5)

Բարկացաւ դատաւորն , և ասէ . կարծեմ թէ 'ի մեծութի և 'ի զօրութի մարմնոյդ յուսացեալ՝ իշխես ոգորիլ ը͞ն տանջանաց . որով և իմաստութի քո յանմտութի բերի : Ապա ասէ առ դահիճսն . մերկացուցէք զդա , և հարէք չարաչար : Իսկ առաքեալն ամբարձեալ զաչս և զձեռս յերկինս՝ ասէր . Տէր յ͞ս ք͞ս ա͞ծ զօրութեանց , մի՛ երբէք 'ի վարմս իւր թակարդեսցէ զիս թշնամին . այլ արժանի եղէց և ես չարչարիլ վ͞ս քո , և զարդարիլ պսակաւ քով , համադասեալ ը͞ն ընտրեալ աշակերտս քո կենօք և մահու :

Յայնժամ վայրի դահիճքն անողորմ հարկանէին զթիկունս ս͞բյն չոր արջառաջլօք . և քարոզն աղաղակէր . հնազանդ լեր դատաւորին , և զոհեա դից հզօրաց : Իսկ ս͞բն ոչինչ տայր պ͞ասխանի , և ոչ համարէր ինչ զցաւս մարմնոյն առ սէրն ք͞ի : Դարձեալ սկսաւ դատաւորն ողոք բանիւք հրապուրել զնա . այլ կշտամբեալ 'ի ս͞բյն վ͞ս լրբութեանն՝ ետ կախել զնա զփայտէ , և քերել զմարմինն երկաթի քերչօք մինչև յոսկերս , և ջահիւք խանձողել զվէրսն :

Մինչդեռ յայն տանջանս էր երանելին , ա-

սէ

աէ ցնա դատաւորն . մինչև յե՞րբ ոչ հնազան-
դիս ինձ , և չառնուս յանձն մեծարել զան-
ման դիս՝ զորս ինքնակալն պաշտէ : Պխնի
ետ անանիա . զի՞ ստիպես զիս 'ի բերան ան-
դամ առնուլ զանոտիս և զմեռելոտիս և ըզ-
դարշելիս, որ են ձեռագործք մարդկան փայ-
տեղէնք և քարեղէնք և պղնձիք . և ո՞րպէս
ոչ առնուս 'ի միտ զանմտութի բանաւորաց՝
որք զանբանս և զանշունչս ածական անուամբ
պատուեն , և զարարուածս իւրեանց արա-
րիչս կարդան և յուսան 'ի նս :

Յայնժամ զամօթի հարեալ դատաւորին՝ ետ
հանել զնա արտաքոյ քաղաքին և քարկոծ
առնել . և որ առաքեալն ասէր 'ի ժամ կա-
տարմանն . ով Թգր Թգրաց և Տր Տրանց
ընկա՛լ քեզ 'ի պատարագ ընդունելի զզոհ ան-
ձին իմոյ 'ի փառս անուանդ քում սրբոյ . և
այնպէս աւանդեաց զոգին : Իսկ զմարմինն
սրբոյն ծածկեալ ընդ քարամբք 'ի բացի՝ եկին
և բարձին աշակերտք և ծանօթք նր , և տա-
րեալ թաղեցին 'ի հայրենի ժառանգութե-
նր 'ի դամասկոս՝ յամի Տն իբր 70 :

Տուն որ առաքելոյն անանիայի 'ի դամա-
կոս յիշատակի և 'ի զանազան մատենագրաց
յետին դարուց . որք ասեն , թէ եկեղեցի
շինեցաւ այն յանուն փրկչին , և առաքելոյ
նր անանիայի . այլ զկնի այլազգիք արարին
զայն իւրեանց մզկիթ : Իսկ պատուական
նշխարք նր , որպ ասի , եդան զառաջինն 'ի
դամասկոս յապարանս յուդայ՝ ուր ադաւ-
պօղոս . և անդ ևս շինեցաւ տաճար եկեղե-

ցիկ. այլ յետ ժամանակաց փոխադրեցան 'ի Հռովմ. ուր գլուխ սրբոյն ցուցեալ լինէր երբեմն 'ի տաճար սրբոյն պօղոսի, և այլ նշխարք ինչ յեկեղեցւոջ սրբուհւոյն բրաքսետայ. բայց կարոլոս չորրորդ՝ կայսրն, որ և արքայ բոյեմիոյ, խնդրեաց և եառ 'ի Հռովմայ զգլուխ սրբոյն անանեայ, և ոսկւով և արծաթով զարդարեալ՝ ետ յընծայ եկեղեցւոյն բրակայ:

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Տօն սրբոյն անանիայ առաքելոյ կատարի առ յոյնս 'ի հոկտ. 1. յորում աւուր դնեն վկայագիրք նշ̃ զկատարումն նր̃. ԺԵ որոյ և 'ի Հ. եդեալ է. հոկտ. 2: Իսկ լատինք տօնեն 'ի 25. յունվարի, որ է առ նմ̃ օր տօնի դարձման սրբոյն պօղոսի 'ի ձեռն անանիայի. ուստի վաղրապար վարկանի պետրոս նատալեան, թէ կատարումն անանեայ լեալ իցէ 'ի նմին աւուր՝ յորում երբեմն մկրտեաց զպօղոս. թող զի և արտաքոյ նմ̃ վկայաբանից՝ համարի զնա խաղաղութբ̃ վախճանեալ:

(2) Եւսեբիոս զանանիա կոչէ սարկաւագ. և այլք՝ քահանայ կամ երէց, հայեցեալ 'ի բանն օգոստինոսի. Գիրք Է. խնդ. աւէփ. իէ. * Պօղոս առ նա առաքի. զի ,, 'ի ձեռն քահանայի ընկալցի զնորոգ մկրտութեան զաւհ-,, մանեալն յեկեղեցւոջ, և ճշմարիտ կնիք նորին արժանա-,, հասցէ եղիցի ||. բայց յայտ է թէ նմ̃ եպս է և կոչի նաև երէց կամ քահանայ. թող զի եթէ յայնժամ լեալ քահանայ եւս համարեցցի, յետոյ. անշուշտ ոչ թողուլ զնա պօղոս առանց եպսութե̃. զի ո՞րք այլ արժանաւոր էր քան զվէրա իւր: Այս միաբան նմ̃ վկայագիրք զանանիա կոչեն եպս. և այն՝ ԺԵ յունաց սեփ ԺԸ հանրապետս ձեռնադրեալ յառաքելոց. իսկ 'ի Հ. գրի ձեռնադրեալ 'ի սրբոյն պետրոսէ:

(3) Բոլլանդ դնէ յաւելինն ադրիպպայ, մերկակա-

չող

բութիւն և դասք մարգարէից ըստ նմանութեան լուսնի լուսատու լինէին 'ի գիշերի ստուերական օրինաց՝ մինչև 'ի ծագումն առաւօտու , որոյ աւետաւոր եղև արուսեակն գեղեցիկ՝ Սուրբ Կարապետն Յովհաննէս : Աշակերտաց դասուց հետևողք գտան 'ի նմանութիւն աստեղաց հաստատութեան՝ դասք լուսաւոր Սուրբ վկայից 'ի նորումս . 'ի դէպ եկեալ պօղոսեան առածի , թէ զորս եդ Աստուած յեկեղեցւոջ՝ այս են . նախ զառաքեալս , երկրորդ զմարգարէս , երրորդ զվկայս :

Արդ քանզի սահմանեալ է թիւ առաքելոց և մարգարէից , ըստ նմին և օրէն եղև յանուանէ տօնախմբել զնոյն յեկեղեցւոջ ըստ աւուրց աւուրց , թող զհամախումբ յիշատակ տօնից նոցա . իսկ երամք Սուրբ վկայից չանկանին ընդ թըւով , որ անթիւ են և հոյլք աստեղաց . սորին մի խորհրդով եղև ընտրել զերևելիս 'ի նոցանէ երկոտասան թուով ըստ համարոյ առաքելոց , և ըստ նմանութեան երկոտասան աստեղատանց՝ որք կենդանատեսակք վերաձայնին . և առնել 'ի միոջ զխառնանձին տօն յիշատակի նոցա՝ յաւուր տօնի մեծին անկանխայլի , որ զառաքելական և զմարգարէական և ըզվկայական պաշտօն միանգամայն յանձին բերէր , գոլով աշակերտ Քրիստոսի , և վկայ վկայից հեթանոսաց : Եւ այս անուանք են ժբ վարդապետաց ընդհանուր եկեղեցւոյ . (1)

Ա . Սուրբն դիոնեսիոս արիսպագացի՝ աշակերտ պօղոսի , և առաքելական հայր , զօրաւոր դրով և բանիւ , ծանուցեալ գլուխ աստուածաբա-

նու

Նուաթեան յետ յովհաննու ա̃ծաբան աւե-
տարանչի:

բ̃. Ս̃րբն յուեթէոս աթենացի, ընկեր՝ միան-
գամայն և վ̃դպ դիոնեսիոսի, յոգնահան-
ճար և հոգիաբուղխ բերան. որ յօրինեաց
զա̃ծաբանական տաղրութիս, զի զսկզբունս
և զհրահանգս, և զայլ խորհմաց ճառս և
օրհնութիս:

գ̃. Ս̃րբն սեղբեստրոս հռովմայ հայրապետ,
պայծառացուցիչ հաւատոյս քրիստոնէութե
՚ի դարձման մեծին կոստանդիանոսի, և ՚ի
գումարման առաջին տիեզերական ս̃բ ժո-
ղովոյն՝ իւրով ձեռնարկութ̃բ և սահմանա-
դրութ̃բ:

դ̃. Ս̃րբն աթանաս աղեքսանդրացի՝ հզօր ա-
խոյեան ուղղափառութե ը̃դէմ քնամարտ
հերետիկոսաց, աղդու բանիւ և գրով՝ բա-
զում հալածանօք հանդերձ:

ե̃. Ս̃րբն կիւրեղ եր̃մացի՝ պայծառ քարոզ
ճշմարտութե ը̃դէմ հրէից և հեթանոսաց
և ա̃մ աղանդաւորաց, և հրահանգիչ և լու-
սաւորիչ բազմուե եկեղեցն ՚ի հաւատս ճըշ-
մարտութե. այն ինքն է հեղինակ գրոցն՝ որ
կոչի կոչումն ընծայութե, և թղթոյն առ կոս-
տանդ կայսր վ̃ս երևման ն̃շի խաչին յեմ̃:

զ̃. Ս̃րբն եփրեմ խորի ասորին՝ աշակերտ ս̃բյն
յակոբայ մծբնացւոյ, ճգնութ̃բ և վ̃դպու-
թ̃բ փայլեալ, հոգելից մեկնիչ հին և նոր
կտակարանաց, ճառաբան և ներբողասաց ՚ի
տօնս տէրունականս և ՚ի ս̃րբս ա̃յ՝ հանդերձ
աղօթական բանիւք բազմօք:

է.

Է. Սբն Բարսեղ կեսարացի եօթնալոյսն, այր կորովամիտ և իմաստայեղց, եօթնարփին շնորհաց հոգւոյն ընդունական. անխոնջ 'ի գրաւոր վաստակս բազումս՝ 'ի ջաղխումն հերեսիովտաց և 'ի հաստատութին ուղղափառաց. նոյն և զարդարիչ եկեղեցական պաշտամանց և աղօթից, և օրինադիր կարգաց կրօնաւորութե:

Ը. Սբն Գրիգոր նազիանզացի՝ ածաբան կարդացեալ, լի հոգւով այ, և ըմբերանիչ հոգեմարտից և ամ հերձուածողաց բարձրագոյն և անհրաժեշտ վկայութբ. որոյ բազում են արդիւնք 'ի հաւատս ուղղափառութե գրովք և գործովք:

Թ. Սբն Գրիգոր Նիւսացի՝ եղբայր մեծին Բարսղի՝ նորին համանման գիտութբ և առաքինութբ, գեղեցկախօս և նրբախօս գրով և լեզուաւ. որ արար բազում ճառս և մեկնութիս իմաստալիցս, և բազմօք աշխատ եղև 'ի պայծառութին եկեղեցւոյ յաւուրս երկրորդ տիեզերական ժողովոյն:

Ժ. Սբն Եպիփան կիպրացի՝ այր ճգնաւոր և նշանագործ, առաքելական հոգւով բազմարդիւն յեկեղեցւոջ, հանդերձ ազգի ազգի գրաւոր վաստակօք:

ԺԱ. Սբն Յովհան ոսկեբերան՝ տիեզերալոյս վրդպ, արեգակնափայլ ցոլացեալ յընդհանուր տիեզերս. հայր համատարած ըստ պօղոսի, և բազմավաստակ գրով քան զամ հարս. որ ծովացոյց զվրդպութին իւր ոսկեղէն բերանով, և գետահեղեաց անդուլ դրլշութբ. որ կայ

պահի

պահի 'ի գանձ եկեղեցւոյ ։ Սա կոչի և ապաշխարութեան վ՟րդ, զի մեծաւ մասամբ վ՟րդպուն ն՟ր է քարոզական՝ 'ի պէտս վարուց ուղղութե, եթէ 'ի ճառս և եթէ 'ի մեկնութիս ն՟ր գրոց ։

ԺԹ․ Մ՟ն կիւրեղ աղեքսանդրացի՝ կրկին հռչակեալ լցեալ մեծին աթանասի և գրիգորի ս՟ծաբանի, քաջ ախոյեան ուղղափառաց ը՟դէմ մարդադաւանին նեստորի յաւուրս երրորդ տիեզերական ժողովոյն՝ գրով և բանիւ․ ո՟ր և ս՟մ հերձուածոց կարկիչ իմաստուն գրութբ․ թող և զմեկնութիս և զճառս յորդորականս։

Երդ թէպէտ՝ և այլ անհամար վ՟րդք եղեն յեկեղեցի ս՟յ յառաջ և զկնի քան զսոսա՝ ականաւորք սրբութբ և քարոզութբ բանին գրաւոր և անգիր, բայց առաւել յառանձին ազգս իւրեանց լուսաւորեցին․ ո՟ր 'ի մեզ երանելի հայրն մեր ն՟ր գրիգոր լուսաւորիչ և որդիք և թոռունք ն՟ր, և ն՟ր թարգմանիչք, և յարեմուտս ն՟րն ամբրոսիոս, օգոստինոս, հերոնիմոս, և մեծն գրիգոր․ իսկ երկոտասանեքին նախանշանակեալ ն՟ր վ՟րդք՝ եղեն պայծառացուցիչք համօրէն եկեղեցեաց, որ ը՟ս տիեզերս, իբրև աստեղք լուսափայլք։ Եւ զի աստղ քան զաստղ առաւել է փառօք, ը՟ր նմին և չորեքին 'ի վ՟րդս եղեն առաւել գերանշոյլ՝ ը՟ր թուոյ չորից աւետարանչաց․ ո՟յք են աթանաս և կիւրեղ, բարսեղ և գրիգոր ս՟ծաբան․ և այս ը՟ր ս՟ծաբանական հանգիսի․ ապաթէ ոչ՝ 'ի կարգի քարոզութե մի

միայն

միայն ճանաչի բերանն տակի ։

Օ՜ այս ամ հոգեպարգև ձիրս և զառաքինի վարս միոյ միոյ 'ի նր վկայացս ուրոյն ուրոյն գտանես ճառեալ յաւուր տօնի իւրաքանչիւրոցն ըստ կարգի տօնացուցին մերոյ ։ Միայն զմիոյ 'ի նոցանէ որ զյուեթէոսի զառանձին յիշատակ պարտ և արժան է յայսմ վայրի նշանակել . զի այս իսկ է սեպհական տեղի տօնի նր 'ի սկզբան հոկտեմբեր ամսոյ առ ամ եկեղեցիս . և 'ի մեզ իսկ գլխովին՝ յայսմ վայրի 'ի պատիւ երեսաց նր զոյգ Է նմին է կարգեալ և տօնախմբութիւն երկոտասան վկայաց միանգամայն , զոր աչն է տեսանել առ այլս ։ Արդ որչափ ինչ տեղեկութի կայցէ մեթին յորս նոյն յուեթէոսի առ վկայաբանս, ունի այսպէս ։

Յուեթէոս կմ Հերոթէոս , ( որ յունարէն գրի իէռօթէոս , և թարգմանի ածանուէր ); էր աթենացի՝ մին 'ի խորհրդականաց ատենին արիսպագեայ , և վկայ մեծին դիոնեսիոսի արիսպագացւոյ՝ յառաջ քան զնա աշակերտեալ ճշմարտութե . մինչև լինել մի յերևելի աշակերտաց՝ գործակից առաքելոց և պատուականն յաչս նց . զի էր այր լի հոգւով, յօգնահանճար գիտութբ և իմաստագեղ բանիւք ։ Ձեռնադրեցաւ եպս յառաքելոց անտի . և 'ի հաւատալ դիոնեսիոսի արիսպագացւոյ և այլոց ոմանց յաթէնս 'ի ձեռն նր պօղոսի՝ սա իւրն յուեթէոս եղև առաջին հրահանգիչ նց 'ի նր հաւատս ։ Հովուեաց առ ժամանակ մի զաթոռն աթենացւոց յա-

ռաջ

ռաջ քան զԴիոնեսիոս . և ապա նաև զեկե-
ղեցի սպանիացւոց . ոչ աւանդութի է առ-
նն վաղեմի :

Իսկ յաւուր փոխման Ածամօր կուսին զատա-
յեճէմ 'ի նորին սիոն ը այլ առաքելս . և շար-
ժեալ 'ի Հոգւոյն՝ խօսեցաւ արժանաւոր գո-
վեստ ներբողենի 'ի վ̃ր տիրամօր , դաւանե-
լով զնա Ածածին և կոյս , և գեղեցիկ հաւա-
կելով զանզուգական պատիւ Ածամայրութե
նր՝ վսեմական վ̃պութ̃բ և բարձրագոյն
Ածաբանութ̃բ 'ի վ̃ր անձառ խորհրդոյ մար-
դեղութե բանին . որով և զդասս առաքելոց
զհրեղէն լեզուաւն զարմացոյց . կմ ոչ այլք
իմանան 'ի բանից դիոնեսիոսի , հրաշալի եր-
գլս յօրինեաց ներբողականս յօրհնաբանութի
ան և տիրամօրն : Գրեաց և զայլ խորին ա-
ռասացութիս Ածաբանականս , ը որում բա-
զում գովութ̃բ նշանակէ զնոյն դիոնեսիոս .
զորոյ զբուն իսկ զբանս արժան է լսել ըստ
յունական սկզբնագրին , 'ի գիրս Ածային
անուանց . Գլ . Է . Բնաբ . 9 :

Քանզի խօսելով դիոնեսիոսի զանձառութե
մարդեղութե բանին ա̃յ 'ի կուսական արգան-
դի , և զայլ գործոց հրաշափառ տնօրէնութե
նր՝ 'ի վ̃ր բերէ զվկայութի վ̃պին իւրոյ նոյն
յուեթէոսի այսպէս . * Բայց այսոքիկ և առ
'ի մէնջ այլուրեք բաւականապէս ասացան ,
և 'ի բարեփառ առաջնորդէն մերմէ ( 'ի յուե-
թէոսէ ) յԱծաբանական իւր տարրութիւն
օրհնաբանեցան յոյժ գերաբնաւոր . զոր նոյն
մասամբ 'ի սրբազան Ածաբանիցն էառ ( յա-

ռակելոց ) , և մասամբ 'ի հանձարեղական պատգամացն ( յա՟ծաշունչ տառից ) խուզարկութէ ստացաւ՝ 'ի բազում մարդութէ 'ի նա և 'ի դեգերմանց . և մասամբ յա՟ծայնագոյն իմն փչմանէ ձաշակեաց , ոչ միայն ուսեալ , այլև կրեալ զա՟ծայինսն , և յընդակցութենէ առ նա՝ եթէ այսպէս պարտ իցէ ասել , առ անուսանելին և խորհրդական միութիւն և հաւատ նոցին բացակատարեալ ։ Այս գիր զբազումս զերանական տեսութիւս հզօր մտաց նր սուղ բանիւ՛ առաջին դիցուք , այնպս ասէ յաղագս յոր 'ի ժողովեալսն իւր յա՟ծաբանական տարրութիւս .

,, Ամենեցուն պատճառն և ամենալցուցիչ յոր ա՟ծութիւն է . որ զմասունս՝ բոլորութէ համաձայնս պահէ . և ինքն ոչ մասն և ոչ բոլոր եղով՝ և՛ բոլոր է և՛ մասն , որպ պարունակող յինքեան զա՟մ՝ և՛ զմասն և՛ զբոլոր , և գերունակ և նախունակ ։ Կատարուն իսկ է յանկատարսն ( 'ի մարդկայինս՝ ) որպ կատարողապետ . իսկ անկատար 'ի կատարեալսն ( յա՟ծայինս )՝ որպ գերակատար և նախակատար ։ Տեսակ տեսակարար յանտեսակսն՝ որպ տեսակապետ . անտեսակ 'ի տեսակսն՝ որպ գերատեսակ ։ Միութի 'ի բոլոր էութի անապականաբար ընդմնեղ , և գերէական՝ յա՟մ էուէ տարորոշեալ ։ Բոլորից պետութեց և կարգաց սահմանիչ , և ա՟մ պետուե և կարգի գերագոյական ։ Այս չափ է էիցս , և յաւիտեան . և 'ի վեր քան զյաւիտեան , և յառաջ քան զյաւիտեան ։ Լի 'ի կարօտեալսն .

Դ գե-

գերալրական 'ի լցեալսն : Ընձառ , անպատում, գեր քան զմիտս , գեր քան զկեանս , գեր քան զէութիւն . գերաբնապէս ունի ըզգերաբնութիւն , և գերագոյապէս զգերագոյութիւն : Օ՛ի թէպէտ և մինչև 'ի բնութի մեր եկն 'ի մարդասիրութէ , և ստուգապէս գոյացաւ ( ը̄ մեզ ), և այր՝ գերագոյն ա̄ծ իրագործեցաւ , ուր 'ի քաւութե մասին են այս ձևք բանից՝ որ առ մեզ 'ի վեր քան զմիտս և զբան նուաստեալք , այլ առ այսոքիւք ( տակաւին ) ունի զգերաբնութի և զգերագոյութիւն : Ոչ միայն անայլայլելի և անշփոթելի օրինակաւ կցորդ մեզ եղև՝ ոչինչ կրելով 'ի գերալրութէ խուռում յերեսաց անպատում խոնարհութեան , այլ զի և որ քան զա̄մ նորս նորահրաշ , 'ի բնաւորականսն մեր էր գերաբնական . և յորս ը̄ գոյութէ՝ գերագոյական . զա̄մ զմերս առ 'ի մէնջ գեր 'ի վեր ք̄ զմեզ գերունականի : Ցայս վայր են բանք յռեթէոսի մեծի՝ աթենացի ա̄ծաբանի :

Սո՛ւր և զյարգ պատկառանաց և պատուոյ՝ զոր տայ յռեթէոսի դիոնեսիոս 'ինոյն գիրս ա̄ծային անուանց . գլ . ա̄ . բնաբ . 2 . և 3 .

* Նաև այս ևս ( առէ ) թերևս պինդատուութե արժանի . զի ուր բարեփառ առաջնորդն մեր յռեթէոս զա̄ծաբանական տարրութիս գերաբնապէս ժողովեալ է , մեք՝ ոչ թէ ոչ բաւական իցեն այնոքիկ , զայլս ևս՝ և զառաջիկայդ շարագրեցաք ա̄ծաբանութիւն : Սպաքէն եթէ էր նր բուռն հարեալ կարգաւ 'ի գործ արկանել զա̄մ ա̄ծաբանական իրողութիւն ,

թիւն, և մասնաւոր բացայայտութիւնք ան-
ցեալ ընդ համօրէն աստուածաբանութեան գլխա-
ւորութեանն, ոչ արդեօք յայսքան մոլեգնութիւն
կամ խօլականութիւն եկեալ էր մեր, որպէս թէ
կամէինք բաւական քան զնա և աստուածային վար-
կանել մեզ ձեռն արկանել յաստուածաբանա-
կանս, և կամ երկիցս անգամ զնոյնս յաւե-
լորդս առնելով վայրաբանել. միանգամայն և
անիրաւիլ առ վիճայն և բարեկամն մեր, և առ
մեզ իսկ՝ որ յետ աստուածայնոյն պօղոսի 'ի նորուն
հրահանգեցաք բանից, զբարեփառութիւն նորա
և զտեսութիւն և զյայտնաբանութիւն յանձինս
մեր յափշտակելով: Այլ քանզի նա ար-
դարև զաստուածայինսն երիցաբար ճառէր՝ զկար-
ճառօտ մեզ և զտեսողական սահմանս ար-
տադրեաց, և 'ի միում պարունակօղս բազ-
մաց, որպէս և զիարդ կարողութիւն իցէ մեզ
և որոց ընդ մեզ վիճակքն են նորակատար ան-
ձանց, հրաման առաք պարզել և որոշել ընդ
մեզ համաչափ բանիւ զտեսողական և զմիտ-
ղէն հաւաքմունս գերահանճար զօրութեան
առնն այնորիկ: Նա դու ինքն (ով տիմոթէէ)
բազում՝ անգամ զմեզ 'ի սոյն յորդորեցեր, և
զբուն իսկ զգիրսն (յիերոթէոսի) ոչ կարի
խորիմաց անգրէն առ մեզ յղեցեր: Սմին իրի
և մեք զնա՝ որպէս կատարելոց և երիցագոյն
մտաց վիճակ, որոց 'ի վերոյ են քան զբազումս,
որոշեմք, իբրու երկրորդ ինն պատգամս և
աստուածաշարակ բանից հետևօղս. իսկ որոց ընդ
մեզ են՝ մեք ընդ մերումս չափու զաստուածայինսն
աւանդեսցուք: Զի եթէ կատարելոցն է
հաւ

հաստատուն կերակուր, զոյլին կերակրելն զայլս՝ որքանո՞յ արդեօք իցէ կատարելութե գործ.... Մ՝ինչ զի ոչ երբէք առ այսպիսի մեծ արեգակն Ըդիմահայել ձեռնարկեցաք. քանզի այսպէս մեք անձամբ անձին իրագէտ եմք.... Նոր և ոչինչ՝ ի ներքս ածել յանդըգնելով, այլ մանրամասն խուզմամբք որոշելով և արտայայտելով զնորբին տեսութե̄ համառօտեալսն յիսկապէսն յեռոթէոսէ (յ̄ր յածանուհէր առնէ )‖:

Իսկ 'ի խօսել դիոնեսիոսի 'ի Գլ. Ժ̄. Բնաբ. 13, եւս 14. յաղագս տարփման ածային սիրոյն՝ ասէ. * Օ այսոսիկ և բարեփառն մեր նուիրակատար ածայնաբար պատմեաց 'ի տարփողական օրհնաբանութիւնս. զորս ոչ է անատեղի յիշել, և ոչ որբազան ինչ գլուխ 'ի վր̄ դնել բանիս մերոյ՝ որ յաղագս տարփման‖. և բերէ երիս հատուածս յօրհնաբանութեց անտի յեռթէոսի, յորս խորին տեսութ̄ ձայնէ նա, թէ զիա՛րդ սէրն ունի զզօրութի միաւորական. և թէ քանիպատիկ է սէրն. և թէ սէրն ածայինն յածյ ծաւալի առ ամ էս, և ած և յած փոխադարձի իբրև յառաջին աղբիւր և 'ի վերջին նպատակ սիրոյ վն̄ անսահման բարութե իւրոյ: Իսկ վախճան դբյն յռեթէոսի եղև յաթէնս կամ 'ի սպանիա խաղաղական հանգստեամբ 'ի քս̄: (2)

xxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxxx

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Տօնացոյցք ոչ յիշեն մի առ մի զանուանս ժԲ վկայից. այլ միայն յայսմաւուրքն. ըստ որոյ եդաք և մեք։ Բայց գրիչք ոմանք լեհացիք տեսեալ՝ թէ յամ հին տօնացուցս կայ ատանոր յիշատակ ժԲ վկայից ընդ անանիայ առաքելոյն, և ոչ շատացեալք անուանքն՝ զորս յօրինակեն 'ի յայսմաւուրաց, յաւելուն այսպիսի ինչ մտացածին. * և ըստ ոմանց ասեն, թէ յեէմէ (կմ յեէմ) եր-
,, կոտասան վկայք էին 'ի միում տեղի բնակեալ, 'ի չար
,, թագաւորացն 'ի միում աւուր նահատակեցան ||։ որ

կարօղն է տանել, տարցի։

(2) Զէ տանելի և այն եղանակ բանից յետնոցն 'ի բոլլանդեանց, որք 'ի Գ. հոկտ. 'ի կարգի սբց վերածելոց յայլ ժամանակ՝ ասեն. * Հերոթէոս 'ի յոլով սրբազան
,, ցուցակս յունաց, և 'ի նոցանէ նաև յայժմու հռով-
,, մէականն՝ յորս յայս գրի։ Բայց Հերոթէոս իբրու-
,, կեղծեալ նք ևեթ համարեալ է 'ի բազում գիտնա-
,, րաց՝ այսու հիմամբ, զի ոչ 'ի հռովմէականն փոքր, և
,, ոչ յայլ դասական վկայագիրս յիշի. և թէ յիշատա-
,, կութի՝ որ զնմանէ կայ, նախ զառաջինն ծագեցաւ
,, 'ի գործոց ընծայելոց ոչ բարւոք, ոպ ասեն, դիոնե-
,, սիոսի արիսպագացւոյ։ Այլ այն ինչ՝ որ սահմանելի
,, է զհերոթէոսէ, գլխաւորաբար կախի զայնմ դատաս-
,, տանէ՝ որ զայնց գործոց տանելի է. և ըստ նմին զհե-
,, րոթէոսէ՝ եթէ արդեօք ընդ սբս դասելի իցէ սա, դի-
,, պողագոյն լիցի ձաւել յօրն, յոր զայն 'ի վԲ դիոնե-
,, սիոսի արիսպագացւոյ ունիմք տօնել. Գ. հոկտ ||։
Ահա այսպիսի խեղաթիւր ընթացիւք յետնոց վերջնանեցաւ պատմական գործն այն. և չև հասեալ 'ի կէս հոկտեմբերի՝ մնաց գագարեալ զոյգ ընդ միաբանութեանց. և դժուարագիւտ է հատորն այն, յոր կամին առաքել զընթերցօղս. բայց չէ ինչ մեզ պիտոյ. զի զինչ ունին խօսել պաշարեալքն յայսպիսւոյ ազգոյ, և ըմբռնելիքն 'ի ցանցս նոր կրիտիկաց. որոց և ինքեանք աշակերտել կամին։

Զէ տեղւոյս յերկարել զբանս. այլ միայն զայս ասեմք. զԲի ձեռնարկն 'ի վերայ. իսկ արդ՝ ոչ միայն այժմու հռով-

հաւմեշականն, այլև յունաց և հայոց սրբազան ցուցակք 'ի սկզբանէ և այսր տօնելի ոք գիտեն զյերոթէոս, ապա 'ի զուր է նորաձև կարծիս երկբայութե՛ 'ի վեր հանել: Գրեծ շրջի ձեռնարկս. իսկ արդ՝ բազմադոյնք 'ի գիտնաւորաց են հաստատիչք գրոց դիոնեսիոսի. ապա են հաստատօղք և սրբութեան յերոթէոսի: Ուր թողից զայն, զի որք հանեն 'ի ձեռաց զսրբն յերոթէոս, կորուսանեն և զսրբն դիոնեսիոս. զի ոչ աւելի հաւատան վարուց նր՝ քան գրոց նր: Թողեալ զնա, շատ լիցին ըստ դէմ յոյժեան արանցդ յետնոց՝ համօրէն նախնիք յորեանց, որք միօրինակ հաստատուն ունին զսրբութի դիոնեսիոսի և զյերոթէոսի: Անուանի է և 'ի յետնոց նոյն կարգի պետրոս հալլոյեբս, որ առանձին քննութբ յօրինեաց զվարս սրբյն դիոնեսիոսի. ուր և հաստատէ, թէ սրբն յերոթէոս եղև նախ եպս աթենացւոց, և ապա սպանիացւոց. զորմէ ասէ յօրինադոյն լիցի բան 'ի վարս նորին յերոթէոսի, այլ ոչ անկաւ այն 'ի ձեռս մեր:

# ԿԱՏԱՐՈՒՄՆ ՍՐԲՈՅՆ

## Մատաթեայ առաքելոյն:

Դ. Փետր. 4. Յ. Օգոստ. 9. Լ. Փետր. 24.
Յուլիանոսեան հեռաւորութեան 'ի Ք. հար. Փետր. ԻԸ.
431 = 454.

ԸՐՍՎԻՃԱԿՆ ԵՒ երջանիկ յառաքելոյն, ընտրելոյն 'ի դասս ընտրելոց աշակերտաց նորին Մատաթիա կամ Մատաթիաս, ( որ ըն յունաց գրի Մատթիա կամ

մատթիաս, և որ լատինացւոց մաթիաս,) էր ՚ի ցեղէն ռուբենի կամ յուդայի՝ բեթղեհէմացի, կրթեալ ՚ի մանկութենէ առ ոտս սիմէոնի օրէնսուսոյց վերջի կամ սիմոնի քահանայապետի ՚ի գիտութիւն օրինաց և ՚ի վարս բարիս. և ապա ընտրեալ ՚ի փրկչէն ՚ի թիւ եօթանասնից և երկու աշակերտաց: Իսկ յետ համբառնալոյ տեառն՝ ընտրեցաւ վիճակաւ մետասանից որ վերինն յայտնութեան ՚ի դասակցութիւն առաքելոց փոխանակ յուդայի իսկարիովտացւոյ որդւոյն կորստեան. և ընդկալեալ զհոգին սուրբ՝ առաքելաբար քարոզեաց ընդ տիեզերս, և կատարեցաւ ուրեք զայլ առաքեալս վասն անուանն տեառն: Այլ թէ որպէս կամ զիարդ, արժան է լսել զաւանդս այլևայլ վկայագրաց:

Յայսմաւուրքն մեր ունի աստանօր այսպէս. * Յետ յարութեանն և համբարձմանն քրիստոսի՝ պետրոս պետն առաքելոցն քրիստոսի, և վէմն հաւատոյ ասաց ընդ առաքելսն. Եղբարք, չէ պարտ թէ նուազի թիւս մեր խորհրդականս, զոր ընտրեաց տէրն մեր երկոտասան. և յուդա մատնիչն գնաց ՚ի տեղի իւր, որ սաղմոսին՝ եղիցին բնակութիւնք նորա աւերակ. և զկարգ նորա առցէ այլ ոմն: Եւ ընտրեցին երկուս յեօթանասնից և երկու աշակերտաց. զյովսէփ (որ և յովսէփ բարսաբաս՝ յուստոս կոչեցեալ), և զմատաթիա. և կացեալ յաղօթս՝ արկին վիճակս. և ել վիճակն մատաթեայ. և համարեցաւ ընդ մետասան առաքեալսն փոխանակ յուդայի: Եւ յիջանել հոգւոյն սրբոյ

՚ի

'ի վերնատունն՝ եւառ զհոգին որք հրեղէն լեզուաւ ը՟ այլ առաքեալս ։ Եւ գնացեալ յեթեովպիա քարոզել զՔս , և արար նշանս 'ի վՐ հիւանդաց և այսահարաց . շինեաց եկեղեցիս , և կարգեաց քահանայս և պաշտօնեայս քնի . և անդէն կատարեցաւ 'ի քն յն ‖ ։

Կամ ոմն գրէ այլուր՝ 'ի յունիսի . 30 . * Սա քարոզեաց զՔս յեթովպիա և յեգիպտոս և յայլ բազում գաւառս . և հասեալ յերկիրն մարդակերաց՝ ( զոր և այլք զմատթէոսէ պատմեն ) , և անդ կատարեցաւ ։ Եւ այլք ասեն՝ թէ յերկիրն սպարտիացւոց քարկածեալ , և 'ի ծով ընկեցեալ , բերաւ մարմինն 'ի բիւրիտոն , որ է բալբաք քաղաք տողոմմինի ‖ ։

'Ի սոսին վերածին և գրեալքն 'ի յայսմաւուրս յունաց և 'ի ժամագիրս նց , թէ նրն մատաթիա չոքաւ յեթեովպիա . ( որ յոմանց արտաքին , և յոմանց ներքին եթովպիա կոչի . և յայլոց առաջին կմ երկրորդ եթովպիա ասի ) . և յետ լուսաւորելոյ զբազումս՝ անդ կատարեցաւ գանիւք և տանջանօք , կմ կախեալ զփայտէ ։ Այնօրինակ խօսին և ոմանք 'ի հռովմայեցւոց . բայց շատք եւս այնք են 'ի նոցանէ , որք զայլ և այլ աւանդութիս հաստատեն՝ ը՟ հաւաքելոյ բոլլանդեանց ը՟ օրինակս ը՟ այսմիկ ։

Հասարակ կարծիք արևմտեայց այն է , թէ թէ որպս մատթէոսի վիճակեալ էր 'ի քարոզութի հայրենեացն նր հրէաստան , և թէ անդ

կատարեցաւ 'ի վախճանի 'ի Հրէից․ բայց նախ
շրջեցաւ ամեն և յայլ տեղիս․ ըստ ոմանց՝ յե-
թովպիա ափրիկեցւոց մինչև յԵրն բարբա-
րոսաց մարդակերաց․ և ըստ այլոց՝ յԵրն կող-
քիսաց 'ի սահմանս եւքսինեան պոնտոսի՝
մօտ 'ի տրապիզոն և 'ի փասիս գետ․ ուր 'ի
սեբաստուպօլիս քաղաքի դնի լինել կատա-
րումն նր, և գերեզման նր մօտ 'ի տաճարն
արևու ։

Նաև այլք գրեն, թէ 'ի մակեդոնիա եանց․
ուր 'ի քարոզել ամեն առաքելոյն զՀաւատա-
քնի և զուղղուԹի վարուց՝ անսաստ գտեալ Հե-
թանոսաց՝ ետուն նմա բաժակ դեղեալ, որ
պատճառէր զկուրութի աչաց․ այլ յըմպել
նր անոՀամբն քնի, և յոչն միասին՝ այլք և ս
կամեցան փորձել զնոյն ըմպելին, և կուրա-
ցան․ զորս լուսաւորեաց առաքեալն՝ ողջս
իբրև երկերիւր և յիսուն․ բայց նքք խրա-
տեալ 'ի դիւէն՝ դարձեալ խնդրէին զառա-
քեալն սպանանել որպէս խափանիչ կռոց․ և
նա կայր 'ի մէջ նոցա, այլ նքք ոչ տեսանէին
զնա․ մինչև յետ երից աւուրց կամաւ տայ
զանձն 'ի ձեռս նց․ և արկանեն զնա կապա-
նօք 'ի բանտ․ ուր եկեալ դիւաց՝ ոչ իշխէին
մերձենալ 'ի նա, և կրճտէին զատամունս 'ի
վճ նր ։ Յայնժամ երևեցաւ տէրն լուսով
մեծաւ, և քաջալերեալ զառաքեալն իւր՝ ե-
բաց զդուռն, և Հրամայեաց ելանել և քա-
րոզել անդրէն ։ Նայց յընդդէմ դառնալ զ-
մանց խստութն՝ պատառեցաւ երկիր, և ե-
կուլ զնն․ այլ մն բազմութե դարձան 'ի տր ։

Յետ

մարգարէս թողեալ՝ զյն քարոզէր զնազովրեցին ։

Սոյն քահանայապետն յանդիմանեաց զմատաթիա իբրև զխռովարար, և ուսուցիչ նորաձայն մոլորութեան արտաքոյ օրինաց և մարգարէից. զի մարգարէքն ասէ զայս պատգամս խօսեցան. իսկ յն նազովրեցին անձամբ յանձնէ կամեցաւ նոր օրէնս տալ աստուածաբար, և իշխեաց անգոսնել զքահանայապետս և զդպիրս և զօրինականս. զոր ոչ ոք 'ի մարգարէիցն գործեաց ։ Արդ տամք քեզ պարապ խորհելոյ, զի 'ի բաց կացցես 'ի մոլար ուսմանէդ. ապա թէ ոչ՝ մահապարտ գտանիս քրիստոնեայ անուամբ նազովրացւոց ։ Յայնժամ ամբարձեալ մատաթեայ զձեռս իւր յերկինս՝ ասէ. Ո՛րք եղբարք՝ ոչինչ է պիտոյ երկայնել ինձ բանս առ ձեզ. զի ոչ որպէս կարծէք՝ ճշմարիտ է անուն քրիստոնէութիւն, այլ՝ պարծանաց. որ և մարգարէն ասէ, կոչեցից ծառայից իմոց անուն նոր ։ Սոյն եթէ լսէք ինձ, յայտնի կացուցից, եթէ ոչ մոռացածին առասպելս քարոզեմք, այլ զճշմարտութիւն օրինացն աւետարանեալ 'ի կանուխ ժամանակաց, և առ մեզ 'ի լրումն եկեալ. զի ստուերք էին հին օրէնք և նշանակ հանդերձեալ խորհրդոցն քրիստոսի. ապա թէ ոչ՝ զի՞նչ օգուտ էր ազատութիւն մարդոյ 'ի ձեռաց փարաւոնի, եթէ կայր մնայր հոգւով 'ի գերութեան ընդ ձեռամբ անմարմին թշնամւոյն. զի՞նչ զատիկն իցէ՝ զոր կատարէք ըստ հնոյն, եթէ ոչ 'ի մեծ խորհուրդ

ինչ

ինչ հայեցուցանիցէ . մինչ զենումն գառին
և սրսկումն արեան զպարաւորաւ դրաց՝ ա-
զատիցէ՞ զոք 'ի սատակմանէ, եթէ չէ օրի-
նակ գառինն այ և հեղման արեան նորա 'ի
խաչի, յմի սեմ՝ որ քմն կոչեցաւ . և 'ի
գլուխ հանեալ զասացեալն յեսայեայ՝ իբրև
զոչխար 'ի սպանդ վարեցաւ, և ընդ անօրէնս
համարեցաւ : Այս և առաւել քան զայն
խօսեցաւ մատաթիաս՝ քաղելով զօրէնս և
զմարգարէս ընդ օրինակի նախավկային :
Իսկ քահանայապետն իբրև լուաւ զբանսն
յմի, լի եղև ցասմամբ, և ասէ . տեսանե՞ս,
զի 'ի քակտումն օրինաց բերիս . եթէ ոչ գի-
տես, զի գրեալ է . եթէ ոք մարգարէ կամ
երազահան յարիցէ ջէլի՝ դարձուցանել
զձեզ յօրինաց տն այ ձերոյ, մեռցի այրն
այն : Պխնի ետ մատաթիաս . յս քս ոչ լոկ
մարգարէ է, այլ տր մարգարէից, և ած որ-
դի այ կենդանւոյ . և ես ծառայ նր, և վկայ
ճշմարտութեն նր մինչև 'ի մահ : Յայնժամ
էխից քհնյապետն զականջս իւր, աղաղա-
կեաց և ասէ . հայհոյեաց, լուիցէ՞ զօրէնս
և տն նմին կորիցէ . զայս ասացեալ՝ ետ ըն-
թեռնուլ զբանսն ղևտական գրոց . այր ոք
այր՝ որ անիծանիցէ զած, մեռս ընկալցի . զի
անուանեաց զանուն տն, մահու մեռցի .
քարընկեցութեմբ քարկոծ արասցեն զնա ամ
ժողովուրդն . և յաւել ասել . բերանք քո խօ-
սեցաւ հակառակ քո, արիւն քո 'ի գլուխ քո
եղիցի :
Յայնժամ առեալ տարան զնա հրէայքն 'ի
տե-

տեղի մի՝ որ կոչիւր բեթղաքիլա , այն է տուն քարկոծելոց . և յասել մատաթեայ զսաղմոսն , Ե̃րբ եկից երևեցայց երեսացդ ա̃յ , եդին զձեռս 'ի վ̃ր նորա երկոքին սուտ վկայքն , և նախ ինքեանք ընկեցին զքարինս 'ի նա ։ Յայնժամ խնդրեաց մատաթիա , զի երկու այն քարինք առաջինք պահեսցին և թաղեսցին ը̃ նմա՝ 'ի վկայութի̃ն նց̃ ։ Ապա ա̃մ բազմութի̃ն քարկոծ արարին զնա . և մինչև մեռեալ էր , սակրով հարին զգլուխ նր̃ ըստ օրինի հռովմայեցւոց . կամ ը̃ այլոց՝ նախ 'ի փայտ հանին , և ապա գլխատեցին . և այնպէս կատարեցաւ ս̃բ առաքեալն մատաթիա յամի ա̃ն իբր 60 , կամ 65 ։ Զայս վէպս վ̃ն կատարման ս̃բյն մատաթեայ ը̃ այլ և այլ աւանդից հին և նոր վկայագրաց ։ Յորս երևի թէ ինչ ինչ խառնեալ ընդ աւանդից՝ որ զս̃բյն մատթէոսէ աւետարանչէ , որպէս տեսցի 'ի վարս նր̃ . զուցէ և ը̃ պատմութե̃ ս̃բյն ստեփաննոսի . զի ծանիցես՝ որ է յունարէն աղաւէրս, երևի շփոթել ը̃ յատուկ անուան մատթէի և մատաթեայ ։

Պատմութիւն նշխարաց ս̃բյն մատաթեայ ։

Յորժամ ա̃ծ ասէր դշխոյն Հեղինէ մայր մեծին կոստանդիանոսի շրջել յուխտատեղիս ս̃բ երկրին , եգիտ անդ և զմարմին ս̃բ առաքելոյն մատաթեայ՝ ը̃ ոմանց յեհ̃մ, և ը̃ այլոց 'ի թխուրիտոն քաղաքի ( այն է պէրութ ). և առեալ տարաւ զայն կ̃մ առաքեաց՝ 'ի մեծն հռովմ .

հռովմ. ուր յետ սակաւուց եղաւ 'ի տաճար Ս. Ածածնին՝ առաջ. մարիամ կոչեցեալ, զոր շինեաց Լիբերիոս Հայրապետ՝ որ նստաւ յամի Տն 353. և նորոգեալ ընդարձակեաց Քսեստոս երրորդ՝ որ նստաւ յամի 432: Այլ ցարդ ևս անդ ասի լինել պատուական գլուխ Ս. առաքելոյն. իսկ մարմինն եղեալ կայր ասեն երբեմն անդէն 'ի ներքոյ առաջ. բեմին՝ ընդ ծիրանի վիմով. ընդ որոյ և 'ի կամարն շինեալ անդանօր առ Պասքաղէս Հայրապետաւ, որ նստաւ յամի 817, դրոշմեցան ոսկեքար տառիւք այս բանք. * Ի Ս. մատրանս ամփոփեալ կան մարմինք Ս. Սրբոյն՝ Մատաթեայ առաքելոյ, Հերոնիմոսի վկայի, և կուսանացն Հռոմուլայ և Հաեղեմայոյ||:

Այլ զկնի ժամանակաց անցելոց նշխարք Ս. սրբոյն Մատաթեայ մեծաւ մասամբ փոխադրեցան և գտան 'ի Գերմանիա. քանզի՝ թէպէտ զմանրիկ մասունս սփռեալս 'ի զանազան տեղիս, երևելի մասն հաստատութ. ասի լինել 'ի վանս Ս. սրբոյն Մատաթեայ 'ի Տրեվիր, այս է յարուածարձանս Աւգուստայ քաղաքի կայսրընտիր եպիսկոպոսանիստ Տրեվիրայ. մինչ զի Տրեվիրացիք պնդեն 'ի ձեռն հին յիշատակարանաց և կոնդակաց, թէ նա ինքն դշխոյն Հեղինէ հաւանութ. Ս. սրբոյն Սեղբեստրոսի յղեալ իցէ զմարմին Ս. սրբոյն Մատաթեայ հանդերձ այլովք հոգևոր ընծայիւք 'ի Տրեվիր. (քանզի և ստնին աւանդութ. ինն զՀեղինեայ Տրեվիրացի լինել, որ է ընդ այլոց Դրեպանացի 'ի Բիւթանիոյ):

Արդ

Նոյն գիւտն և է օրինակաւ՝ բերեալ եղաւ երբեմն անդ 'ի Տրեվիր մարմին սրբոյն Մատաթեայ 'ի տաճար սրբոյն Եւքարիոսի առաջին եպիսի տեղւոյն. բայց իբրև անցին դարք, ոտնակոխ եղև երկիրն այն յազգէ փռանկաց, վանդալաց, հոնաց, և նորմանաց. և 'ի մոռացօնս եղև առ յետոյնս, թէ ո՞ւր ամփոփեալ կայցեն նշխարք սրբ առաքելոյն, մինչև 'ի ժա̄ դար։ Յորում ժամանակի՝ ոմն պատմէ նախանշանակել միայնակեացն տրեվիրայի մերձաւոր ժամանակաւ, 'ի խնդրել Հենրիկոսի կայսեր երկրորդի յուխտէ եկեղեցւոյն տրեվիրայ ը̄ այլ նշխարաց և զմասն ինչ յոսկերաց սրբոյն Մատաթեայ, հարկ եղև մի̄ սաստկութե̄ արքունի հրամանին բրել զտեղին, ուր գուշակէին լինել զտապան առաքելոյն. և ահա նոյնժամայն բուրեաց հոտ անուշութե̄, մինչև զմայլիլ ամենեցուն անդ եղելոց։ Նաև եղև 'ի մատչել Թէոդորիկոսի իշխանազուն եպիսին վիրտունեայ՝ որ էր որդի դքսին լոթարինգիոյ; տարադէպ համարձակութե̄ կորզել զմասն յոսկերաց սրբ առաքելոյն 'ի պէտս կայսեր և մի̄ իւր ևս, յետս ը̄ կրունկն բաղխեցաւ. մինչ զի և մասն պատուական զգեստու նր̄ պատառեալ՝ մնաց 'ի տապանի անդ. այլք ասեն, թէ յանկարծակի փակեցաւ տապանն, և դրօշակ հանդերձի եպիսին մնաց 'ի ներքս. զոր հարկ եղև 'ի բաց կտրել։ Յայնժամ սասանեալ և այլոց եպսաց՝ ընտրեցին զոմն յառաջինի երիցանց, որ զնշխարս սրբոյն խոնարհաբար շօշափել՝ յերկուս մասունս

բաժանեցաւ, և զետեղեցաւ զաղբն ՃԷ երկուք
խորանօք. այլ զմեծ մասն եթող 'ի ներքոյ
բեմի նոր տաճարին. զի թէ բարձցի յումեքէ
մասն մի՝ մնասցէ այլ մասունք. թող զմասն՝
որ առաքեցաւ առ կայսրն. զորմէ լուութիւն է
առ պատմիչս: Նայց այլ ինչ զարմանալիք
պատմին աստանօր, թէ ցորչափ եկեաց քա-
հանայն այն՝ որ շօշափեաց զնշխարս նորին մա-
տաթեայ, 'ի լինել բանից զնոր առաքելոյն
առաջի նորա՝ ոկսանէր իւղ կաթել մասանե-
մասն երկոցունց ձեռաց նր. զոր և յական-
նատեսից լուեալ է իմ աստ գրօղն անմանուն:
Կամ ոչ գրէ այլ կրօնաւոր 'ի նոյն վանաց
նորին մատաթեայ՝ լամբերտոս անուն ժամա-
նակակից առաջնոյն, ցորչափ խօսէր այն քա-
հանայ ԷԷ ուսմեք զնորին մատաթեայ, մասունք
աջոյ ձեռին նր մերձեալք երբեմն 'ի նշխարս
նորին՝ ոկսանէին կաթել, ոչ թէ յիւղ մխել
իցեն:

Ներ առաջնոյս այս գիւտի նշխարաց՝ իբրև
անցին ամք իբր ութսուն, աբբայն երբեմն հար-
դոս նորոգեաց զեկեղեցին զայն նորին եւքա-
րիոսի. և յայնժամ 'ի վեր ել մեծ մասն նշխա-
րաց նր առաքելոյն մատաթեայ բուրմամբ
անուշահոտութ 'ի ներքոյ խորանի նոր տաճա-
րին՝ յարձմնեայ տապանակի, հանդերձ ար-
ձանագրութբ 'ի վր կձեալ տախտակի՝ յու-
նական գրով և լատին բարբառով. * Այս
„ մատաթիաս առաքեալ": Իսկ քանզի ցայն
վայր իբրու թաքուն կայր նր գանձն այն, և
յայնմ հետէ հանդիսացաւ, նմին իրի կարգե-
ցաւ

ցաւ 'ի տրեվիր յիշատակ այսր գիւտի նշխա-
րաց Սրբոյն Մատաթեայ , որ որ քսան էր սեպ-
տեմբերի՝ յամի Տն 1127 :

Պորի 'ի նոյն միանձանց վանաց Սրբոյն Մատա-
թեայ և այս , թէ քանի մի ամօք յառաջ քան
զվերջին գիւտ նշխարացն Սրբ առաքելոյն՝ եւտես
Սր ծերունի ոմն նորին ուխտի տեսիլ սքան-
չելի , զի 'ի մէջ վանացն ծագէր աստղ մի
լուսապայծառ՝ որ լուսաւորէր զբովանդակ
քաղաքն և զգաւառն տրեվիրայ : Նա և զայս
ձեռն տեսանէր , զի 'ի ներքուստ բեմի տաճա-
նին բղխէր աղբիւր յորդառատ , որ արբուցա-
նէր զամ քաղաքն . նոյնպիսի տեսիլ ցուցաւ
և միում 'ի քաղաքացւոց : Ապա 'ի յայտնիլ
նշխարաց Սրբոյն Մատաթեայ 'ի վանս անդ 'ի
ներքոյ այնր բեմի՝ ստուգեցաւ 'ի միտս լսօ-
ղաց խորհուրդ տեսլեանն . քանզի և յայնմ
հետէ յաճախեցին անդ սքանչելիք Սր առա-
քելոյն 'ի վն հաւատացելոց , որք հաւատով
դիմէին առ նա յամ կարիս հոգւոյ և մարմ-
նոյ , և ընդունէին զհայցուածս իւրեանց . այլ
'ի մանաւանդ յառաջ բերեն բոլլանդեանք 'ի
զանազան մատենագրաց զհրաշս զայսպիսի :

## Սքանչելիք սրբոյն Մատաթեայ 'ի տրեւիր 'ի ԺԲ դարու :

Լամբերտոս անուն ոմն աղօրեպան տրե-
վիրացի՝ մտեալ 'ի նաւակ ընդ վերնեբրոսի
որդւոյ իւրոյ մանկան տղայոյ , գնաց յաղօ-
րիս իւր՝ որ կայր 'ի մէջ գետոյն մոզելլայ .
և յելանել իւրում 'ի տուն աղօրեաց՝ եթող

Ն՝ անա

անհոգութեամբ զողջոյն 'ի նաւակի. և նա մինչ-դեռ խաղայր ձեռամբ և ցպով ընդ ջրոյ՝ գե-տավէժ եղև և կորեաւ ։ Իսկ հայր նորա յետ կատարելոյ զկարևոր գործ իւր յաղօրիս՝ իբ-րև դարձաւ 'ի նաւակ անդր, և ոչ եգիտ զողջոյն, 'ի միտ եառ զեղեալսն յանզգա-տութենէ իւրմէ. և կական բարձեալ այր զկո-րուստ մանկանն. մինչև ժողովել շինականաց 'ի գետափն և հարցանել զպատճառն ։ Իբրև իմացան զչար պատահումն, տեսեալ զայրն յուսահատ՝ որ կամէր գետընկեց առնել զանձն և կորնչել ընդ որդեկին, խրատ ետուն նմա դիմել առ սուրբ առաքեալն Մատթէոսի փայլեալ աքանչելեօք. զի նա գտանէ ասեն հնարս անգիւտ կորստեան զաւակիդ ։ Իսկ 'ի կարդալ նորա զանուն սրբոյն Մատթէոսի, ետես զմարմին մանկանն յերեսս ջուրց գե-տոյ. փութացաւ եառ զայն 'ի նաւակ, և եհան 'ի ցամաք որպէս 'ի թաղել զդի մեռելոյն. յայնժամ ուխտեաց սրբոյն Մատթէոսի, զի թէ կենդանացուսցէ զորդին, տացէ զնա նմա 'ի ծառայութիւն. այն ինչ բանքն 'ի բերանն էին, յարեաւ մանուկն, և հանեալ ընդ բերանն զաւելորդ ջուրն՝ գտաւ ողջ ամենևին. և յայնմ հետէ եկաց 'ի ծառայութիւն ուխտի սրբոյն Մատթէոսի ։

Այնպէս և պատանեակ մի 'ի տեմըշայ գեղ-ջէ հեղձեալ 'ի յորձանս նոյն գետոյն մոսել-լայ՝ կենդանացաւ 'ի ձեռն սրբոյն Մատթէոսի, 'ի դիմել առ նա հաւատով մօր պատանւոյն ։ Նուարձեալ մանուկ մի 'ի թեմէն կողոնիոյ 'ի

գիւղն նորին ոսկեռեխանոսի մեռաւ 'ի ծանր
հիւանդութէ. զոր իբրև պատեցին ՟ը օրի-
նի, և պահեին զայն գիշեր՝ թաղել ՟ը առա-
ւօտն, մայրն յ՟ամ սրտէ գոչեաց առ նորին մա-
տաթիա. և ահա յանկարծակի յանդիման
՟ամ ժողովելոցն յարեաւ մանուկն. մինչև
յահի լինել ամենեցուն, և փառաւոր առ-
նել զք՟ս ա՟ծ, և զս՟բ առաքեալն ն՟ր:

Անդամալոյծ մի 'ի կողմանց արդեննայ ան-
տառին գաղղիոյ՝ լուեալ զսքանչելիս նորին
մատաթեայ 'ի տրեվիր, յեցաւ 'ի գաւա-
զանս՝ որ ընդ անթովք, և հաւատով յուղի
անկեալ՝ յերկիս եօթնեակս եհաս անդր. և
մտեալ 'ի վանս ն՟բ առաքելոյն՝ իբրև ոչ կա-
րաց յամբոխէ մերձենալ 'ի տապան նորին,
մեկուսի կայր յաղօթս. և ՟է կատարել ըղ-
հայցուածս իւր՝ գտաւ բոլորովին ողջացեալ:
Զայն իբրև ետես կին մի անդամալոյծ, և
նա սկսաւ հաւատով խնդրել 'ի նորին մատա-
թեայ զբժշկութի. և ողջացաւ նոյնպէս:
Ըստ սմին օրինակի բազում և այլ ախտա-
ժէտք, ցաւագարք, և լուսնոտք գտին 'ի
տապան առաքելոյն, և բժշկեին.

Յաւուր միում յորժամ բազմութիք ուխտա-
ւորաց եկանեին անտի, այլք՝ որք կամէին 'ի
ներքս մտանել, հարցին ցնա և ասեն. եթէ
արդարև Ճշմարիտ իցէ համբաւ սքանչելեաց
նորին մատաթեայ: Նա այս ետ պխնի ոմն
յանզգամաց, և ասէ. բովանդակն է խաբե-
բայութի և գիւտ շահասիրութե վանական-
նաց և կղերց: Յայնժամ սաստեցին նմ մեր-
ձա-

ձաւարք, և ասէն. զգոյշ լեր, գուցէ պատ-
ժիս 'ի Տե առաքելոյն ով չարալեզու. իսկ
նա ընդդէմ կայր 'ի բանս իւր : Եւ ահա նոյն
ժամայն մոլեգնեալ 'ի դիւէն՝ պատառեաց
յանձնէ զհանդերձս իւր, և ելեալ 'ի գրաստ
մի՝ վարեցաւ սանձարձակ յանկոխ վայրս լե-
րանց և մացառաց, զհետ վազելով նր և խռ-
ջից. իսկ ծանօթք նր 'ի խնդիր ելեալ նորա
զաւուրս երկու՝ գտին զգրաստն մխեալ 'ի
տղմուտս. բայց զնա ոչ գտին. և այնպէս 'ի
կորուստ եղև հոգւով և մարմնով :

Յամին այր հողագործ 'ի գեղջէն Պունդերի-
քայ՝ 'ի տօնի Տրն յովհաննու Մկրտչի գնայր
յուխտ 'ի վանս սբյն Մատաթեայ հանդերձ
կնաւ իւրով և որդւով. և անկեալ զճանա-
պարհայն 'ի ձեռս զօրականաց Թուլինքօսի
բռնաւորի՝ եդաւ 'ի բանտ երկաթի կապա-
նօք. յայնմ վայրի որդին զերծաւ փախըս-
տեամբ. իսկ կինն 'ի բաց արձակեալ՝ գնաց
լալագին 'ի կատարել զուխտն, և պաղատէր
առ սբն Մատաթիա ազատել զայր իւր. նոյն-
պէս և այր նորա կարդայր 'ի բանտի առ Տր
առաքեալն : Եւ ահա յանկարծակի խորտա-
կեցան ինքնին շղթայք, և գտաւ այրն ար-
ձակ. է որ զահի հարաւ և ինքն իմմոն. և
իմացեալ զսքանչելիսն տյ՝ զօրացաւ. այլ
քանզի վարանէր՝ եթէ զիարդ անցանիցէ է
մէջ զօրաց, աղաւթեալ 'ի սբն Մատաթիա՝
եարկ զանձն է պարիսպն 'ի դուրս, և անվնաս
իջեալ 'ի վայր՝ զերծաւ 'ի ձեռաց թշնամեաց :
Յամի Տն 1131. անկաւ հուր 'ի վանս Տրյն

'ի միջավայրի վանաց 'ի մէջ տապանի նորա , 'ի պատիւ մեծ խաչին և մեծ առաքելոյն Մատաթէեայ և յակոբայ եղբօր տն ։

Այլ է և միւս հռչակաւոր վանք 'ի գերմանիա՝ շինեալ յամի տն 1340 , որ կոչի վանք ձորոյ կամ ձոր սրբոյն Մատաթէեայ . և է պատմութիւն հիմնարկութե նորա սքանչելեօք առաքելոյն այսպիսի ։ Պարոն վեռներ կամ վառնէր տէր ամրոցին մերոդեայ յուլիակեան դքսութե գերմանիոյ 'ի կողմնեան թեմի՝ յելանել իւրում յորս երէոց՝ կամեցաւ հանգչիլ 'ի տօթաժամու 'ի մէջ անտառախիտ մայրեաց . և զքնով անկեալ տեսանէ առաջի իւր այր մի մեծահասակ՝ վայելչագեղ՝ երկայնամօրուս 'ի զգեստս ձիւնափայլս . և առ նմին անհամար բազմութի կրօնաւորաց կարգին խաչակրաց ։ Նա մինչդեռ պշուցեալ կայր պարոնն ընդ տեսիլն , ասէ ցնա այրն՝ որ երևեցաւ . ճանաչե՞ս զիս . պինի եւ աղնուականն . ոչ տէր . ասա՛ աղաչեմ , ո՞ ես դու և ո՞յք իցեն խաչազգեաց եղբարքս՝ որ ընդ քև ։ Նա նա ասէ . ես եմ առաքեալն մատաթիա՝ մի յերկոտասանից անտի , վիճակաւ ընտրեալ 'ի տեղի մատնչին անկելոյ յառաքելական դասէն . և առաքեցայ առ քեզ 'ի պատմել զկամս այ . քանզի հաճեցաւ տր ընդ գործս ողորմութե քո ; և յիշեաց զաղօթս քո . արդ այս կամք են տն , զի 'ի տեղւոջդ՝ յորում ննջեցեր , շինեսցես վանս 'ի պատիւ անուան իմոյ , և բնակեցուսցես 'ի նմա զկրօնաւորս կարգին՝ զոր տեսաներդ ընդ իս ։

Նա զայս ասացեալ՝ անյայտ եղև. նոյն ժա-
մին լուցաւ և եղիսաբեթի տիկնոջ պարոնին
'ի տան. մ՟ն որոյ իբրև եկն ը՟ երեկս այրն 'ի
տուն, և սկսաւ պատմել կնոջ իւրում զիրսն,
լուաւ 'ի նմանէ զնոյն տեսիլ. և երկոքեանն
'ի զարմացման եղեալ՝ կոչեցին զտաներեց
իւրեանց զայր գիտնաւոր. և յայտնեցին նմա
զոր տեսինն, հարցանէին խորհուրդ 'ի նմա-
նէ՝ թէ զի՞նչ արասցեն: Ասէ քահանայն.
տեսէք, մի՛ գուցէ երազ ինչ երևութացաւ
պատահական. և 'ի հաստատել նո՟ց՝ թէ ու-
րոյն ուրոյն տեսաք զտեսիլդ ստուգութ՟բ,
ասէ ցնոսա. խնդրեցէք աղօթիւք, զի եթէ
յա՟յ իցէ տեսիլն այն, միւսանգամ երևեսցի
ձեզ ո՟քն մատաթիա, և ինքնին ուսուսցէ զօ-
րինակ շինութե՟ վանացն: Նա նք արարին
ը՟ս բանի երիցուն. և 'ի նմին գիշերի երևե-
ցաւ նոցա առաքեալն երկոցունց միանգամայն,
և ասէ. զի՞ է՝ զի թերահաւատեցայք ընդ
բանս իմ, և կա՛մ ը՟է՞ր յերկուանցայք ը՟ հրա-
մանն՝ զոր ետու ձեզ: Ապա ասէ ցայրն. ա-
րի՛ փաղփաղակի ձեռն 'ի գործ արա 'ի կատա-
րել զփափաքն իմ. կառո՛ վանս 'ի տեղւոջն՝
զորմէ ասացի քեզ. և կարգեա՛ անդ զմիան-
ձունս կարգին ս՟րյ խաչին՝ ծառայել ա՟ն զցայգ
և զցերեկ: Զայս ասաց, և եղև 'ի նոցանէ
աներևոյթ. ապա երևեցաւ և երիցուն, և
յանդիմանեաց զնա՝ ասելով. զիա՞րդ իշխե-
ցեր դու ցնորս կարծել զտեսիլն ցուցեալ
յա՟յ. և արդ եթէ ոչ 'ի բաց կացցես 'ի խոր-
հրդոյ այտի, լուծցես զվրէժ յանդգնութե՟:

Նա.

Յ․․․ս ԺԲ այգն առաւօտու եկն երեցն առ-
․․․ , և պատմեաց արտասուօք՝ զոր ե-
տես ․․․ զոր լուաւ ։ Յայնժամ ամիրօք հա-
սատեալ բարեպաշտ իշխանին վեռներայ՝
անդանդաղ փութով ետ արկանել հիմն եկե-
ղեցւոյ յանուն սրբոյն Մատաթեայ 'ի նշա-
նակեալ տեղւոջ անտառին ․ և զնովաւ շինեաց
վանս կրօնաւորաց 'ի կարգէ նրյ խաչին ընդ-
կանոնաւ նրյն օգոստինոսի , կարգեալ և
հասս տարեկանս 'ի պէտս նց , և տուեալ ընդ-
ծայս մեծամեծս տաճարի նրյն , 'ի փառս
քսի այ մերոյ , և 'ի պատիւ նր առաքելոյն
Մատաթեայ ։

Յիշեն զսուտ աւետարան յօդեալ յոտարաց
յանուն Մատաթեայ առաքելոյ՝ որոգինէս
ճառ Ա․ 'ի ղկ․ և կղեմէս աղեքս․ յաճախ․
Գ․ և Է․ և եւսեբ․ պատմ․ եկեղ․ Գ․ 23․
և Ն․ որպէս կայէն և այլ սուտ աւետարանք յա-
նուն ոմանց ոմանց յառաքելոց ։

Ընտրութիւն Մատաթեայ յառաքելութիւն
ոմանք յարևմտեան վկայագրաց ուրոյն յի-
շատակեն 'ի մայիսի 12 ․ բաց յորէ կատար-
մանն՝ զոր կատարեն 'ի փետր ․ 24 ․ և 'ի նա-
հանջ ամս 'ի 25 ․ որպէս և մեզիոլանեցիք 'ի
փետր ․ 7 ․ որ 'ի յայսմաւուրս մեր դնի 'ի
փետր ․ 4 ․ և առ յոյնս յօգոստ ․ 9 ։ Այլ
տօնացոյցն մեր վերածեալ է զնա յայս միջոց
տօնից առաքելոց և աշակերտաց ․ Թող զյի-
շատակ ընտրութեան նր՝ առանց եկեղեցական
պաշտաման , իբրև յարմարութ նշանակեալ
յազգին յութերորդ աւուր համբարձման ,

տի մովսէս և ահարոն և սամուէլ (2), ծնել 'ի կիպրոս կղզւոջ, և սնեալ և վարժեալ հրէական օրինօք ։ Նա և էր առաջին անուն նորա եդեալ 'ի ծնողաց յովսէփ՝ 'ի յիշատակ մեծի նահապետին յովսեփայ ։ իսկ յետոյ կոչեցաւ յառաքելոց բառնաբաս, որ թարգմանի որդի մխիթարութեան, զի այր քաջայարմար 'ի մխիթարել զամենեսին 'ի տէր ։ որպէս և անդըստին 'ի մանկութենէ էր կայտառ և զուարթաբարոյ և աջողակ յամենայնի ։

Նա ունէին ծնօղք նորա կալուածս գիւղից ոչ միայն 'ի կիպրոս, այլև յերուսաղէմ ։ որ ոչ միայն մեծութեան, այլև բարեպաշտութեան նշանակ էր առ հրէայս, որք նիւթապէս իմանային զառ 'ի յեսայեայ ասացեալն ։ Այսպէս ասէ տէր, երանի որ ունիցի զաւակ 'ի սիոն, և ընտանեակս (կամ տուն և տեղի) իցեն նորա յերուսաղէմ ։ Նմին իրի որ միանգամ ձեռնհաս էին՝ ջանային ունել կալուած ինչ կամ ստացուած յերուսաղէմ ։

Արդ իբրև աճեաց յովսէփ՝ որ և բառնաբաս, ածեալ զնա ծնողացն յերուսաղէմ՝ ետուն յուսումն օրինաց և մարգարէից առ ոտս գամաղիէլի օրէնսուսոյց վարդապետի ։ առ որում ուսանէր յայնժամ և սօղոս տարսոնացի 'ի ցեղէ բենիամենի, որ կոչեցաւն պօղոս ։ Այլ և 'ի ժամէն յայնմանէ եղև սերտ ընտանութիւն 'ի մէջ բառնաբայ և պօղոսի իբրև ուսումնակցաց ։ որ զմիմեամբք ելանէին յուսման, և այր քան զընկեր յառաջադէմ լինէին, և նշաստամատոյց իրերաց ։ Նա և 'ի լինել բառ-

նաբայ զընթացս ամ ուսմանց՝ չև էր հասեալ 'ի քսանևհինգամեայ տիս · վն այն չէր տակաւին կարգեալ 'ի պաշտօն տաճարի ը որբնայց · բայց սակայն կանխէր 'ի տաճարն պահօք և աղօթիւք · և էր գովելի առ ամենեսին առաքինի վարուք և իմաստութբ իւրով ։

Յաւուրսն յայնոսիկ սկսաւ յն փրկիչն Յի և վճարն երկնաւոր առնել և ուսուցանել · և տեսեալ բառնաբայ զածահրաշ սքանչելիս նր 'ի պրոբատիկէ աւազանին, և բազմագոյն ևս 'ի տաճարին, և լուեալ զածային վարդապետութն նորա, լի եղև զարմացմամբ · և մատուցեալ անկաւ առ ոտս նորա, և հայցէր օրհնիլ 'ի նմանէ · և տրն մեր՝ որ տեսանէր ըզսիրտս ամենեցուն, ընկալաւ մարդասիրապէս զբառնաբաս ը բարի հաւատոց նորա, և լիաձեռն օրհնութբ ձգեաց զնա 'ի հաղորդակցութն անսպառ գանձուց շնորհաց իւրոց · որով և յայնմհետէ վառեցաւ սիրտ

նորա 'ի սէրն յի ։

Այլ նկեալ փութապէս 'ի տունն ազգականին իւրոյ մարիամայ մօրն յովհաննու մարկոս կոչեցելոյ, (որ 'ի մեզ եղբօրորդի կոչի բառնաբայ, և յայլոց քեռորդի նր,) յորդորեաց և զմարիամ գնալ և տեսանել զսքանչելիսն յի, և հրաւիրել զնա 'ի տունն իւր · զի սա՛ է առն ըստ բազմաց վկայելոյ, ևս առաւել գործոց իւրոց, մեսիայն՝ որ գալոցն էր · և մարիամ արար ը բանիցն բառնաբայ · որպս երկար գրէ յաւանդութե աղեքսանդր կիպրացի · որ և համարի՝ թէ տունն մարիամայ ըէլ

ի-

իցէ յայնմ հետէ ժողովրդական ասպնջական յոյժ և աշակերտաց նորա. և թէ այն իցէ վերնատունն սիոնի, ուր կատարեաց տէրն մեր և զվերջին ընթրիսն. ապա և անդ եղև գալուստ հոգւոյն սրբոյ յօրն պենտեկոստէի ։ (3)

Մինչ իբրև ընտանեցաւ Բառնաբաս ընդ յոհ, և հաւատաց 'ի նա իբրև 'ի ճշմարիտ մեսիայ, ապա յընտրել տէրն մերոյ զեօթանասունսն և երկու աշակերտսն՝ 'ի կարգ նոցա ընկալաւ և զԲառնաբաս, մանաւանդ թէ ընդ առաջինս 'ի նոցանէ դասեաց, ընդ որում հասարակաց կարծիք են առ հին մատենագիրս. են և ոմանք՝ որք կարծեն, թէ իցէ արտաքոյ թուոյ եօթանասնից՝ յետ համբարձման փրկչին յաւելեալ յառաքելոցն ։ Զայս գիտեմք, զի սրբն ղուկաս 'ի գործս առաքելոց բազմօք յեշատակէ զսրբն Բառնաբաս իբրև զմի յառաքելոյն և 'ի գլխաւոր աշակերտաց, և քաջ իսկ նշանակէ զերևելի առաքինութիւս նորա և զառաքելական վաստակս ։ (4)

Քանզի նախ զառաջինն երանելին յովսէփ Բառնաբաս եղև բարի օրինակ աւետարանական աղքատութեան՝ 'ի վաճառել անդ զգիւղ իւր հայրենի որ յերէմ, և 'ի դնել զգինս նորա առ ոտս առաքելոց (5). և ապա գործակից եղև պօղոսի յամ մեծամեծ ջանս նորա. այլ որ մեծն է, բազմօք աշխատ եղև յառաջագոյն և վասն դարձին պօղոսի ։ Զի որպէս գրեն հարընտիրք մեր, ընդ իմիք և աղեքսանդր կղեմայցի, յորժամ պօղոս առիւծացեալ հալածէր զեկեղեցին այ, ուսումնակիցն նորա սրբն Բառնաբաս՝

բնա՝ քանզի համարձակ էր առ նա, միանգա_
մայն և կորովի ճարտարաբան, գրէր թուղթ
առ սօղոս 'ի բաց կալ 'ի հալածելոյ զեկեղե_
ցին այ. և բազում օրինակօք և բանիւ և
գրով աղօթէր և աղաչէր դադարել յայնպիսի
յամառութենէ. և թէպէտև անհաւան գտա_
նէր զնա, բայց տակաւին առանց վհատելոյ
զհետ լինէր նմա ամ զօրութբ. Իսկ սօղոս
ծաղր համարէր առ ժամն զխրատս բառնա_
բայ, ոչ թէ պատրեալ իցէ նա զհետ առն
միոյ անծանօթի՝ որդւոյ հրէական՝ անգէտ
եղելոյ 'ի դպրութէ, և խայտառակ մահ_
ուամբ խաչի բարձելոյ 'ի կենաց. միայն խը_
նայէր 'ի բառնաբաս իբրև 'ի մտերիմ սիրելի
իւր, այլ ոչ դադարէր 'ի հալածելոյ զայլս 'ի
պաշտօնէիցն քի, մինչև յօրն յայն՝ յորում
փայլեցին շնորհքն այ 'ի վերայ նր՝ 'ի գնալն 'ի
դամասկոս. և 'ի սաստկութէ լուսոյն պա_
կուցեալ յաչացն՝ ապա մկրտութբ ստանայր
զտեսութի իմանալի և զգալի լուսոյն միան_
գամայն: Ըստ ճառընտրաց՝ 'ի ճանապարհի
անդ առ նմա գտաւ և բառնաբաս, թերևս
'ի մեղմել զնա և 'ի խափանել 'ի խորհրդոյ
ընթացից իւրոց. և նա ինքն զձեռանէ պօ_
ղոսի կալեալ տարաւ 'ի դամասկոս. ոչ և
յետ մկրտելոյ նորա յանանիայ առաքելոյն՝
եղև նմա ուրախակից, և յորդոր 'ի համար_
ձակ քարոզութի ճշմարտութե:

Իսկ 'ի յիշեցուցանել անգ բառնաբայ առ պօ_
ղոս զշնորհսն այ՝ որք եղեն առ նա, ասի՝ թէ
անկաւ պօղոս յոտս բառնաբայ, և ասէ ար_

տասու_

տատուՙօք ․ Թո՛ղ ինձ առաջնորդդ լուսոյ՝ և ճշմարտութե՟ վրդպ, եղբայր իմ բառնաբաս․ քանզի ստուգու՟թ 'ի վ՟ր հասեալ եմ, եթէ ճշմարիտ են բանք քո՝ զոր խօսէիրն ը՟ իս յառաջագոյն․ վ՟ս զոր յառաջն հայհոյէի և որդի հիւսան կոչէի, զնոյն այժմ դաւանեմ միածին որդի ա՟յ կենդանւոյ ։

Յետ այսորիկ 'ի մեկնիլ պօղոսի 'ի դամասկոսէ յարաբիա, և 'ի դառնալ անդրէն 'ի դամասկոս, բառնաբայ շրջեալ 'ի մերձակայ տեղիս քարոզութ՟թ՝ 'ի դարձին եած ը՟ իւր զպօղոս յե՟մ․ կի՟մ 'ի լինել իւր յե՟մ՝ եկն անդր և պօղոս, և յարեցաւ 'ի նա․ և բառնաբայ առեալ զնա՝ ած առ առաքեալսն, և ընտելացոյց զնա աշակերտաց՝ որք երկնչէին 'ի նմանէ վ՟ս գոլոյն յառաջագոյն հալածիչ․ բայց բառնաբայ կացուցեալ զնա յանդիմանս պետրոսի և յակոբայ՝ պատմեաց նց՟, որպէս 'ի ճանապարհին ետես զտ՟ր, և զի խօսեցաւ ը՟ նմա․ և զի 'ի դամասկոս համարձակեցաւ յանուն յս՟ի, և որ հալածիչն էր՝ հալածեցաւ և հալածի ։ Նա յայնմհետէ բառնաբաս և պօղոս յամի գործակից էին միմեանց 'ի քարոզութ՟ն աւետարանին 'ի հրէաստան և արտաքոյ ։

Յայնմ ժամանակի 'ի մկրտել պետրոսի ըզկոռնելիոս հարիւրապետ 'ի կեսարիա՝ բացաւ դուռն հաւատոյ և հեթանոսաց․ և ընկաւ տարածիլ հօտն փոքրիկ 'ի հեռաւոր տեղիս և մեծանալ․ զի թէպէտև յառաջագոյն ոմանք յաշակերտաց ցրուելոց 'ի պատճառս

Ճառս հալածանաց՝ որ եղև առ ստեփաննոսիւ, սերմանեցին զբանն կենաց մինչև 'ի փիւնիկէ, և 'ի կիպրոս և 'ի մեծն անտիոք ասորւոց, բայց տակաւին առ հրէայս ևեթ աւետարանէին, և ոչ առ հեթանոսս: Ապա ոմանք 'ի նորոգ աշակերտելոց անտի՝ որ էին արք կիպրացիք քաղաքակիցք բառնաբայ և կիւրենացիք, համարձակեալ տր յանտիոք՝ սկսան աւետարանել և յունաց, ըս հելլենացւոց հեթանոսաց զհաւատս քսի, և դարձուցին զբազմութիւն նց առ տր:

Իսկ եղև բանս այս յականջս եկեղեցւոյն՝ որ յեմ, և առաքեցին յօգնականութիւն նց զբառնաբաս՝ իբրև իմաստուն վերակացու և արթուն հովիւ՝ զօրաւոր բանիւք և արդեամբք. և նա եկեալ յանտիոք, և տեսեալ զշնորհսն այ՝ ուրախ եղև ընդ դարձ հեթանոսաց. և մխիթարէր զամենեսին՝ յօժարութբ սրտի կալ նց 'ի տր. զի էր այր զուարթամիտ և լի հոգւով սրբով և հաւատովք. և քարոզութբ նր և առաջնորդութբ յաւելաւ ժողովուրդ բազում տն:

Յայնժամ զմտաւ ածեալ բառնաբայ՝ եթէ շնորհք դարձուցնելոյ զհեթանոսս առաւելապէս տուեալ է պօղոսի, գնաց անձամբ 'ի տարսոն՝ խնդրել զպօղոս. և գտեալ զնա՝ եած յանտիոք. ուր զամն ողջոյն միաբանս խորհրդով և փութով ընդ այ՝ ժողովէին զբազմութիւն 'ի տեղի մի իբրև յեկեղեցի և ուսուցանէին. մինչև կացուցանել 'ի մէջ հեթանոսաց առանձին հօտ և եկեղեցի հաւատացելոց.

ցելոց. և անդ եղև նմա նախ կոչել քրիստո-
նեայս զՏր քննեանս՝ զաշակերտեալսն 'ի հա-
ւատս քնի ։

Ապա 'ի գուշակել ագաբոսի մարգարէի ըզ-
սովն մօտալուտ, բառնաբաս և պօղոս ժողո-
վեալ զտուրս հաւատացելոց մեծատանց ան-
տիոքացւոց՝ բերին ընդ նուիրակութիւն յեմ
'ի պէտս եղբարց բնակելոց 'ի հրէաստան.
և դարձան անդրէն յանտիոք ։ Այլ յայնժամ,
ըն իւր եբեր անդր բառնաբաս և զեղբօրոր-
դին իւր կմ զքեռորդին զյովհաննէս՝ որ կո-
չեցեալն էր մարկոս. քանզի և ինքն իսկ մար-
կոս 'ի նմին ժամանակի էր աշակերտեալ ա-
ռաքելոց, և երկնաւոր տեսլեամբ ընկալեալ
զփոփոխութիւն անուան իւրոյ. ըստ գրոյ 'ի բե-
րանոյ նորին մարկոսի 'ի ճանապարհորդութիս բառ-
նաբայ ։

Այլ մինչդեռ երևելիքն յաշակերտս իբրև
մարգարէք և վարդապետք կային յանտիոք 'ի պաշ-
տաման տն՝ աղօթիւք և պահօք հանդերձ,
յայտնութի հոգւոյն սրբոյ որոշեցան բառնա-
բաս և պօղոս երթալ և յայլ տեղիս 'ի քարո-
զութի ։ Այլ իջեալ նախ 'ի սելևկիա՝ ունե-
լով իւրեանց պաշտօնեայ զյովհաննէս մար-
կոս, յետ երից աւուրց նաւեցին 'ի կիպրոս.
և աւետարանեցին զբն ամ կղզին. ուր և դար-
ձուցին 'ի տր զսերգիոս պօղոս զփոխանակ
բդեշխին ։ Այլ ապա դարձեալ միոյն 'ի նաւ,
և եկին 'ի պերգէ քաղաք պամփիլիոյ. ուստի
մեկնեցաւ 'ի նոցանէ մարկոս, և գնաց 'ի
տուն իւր յեմ ։

Իսկ

Իսկ պօղոս և բառնաբաս եկին յանտիոք պի-
սիդեայ, և անտի յիկոնիոն, քարոզելով ըզ-
բանն Տն՝ բազում հալածանօք հանդերձ. և
'ի բժշկել պօղոսի 'ի լիւստրա քաղաքի լի-
կայոնացւոց զ'ի ծնէ կաղն, ձայն բարձին
ժողովուրդքն, և ասեն. ա՟ծք նմանեալք
մարդկան՝ իջին առ մեզ. և կոչէին զն՟ս ան-
ուամբք չ՟ծոց իւրեանց, զբառնաբաս դիոս
ձայնելով, և զպօղոս՝ հերմէս. զի պօղոս էր
առաւել համարձակ 'ի խօսել զերկնաւոր
պատգամս. վ՟ոյ նմանեցուցանէին զնա հեր-
մեսի, որ և մերկուրիոս դեսպան դից հա-
մարեալ առ հեթանոսս. և զբառնաբաս վ՟ն
փառացի տեսլեանն և զուարթ բարոյիցն՝
միանգամայն և վ՟ն երիցութե՟ն ըստ հասակի
քան զպօղոս՝ դիոսի նմանեցուցանէին, այն
է զևս կմ՟ արամազդ հայր անուանեալ դից.
որ ը՟ն կարծեաց հեթանոսաց ոչ գնայր ուրեք
առանց ունելոյ ը՟ն իւր զհերմէս որ՟պ թարգ-
ման և իբրև բերան իւր. և ահա իբրև այս-
պիսիս ոմանս համարեցան լիւստրացիք զ՟սբ
առաքեալսն. նմին իրի և քուրմ մեհենին
դիոսի՝ որ կայր առաջի քաղաքին, եւ բազ-
մութե՟ն բերել ցուլս և պսակս 'ի դուռն քա-
ղաքին, և կամէր զոհս մատուցանել պօղոսի
և բառնաբայ իբրև ա՟ծոց ։ (6)

Յայնժամ պատառեցին սբ՟ք առաքեալքն ըզ-
հանդերձս իւրեանց, և արտաքս վազեն յամ-
բոխէն՝ մեծաձայն եդին վկայու՟ն, թէ մեք
չեմք ա՟ծք, այլ՝ մարդիկ տկարք իբրև զձեզ.
և եկեալ եմք քարոզել ձեզ յետս կալ յայդ-

 պիսի

պիսի մոլորութեան բազմաստուածութեան ։ Եւ յետ սկզբնաւորելոյ զբանն Աստուծոյ ՚ի կողմանսն յայնո-ւիկ եւ յայլ բազում տեղիս՝ դարձան անդրէն յանտիոք ։ Եւ ՚ի յարուցանել անդ. ոմանց խնդիր վասն թլփատութեան՝ Երուսաղէմ կացին պօ-ղոս եւ բառնաբաս ։ եւ եկեալ յԵրուսաղէմ՝ առաջի արկին զիրսն ժողովոյ առաքելոց եւ երի-ցանց ։ եւ զսահման ժողովոյն բերին անդրէն յանտիոք, եւ բարձին զհակառակութիւն հրէա-կան անձանց ։

Յետ կալոյ զժամանակ ինչ ՚ի կողմանս ան-տիոքացւոց՝ պօղոս յուշ արար բառնաբայ դառնալ միւսանգամ ՚ի տեղիսն, յորս քարո-զեցին զբանն Տեառն, տեսանել՝ թէ որպէս ու-նիցին ։ Եւ քանզի յայնժամ դարձեալ էր մարկոս յԵրուսաղէմէ յանտիոք, կամեցաւ բառնա-բաս տանել եւ զնա ընդ իւրեանս իբրեւ զառա-ջինն ։ իսկ պօղոս ոչ կամէր, զի մի ոչ յառաջինն՝ մեկնեցի ՚ի նոցանէ ։ Եւ եղեւ գժտութիւն ՚ի մէջ նոցա վասն բանիս այսորիկ, այս է անմիաբա-նութիւն կարծեաց (7) ։ զորոյ զլուծումն այս-պէս գտին հանգոյն աբրահամու եւ ղովտայ ։ զի պօղոսի առեալ իւր գործակից զշիղա՝ կա-մեցաւ երթալ այց առնել կողմանցն ասորւ-ւոց եւ կիլիկեցւոց ։ եւ բառնաբայ առեալ ընդ իւր զմարկոս՝ կամեցաւ երթալ յայցելու-թիւն կիպրացւոց ։ Եւ [illegible] ղուկաս՝ որ մի էր ՚ի գործակցացն պօղոսի, յայնմ հետէ զպատմութիւն պօղոսի եւեթ գրէ ՚ի գործս ա-ռաքելոց ։ իսկ զբառնաբայ՝ զորմէ նա ոչինչ այլ յիշէ, գտանի առանձին պատմութիւն

գրեալ իբրև 'ի յովհաննէ անտի գործակցէ նր̄․ զոր քաղեն և այլ հին մատենագիրք և վկայաբանք առ հասարակ․ և ունի այսպէս։ Իբրև միաբան հաստատեցին պօղոս և բառնաբաս մեկնիլ 'ի միմեանց, ծունր եդեալ կայէին յաղօթս, և երկոքեանն իսկ յարտասուս ցնդեալ վն̄ բաժանելոյ 'ի միմեանց` լայէին սրտցաւութբ̄, և ասէին եղբայր ցեղբայր․ Բարւոք էր մեզ` ոչ միաբան զանձինս եդաք մինչև 'ի մահ, նոյնպէս և միաբան ընթացակցութբ̄ կատարել զկեանս մեր 'ի մէջ մարդկան․ այլ տր̄ յաջողեսցէ զընթացս իւրաքանչիւր 'ի բարին։ Եւ յասել պօղոսի ցըբառնաբաս և ցմարկոս, երթա՛յք չնորհօքն տն̄յ, և մեք հոգւովն տր̄ն, ասէ բառնաբաս․ քանզի այսպէս հաճոյ թուեցաւ քեզ հա՛յր պօղէ, աղօ՛թս արա վն̄ իմ, զի անթերի աշխատութիս 'ի հանդիստ իմն եղիցի․ քանզի գիտես, ո՞րպէս քեզ սպաս կալայ, ծառայելով չնորհացն քոց` որ տուեալ են քեզ․ զի երթալով երթամ 'ի կիպրոս, և փութամ 'ի կատարիլ․ քանզի գիտեմ, զի ոչ ևս ունիմ տեսանել զերեսս քո հա՛յր պօղէ։ Եւ զայս ասացեալ` անկաւ յերկիր առաջի ոտից նր̄․ և ելաց յոյժ։

Եւ պօղոս ասէ ցնա․ և ինձ յայսմ գիշերի երևեցաւ տր̄, և ասէ․ մի՛ բռնադատեր ըզբառնաբաս չերթալ 'ի կիպրոս․ զի անդ առաջի՛ կայ նմա լուսաւորել զբազումս։ Եւ բառնաբաս ասէ ցնա․ և դու չնորհօքն տն̄յ երթիջի՛ր յեդէմ երկրպագանել 'ի տեղւոջն

որբութեն ․ և անդ ցուցցի քեզ՝ թէ ուր ուրեք առաջին կայցէ քեզ վկայութիւն ։

Ապա ողջունեալ Բառնաբայ զՊօղոս՝ էջ ընդ Մարկոսի ՚ի Լաւոդիկէ ․ ուր գտեալ նաւ՝ կամէր անցանել ՚ի Կիպրոս ․ և յընդդէմ դառնալ հողմոյն՝ վարեցան ՚ի կողմն Պամփիլիոյ ՚ի քաղաքն Կորասիոն, որ և Կորակեսիոն ․ անդ ՚ի ծովեզերին հանգեան առ փոքր մի ․ և ոչ կամեցաւ Բառնաբաս երևիլ ՚ի քաղաքին ․ զի ընդ Պօղոսի տեսեալ էր բնակչաց քաղաքին զնա միշտ, և ոչ առանձինն ․ այլ իբրև հասին յԱնեմուրիոն քաղաք կիլիկեցւոց, ուր ոչ ոք ճանաչէր զնա, ել արտաքս համարձակ ։

Նա հարցեալ անդ յերկուց արանց հեթանոսաց, եթէ ո՞յք իցեն և ուստի՞ գան, արար Բառնաբաս պատասխանի ․ եթէ արդարև կամիցիք գիտել, թէ ուստի՞ եմք, ՚ի բաց ընկեցէք յանձանց՝ զոր ունիք զհանդերձս ․ և ես ըզգեցուցից ձեզ հանդերձ նոր՝ որ ոչ երբէք մաշի, այլ յամենայն ժամ պայծառ է ։ Նոքա զարմացեալ ընդ բանն՝ հարցանէին, զի՞նչ այն զգեստ իցէ զոր խոստանայր տալ նոցա ։ Յայնժամ ասէ Բառնաբաս ․ եթէ խոստովան լինիջիք զմեղս ձեր, և կարգեսջիք ընդ պաշտօնէայս տեառն իմոյ Յիսուսի Քրիստոսի, առնուք զզգեստն զայն՝ որ անապականն է յաւիտեան ։

Նոքա ՚ի զղջումն եկեալ ՚ի շնորհաց Սրբոյ Հոգւոյն՝ անկան յոտս նորա, աղաչէին և ասէին ․ խնդրեմք ՚ի քէն հայր, տուր մեզ զզգեստդ զայդ ։ Նա Բառնաբայ ընկալեալ զնոսա՝ ու-

սոյց զՃանապարհն ճշմարտութեան. և ապա իջուցեալ յաղբիւր մի մօտակաց՝ մկրտեաց զնա յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սբյ. և գիտացին արքն յանձինս՝ զի զգեցան զպատմուճանն սբ. և 'ի նշանակ այսմ եղաւ բառնաբաս զվերարկու յովհաննու մարկոսի, և արկաւ զմիով 'ի նոցանէ. և զիւրն ետ ընկերի նր: Այլ արքն մատուցին նմա զինչս իւրեանց. այլ վաղվաղակի ետ զայն բառնաբաս աղքատաց. որով և նաւաստեաց եղև շահ մեծ: Իսկ 'ի մեկնիլ բառնաբայ և յովհաննու 'ի տեղւոջէ անտի՝ մին յարանց անտի կոչեցեալն 'ի մկրտութեան ստեփաննոս՝ կամեցաւ գալ զկնի նոցա. այլ ոչ թողացոյց բառնաբաս. զի թերևս նք եւս լինիցին անդ առիթ դարձի այլոց 'ի քաղաքակցաց:

Զկնի ամի այսորիկ հասեալ բառնաբայ և մարկոսի 'ի կղզին կիպրոսի՝ մտին նախ 'ի տեղին կոչեցեալ կրոմիակ. և գտեալ անդ զերկուս 'ի պաշտօնէից զտիմոն և զարիստոն՝ ազդան առ նս. և զի տիմոն ըմբռնեալ էր սաստիկ ջերմամբ, եդին ձեռս 'ի վն նորա, և վաղվաղակի փարատեցին 'ի նմանէ զջերմն՝ կարդալով զանունն յի: Այլ էր բառնաբայ առեալ 'ի մատթէոսէ աւետարանչէ զգիրս աւետարանի, որ էր ձռ իմանց սկզբնագիրն, և ձռ այլոց օրինակն՝ զոր ինքնին բառնաբաս անընդմիջապէս էր ընդօրինակեալ. յորմէ քարոզէր ժողովրդեանն զածային վդպութիւն քի և զգործս նորա. և զնոյն աւետարանն սբ դնէր 'ի վր ամ հիւանդաց, և բժշկէր զամ

զամ՟ ախտս ։

Ի շրջիլ բառնաբայ և մարկոսի 'ի տեղիս տեղիս կիպրոսի՝ ընթացակից եղև նոցա և տիմոն , որ բժշկեցաւ ․ մինչև եկին 'ի գիւղն լամպադիստայ , ուստի էր ինքն տիմոն ։ Անդ աապնջական եղև նց երակլիոն՝ որ 'ի տամասս քաղաքէ կիպրացւոց , յառաջագոյն աշակերտեալն պօղոսի և բառնաբայ 'ի կիտռեան կմ՟ 'ի կետեայց քաղաքի , և կոչեցեալն 'ի մկրտութե երակլիդէս ։ Եւ յայնժամ բառնաբաս և մարկոս ձեռնադրեցին զնոսա եպս կիպրոսի ․ և հաստատեցին 'ի նմր զայլ ևս զաշակերտեալսն ․ և յանձն արարեալ զնս նոսն՝ եկին 'ի հինն պափոս ․ ուր յարեցաւ 'ի նն և այլ ոմն 'ի պաշտօնէից ռոդոն անուն ։ Բայց բարեյեսուն սուտ մարգարէն՝ որ և եղիմաս մոգ , պատուհասեալն 'ի նմին քաղաքի 'ի պօղոսէ շլացութք առ ժամանակ մի , իբրև գիտաց զգալուստ բառնաբայ անդրէն , ետ հալածել զնա 'ի քաղաքէն ։

Եւ բառնաբեանք չոքան յայլ տեղի կոչեցեալ կուրիոն ․ անդ տեսեալ բառնաբայ ըզհեթանոսական խաղս լրբութե արանց և կանանց՝ դարձաւ և սաստեաց նց ․ և յարհամարհել նց զբանս առաքելոյն՝ նոյնժամայն հատուածեալ մասն մի 'ի լեռնէն որ անդ կայր ; ցիր և ցան կացոյց զնս ․ ոմ և զոմանս խեղացոյց , և զոմանս ևս սպան ։

Յետ այսորիկ եկեալ բառնաբայ և որոց ը՟ նմա 'ի գիւղ մի մօտակաց՝ ագան 'ի տան արիստոկղիանոսի , որ յանտիոք քաղաքի սըր-

բեալ էր 'ի բորոտութենէ իւրմէ 'ի ձեռն պօղոսի և բառնաբայ , և ձեռնադրեալ 'ի նոցանէ եպիսկոպոս՝ յղեալ էր 'ի հայրենի գիւղ իւր՝ որ 'ի կիպրոս , աշակերտել զհեթանոսս տեղւոյն ։ Նա և անտի եկեալ 'ի քաղաքն ամաթուս . այլ ոչ ոք ընկալաւ զնա անդ , բայց միայն այրի՝ կին մի աղքատ ութսունամեայ հիւրընկալաւ զնա առ ժամ մի ։ Քանզի բարեկյեսուն յամ տեղիս հասանէր իւրովք արբանեկօք , և յարուցեալ զբազմութիւն հրէից ընդդէմ բառնաբայ՝ ոչ տային նմա տեղի . իսկ բառնաբաս թօթափէր զփոշի ոտից իւրոց , և գնայր քաղաքէ 'ի քաղաք . մինչև յետ բազում վաստակոց 'ի քարոզութեան աւետարանին՝ գալ նմա 'ի սաղամինա գլխաւոր քաղաք կիպրացւոց . ուր մտեալ 'ի ժողովարան հրէից՝ մօտ 'ի տեղին կոչեցեալ բիբլիա , սկսաւ ուսուցանել զնո՝ մեկնելով 'ի լոյս ամենեցուն զաւետարանն մատթէոսի ։

Նա և մինչդեռ ոչ սակաւք 'ի ժողովրդենէն մտադիւրութ՟ աշակերտէին բանիցն ճշմարտութեան , եկն եհաս անդր յետ երկուց աւուրց բարեկյեսու թշնամին ամ՟ արդարութ՟ . և զայրացնեալ ամբոխ արար ամ՟ բազմութ՟ հրէից , և խնդրէր ունել զբառնաբաս , և մատնել հիւպատոսի դատաւորին սաղամինայ ։ Նա և մինչդեռ յայս մտաց խորհրդի կային հրէայք , լուան՝ եթէ իշխան մն՟ բարեսէր յազգականութենէ ներոնի կայսեր՝ հասեալ է 'ի կիպրոս . և խիթացեալ թէ նա կորզեսցէ զբառնաբաս 'ի ձեռաց իւրեանց , ( մանաւանդ

զի

զի ինքն իսկ բառնաբաս յառաջագոյն ասէ երթեալ 'ի Հռովմ, և սիրելի եղեալ բազմաց, ) փութացան առ. օրէն կարձել զառաքեալն 'ի կենաց. վ՟յ է՟ երեկս չարախօսել յատենի Հիւպատիոսի զնմանէ՝ առին Հրաման քարկոծելոյ և այրելոյ իբրև զխռովեցուցիչ ժողովրդեան. և ինքեանք գիշերայն դիմեալ 'ի վ՟ր ՟որ առաքելոյն՝ կալան զնա, և կապեցին չուան ը՟ պարանոց ն՟ր. և ձգել զնա 'ի ժողովարանէն 'ի դուրս՝ քարշեցին ը՟ երկիր մինչև արտաքոյ քաղաքին, և քարկոծ արարեալ սպանին. և լուցեալ հրակ՝ այրեցին զս՟բ մարմինն ն՟ր, և թողին գնացին. այլ 'ի շիջանիլ բոցոյն՝ մնացին նշխարք ինչ 'ի մեծամեծ ոսկերաց ն՟ր:

Եւ եկեալ գիշերի մարկոս և տիմոն և ռոդոն՝ ժողովեցին զմնացեալ նշխարսն՝ հողովն, ուր ցայտեալ էր ՟որ արիւն ն՟ր. քանզի լուեալ եթէ հրեայք զնշխարս առաքելոյն եդեալ 'ի քուրձ մի և կնքեալ կապարով կամին ընկենուլ 'ի ծով. վ՟յ կանխեցին սոքա ը՟ մութն գիշերոյ 'ի չորրորդ ժամու, և դտեալ զնշխարսն զայն 'ի տեղւոջ կատարման՝ տարան և ամփոփեցին 'ի ծածուկ յայրի միում. եդին և զաւետարանն մատթէոսի ը՟ նմա յայրին. և փակեցին վիմօք զմուտս այրին, և ինքեանք փախստեայ գնացին և ղօղեցան յայլում այրի մօտ 'ի գիւղն լեգրացւոց զաւուրս երիս. քանզի հրեայք իմացեալ զգործս ն՟ց՝ 'ի խնդրիր էին ունելոյ զն՟ս. մինչև յանյոյս լինել հրէից 'ի գտանելոյ զն՟ս՝ իջին 'ի ծովեզրն,

և գտեալ նաւ՝ նաւեցին յաղեքսանդրիա ե-
գիպտոսի. և անդ քարոզէին զբանն այ :
Որդ կատարումն նորին բառնաբայ՝ ոչ ասի,
գրեալ 'ի յովհաննէ մարկոսէ ըս օրինակիս ըս
այսմիկ, եղև յաւուր շաբաթու, որ օր ժէ
էր պաւնի ամսոյն եգիպտացւոց, և յունիսի
ժա ըս հռովմայեցւոց. որ ըս ումանց համարի
լինել յամի տն 53. և ըս այլոց 60, կմ 70 :
Իսկ յաղագս մարկոսի, զորմէ ունիմք ասել
'ի վարս մարկոսի աւետարանչի, և յովհան-
նու մարկոս կոչեցելոյ, յաւելուլ գրել առ-
ատմօր իբրև զմիոյ ճառընտիրք մեր և յայս-
մաւուրք հայոց և յունաց, թէ յետ կատար-
ման նորին բառնաբայ՝ մարկոս և ընկերք նր
եկին յեփեսոս. և գտեալ անդ զպօղոս՝ պատ-
մեցին նմա զմահն բառնաբայ. և նր լուեալ՝
բազում արտասուօք ելաց դառնապէս : Եւ
յետ աւուրց ինչ առաքեաց պօղոս թղթով
զմարկոս 'ի հռովմ առ պետրոս առաքեալն.
զոր ընկալեալ պետրոսի՝ արար իւր յորդե-
գիրս. և հրաման ետ նմա գրել զաւետա-
րանն նր՝ որ ըստ անուան իւրոյ է. և ապա
ձեռնադրեաց զնա եպս, և առաքեաց յա-
ղեքսանդրիա և յամ եգիպտոս : Սոյնօրինակ
խօսին և այլք ոչ սակաւք 'ի հին և 'ի նոր մա-
տենագրաց :

Այլ և կաթողիկէ թուղթ ինչ՝ որ կրէ զա-
նուն նորին բառնաբայ, եթէ իցէ նր, որպէս
կարծեն իբրև ստոյգ որոգինէս և կղեմէս
աղեքսանդրացի, և ըս նմին յառաջ բերեն
վկայութիւն 'ի թղթոյ անտի. զոր եւսեբիոս
և

և Հերոնիմոս ը̄ անյայտս դասէն ․ այլ յայսր
ծ̄մի մ̄ր Հերոնիմոս վկայէ զայնմ Թղթոյ
յանկաւոր գոլ 'ի շինութե̄ եկեղեցւոյ , և
զբառնաբաս անցուցանէ 'ի համար եկեղե-
ցական մատենագրաց ․ և ցարդ ևս գտանի
Թուղթն այն բառնաբայ յունարէն՝ լատին
Թարգմանութե̄ համդերձ 'ի կարգի գործոց
առաքելական հարց ։ Ա՛յլ է և ստայօդ աւե-
տարանն բառնաբայ կոչեցեալ , և յիշատա-
կեալ յառաջնոց անտի իբրև խոտան ․ որ
չերևի իսկ 'ի մէջ ։

Օ՛րհն բառնաբաս , Թո՛ղ զկիպրացիս՝ որք
իրաւամբք պարծին նովաւ , այլև միդուլեցիք
և բրիքսացիք՝ ք̄ց միլանցիք և պրեշացիք յի-
տալիա , ունին իւրեանց առանձին պաշտ-
պան , և առաջեալ իւրեանց անուանեն , ու-
նելով հիմն 'ի բանից ո̄րյն կղեմայ հռովմայ
հայրապետին , և յայլոց աւանդութեց արև-
մտեայց ։ Քանզի գրեալ կայ 'ի գիրս վերծա-
նութեց կղեմայ , և երկրորդեալ 'ի կղեմեն-
տեան համառօտութե̄ , Թէ յետ հնչելոյ համ-
բաւոյն ք̄ի փրկչին մերոյ մինչև 'ի հռովմ՝
յառաջ ք̄ զգնալ պետրոսի և պօղոսի անդր ,
եկն եհաս յանկարծակի բառնաբաս , և կա-
ցեալ 'ի հրապարակին հռովմայ՝ քարոզեաց
զք̄ս որդի ա̄յ արարչին երկնի և երկրի ։ Յայն
ժամ ոմանք ը̄դէմ դարձան , այլք անփոյթ
արարին , և կէսք ծաղր համարեցան զասա-
ցեալսն ․ բայց կղեմէս հռովմայեցի պատմօղ
բանիցս լուաւ նմա ․ և յետ ժամանակաց նա-
ւեալ յարևելս՝ եկ յաղեքսանդրիա ․ և գտեալ

զԲառնաբաս՝ գնաց զկնի ն՟ր 'ի Կեսարիա պա-
ղեստինոյ, և աշակերտեցաւ պետրոսի ։
Արդ յաւելու այլ մատենագիր հին 'ի վ՟ր
պատմութես, թէ յորժամ 'ի Հռովմ էր Բառ-
նաբաս՝ լուեալ զականաւոր քաղաքէն միդու-
լեայ, որ է մեդիոլան, դիմեաց անդր՝ ըն-
թացակից ունելով զս՟բ այրն Ա՟յ անաստադոն
կի՟ր անատէլոն և զայլ ևս գործակիցս. և անդ
քարոզեաւ զաւետարանն՝ 'ի սուղ ժամանա-
կի դարձոյց զբազումս 'ի տ՟ր. վ՟յ միդուլե-
ցւոց առաջին լուսաւորիչ իւրեանց ճանաչեն
զս՟բն Բառնաբաս, և զաշակերտ նորա զս՟բն
անատէլոն եպս. որոյ առանձին յիշատակ
լինի առ լատինս 'ի սեպտ. 24 ։ Իսկ քանզի
մարմին ս՟բյն անատէլոնի է 'ի պրեշիա մինչև
ցայսօր, Հաստատի սովիմք ասացեալն նոյն
մատենագրի (որ կարծի լինել 'ի վեցերորդ
դարու), թէ ս՟բն Բառնաբաս առաքեաց զնա
'ի միդուլեայ և 'ի բրիքսիա, ձեռնադրելով
զնա եպս և հրաման տալով հովուել զայնո-
սիկ կողմանս, և ասելով՝ թէ եկեղեցին մի-
դուլեայ՝ զոր ես նախ հիմնարկեցի, ծանի-
ցի միշտ իբրև գլխաւոր աթոռ եկեղեցական
բարձրութե՟ն, և մայրաքաղաք այլոց եկեղե-
ցեաց եղելոց 'ի գաւառի աստ ։ Իսկ յաղագս
նշխարաց ս՟բյն Բառնաբայ՝ որք ասին փոխա-
դրեալ 'ի միդուլէ, յիշեսցուք 'ի կարգին ։

## Պատմութիւն գիւտի և փոխադրութեան նշխարաց սրբոյն Բառնաբայ ։

Զկնի կատարման ն՟ր առաքելոյն Բառնաբայ մնացին նշխարք ոսկերաց ն՟ր ծածկեալ յանծանօթս զամս իբր չորեքհարիւր՝ մինչև 'ի հինգերորդ դար ցաւուրս զենոնի կայսեր. յորում ժամանակի է̃ գրելոյ աղեքսանդրի կիպրացւոյ՝ որ համարի իբրու ժամանակակից, սկսան լինել երևելի երևելի նշանք 'ի տեղւոջն՝ ուր թաղեալ կային նշխարք ն՟րին բառնաբայ մօտ 'ի սաղամինա, որ և կոստանդիա քաղաք կիպրացւոց. քանզի այսահարք գոչէին է̃ անցանելն ընդ այն տեղի, և ազատէին յայսոց չարաց. և բազումք յախտաժետաց, ո՟ր և կաղք և անդամալոյծք, յագանիլն 'ի տեղւոջ անդ՝ բժշկէին. մինչև բնակչաց երկրին կոչել զգիւղն զայն տեղի առողջութե՟ն ։

Ընդ այն ժամանակս պետրոս կնափևս բռնաւոր պատրիարգ անտիոքայ հարստահարեր զինքնագլուխ աթոռն սաղամինայ կիպրացւոց՝ կամելով արկանել զայն է̃ իւրով իշխանութե՟ն՝ հակառակ կանոնաց ն՟ր ժողովոյն եփեսոսի, ուր հաստատեցաւ ազատութի̃ւն աթոռոյն կիպրոսի 'ի պատիւ ն՟րին բառնաբայ ։ Այլ զի կնափևս 'ի կայսրն էր ապաստան՝ առ բարեկամութե՟ն, զոր ունէր է̃ զենոնի իսաւրացւոյ նախ քան զինքնակալութի̃ն, կոչեաց արքունի հրամանաւ զանթեմիոս

միոս զեպիսկոպոսն կիպրացւոց գալ 'ի դատ յանդիման կայսեր 'ի կոստանդինուպօլիս ։ Իսկ անթեմիոս այր առաքինի ; բայց երկչոտ , անկաւ 'ի վարանս . զի երթալ ոչ համարձակէր , զուցէ ոչ կարիցէ բան առ բան վիճել յատենի ընդ բուռն ոսոխի . և զչերթալն չար համարէր իբրև նշանակ պարտաւորութե ։ Մինչդեռ յայս ծուփս խորհրդոց յուզէր նա, երևեցաւ նմա 'ի տեսլեան գիշերոյ՝ միանգամ և երկիցս և երիցս՝ ոմն ահեղատեսիլ և սքանչելի կերպարանօք և ճառագայթարձակ պայծառութ 'ի զարդ քահանայական , և քաջալերեաց զնա երթալ աներկիւղ 'ի թգրեալ քաղաքն , զի ոչինչ չար լինիցի քեզ աստ , այլ փառօք դարձցիս անտի . քանզի տր հովանի լիցի քեզ վս իմ՝ ծառայի իւրոյ ։ Նաև յաւել անթեմիոսի , իսկ դու ո՞վ ես տր իմ , որ զայսոսիկ խօսիս ընդ իս , լո՛ւաւ պլխնի . ես եմ բառնաբաս աշակերտ տն մերոյ յի քի , որոշեալն հոգւով սբվ յառաքելուն հեթանոսաց ընդ առաքելոյն պօղոսի անօթոյն ընտրութե ։ Նաև այս լիցի քեզ նշան . երթ արտաքոյ քաղաքին յարևմուտս կոյս ասպարէզս հինգ՝ 'ի տեղին անուանեալ առողջութե . զի 'ի ձեռն իմ ներգործէ ած զսքանչելիսն 'ի տեղւոջն յայնմիկ . և բրեսցես ընդ կեռասի ծառով ( կմ ընդ եղջերենեաւ ) , և գտանիցես այր , և տապանակ 'ի նմա . յորում կայ մարմինս իմ , և աւետարանն ինքնաձեռն (8) , զոր առի 'ի սբ. առաքելոյն և աւետարանչէն մատթէոսէ . և քանզի ոսոխք քո փաստաբանեն

'ի

'ի վեր և 'ի վայր, թէ առաքելական է ա-
թոռն անտիոքայ, և դու տէր պինի, թէ
և իմն աթոռ է առաքելական, և զառաքելն
ունիմ առ իս:

Յայնժամ յարուցեալ անթեմիոսի՝ ժողո-
վեաց զեկեղեցին, և ել խաչանիշ զարդուք
և բազում ապաս[illegible]ք 'ի տեղին՝ որ ցուցաւ նմ՟.
և արարեալ աղօթս՝ հրամայեաց բրել զտե-
ղին. և ահա յետ փոքր մի փորելոյ՝ գտին
զայրն խցեալ վիմօք, զորս 'ի բաց թաւա-
լեալ՝ գտանէին զտապանակն. և բացեալ
զայն՝ տեսին զնշխարս նր՟ և փառաւոր առա-
քելոյն բառնաբայ, որ բուրէր զհոտ անու-
շից հոգեւորական շնորհաց. գտին և զաւե-
տարանն 'ի վր՟ լանջաց նորա եդեալ: Արդ
համբուրիւ երկրպագեալ՝ ահիւ և դողութ՟
կնքեցին 'ի ժամուն զտապանակն կապարաւ,
և գնացին 'ի տեղիս իւրաքանչիւր. բայց ե-
պիսկոպոսն կացոյց 'ի տեղւոջն պաշտօնեայս
և արս երկիւղածս՝ փառաբանել զած՟ առա-
ւօտին և երեկորին օրհներգութ՟ք: Իսկ ինքն
առեալ Ե՟ իւր զօմանս յեպ՟սաց իւրոց՝ փու-
թացաւ գնաց 'ի թագաւորեալ քաղաքն, և
եկաւ 'ի հայրապետանոցի:

Երբ պատմեցաւ թագաւորին գալուստ նր՟,
հրաման ետ պատրիարգին լսել ժողովով ըզ-
դատ երկոցունց կողմանց, և զարժանն սահ-
մանել: Արդ 'ի պնդել պետրոսի կնափոսի՝
թէ աթոռս անտիոքացւոց է պատրիարգա-
կան և առաքելական, վն՟յ և ամ՟ շրջակայ
գաւառաց կիպրոսի՝ հանդերձ պայծառ է Ե՟
Նովաւ

նովաւ անկանիլ, իբրաւունս տային ունկն-
դրիլք բանից նր: Իսկ անթեմիոս լուռ կայր
պահ մի. ապա եբաց զբերան իւր, և ասէ.
ապաքէն և մերս աթոռ՝ առաքելական ճա-
նաչի անդստին 'ի սկզբանէ, և ինքնագլուխ
ազատութիւն պատուեալ, և հաստատեալ 'ի
ժողովս. թող զի և առաքելալն բոլորամար-
մին առ մեզ է՝ երիցս երանելին 'ի բարեհամ-
բաւ նոցա մեծին բառնաբաս, նորոգ սքանչե-
լեօք մեզ յայտնեալ. Ո՛չ այս ինչ և ասաց,
ոչ մնաց տեղի զինմախօսաց. և ժողովեալ
եպիսկոպոսքն լռեցուցին զվէճն կնափոսի, և
սկսան ուրախակից լինել անթեմիոսի:
Արդ և լու եղև բանս այս յականջս զենոնի
կայսեր, կոչեաց փութանակի առ ինքն զե-
պիսկոպոսունս կիպրոսի, և հարցանէր յան-
թեմիոսէ վս յայտնութեն նշխարաց նր առա-
քելոյն բառնաբայ. և լուեալ զամն կարգաւ՝
ուրախ եղև, զարմացեալ յոյժ ը մեծութին
շնորհացն նյ, զի 'ի ժամանակս թգրութեն
իւրոյ զայնպիսի սքանչելիս եցոյց նծ: Զայն
ժամ 'ի բաց արձակեաց զպետրոս կնափոս
յանտիոք, պատուէր տուեալ մի ևս խուել
զեպիսկոպոսն կիպրոսի վս բանին այսորիկ:
Այլ առ երանելին անթեմիոս ասէ թագա-
ւորն. արդ որովհետև յաւուրս քո նր քահա-
նայապետութեն հաճեցաւ տրն մեր յս քս
յայտնել զիւր նր առաքելոյն բառնաբաս;
հրամանն տուր վաղվաղակի բերել այսր ըղ-
դեալ աւետարանն նր, շնորհ մեծ առնե-
լով այսու մասամբ իմն սրբութեն քում. զի
և

և զիս յայամհեռանէ ունիցիս յանձի լոռղ հայրութեան քում։

Իսկ անթեմիոս ոչ կարաց ընդդէմ դառնալ. առաքեաց զմի յեպիսկոպոսաց իւրոց ընդ հաւատարիմ պաշտօնէի Թագաւորին. և առեալ բերին զաւետարանն նորա'ի կոստանդինուպօլիս, որոյ տուփն էր խնկենի յանուշահոտ փայտէ։ Զոր առեալ զայն Թագաւորին և համբուրեալ՝ ետ պատել ոսկւով, և դնել'ի պալատան. ուր պահի մինչև ցայսօր՝ ասէ աղեքսանդր կիպրացի. և'ի մեծի հինգշաբաթու զատկին ամի ամի նովաւ ընթեռնուն զաւետարանն յաղօթարանի պալատան։ Իսկ զանթեմիոս եթէ բազում պատուով և պարգևօք մեծարեալ արքային՝ արձակեաց'ի տեղի իւր, հրաման տուեալ շինել տաճար յանուն նորին բառնաբայ'ի տեղւոջն, ուր գտան պատուական նշխարք նորա. և բազումք ևս'ի մեծամեծաց ետուն ինչս'ի շինութիւն եկեղեցւոյն։ Եկեալ անթեմիոսի'ի կիպրոս՝ կառոյց տաճար հոյակապ'ի պատիւ նորին բառնաբայ, և առ նովաւ բնակարանս միաբանակեցաց կարգելոց'ի պաշտօն նորին առաքելոյն, և մեծանխոտ հիւրանոցս. մինչև ընդարձակութե շինուածոյն լինել որպէս քաղաք մի փոքրիկ։ Իսկ զարկղն կամ զտապանակն յորում էին նշխարք նորին բառնաբայ, հանգոյց յաջմէ ընդ սեղանոյն՝'ի տեղի առանձին յարմարեալ'ի կճեայ սեանց, և յօրինեալ արծաթի զարդուք։ Իսկ լինէր անդ տօնախմբութիւն մեծ յաւուր յիշատակի նորին բառնաբայ'ի յունի-

սի

սի ժամ՝ բազմութ. ուխտաւորաց, որք գային յամ կողմանց. և այնչափ սքանչելիք լինէին 'ի տապանէ սբ առաքելոյն, մինչև ասել գրչին, ոչ բաւեն թուղթք 'ի գրել զնոսին մի առ մի. վոյ և զայսօրինակ կնքէ զներբողեան սբյն. * Սա թագաւորաց փառք, քահանայից ուրախութի, և ժողովրդոց ցնծութի. սա նեղելոց մխիթարութի, աշխատելոց դիւրութի, անյուսից յոյս, լքելոց օգնականութի, օտարաց սփոփութի, հիւանդաց առողջութի, ողջոց պահպանութի. աղբիւր շնորհաց հոգևորաց, եկեղեցւոյ պարիսպ, ուղղափառաց հաստատութի, հաւատացելոց ամրութի, պարծանք ամ տիեզերաց ||: Եւ եղև այս ամ յամի ամն իբր 478 կմ 488 :

Օ այնու ժամանակաւ փայլէր յարևմուտս Բենիգնոս արքեպս Մեդիոլանու՝ այր սբ և առաքինի. որ ընկալաւ ասեն 'ի պարգև 'ի մասին մասն ինչ 'ի մոխրոյ և 'ի նշխարաց սբյն բառնաբայ 'ի կիպրացւոց անտի. այլ 'ի յետագայ դարս պատմի լինել փոխադրութի բովանդակ նշխարաց սբ առաքելոյն 'ի Մեդիոլան, ըստ յառաջ բերելոյ բոլլանդեանց 'ի պլակիդոսէ պուկլինելլայ այսպէս: Յամի ամն 648, Մաւիէ զօրավարն հագարացւոց՝ (որ զկնի եղև ամիրապետ,) էառ զսաղամինա քաղաք կիպրոսի, և տիրեաց համօրէն կղզւոյն. յայնժամ յովհաննէս եպիսկոպոս տեղւոյն փախեաւ 'ի կիպրոսէ հանդերձ մեծամեծօք երկրին, և եկեալ նստաւ 'ի յուստինիանուպօլիս քաղաք հելլեսպոնտոսի. որ և ասի

ունել է իւր բաց յայլոց նոյն սպասուց և զպատուական նշխարս սրբոյն Բառնաբայ . զորս յետ ժամանակաց փոխադրեցին անտի այլք 'ի Մեդիոլան իտալիոյ . Թէպէտև եղանակն անյայտ :

Այս ինչ յայտնի է, զի կայր 'ի Մեդիոլան 'ի վաղ ժամանակաց հին եկեղեցի յանուն սրբոյն Նաբորայ և կելսոսի կամ փելիքսի . որ անկաւ 'ի ձեռս կրօնաւորաց մինորեց յամի տն 1256 . և սք 'ի նորոգելն զայն տաճար՝ կոչեցին յանուն նոյն Փրանկիսկոսի կարգապետի իրեանց . և գտին անդ է այլ նշխարս սրբոց և զգլուխ սրբոյն Բառնաբայ առաքելոյ . ոսկր և ունելին 'ի յիշատակարանաց ուստեք և յաւանդութեց ծերոց , թէ 'ի տաճարի անդ 'ի ներքոյ սեանն՝ որ բազմութբ ճրագաց լուցելոց էր ծխատեալ և կիսայրեաց , թաղեալ կայցէ գլուխ նոյն Բառնաբայ՝ հանդերձ մոխրով մարմնոյ նր 'ի հուր արկելոյ . վնյ բրեալ զտեղին՝ գտին զայն նշխարս 'ի տապանակ մի արձճեայ 'ի ներքուստ երկաթապատ 'ի խորափոր . ուստի ել և ջուր ցուրտ և յստակ յառողջութի հիւանդաց :

Յայնժամ զմանրեալ նշխարս և զմոխիրս եդին տապանակաւն 'ի վմ խորանի մատրան նուիրելոյ անդանօր յանուն սրբոյն Բառնաբայ , որ յետոյ կոչեցաւ փրանկիսկոսի . իսկ զպատուական գլուխ առաքելոյն՝ որ երևէր կարմրագոյն և ոչ թարմ , առին 'ի մէջ արծաթի և ոսկեզօծ ամանոյ , և եդին 'ի խորանի սարկաւագանոցին . ուր 'ի խուռն ըն-

Թամալ ժողովրդեան 'ի տօնի սրբոյն և յայլ տօնական աւուրս՝ քահանայք մատուցանէին 'ի համբոյր նշ՟ զգլուխ սրբոյն, կամ 'ի վերայ գլխոյ իւրաքանչիւրոց դնէին զգլուխ նոր առաքելոյն՝ արժանի լինել օրհնութեան նորա: Յետ այսորիկ յամի 1571, 'ի միւսանգամ նորոգել զշինուածս եկեղեցւոյն, որ եպս քաղաքին Կարոլոս Բոռոմեան վերստին խուզարկեալ զնշխարս նոցա՝ որք կային 'ի խորանս խորանս, ամփոփեաց նա 'ի փայտեղէն յիւրաքանչիւր դիրս. Իսկ զմոխրախառն նշխարս նոյն Բառնաբայ հանդերձ սկաւառակաւն հանգոյց ՟Է՟ նորաշէն խորանաւ մատրան նշ՟ 'ի վ՟ր՟ երկաթի վանդակաց, ընդ որովք էին նշխարք սրբոցն Նաբորայ և Փելիքսի: Երբ քանզի մեծահանդէս շքով և թափորաւ եղև այս վերջին փոխադրութիւն, կարգեցաւ 'ի հրամանէ նորին սրբոյն Կարողոսի օրն այն՝ որ էր ժե՟ սեպտեմբերի, տարեկան յիշատակ առ Միջուլեցիս. զի և նոցին Բառնաբայ ճանաչի մի 'ի գլխաւոր պաշտպանաց քաղաքին նշ՟:

Բայց յառաջ կամ զկնի՝ մասն ինչ 'ի գլխոյ նոյն Բառնաբայ սփռեցաւ և 'ի շրջակայս ազգս Իտալիոյ. և իւրաքանչիւր եկեղեցիք՝ յորս էր մասն մի սկաւառակին եդեալ 'ի գլխանձև անօթ, համբաւէին առ իւրեանս ունել զգլուխ առաքելոյն Բառնաբայ. և ՟Է՟ այսմ աւր՝ թէ նշխարք գլխոյն կան յերգենեա դիւղ Բերգամացւոց, և 'ի նոյն մայրենս Անկենացւոց, և 'ի Գենուա Լիգուրացւոց. այլ

և

կարծեցելոյ. բայց լուծանէ զառարակոյս առնդ. Ճառընտիր մեր՝ որ մեկն գրէ, Թէպէտև այրեցին զմարմին սբյն, բայց ՚ի չիջանիլ բոցոյն մնացին նշխարք ՚ի մեծամեծ ոսկերաց նր :

Երկրորդն է գործ աղեքսանդրի միայնակեցի կիպրացւոյ. որ է ը մասին ներբողեան պատմական՝ չինեալ ՚ի վր պատմութեն յովհաննու մարկոսի, և ը մասին պատմութեն գիւտի նշխարաց սբյն բառնաբայ առ զենոնիւ : Զսորա վկայութեն պնդագոյն գոգցես ունի բաբեպրոք քան զմարկոսին. և վն գրելոյ սորա՝ Թէ ամբողջ մարմին բառնաբայ գտաւ առ զենոնիւ, հանէ զնախագրել չնչին տարակոյսն. և ջանայ հաստատել՝ Թէ աղեքսանդրոս այս պարտի լինել ՚ի Ե կմ ՚ի Զ դարու. որ չէ մեզ անհաւանելի : Եւ պարզաբար՝ այնչափ մանրակըրկիտ քննութիս առնէ ՚ի վր երկոցունց նշանակել գործոց մարկոսի և աղեքսանդրոսի՝ յաւաւել ստուգութեն բանից նց և ՚ի ցրումն դիմախօսութեց ոմանց, մինչ զի չմնայ մեզ աշխատութի ՚ի հետաքննել զնոյն և ես :

Բայց զարմանք են, զի չէ գիտել այրն կորովամիտ և զայս ինչ յայտնի, Թէ յառաջաբանն ընծայեալ յովհաննու մարկոսի՝ կայ և ՚ի սկզբան վկայաբանութեն սբյն փոխասու հայրապետի, ոչ միայն ՚ի Ճառընտրի մերում հայերէն, այլև առ նոյն բոլլանդեանս յունարէն : Ապաքէն տեսաք ՚ի վկ՛՛ փոխասու զայս սկզբնաւորութե. * Քանզի բազում անգամ ( անմեհեր. ը Ծ. Ա ) ՚ի
,, գալստենէ փրկչին յմի քմի գԹասիրի և խնամոտնոյ,
,, և հզօրի և բժշկի և հովուի և վճռղի, ամն և այ. ըզ-
,, հաշտակաւոր և զանձառ, զմբ և զանարատ խորհուրդն
,, ընկալեալ քրիստոնէից, և կնքեալ ( ը յն. զանարատ
,, խորհուրդն, ունողացն զայյան սրբութե, և կնքելոց
,, քրիստոնէից ) ՚ի ձեռն բազմաց և մեծամեծ նեղու_
,, Թեց... կարևոր Թուեցաւ և մեզ... ՚ի ձեռն գրոցս
,, նշանակել ձեզ եղբարք || . են : Եւ ահա տեսանեմք
և սոա, զի այսպէս սկսանի ճպհորդութեն բառնաբայ՝
գրեալ սմ ՚ի յովհաննէ մարկոսէ. * Քանզի ՚ի գալստե_
,, նէ փրկչին մերոյ յմի քմի, անմեհերի և գԹասիրի և
,, հզօրի և բժշկի. զանձառ և զմբ և զանարատ խոր_
,, հուրդն, ունողացն զայյան սրբութե, և կնքելոց քրիս_
,, տոնէից, հայեցայ և տեսի ես, և ծառայեցի մա_
,, գիւրութե, կարևոր համարեցայ՝ զոր տեսի և լուայ
,, զխորհուրդս պատմել : Ես յովհաննէս հետևողակից.
,, (ը պաշտօնեայ) բառնաբայ և պօղոսի առաքելոց || են :

Արդ

Արդ. քանզի բոլլանդեանք՝ որոց անկ էր խուզարկու-թիւն այսպիսի կնճռոյ, չեն մեզ եղեալ այսմ կարեոր բանի, մեք մերով մտօքս այսպէս լուծանել ունիմք դժուարութիւնդ, թէ գրիչն վկայաբանութեան սորին փո-խեալ է հեռաւոր գրչի պատմութեան բառնաբայ· երբէք անխախտելի մնայ հեղինակութիւն մարկոսի յովհաննու, յորմէ գողացեալ է զայս յառաջաբան գրիչն փոխեալն. զորս և զայլ ծանրագոյն յանցանս գողութեան նշանակե-ցաք 'ի առաջնոյ իբրու մ, զի զբաղզում ինչ ձօրինակէ և 'ի վկայաբանութենէ պամփիլոսի և պամփիլուհւոյ. և այսմ ևս չեն ուշ եղեալ լիշեալ քննիչք ։ Զայսոսիկ 'ասա-ցաք 'ի յայտնի կացուցանել, թէ որպէս բոլլանդեանք՝ նոյնպէս և առաւել ևս մեք ոչինչ անպատեհութիւն գտա-նեմք 'ի պատմութեան բառնաբայ· զորմէ լիցի բան և 'ի վարս յովհաննու մարկոսի, և մարկոսի աւետարանչի ։ Ո՛չ գտանեմք այլ արատ և 'ի բանս աղէքսանդրի կիպ-րացւոյ, բայց զի է երկարաբան և զարգաբան, չասա-ցից թէ և յիրս իրս աւելորդաբան· Այլ և զարմանք զիս ունին, զի աւելի քան զչափ է հաճոյացեալ բարեպա-րոքայ· այսչափ ասել հերքեացի ։

(2) Խորհրդով պահեցաք զայս ձև բանից ճառընտրոյ, զի և յայսմաւուրքն և աղէքսանդր կիպրացի 'ի նոյն աղ-բերէ առեալ՝ միօրինակ նշանակեն աստ զմտմէս և զգա-հարան և զտամուէլ· Իսկ 'ի բանն եսայեայ յառաջ բե-րեալ 'ի կիպրացւոյն՝ ասէ բարեպարոք · * Զայսպիսի ,, մարգարէութիւն չգտանեմք 'ի վուլկաթա օրինակն ե-,, սայեայ · այլ թէ գտանիցի առ եօթանասնիցն · չու-,, նիմք պարապ հայելոյ ||։ Այլ մ ոչ գիտէ, թէ այս բան է եսայեայ 'ի Գլ· լա· 9 · միօրինակ 'ի յն · և հյ · ը եօթանասնից · որ 'ի վուլկաթայն գրի · * ասէ տր · որոյ ,, հուր է 'ի սիոն, և հնոց նր յեէմ || · որ ը իմաստից ծառայէ աւանդութեան հրէից ։ Վն զեառացուց ասի, թէ կրկնակի կարող էին ունել երկիր կալուածոյ · մի ժա-ռանգելով զառացուծ կանանց իւրեանց՝ որ յայլոց ցեղից · և միւս ևս՝ առանալով տեղի արօտոյ խաշանց իւրեանց ։

(3) Զաւանդութեան կիպրացւոյն վն տան մարիամու հա-սարակն բազումք յառաջնոց և 'ի յետնոց · բայց են՝ որ ասեն, թէ տուն մարիամու՝ յոր եկն պետրոս, էր 'ի ստորին կողմն երէմի՝ հեռի 'ի սիոն լեռնէ ։ Բայց 'ի գնել՝ թէ տուն մարիամու իցէ վերնատունն սիոնի, տանուտէր տանն յիշեալ յաւետարանին՝ լինի այր նր · և

„ ոչինչ նշմարանք կայ ուրեք ։ Եւ այս իսկ է պատ-
„ ճառն. զի ոմանք զյակոբոս, այլք զյովհաննէս, ոմն
„ և ոմանք զղուկաս կամ զպօղոս համարեցան թարգմանն.
„ Ընդ որում իւրաքանչիւր եկեղեցի ընթեռնոյր զաւետա-
„ րանն ՚ի սկզբնագրէ անտի այսր կամ այնր առաքելոյ ||։
Այլ զգիւտ նշխարաց սրբոյն Բառնաբայ հանդերձ աւե-
տարանաւն մատթէոսի յիշէ և թէոդորոս վերծանող
որ էր ՚ի Զ դարու, և այլք յոլովք զկնի ։



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

Փիլիպպոսի առաքելոյ՝ աւետարանիչ կոչե-
ցելոյ, միոյն յեօթանց անտի սարկաւագաց ։

Հ. փետր. 9 ։ Յ. հոկտ. 11 ։ Լ. յունիս. 6.
Բոլլանդեանն Էափէեպրոս. ՚ի Ա հատ. յուն. էջ.
618 = 620 ։



ՍՔԱՆՉԵԼԻ ԸՆկեր նախավկային մեծի, Հանգոյն նմին ՚ի թուոյ եօթանասունն և երկու աշակերտացն Քրիստոսի ընտրեալ յառաքելոց ՚ի համար եօթն սարկաւագաց. այնչափ անուանի ՚ի մէջ նոցա, մինչև ոչ ըստ կարգի անուանն, նոյնպէս և գործով յառաջադէմ լինել քան զայլս հնգեսին՝ իբրև անընդմիջելի գործակից նորին ստեփաննոսի նախասարկաւագին՝ նմին համանման. Ընդ որում և նոյն ղուկաս յետ պատմե-

լոյ

լոյ զանցս նախասկզբայինն՝ զսորին Փիլիպպոսի ւեթ զգործս է գրով արկանել . քանզի և մեծամեծք էին յոյժ , և արժանի արձանագրութե̃ 'ի կարգի առաքելական գործոց ։

Յորում սակի զառաջին տեղին ունի դարձն սամարացւոց . զի որպէս ասէ գիր , յորժամ սփռեալքն 'ի նեղութենէն ստեփաննոսի շրջէին և աւետարանէին զբանն ա̃յ , Փիլիպպոս իջեալ 'ի քաղաքն սամարացւոց՝ որ էին ազգ խառնակրօն 'ի հեթանոսութե̃ և 'ի հրէութե̃ , քարոզէր նմ̃ զք̃ս . և ժողովուրդքն միաբան ունկն դնէին բանիցն Փիլիպպոսի . զի ոչ սոսկ բանիւ խօսէր , այլև նշանօք զիւրն հաստատէր . մինչ զի բազում այսահարք յանդիմանն նը̃ աղաղակէին 'ի ձայն մեծ , և զերծանէին յայսոց չարաց . և անդամալոյծք և կաղք բժշկէին 'ի կարդալ Փիլիպպոսի զանունն ա̃ն 'ի վ̃ր նց̃ . որով դարձան բազմութիւնք արանց և կանանց , և մկրտեցան . և եղև ուրախութի̃ մեծ 'ի քաղաքին յայնմիկ ։

Եւ որ մեծն է , սիմոն մոգն սամարացի՝ հնացեալն աւուրբք չարութե̃ , և հասեալն 'ի ծայր կախարդութե̃ , որ իբրև ա̃ծ ումն համարեալ էր յաչս ամբոխին , յաղթեալ 'ի զօրաւոր բանից և 'ի գործոց ն̃րյն Փիլիպպոսի՝ յանձն առ զհաւատս ք̃սի առ ժամանակ մի . և ընկալեալ զմկրտութի̃՝ ստէպ կանխէր առ Փիլիպպոս . և տեսեալ զնշանսն և զմեծամեծ զօրութիւնն՝ որք լինէին , զարմանայր ։

Եւ քանզի ն̃րն Փիլիպպոս չև էր յայնժամ քահանայ և եպ̃ս , այլ սարկաւագ , ազգ-

տրար առաքելոց՝ որ յԵղմ, զի յղեսցեն զոգ յիւրեանց գալ և տալ զդրոշմն ՚նը մկրտելոցն յիւրմէ . և նոքա ուրախ եղեն և առաքեցին անդր զգլուխ քահանայութե զպետրոս և զգործակից նր զյովհաննէս զսիւնս եկեղեցւոյ . որք եկեալ աղօթս արարին և ձեռն եդին ՚ի վր մկրտելոցն , եւ ետուն զդրոշմ . որով և առնուին հոգին սբ . և ինքեանք յետ յանդիմանելոյ զչարութիւն սիմոնի մոգի՝ որ արծաթոյ կամէր գնել զշնորհս ձեռնադրութե , և յետ ուսուցանելոյ զաշակերտեալսն հաստատուն կալ ՚ի վկայութեն , զոր ուսան ՚ի փիլիպպոսէ , դարձան յԵղմ :

Իսկ փիլիպպոս յետ լինելոյ աւետարանիչ և լուսաւորիչ սամարացւոց՝ առաքեցաւ ՚ի տնէ աւետարանել և լուսաւորել զայլ եւս հեռաւորս . քանզի երևեցաւ նմա հրեշտակ տն , և ասաց երթալ ՚ի ճանապարհն՝ որ իջանէր յԵղմէ ՚ի գազա՝ անապատն կոչեցել . այն է աւերակն հին գազայ քղքի կործանելոյ յաղեքսանդրէ մակեդոնացւոյ՝ քանի մի ասպարիզաւ հեռի ՚ի ծովէ , որոշ ՚ի նոր գազայ՝ որ զկնի շինեցաւ մօտ ՚ի ծովն . կմ ըստ այլոց անապատ կոչիւր ճանապարհն՝ որ տանէր ՚ի գազա : Իսկ ահա անցանէր կառօք ընդ այն ճանապարհ՝ այր մի եթէովպացի հզօր և երևելի , որ էր ներքինի արքունեաց եթէովպիոյ . ըստ կմ ներքինապետ , և կմ արքունի հազարապետ , և գանձապետ թագուհւոյն եթէովպացւոց , որում անուն էր կանդակ տիկին՝ ըստ սովորական կոչման թագուհեաց երկրին .

Սր

զի թագաւորք եգիպտացւոց՝ փառաւորն կամ պտղոմէոս անուանելին ։ և ոչ ասի յոմանց՝ կանդակ դշխոյ եթէովպիոյ էր ՚ի յաջորդաց տիկնոջն սաբայ, որ և դշխոյ հարաւոյ կոչի, համարեալ թագուհի հաբէշաստանու ։ վասն և ներքինին եթէովպացի կարծի լինել յեր-
կրէ և յազգէն հաբէշու ։

Արդ սա եկեալ էր յերուսաղէմ վասն երկրպագանելոյ Աստուծոյ ՚ի տաճարին, ըստ աւանդէին և այլք ՚ի հեթանոսաց նախածանօթից ։ և զի էր այր գրասէր, ՚ի դարձի իւրում նստեալ ՚ի կառս՝ ընթեռնոյր զգիրս մարգարէութեան եսայեայ ։ Յայնժամ ազդեաց հոգին սուրբ փիլիպպոսի ներքինին աշակերտութիւն, կամ դարձեալ ՚ի ձեռն հրեշտակի՝ մատչել ՚ի կառս ներքինւոյն, և խօսել առ նա զբանն կենաց ։ Իսկ փիլիպպոսի ելեալ ՚ի կառս նորա, և առիթ առեալ ՚ի բանից գրոյն՝ զոր ընթեռնոյր, աւետարանեաց նմա զյս ։ և իբրև եկին ՚ի ջուր ինչ, խնդրեաց ներքինին ՚ի նա առաքելոյն զմկրտութիւն ։ և կացուցեալ զկառսն՝ իջին երկոքեան ՚ի ջուրն՝ փիլիպպոս և ներքինին, և մկրտեաց զնա, Իսկ իբրև ելին ՚ի ջրոյ անտի, հոգին սուրբ եկն ՚ի վերայ ներքինւոյն ։ և հրեշտակ տն յափշտակեաց զփիլիպպոս, և ոչ ևս ետես զնա ներքինին ։ և գնայր զճանապարհ իւր ուրախութեամբ ։ որ և եղև հիմն քրիստոնէութեան յեթէովպիա կամ ՚ի հաբեշստան ։ առ յետոյ զնորադարձն մատթէոս աւետարանիչ, և եղև առաքեալ լուսաւորիչ ծին այ-
նորիկ ։

Իսկ

Իսկ փիլիպպոս ձեռամբ հրեշտակին բերաւ յազովտոս. և շրջեալ աւետարանէր ամ քաղաքացն՝ մինչև 'ի գալ նր 'ի կեսարիա պաղեստինոյ, որ և կեսարիա փիլիպպեայ. ուր էր նր բնակութի հաստատուն. ոյր վս կարծի լինել ծննդեամբ 'ի քաղաքէ անտի: Ընդ եկն յետ բազում ժամանակաց առաքեալն պօղոս ը ղուկայ աւետարանչի, և ըս գրելոյ նորա՝ եմուտ յապարանս տունն փիլիպպոսի աւետարանչի, որ էր յեօթանց անտի. այս է հռչակաւոր քարոզ բանին՝ մի յեօթն սարկաւագաց ընտրելոց, թէպէտև չիցէ աւետարանագիր. ոչ և առ տիմոթէոս ասէր առաքեալն. զգործս աւետարանչի գործեա́. և առ եփեսացիս գրէ, նա ետ զոմանս առաքեալս, զոմանս մարգարէս, զոմանս աւետարանիչս (իմա́, կմ գրով, կամ բանիւ), զոմանս հովիւս և վրդպս:

Ընդ 'ի տան փիլիպպոսի՝ ուր ագաւ պօղոս զաւուրս բազումս, եկեալ և ագաբոս մարգարէ՝ կապեաց զանձն գօտւով պօղոսի՝ 'ի գուշակել զառաջիկայ կապանս նորա յեէմ: Աւանդէ անդանօր սբն ղուկաս, թէ էին նորուն փիլիպպոսի աւետարանչի դստերք չորք՝ կոյսք մարգարէք: Մին 'ի չորից անտի էր երմոնէ կոյսն փառաւորեալ և տօնելի, ոչ պատմեցաք 'ի վարս նր. ուր և յիշի անուն միւս ևս քեռն նր երինէ կմ եւտիքիա:

Իսկ վս այլոց, ոչ և յաղագս կատարմանն հօր նց փիլիպպոսի չիք որոշ պատմութի, բայց այս ևեթ, թէ սբն փիլիպպոս յետ մե-

ծա-

ծանեած գործոց իւրոց ըստ գրոց՝ ձեռնադրել եօթն յառաքելոց անտի , գնաց 'ի տրաղ քաղաք ասիացւոց • ուր դարձոյց զբազումս , շինեաց եկեղեցի , և հօժարեաց զայն աթոռ՝ մինչև 'ի վախճան իւր խաղաղութբ , և կամ ցկատարումն նահատակութբ • և անդ թաղեցաւ ասեն , և փայլէր գերեզմանն նր սքանչելեօք ։ Եւ էր տրաղէ կմ տրաղիս քաղաք երևելի եպսարան 'ի հնումն առ մէանդր գետով ը մէջ ասիացւոց և լիւդացւոց • գտանի և թուղթ մի 'ի թղթոց իգնատիոսի սբազգեցի գրեալ առ տրաղացիս ։ Բայց են՝ որ ասեն , թէ նա առաքեալն և աւետարանիչն փիլիպպոս կատարեաց զաւուրս իւր 'ի կեսարիա • և թէ անդանօր թաղեցան առ նմա երեքին դստերք իւր ։ Իսկ այլք՝ որ 'ի յերապօլիս համարին զնա թաղեալ , շփոթեն արդեօք ը պատմութե փիլիպպոսի առաքելոյ միայն յերկոտասանից • քանզի կային և նորա դստերք՝ որք թաղեցան ը հօր իւրեանց 'ի յերապօլիս փռիւգիոյ ։

Ոչ է շփոթութի , այլ յարմարաւոր խորհրդածութի անուանակցութե այն , զի 'ի տօնի նոյն փիլիպպոսի առաքելոյ՝ ընթերցուած դնի 'ի գործոց առաքելոց , ուր է պատմութի գործոց փիլիպպոսի աւետարանչի ։ Գուցէ և այլ խորհուրդ դիտեալ կայ • զի ուր նախնիքն մեր զառաջին փիլիպպոսն և եթ եդին 'ի տօնացուցի և ոչ զերկրորդն , 'ի տօնի առաջնոյն կամեցան թերևս առնել և զյիշատակ երկրորդին ընթերցուածովն այնուիկ ։

Այս

Որպէս չկան ՚ի հին տօնացոյցս ազգիս և յետագայ երկու և երեք անուանք՝ յովհաննու, շեզայի և սիզոմանոսի. Ո՞ր որոց անդրանելի էր և է, թէ յովհաննէս մարկոսն՝ իցէ՞ որեւէ ՚ի մարկոսաց աւետարանչէ, եթէ նոյն. նոյնպէս շիզա և սիզոմանոս՝ մի և նոյն ոք իցէ, եթէ զանազանեալ. բայց քանզի ՚ի յետին տօնացոյցս եդեալ կան և պահքին յաւուր յայսմիկ, ո՞ր այնմ առաջին կայ մեզ գրել և ընդ զայլ և այլ անուանս ։



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Յովհաննու՝ Մարկոս կոչեցելոյ ։

Յ. Մարտիրոլ. ապր. 27. և սեպտ. 27 ։ Ի. սեպտ. 27։ [illegible] անտ, և յայլ տեղիս ։



ՅԱՅՏՆԻ Է Ի ԳՈՐԾՈՑ առաքելոց, զի յովհաննէս կոչեցեալն մարկոս՝ էր որդի մարեմայ կնոջ բարեպաշտի յԵրուսաղէմ, և եղբօրորդի կամ քեռորդի նորին Բառնաբայ կիպրացւոյ. և եղև զառաջինն ուղեկից պօղոսի և Բառնաբայ իբրև պաշտօնեայ նոցա, չուելով ընդ նմա մինչև յԱնտիոք և ՚ի կիպրոս ։ Այլ ՚ի դառնալ ընդ նմա ՚ի պերգէ պամփիւլեայ՝

լեալ՝ եթող զնա, և դարձաւ յէմ՛ի տուն մօր իւրոյ՝ երիտասարդական իմն ըմբռնու-թբ. զի կամ խոյս տալ կամեցաւ ՚ի բազմա-վիշտ աշխատութէ յընթացս քարոզութե, և կմ ինքնանալ և շրջիլ առաքելաբար ՚ի քա-րոզութի՝ քան թէ լինել պաշտօնեայ առա-քելոց :

Բայց յետոյ ստրջացեալ՝ դարձ արար ան-դրէն յանտիոք առ պօղոս և առ բառնաբաս. և իբրև հանդերձեալ էին նք շրջիլ միւսան-գամ ՚ի քարոզութի, ոբն բառնաբաս կամե-ցաւ առնուլ ընդ իւրեանս և զյովհաննէս ընդ յօժարութե սրտի նր, ներողամիտ լինելով ընդ առաջին յետադարձութի նորին. զի կա-մէր զնա շահել՝ սէր ցուցանելով իբրև առ-ազգական իւր : Իսկ ոբն պօղոս ընդդէմ դար-ձաւ անաչառ խորհրդով, խրատել կամելով զյովհաննէս՝ մի լինել անհաստատ ՚ի ձեռնա-պարհի տն : Եւ վէճ անկաւ զժտուե ՚ի մէջ երկոցունց կողմանց. մինչև լաւ համարեցան զատանել զմէջ այսուէ օրինակաւ. զի պօղոս է-առ ընդ իւր զշիղա, և գնաց քարոզել յասիա. իսկ բառնաբայ առեալ ընդ իւր զմարկոս՝ գը-նաց քարոզել ՚ի կիպրոս :

Դարձեալ յայտնի է ՚ի թղթոց ոբյն պօղո-սի, թէ յովհաննէս մարկոս յետոյ ուրեմն եկն առ նա ինքն պօղոս, և սիրով ընկալեն ՚ի նմանէ՝ սորա կալաւ նմա ոչ հաւատա-րիմ պաշտօնեայ, և գտաւ ՚ի կարգի համա-ճառակ և պատուական աշակերտաց. Քղի զղոյ առաքելաքն առ կողոսացիս. դ. 10.

* Ողջոյն տայ ձեզ՝ արիստարքոս գերեկից
իմ, և մարկոս եղբօրորդի բառնաբայ · վ̃ն
որոյ առիք պատուէր, եթէ եկեսցէ առ ձեզ՝
ընկալջի՛ք զնա ||: Նաև առ փիլիմոն · համար ·
24 · * ողջոյն տայ քեզ եպափրաս գերեկից
իմ 'ի ք̃ս յ̃ս, և մարկոս և արիստարքոս և
դեմաս և ղուկաս գործակիցք իմ ||: Նաև առ
տիմոթէոս, 'ի Երկրորդն Ե̃ · Դ̃ · 9 = 11 · * Փու-
թասջի՛ր գալ առ իս վաղվաղակի · զի դե-
մաս եթող զիս, և սիրեաց զ̃ա, և գնաց 'ի
թեսաղոնիկէ · կրեսկէս 'ի գաղիղեա (կմ̃ 'ի
գաղատիա), տիտոս 'ի դաղմատիա · ղուկաս
միայն է ը̃ իս: Զմարկոս առեալ ը̃ քեզ ա-
ծիցես (յեփեսոսէ՝ 'ի հռովմ) · զի է ինձ պի-
տանի 'ի սպասաւորութ̃ի ||:

Նրդ յայս ա̃մ բանից գրոց իմաստասիրեն-
բազումք 'ի նախնեաց և ոչ սակաւք 'ի յետ-
նոց, թէ սա ինքն յովհաննէս մարկոս է նոյն
ինքն ն̃րն մարկոս աւետարանիչ, զոր և 'ի
հռովմ առ իւր ունէր ն̃րն պետրոս, և որդի
իւր ձայնէր · վ̃ոյ մնացեալ պատմութ̃ն խըն-
դրելի է՝ յորոց միանգամ ունիմք աւանդել
'ի վարս մարկոսի աւետարանչի: Բայց սա-
կայն եղեն և ոմանք՝ ո՛չ այնչափ յառաջնոց,
որչափ 'ի յետնոց, որք որիշ համարեցան 'ի
մարկոսէ աւետարանչէ զայս յովհաննէս մար-
կոս · և ը̃ այդմ եդաւ 'ի ժամագիրս յունաց
և 'ի յայսմաւուրս հռովմայեցւոց և 'ի նոր
տօնացոյցս հայոց · բայց ո՛չ 'ի հին տօնացոյցս
մեր, և ո՛չ 'ի յայսմաւուրս մեր կա̃մ յունաց:
Նաև որք զատանեն զյովհաննէս մարկոս ու-

րոյն , այսպէս նշանակեն զլրումն պատմու-
թեան որ տարտամ բանիւք ։ Յետ կատարման
մահն սրբոյն Բառնաբայ եկեալ Յովհաննու
Մարկոսի առ սուրբն Պօղոս , և զբազում ժամա-
նակս գործակից լեալ նմա՝ հուսկ յետոյ եղե-
եպս Բիբլիայ քաղաքի Ապողոնիադայ , կամ
Բիբղուպօլեայ Փիւնիկեցւոց , և կմ պատի-
բողոմայ 'ի Բաբելոնի ։ և անդ կատարեցաւ
նահատակութբ ։ Որ է աւանդ անստոյգ՝ ա-
ռեալ յերկուց տեղեաց . մի՝ զի Բիբլիա յիշի
'ի վարս Բառնաբայ 'ի նմին իսկ 'ի Յովհաննէ՝
ոչ տեղի կատարման 'ի Կիպրոս . և միւս ևս՝
զի սուրբն Պետրոս 'ի յիշելն զՄարկոս 'ի թղթի
իւրում՝ յիշէ և զեկեղեցին Բաբելոնի , որ ա-
ռաւել զՀռովմ կամ զԱղեքսանդրիա երևի
նշանակել . բայց քանզի 'ի հինն Բաբելոնս
կայր պատուիբեղոն քաղաք , 'ի նոյն հակա-
միտեալ են միտք ոմանց 'ի գրչաց ։ Իսկ զոր
գրէ Ժամագիրք Յունաց զՅովհաննէ Մարկո-
սէ , թէ * այնպէս ընտանացեալ էր այ , մին-
չև 'ի ձեռն հովանւոյ իւրոյ փարատել բզ-
հիւանդութիս ‖ , ըստ նմանութեան սրբոյն Պետ-
րոսի , թերևս առաւել Մարկոսի աւետարանի-
չի է անկ ։

**Նորոյ [illegible] հեղինակն Հայերորդութեան և
վկայութեան որ առաքելոյն Բառնաբայ՝ Յով-
հաննէս Մարկոս . զորոյ արժան է լսել ըզ-
բանս իւր , որ զանձնէն , ակնդէմ ունելով
այսպէս ըստ յունականն հին մատենի . * Բանա-
զի 'ի գաղատենէ ( կամ 'ի հասանելոյ գալս-
տեան ) փրկչին մերոյ յի քի , անմեհերի և**

գթասիրի և հզօրի և հովուի և բժշկի, զանձառ և զՏր և զանարատ խորհուրդն, որոց զպայման սրբութե՛ ունողաց և կնքելոց քրիստոնէից, հայեցայ և տեսի ես, և ծառայեցի մտադիւրութե՛, կարևոր համարեցայ զոր տեսի և լուայ զխորհուրդս՝ պատմել: Ես յովհաննէս հետևողակից բառնաբայ և պօղոսի առաքելոց, պաշտօնեայ լեալ երբեմն կիւրղոսի քհնյապետի (կամ քրմապետի), իսկ այժմ զշնորհս հոգւոյն ս՛րբ առեալ 'ի ձեռն պետրոսի առաքելոյ և բառնաբայ և պօղոսի՝ արժանաւորացն կոչման, որք մկրտեցինն զիս:

Ես յետ մկրտելոյ իմոյ տեսանէի 'ի տեսլեան զայր ոմն, զի կայր յանդիման՝ արկեալ զիւրեաւ պատմուճան սպիտակ, և ասէր. քաջալերեա՛ց յովհաննէս, զի և անուն քո փոխեալ՝ անուանեսցի մարկոս. և փառք քո ը տիեզերս համօրէն քարոզեսցի. և որ 'ի քեզ խաւարն՝ եանց 'ի քէն, և տուաւ քեզ հանճար առ 'ի խելամուտ լինելոյ խորհրդոցն այ: Իբրև տեսի զայս տեսիլ, զդողանի հարեալ՝ չոգայ առ ոտս բառնաբայ, և պատմեցի նմա՝ զոր տեսի և լուայ յառնել անտի ըղխորհուրդս: Իսկ պօղոս առաքեալն ոչ էր մերձ, յորժամ յայտնեցի զբանս զայսոսիկ: Եւ ասէ ցիս բառնաբաս. մի՛ ումեք ասիցես արտաքոյ զզօրութիւն՝ զոր տեսեր. գիտեա՛, զի և ինձ 'ի գիշերիս յայսմիկ երևեցաւ տէրն, և ասէ. քաջալերեա՛ց, զի որպէս ետուր զանձն քո վս անուան իմոյ 'ի մեռա-

նիլ

նիլ և յօտարանալ յազգէ քումմէ, սոյնպէս
և կատարեսցիս. բայց և զոր առ ձեզն է
պաշտօնեայն, և զնա առջիք ընդ ձեզ. զի ու-
նի զխորհուրդս իմն ածայինս։ Եւ արդ ո՛ր-
դեակ պահեա՛ յանձինն քում զբանսն, զոր
տեսեր և լուար. զի հանդերձեալ է ժամա-
նակն յայտնելքև զայդոսիկ։

Արդ՝ զայս խրատ առեալ 'ի նմանէ՝ մնա-
ցաք յեղեմ աւուրս ոչ սակաւ. և եկաք յան-
տիոք. անտի եկաք 'ի սելևկիա. և անդ կա-
ցեալ զաւուրս երիս՝ նաւեցաք 'ի կիպրոս. և
ես էի պաշտօնեայ նց, մինչև շրջեցաք ընդ
ամ կիպրոս։ Եւ ելեալ 'ի կիպրոսէ՝ հասաք
'ի պերգէ պամփիւլեայ. և անդ ես մնացի
իբրև զամիսս երկու. կամեցեալ յարևմտեան
կողմանս երթալ (յետ դառնալոյ յեղեմ),
և ոչ թողացոյց ինձ հոգին սբ։ Եւ դարձ ա-
ռաքեալ վերստին՝ խնդրէի զառաքեալսն.
իմացեալ՝ թէ յանտիոք են, չոքայ առ նս. և
գտի զպօղոս՝ խոնջ յաշխատութէ և 'ի ճա-
նապարհորդութէ յանտիոք։ Իսկ բառնա-
բաս աղաչէր մտանել նց 'ի կիպրոս և ձմե-
րել. և ապա երթալ յեղեմ 'ի տօնին. և բա-
զում հակառակութի եղև 'ի մէջ նց։ Բառ-
նաբաս աղաչէր, զի և ես զհետ երթայց նց
յաղագս 'ի սկզբանէ պաշտօնեայ լինելոյ
իմ նց, և սպաս տանելոյ նց ընդ ամ կիպրոս,
մինչև գնացաք 'ի պերգէ պամփիւլեայ. և
անդ մնացի ոչ սակաւ ժամանակս։ Իսկ պօ-
ղոս ընդդէմ կայր բառնաբայ, և ասէր. չէ
մարթ զմա ընդ մեզ գալ։ Եւ որ անդ եղ-

բարքն էին՝ ասէին, թէ արժան է և ինձ գալ ընդ նմա՝ վասն ուխտ դնելոյ իմոյ (զղջմամբ) հետևօղ լինելոյ նմա ցմախձան։ Մինչև ասել պօղոսի (ցբառնաբաս)․ եթէ կամիս առնուլ զյովհաննէս՝ որ և մարկոս՝ ընդ քեզ, երթիցիր յայլ ճանապարհ․ զի ոչ գայցես (կամ ոչ գայցէ դա) ընդ մեզ։ Իսկ բառնաբաս զմտաւ ածեալ՝ ասէ․ զայն՝ որ միանգամ ծառայեացն մեզ, ոչ 'ի բաց դարձուցանէ շնորհքն այ․ արդ եթէ և այս ախորժելի է քեզ հայր պօղէ, առեալ զնա երթայց։ Նու-նա ասէ․ Երթ շնորհօքն այ, և մեք հոգւովն Տրբ։

Ձայս վայր են բանք յովհաննու մարկոսի զանձնէ․ իսկ զմնացուածս պատմութեն մինչև 'ի կատարումն նոյն բառնաբայ՝ եդաք 'ի վարս նր։ Արդ՝ զայս ամէ իմանալ և 'ի բանից նոյն ղուկասու 'ի գործս առաքելոց․ և չէ ինչ՝ եթէ մարկոս, որ ոչ բարւոք արար՝ զի մեկնեցաւ զառաջինն յառաքելոց, որպէս և յետ դառնալոյ պատճառ եղև գժտութե նց, հնարի արդարացուցանել ընդ կարի զանձն, ես առաւել զբառնաբաս․ զի թէև մարկոսի անխտարանչի լինէր այս գրուած, չև էր յայնժամ առեալ զշնորհս սրբազան գրչի։ Այլ և ընդ պօղոս չկարէ ոք գայթակղել վասն ընդդէմ դառնալոյ մեծին բառնաբայ․ զի անաչառութի նր արդարացեալ է յամի պարծանօք․ ընդ որում և ինքնին պատմէ զընդդէմ դառնալն իւր կեփայի յանտիոք, և մեղադիր լինելով մարդկային ախտածութե՝ ընդ նովին մեղապարտնօք

նոցա արկանէ դարձեալ զբանտապանս ․ մինչև բանտապանս անգամ խոնարհեցան առ 'ի նոյն կեղծաւորութիւն ․ և յայտ է թէ ստքիմբք ոչ պահպանեցան 'ի տիրոյ պետրոսի և բանտապա-նայ, այլ առաւել հաստատեցան ։ Օ այս-ամ յառաջ բերաք 'ի ցուցանել, թէ չէ՛ք ինչ աւանդ զյովհաննէ մարկոսէ, որ ոչն 'ի դէպ դայցէ մարկոսի աւետարանչի ․ վոյ և չէ դիւրին, և չէ՛ք իսկ հարկ որոշել զմին 'ի միւսմէն ։



# ՎԱՐՔ ՍՐԲՈՑՆ

## Շիղայի (և) Սիղուա՛նոսի ։

Հ․ յունիս ․ 26 ։ Յ․ յուլիս ․ 30 ։ Լ․ յուլ․ 13 ։
Բոլլանդեանն ունեն 'ի Է հատ․ յուլ․ ժգ ․
476 = 479 ։



ԵՐԿՈՒ ԱՅՍ ԱՆՈՒԱՆՔ ոչ այնչափ զանազանելն 'ի միմեանց, որչափ նոյնանալն ըստ ստոյգ տեսութե ․ բայց քանզի 'ի գործս առաքելոց շիղա գրի 'ի ձեռն ղուկայ միշտ, և 'ի թուղթս պօղոսի և պետրոսի սիղուա՛նոս անուա՛նբ միշտ, աստի եղև ոմանց զանազան կարծել զերկոսեանն՝ ոչ այլ և այլ

աշակերտս 'ի թուոյ եօթանասնից ։ Նոյնս Շիղա , որ ըստ յունաց Սիլաս , և միւս անուամբ՝ որ 'ի մեզ գրի Սիղուանոս կամ Սուղիանոս և կամ Սիղուիանոս , ըստ յունաց Սիլուանոս , անխտիր հանգիտանան ըստ հերոնիմոսի ըստ եբրայական ձայնիս ղալաադ , որ թարգմանի առաքեալ . զոր երևին հռովմայեցիք առ նովին իսկ Շիղայիւ վերածեալ 'ի լատին բառ նշանակաւն . և ոչ թէ ծագեալ իցէ 'ի ձայնէս Սիլուա , որ է անտառ , սովորեցան կոչել Սիլուանոս , որ է անտառային , ոչինչ ըստ հայանուանես Սիլուէստրէր՝ որ է 'ի մեզ Սեղբեստրոս ։ Այլ է և կարծիք ոմանց , թէ նոյն ինքն Շիղայ է և նոտարն պօղոսի 'ի թուղթն հռովմայեցւոց տերտիոս կոչմամբ . զի որպէս առ հռովմայեցիս Տէրտիոս թարգմանի երրորդ , նոյնպէս և առ եբրայեցիս՝ Շէլիշի ։ Որդայս սմա թողեալ ըստ անստուգութեան՝ քաղեացուք զբանս սբ գրոց , որ ըստ անուամբ Շիղայի կամ Սիղուանոսի ։

Շիղա սբ առաքեալն՝ ոչ զմի 'ի գլխաւոր աշակերտաց գովութիւն յիշի 'ի գործս առաքելոց . Գլ. ԺԵ = ԺԷ ։ Իբր զի առաքեալքն 'ի դիմաց ժողովոյ իւրեանց առաքեցին յանտիոք ըստ պօղոսի և ընդ բառնաբայ զՇիղա և զյուդա բարսաբաս՝ ոչ արս գլխաւորս 'ի խաղաղել զվէճն , որ ծագեալ էր անդ վասն թլփատութե . վնյ և 'ի ժողովական նամակի իւրեանց կոչեն զնս արս ընտրեալս ։ Նաև հաւին սբ յանտիոք , առէ գիրն , յուդա և Շիղա՝ զի և նք մարգարէք էին , բանիւք բազ-

մօք

մօք մխիթարեցին զեղբարս և հաստատեցին. և 'ի դառնալ յուդայի և այլոց ոմանց յեմ, հաճոյ թուեցաւ շիղայի մնալ անդէն յանտիոք. զոր և ընտրեալ պօղոսի իւր գործակից՝ 'ի մեկնիլ բառնաբայ ընդ մարկոսի 'ի կիպրոս, շրջեցաւ նովաւ հանդերձ 'ի կողմանս ասորւոց և կիլիկեցւոց. և եկեալ 'ի լիւստրա՝ եառ ընդ իւր նաև զտիմոթէոս. ապա շրջեալ ընդ փռիւգիա և ընդ կողմանս գաղատացւոց՝ դարձան 'ի տրովադա. և անտի եկին 'ի մակեդոնիա՝ ընդ իւրեանս ունելով և զպատմող բանիցս զղուկաս աւետարանիչ:

Ընդ 'ի փիլիպպուս կողոնիա՝ որ 'ի գաղթական քաղաք, որ ունէր զազատութին հռովմայեցւոց, դադարեցին աւուրս ինչ, և ագան 'ի տուն հաւատացեալ կնոջ միոյ՝ որ կոչիւր լիդիա ծիրանավաճառ 'ի թիւատիր քաղաքէ. և 'ի բժշկել պօղոսի զայսահար աղախին ոմն, բարկացան տեարք նր՝ որոց շահ էր մոլեգնութի նր. և առեալ զպօղոս և զշիղա՝ ձգեցին 'ի հրապարակ առ իշխանսն. և 'ի լինել ամբոխի՝ զօրագլուխքն հրամայեցին գան հարկանել զառաքեալսն. և բազում վէրս եդեալ 'ի վր նց՝ արկին 'ի բանտ. և պատուիրեցին բանտապետին զգուշութբ պահել զնս. որոյ և նա էարկ զնս 'ի ներքին բանտ, և պնդեաց զոտս նց 'ի կոճեղս:

Իսկ 'ի մէջ գիշերոյն պօղոս և շիղա կային յաղօթս և օրհնէին զած, և ունկն դնէին նց կալանաւորքն. և եղև յանկարծակի շարժումն մեծ՝ մինչև շարժիլ հիմանց բանտին.

և բացան անդէն դրունքն նմ, և ամենեցուն կապանք լուծան ։ Եւ իբրև զարթեաւ բանտապանն, զահի հարեալ անկաւ առաջի պաւղոսի և շիղայի, և դարձաւ առ Տր և մկրտեցաւ 'ի նոցանէ նմ տամբ իւրով. և արար նց սեղան ։ Ապա ծանուցեալ զօրագլխաց և՛ զանմեղութն առաքելոց, և՛ զհռովմայեցին լինել նց ազատութն, արձակեցին զնս պատուով, աղաչելով զնս երթալ 'ի քաղաքէ անտի խաղաղութբ ։

Իսկ նք առաքեալքն շրջեալ ընդ ամփիպօլիս և ընդ ապողոնիա՝ եկին 'ի թեսաղոնիկ, և դարձուցին առ Տր զոմանս 'ի հրէից, և զբազումս 'ի հեթանոսաց. և 'ի լինել անդ և ևս խռովութն՝ եղբարքն վաղվաղակի գիշերայն յուղարկեցին զպօղոս և զշիղա 'ի բերիա, այն է վեռիա մակեդոնիայ. ուր դարձուցին նք զայլ ևս բազմութն հեթանոսաց ։ Եւ 'ի յարուցանել հրէից եկելոց 'ի թեսաղոնիկեայ զամբոխ՝ առաքեցին եղբարք զպօղոս յաթէնս. և ապա նր պատուէրելոյ նր եկին անդր նաև շիղա և տիմոթէոս. և յետոյ դարձան անդրէն 'ի թեսաղոնիկ՝ որ է 'ի մակեդոնիա. և անտի 'ի կորնթոս մայրաքաղաք աքայեցւոց, ուր եկեալ էր և պօղոս. և 'ի նստիլ պօղոսի 'ի քաղաքի անդ և 'ի սահմանս նր տարի մի և ամիսս վեց՝ գործակից էր նր և շիղա ։

Արդ 'ի նոյն ժամանակս, և 'ի նոյն շիղա վերածին ինքնին նաև ասացուածք պօղոսի ընդ անուամբ սիղուանոսի, 'ի գրել անդ յերկրորդ

րորդ Թուղթն առ Կորնթացիս. ա. 19. * Որ-
„ դին Այ Յս Քս, որ 'ի ձեզ մեօք քարոզեցաւ,
„ ինև և Սիղուանոսիւ և Տիմոթէիւ ‖ ։ Այլ
և զերկոսեան իսկ Թուղթսն առ Թեսաղո-
նիկեցիս՝ յերկից անտի գլխոյ գտանեմք գրեալ
այսպէս. * Պօղոս և Սիղուանոս և Տիմո-
„ թէոս՝ եկեղեցւոյդ Թեսաղոնիկեցւոց,
„ յԱծ հայր մեր և 'ի Տր Յս Քս ‖ ։ Եւ նոյն
անձն Շիղայի կամ Սիղուանոսի ակնարկէ և
բանն Պետրոսի գրեալ 'ի Հռովմայ առ արևե-
լեայս. * 'Ի ձեռն Սիղուանոսի հաւատարիմ
„ եղբօր, որպէս կարծեմ՝ փոքր 'ի շատէ գրեցի
„ առ ձեզ՝ մխիթարել, և 'ի վր սորին վկայ-
„ ել... ողջոյն տայ ձեզ՝ որ 'ի Բաբելոն ընտ-
„ րելակից եկեղեցին է, և Մարկոս որդի իմ ‖ ։
Արտաքոյ բանիցս այս գրոց չիք ինչ աւանդ-
աւանդ զանուանէ Շիղայի կմ Սիղուանոսի ։
Են որք գրեն 'ի պատմութե եօթանասուն
և երկու աշակերտաց, թէ Շիղա ձեռնադրե-
ցաւ 'ի Պօղոսէ եպս Կորնթացւոց, կմ Կող-
մանցն Մակեդոնիոյ. և անդ կատարեցաւ
նահատակութբ 'ի պրիպուս քաղաքի ։ Այլ
և ը անուամբ Սիղուանոսի երկրորդեն, թէ
ձեռնադրեալ 'ի նոյն Պետրոսէ կմ 'ի Պօղոսէ
յեպսութի Թեսաղոնիկեցւոց՝ անդ կատա-
րեցաւ. որ է պէսպէս իմաստասիրել 'ի նա-
խագրեալ բանից անտի գրոց ։

Ս նշխարաց նոյն Շիղայի գրեալ է 'ի յետ-
նոց ումանց, թէ նշխն բայինոս եպս Մռախինաց-
ւոց յարևմուտս՝ յամի Տն 691, ընկալեալ 'ի
պարգևի մասին 'ի Սերգիոսէ Հռովմայ Հայ-

րա

# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Դիոնեսիոսի արիսպագացւոյ ։

Հ. հոկտ. 4 ։ Յ. հոկտ. 3 ։ Լ. հոկտ. 9 ։ Ճառընտ. Ա. ճխէ = ՏԾԴ. և Ռ. շւԲ = շԾԷ ։ Սուրիոս 'ի Մետափրաստեսէ և յայլոց 'ի հատ. Է. երես. 711 = 744 ։ Հաւլլոյէս և այլք 'ի Գործս դիմնես. հատ. Է. 1 = 474 ։ Միխայէլ սինկէղ ։ Մեթոդիոս ։ Մ. Նոտարաս Գրաղեր ։ Ռ. ուշիրաս ։ Կանենաբոս ։ Հիւլլոսեանս ։ Հինգշմարու. Լ.Ս. ։ (1)

Դ ԻՈՆԵՍԻՈՍ ԱԹԱՌԱԲԵԼԱ-կան հարց, և դաստապետ մեծաքան վիճակաց եկեղեցւոյ՝ մեծն Դիոնեսիոս աշակերտ պօղոսի առաքելոյն՝ արիսպագացի կոչի կամ արիոսպագացի, քանզի մի էր 'ի դատաւորաց աթենացւոց՝ որք նստէին 'ի մեհենի դից իբրեւ 'ի տուն ատենի արտաքոյ քաղաքին աթենայ, 'ի մօտակաց աւանին՝ ուր կայր հոյակապ տաճար և բագին չքնաղ պատերազմաց՝ արեսի. յորմէ և տեղին կոչէր 'ի լեզու ատտիկեցւոց արէոս բագոս, այսինքն արեսի գիւղ կամ բլուր. որ համարեւոր էր առ աթենացիս տեղի դատաստանի երկոտասան դից. և անդ նստէր գլխաւորն դատաւորաց աթենացւոց,

որք

որք էին երբեմն Թոնդրակինն, և ապա եղեն յիսուն և մի. կմ՛ յետ քննելոյ նոցունց զդատաստան արեան՝ ապա յանդիման յիսուն և մի իշխանաց դատապարտէին զմե զանչակինն. և այն դատաստան համարեալ էր անվրէպ և անհրաժեշտ։ Ասի ևս, թէ դատաւորք արիսպագին 'ի մթան գիշերի առնէին զդատաստան. զի մի հայեսցին 'ի խօսողս, այլ 'ի խօսեցեալ բանս։

Այլ էին դատաւորքս այս՝ որք ընտրեալք 'ի մեծամեծաց քաղաքին, իբրև առաւել առաքինիք և իմաստունք. ոչ և աթէնք ողջոյն՝ քաղաք իմաստասիրութե ճանաչիւր, և մայր իմաստութե։ Այլ քանզի սեպհական էր անուանդ արիսպագացի՝ դատաւորացս այսոցիկ, և մանաւանդ գլխաւորինց, նմին իրի և դիոնեսիոս կամ մի էր 'ի գլխաւորաց, և կմ գլլուխ այնց դատաւորաց։ (2)

Արդ՝ ըստ պատմելոյ նըյն Ղուկասու 'ի գործս առաքելոց, յորժամ նըն պօղոս քարոզեաց յաթէնս և յարիսպագին՝ լի հոգւով սբվ, հանդերձ գիտնաւոր բանիւք՝ որովք եցոյց զանձն տեղեակ և ճարտարացն արտաքնոց 'ի պէտս նորանէր լսելեաց աթենացւոց, ոմանք որք անկեալք 'ի նա՝ հաւատացին. ընդ որս էր և դիոնեսիոս արիսպագացի, և կին մի (այն է ըստ կարծեաց ոսկեբերանի և ամբրոսիոսի՝ կին նորին դիոնեսիոսի) անուն դամարիս, և այլք ընդ նս, նց ընտանիք և ծառայք նց։

Այսչափ ևեթ յիշատակութե է 'ի նք գիրս

կը

վն Դիոնեսիոսի · իսկ զմնացեալ աւանդս յարտաքին պատմութեց՝ բազմօրինակ հաւաքեցին հին և նոր մատենագիրք՝ որք անուանիք, իւիք իւիք միաբանք, և այլով մասամբ անմիաբանք · այլ ամենեքին իսկ անծանօթ եղեն բուն աղբերն, զի հին պատմութին գրելոյ 'ի բերանոյ նորուն Դիոնեսիոսի մինչև 'ի դարձ իւր · որ գտանի 'ի Ճառընտիրս մեր թարգմանեալ նախ քան զաւուրս վկայասէրի 'ի յովհաննէ բժշկէ 'ի թուին հայոց յժը, կամ յիթ · այն է ամի տն 869, կամ 880 · զոր արժան է քաղել մեզ աստանօր իբրև աւանդ համաձայն սրբազան և արտաքին պատմութեց, և ապա զլրումն վարուցն կարգել համեմատութք բանից այլևայլ վկայագրաց ։ Արդ պատմութի Ճառընտրաց Դիոնեսեան՝ ունի այսպէս ։ (3)

Դիոնեսիոս արիսպագացի՝ որդի էր սոկրատայ գլխաւորի և փառաւորի աթենացւոց, յորովայնէ մօր իւրոյ ձօնեալ 'ի ծնողացն 'ի լինել քհյ Ժմկի զոհ իշխանին դիւաց, այս է դիոսի կամ արամազդայ դիցահայր կոչեցելոյ · վսյ իբրև եղև եօթնամեայ, մատուցին զնա ծնօղքն նր 'ի տաճար անդր իշխանի ուծոց՝ կատարել զուխտ իւրեանց զենմամբ նր ։ Իսկ քհնայքն զի քուրմք արամազդայ իբրև տեսին զվայելչութի դեղոյ մանկանն, ողորմեցան նմա, և ասեն ցծնօղս նր · լաւագոյն է ձեզ՝ և առաւել հաճոյ դից, զի լինիցի մանուկդ այդ պաշտօնեայ նց քան զոհ · վսյ թողցուք զդա կենդանի, և պաշտեսցէ զուծսն զնմ

ժա-

ժամանակս իւր. և ծնօղք նորա ուրախ եղեն յոյժ, և թողին զնա մտադիւր 'ի տաճար կռոցն:

Իսկ քուրմքն այն փոյթ կալան վաղվաղակի կրթել զնա յուսումն, և պահէին զնա քնքշանօք մեծ պատուականութեամբ և մեծութեամբ ծնողացն: Եւ յետ աւուրց ինչ եկն տօն արամազդայ իշխանի աստուածոցն. և եկն գլխաւորն արիսպագին 'ի տաճար անդր գնդաւ իւրով. և յորժամ ետես զդիոնեսիոս անդ, ասէ. ո՞ ես մանուկ դու, և կամ ուստի՞: Եւ իբրև լուաւ 'ի նմանէ զանուն հօրն և զնուիրութիւն 'ի դիցն պաշտօն, ուրախացաւ, և հրամայեաց քրմաց և իմաստասիրաց առաւել խնամով հասուցանել զնա 'ի կատարումն ամենայն իմաստասիրութեան:

Յայնժամ եդաւ զնա դիոկրատէս գլխաւորն իմաստասիրաց, (որ թերևս յետոյ հաւատաց, և կոչեցաւ յուեթէոս.) և ամենայն յօժարութեամբ սրտի մարզեաց զնա յամենայն գիտութիս. մինչև եհաս պատանին յարբունս հասակի, և քաջ գտաւ 'ի հմտութիւն աստեղագիտութեան ընդ ամենայն հանգամանաց՝ որոց տեղեակք էին իմաստնագոյնքն 'ի մէջ աթենացւոց. միանգամայն և խելամուտ եղև մասնաւորաբար ամենայն յուզմանց փիլիսոփայից:

Իբրև եղև դիոնեսիոս այր կատարեալ, յայնմ հետէ հաւանութեամբ ամենեցուն ընտրեցաւ նստիլ ընդ դատաւորսն, և առնել դատաստան, և լինել հրամանատու: Եւ յաւուրսն յայնոսիկ նորոգեցաւ դատաստանոցն աթենայ,

նայ, այն է ատեանն արիսպագին. և 'ի ժո-
ղովել անդ բազմութեան՝ գլխաւորն 'ի դատա-
ւորս ծանոյց աւագաց և իմաստնոց և քրմաց
աթենացւոց, իբրև 'ի հրամանէ բագնին՝ որ
կանգնեալ էր 'ի սահմանս աթենայ յանուն
անծանօթի ա̄յ, թէ ելէք և ասացէք ա̄մ ժո-
ղովրդեանդ, զխո՛րդ հրամայէ ձեզ իշխանն
տիեզերաց և ամենակալն իշխանութեց, որ
ունի իշխանութի 'ի վ̄ր իշխանութեց Քրիս.
ասէ. ընտրեցէք ինձ դատաւորս՝ որ առնեն
դատաստան արդար, և առաջնորդ լիցի ն̄ց
դիոնեսիոս որդի սոկրատայ. ո̄րպս զի եղիցի
սա մխիթարիչ քահանայիցն, և այլ ևս մի
պակասեսցէ ն̄ց յամէ և ոչինչ ։ Եւ յորժամ
լուան զայս աթենացիքն, ուրախ եղեն յու-
րախութի մեծ, և արարին՝ ո̄պ հրամայեցաւ ն̄ց ։
Եւ յետ ոչ բազում ժամանակաց հասանէր
օր մեծ հեթանոսաց 'ի մեծապայծառ քա-
ղաքն քրմաց 'ի հեղիուպօլիս եգիպտացւոց,
որ է արեգ քաղաք, կ̃մ արեգական քաղաք,
բալբաք կոչեցեալ, մերձ 'ի բիւրիտոն և 'ի
դամասկոս. ուր էր մեհեան կռոց նշանաւոր
երեքքարեան. և ժողովեցան 'ի քաղաքն անդր
վ̄ս տօնի աւուրն անթիւ բազմութի յա̄մ
կողմանց ։ Եւ յամբոխէ անտի կուտակելոյ՝
մի ոմն 'ի քրմացն յեցաւ 'ի կուռսն, որում ա-
նուն էր սերապիս. և անկաւ կուռքն, և
փշրեցաւ ուլն ն̄ր. և եղև շփոթ մեծ 'ի քա-
ղաքին, և բազում չարիք գործեցան վ̄ս այնր
պատճառի, և կորուստ բազմաց ։ Իսկ գլխա-
ւորք տեղւոյն խորհեցան սպանանել զզ-

քուրմն իբրեւ չարեացպատրաստ. զի երկեան լինել նմա պատուհաս յաստուծոյն. եւ կոչէին զանուն քրմին աստուածապան. բայց զի մի՛ անխորհրդաբար ինչ գործեսցեն, եւ չար եւս լինիցի, կալան եդին զնա յարգելանի. եւ ինքեանք գրեցին առ քուրմս իշխանութեան աթենացւոց, եւ պատմեցին նմա զամ եղելն. զի նքք թերեւս տացեն խորհուրդ լաւագոյն,

կամ ընկալցին ինչ յայտնութիւն. (4)

Յայնժամ քրմապետն աթենացւոց արար զենումն զոհից, եւ կարդաց առ իշխանն դիւաց, եւ եհան պատգամ հրամանի, զի դիոնեսիոս առաքեսցի յարեգ քաղաք՝ առնել ի բաւսունս, եւ ելս գտանել չփոթութեան: Այլ դիոնեսիոս իբրեւ զծառայ հնազանդ եւ անձանձիր անկաւ յուղի, տարեալ ընդ իւր եւ զուշիմ աշակերտն իւր ապղոփոս (կամ ապկղեպիոս) անուն՝ հանդերձ այլ եւս արամբք իմաստնովք: Այլ յորժամ պատմեցաւ ժողովրդեան արեգ քաղաքին գալուստ դիոնեսիոսի մեծանուն դատաւորին արիսպագեայ, զարդարեցին զքաղաքն ամ զարդուք, եւ ելին ամենեքեան 'ի հանդիպումն նմա. եւ էր ժողովեալ բազմութի յոյժ 'ի տեսանել զնա, եւ լսել զդատաստան նր. եւ այս եղեւ 'ի նախախնամութէն այ 'ի պէտս առաջիկայ իրացն մեծութե. զի ամենեքին 'ի միտ առցեն

զեղեալսն յաւուր յայնմիկ: (5)

Քանզի յորժամ եմուտ դիոնեսիոս 'ի քաղաքն՝ ետ դնել անլին ոսկի (այս է աթոռ, կամ լուսնաձեւ գահ), եւ նստաւ 'ի վր նր 'ի

Թ. մէջ

մէջ քաղաքին 'ի տեղւոջ ասպարիզախաղացին. և ոչ ումեք 'ի քրմաց կմ՟ յիշխանաց հրամայեաց նստել, այլ ամենեքին յոտն կային բազմութի՟ ժողովրդեան՝՝ 'ի լսել բանից նր՟, թէ զինչ իրաւունս արասցէ քահանային այնմիկ սպանողի աստուծոյն իւրեանց. իսկ օրն այն էր ուրբաթ, և ժամն էր իբրև վեցերորդ. քանզի և արեգակն 'ի մէջօրեայ ժամ հասեալ էր.

Յայնժամ զարմանալի իմն շարժեցաւ երկիր ահաւոր զօրութ՟, և անկան կուռքն և փշրեցան. և խաւարեցաւ արեգակն, և մթացաւ լուսին. և ամ՟ աստեղք երևութացան և աներևոյթ եղեն (6). և թանձրութի՟ խաւարին և միգին սփռեցաւ 'ի վր՟ մարդկանն. մինչզի ոչ ոք 'ի նոցանէ կարէր տեսանել զընկեր իւր. և ամենեքեան միապէս անկան 'ի վր՟ երեսաց իւրեանց. լերինք սասանէին, և վէմք պատառէին, և տաճարք բարձունք անկանէին. և ահաւոր ձայն դառն կոծոյ և աշխարանաց լսելի լինէր յամենեցունց.

Եւ եկաց խաւարն այն 'ի վեց ժամէն մինչև ցինն ժամն. և ապա դարձեալ պայծառացաւ լոյսն. և հայեցեալ տեսանէին մարդիկն զերեսս միմեանց իբրև զգոյն մեռելոյ. Յայնժամ քահանայքն և իշխանք ժողովրդեանն արեգ քաղաքի անկան առաջի դիոնեսիոսի, և հայցէին 'ի նմանէ իբրև 'ի ծայրագոյն իմաստնոյ՝ պատմել նց՟ զպատճառ գործոյն այնորիկ ահաւորի, որպիսի ինչ չէր լեալ 'ի սկզբանէ հետէ. Իսկ դիոնեսիոս 'ի մէջ ա-

ռեալ զաստեղաբաշխական զննութիւն է ա-
շակերտին իւրում՝ քննել զդիրս լուսաւո-
րաց ըստ համեմատութեան թուոց տարւոյ և ա-
ւուր, և հետազօտել զշրջանս ժամանակաց
՚ի վ(ե)ր(այ) կազմակերտեալ մեքենայից երկնի և
երկրի (իմա՛ երկնագնտոյ և երկրագնտոյ ըստ
յօրինուածոյ աստեղագիտաց ժամանակին).
և ոչ գտանել՝ թէ յայնմ ամի լինիցի խա-
ւարումն ինչ ուրեք. մանաւանդ հայեցեալ
տեսանէր, զի լուսինն լի էր, և անմարթ էր
յայնժամ հանդիպիլ խաւարման արեգա-
կան:

Այլ իբրև ետե՛ս հաւաստ եղև, թէ չէ՛ գործն
այն ըստ բնաւորական կարգի, ահ մեծ կալաւ
զնա, և լցաւ զարմանալեօք: Այլ ոմն գրի ՚ի
թուղթն դիոնեսիոսի առ սբն պօղիկարպոս,
յայնժամ ընդ նմա էր յարեգ. քաղաքի և ըն-
կեր իւր ապողոփանէս իմաստասէրն. և ՚ի
միասին տեսանէին և քննէին զնմ, և սքան-
չանային: Յայնժամ ասէ ապողոփանէս. այ-
սօրիկ ով գեղեցիկդ դիոնեսիէ՝ աստուածայնոց
իրաց հատուցմունք են (կամ այլափոխութիւնք).
զի կամ գործ բնական կարգաւորութեան հա-
մարեցաւ, և կամ պատիժ մեղաց մարդկան.
Իսկ դիոնեսիոս ՚ի բազում վարանմանց ըն-
կղմեալ կայր յափշուն. և տեսիլ իմն սքան-
չելի թուէր նմա տեսանել, և ազդումն ա-
հաւոր լինէր յոգւոջ նր. մինչև իբրև ՚ի քնոյ
զարթուցեալ՝ արձակեաց զձեռս, և պատա-
ռեաց զհանդերձս իւր առաջի բազմութեան.
Այլ ՚ի հարցանել զնա քրմաց և իշխանաց,

ետ

եա պղնձի և աւէ · գիտութիւն լիցի ձեզ , զի
մեծ և ահաւոր գործ եղև այսօր 'ի մէջ եր-
կրի · զի ամենայն ծածկեալն և անծանօթն
թուեալ յերկնից յերկիր ուրեք՝ զգեցեալ է
մարմին ըստ մարդկային · և ահաւասիկ յայսմ
աւուր կալան զնա մարդիկ ոմանք անօրէնք ,
և զփայտէ կախեցին յեզի ուրեմն · և կացին
յանդիմանն նորա՝ բարերէն զնա և թշնամա-
նէին անգիտութեամբ · և շարժումն այս ահա-
ւոր և խաւարս այս յերկիւղէն յայնմանէ
եղև 'ի մէջ երկրի :

Այս բանն է գիմնեսոփիստի գրեալ աստանօր 'ի
փառս նոյն իւրև 'ի քերթողի իւրմէ · զոր նո-
վին մտօք երկրորդէ իւրև յաւանդութեան մէ-
քայէլ սիւնկեղոս հին մատենագիր յոյն՝ օ-
րինակ զայս : * Յերեսաց նորահրաշ իրաց
յապուշ կրթեալ ( գիմնեսոփոսի ) , և զմարդ-
կայնոյն զեր 'ի վերոյ եղեալ զգիտութեն ,
զմտաւ ածեր զեղեալսն , և ասէր · անծա-
նօթն' 'ի մարմնի չարչարի այժմ · որ վն որե-
ղերք խաւարեցան և շարժեցան ‖ : Իսկ այլք
'ի յունաց ըստ Սուիդասայ գրեն , թէ այսպէս
ասաց գիմնեսոփոս · * կամ այս չարչարի , և
կամ չարչարեցելոյն չարչարակցի ‖ : Այլ և լա-
տինք ըստ հռովմէական ժամագրքի · * կամ
աստուծոյ բնութեն չարչարի , կամ ծիրս կերպարանած
քայքայեսցի ‖ : Այլ յայսմաւուրք հայոց · * ան-
չարչարելի բնութիւն այժմ մարդացեալ՝ չար-
չարի յանծանօթս , և անչարչարելի մնայ ‖ ·
որք առհասարակ զնոյն միտս ընծայեցուցա-
նեն : (7)

Արդ ՚ի լինել այսր ամի՝ ասէ պատմութիւն, դիոնեսիոս նոյնժամայն ետ բերել քարտէս, և գրեաց զօրն զայն ուրբաթ. և զժամն զայն աւուր, և զամիսն և զտարին. և թէ քանի՞ էր լուսինն: Նա և ինքն այնուհետև դիւրաւ մխթարեալ զխռովութիւն քաղաքացւոցն՝ իբրև ստուերանման գուշակութիւն մեծի գործոյն եղելոյ յայնժամ ընդ տիեզերս, դարձաւ ՚ի քաղաքն իւր յաթէնս. և պահեալ ունէր զգիրն զայն ՚ի սքանչելիս և ՚ի յիշատակ. զի յետ վախճանի իմոյ ասէ յուզեսցէ ոք թերևս, և գտցէ զի՛նչ եղեն. քանզի և յաթենացւոց անտի՝ որք ՚ի նմին աւուր զնոյն խաւարումն տեսին տիեզերական, ոչինչ մարթացաւ ըս-
տուգել:

Նաև զկնի երկոտասան ամաց (8) եկն յաթէնս պօղոս՝ տն մերոյ յի քի առաքեալն. և տեսեալ զնա ՚ի ներքոյ և զարտաքոյ քաղաքին լի կռօք, սկսաւ քարոզել նմ ՚ի բաց կալ ՚ի մնոտի պաշտամանց, և հաւատալ յած ճշմարիտ, և յորդի նր ՚ի քս յս: Նա և ՚ի պատմել առաքելոյն վն իշման բանին և յաղագս մարդանալոյ նր, և սքանչելեացն նր, և ապա վն չարչարանաց և մահուան և յարութե և վերանալոյ առ հայր իւր յերկինս, ծաղր առնէին զնա բազումք յաթենացւոց իբրև զայր օտարական և օտարախօս. մինչև եհաս բանն ՚ի լսելիս դիոնեսիոսի արիսպագացւոյ. և զարթեաւ սիրտ նր, թէ ահա արդ լուծանի տարակոյս խորհրդոց իմոց:

Ապա ՚ի վաղիւն անդր ՚ի ծագել արեգական՝

ել

ը̃ իշխանութեան իւրում ետ քարոզ կարդալ 'ի քաղաքին, և ասել. Դիոնեսիոս իմաստնոց և գլխաւորաց դատաւորն հրամայէ ձեզ, զի ամենեքեան ժողովեսջիք 'ի տեղի դատաստանին յարիսպագոսն. և որ ոչ գայցէ 'ի տեղին յայն, արժանի պատժոց լիցի ։ Նոյնժամ ժողովեցաւ 'ի տեղի անդր բազմութիւն քաղաքին. և եկն նստաւ Դիոնեսիոս պատուով մեծաւ յաթոռ իւր, և հրամայեաց քրմաց և իմաստնոց նստել. ապա ետ կոչել զառաքեալն Պօղոս, և հրաման ետ նմա խօսել 'ի լուր ամենեցուն զբան քարոզութեան իւրոյ ։ Եւ կացեալ 'ի մէջ արիսպագին ա̃ծազգեաց անձն և անօթն ընտրութեան և հոգւոյն Ս̃րբոյ բնակարանն՝ սկսաւ աւետարանել զբանն կենաց. և պաշտօնատէրս կոչելով զաթենացիս՝ յինքն ձգեաց զլսելիս ամենեցուն. այլ իբրև յայտ արար ն̃ց, թէ պաշտամունք նոցա չեն ուղիղ, այլ՝ առաջնորդեն 'ի կորուստ անձանց, լցան ամենեքեան սրտմտութ̃բ մեծաւ. և եթէ ոչ էր երկիւղն Դիոնեսիոսի արգելեալ զնոս, նոյնժամայն կամէին քարկոծել զնա և սպանանել ։ Եւ յաւել ասել Պօղոս. շրջեցայ ես ը̃ պաշտամունս ձեր, և գտի բագին մի՝ յորոյ վ̃ր գրեալ կայր. * Ա̃ծ անծանօթ,
„ անհասանելի, անպատմելի, անպարագրե-
„ լի ‖ (9). զայն Ա̃ծն 'ի սկզբանէ զծածկեալն և զանհասհմանելին, յաղագս որոյ ասացին իմաստունքն ձեր՝ թէ նորա ազգ եմք, զնա քարոզեմ ես և աւետարանեմ ձեզ. և պաշտեմ զԱ̃ծն զայն զծածկեալն և զհզօրն ։ Եւ

սկսաւ պատմել զտնօրէնութիւն և զազանչելիս ինն մերոյ, և զհանդէս չարչարանաց և խաչելութեան նր, և զխաւարումն լուսաւորաց 'ի ժամուն յայնմիկ, և զշարժումն երկրի։

Այլ խիստ լուեալ դիոնեսիոս 'ի պօղոսէ զօրն և զժամն՝ յորում եղեն ահագինն այն սքանչելիք, առաքեաց զաշակերտն իւր զապղիփան՝ բերել զքարտէսն, զոր գրեաց յարեգ. քաղաքի վն ահաւոր անցիցն անցելոց. և հրամայեաց նմա՝ զի ընթերցցի բարձր ձայնիւ 'ի լուր ամ ժողովրդեանն։ Հայնժամ յայտնի եղև, զի ի նոյն զայն գրեալն պատմէր պօղոս, և յայտ առնէր՝ թէ վն կամաւոր խաչելութեան արարչին գործեցան այն ամ անցք 'ի մեծի ուրբաթու։

* Այլ նոյնժամայն (ասէ դիոնեսիոս՝ 'ի կարգի պատմութեան) հաւատացի ես 'ի քն որդին այ կենդանւոյ. զի նա է ած անծանօթ՝ ծածկեալ, անսկիզբն և անհասանելի. և հրամայեցի պօղոսի առաքելոյ, ոպ զի պատրաստեսցէ զմկրտութիւն իմ, ոպ հաճոյ երևեսցի. և յորժամ արար զայս, նոյնժամայն մկրտեաց զիս և զկինն իմ (այն է դամարիս, որ կոչեցաւն մարիամ), և զայլ բազում ժողովուրդս յաթենացւոց յարանց և 'ի կանանց։ Իսկ ես 'ի ժամէն յայնմանէ հետևեցայ երանելի առաքելոյն պօղոսի, ես և մարիամ կին իմ. և ոչ մեկնեցաք 'ի նմանէ մինչև յելս նր յաշխարհէս 'ի յայսմանէ (կամ յաշխարհէն ելլադայ). և նա իւրովք ձեռօքն օրհնեաց զիս եպս քաղաքին աթենացւոց։ Այլ արդ եղբարք իմ սիրելիք,

ոչ

ոչ եթէ մարդիկ հանեին զիս և զերծուցին 'ի պաշտելոյ զդիսն, այլ՝ իմաստութիւն այ ելոյծ զիս ||։ Յայս վայր ինքնապատում աւանդութի զորոյն դիոնեսիոսէ ։

Յոր ակնարկէ և ոսկեբերանն ասելն ('ի Է․ գիրս․ յղ․ կորնթացւոցն)․ * Եւ արիսպագացին այն՝ որ 'ի անոտիապաշտ քաղաքէ անտի, ոչ ապաքէն յատենախօսութե նեթ՝ հետևեցաւ պօղոսի համդերձ կնաւն ||։ Եւ ամբրոսիոսի ('ի Ճ գիրս․ Եղբ․ ՅԵ)․ * Դիոնեսիոս արիսպագացի համդերձ ամուսնաւն իւրով դամարաւ և այլովք բազմօք հաւատայ ։ Եւ այնպէս կամձառք զիտնաւորաց և հռետորաց պարզ խօսակցութբ աստի և անտի՝ խոստովան եղեն զանձինս 'ի պարտութ մատնեալ, յօրինակ հաւատացելոց ||։

Բայց քանզի առաքեալքն ամուրեք հաստատէին զբանն նշանօք՝ որ երթայր զհետ նը, գրէ և անանուն մատենագիր եկեղեցական պատմուե զառանձին աքանչելիս 'ի դարձին դիոնեսիոսի և որոց ընդ նմա․ զոր և երկրորդէ յայսմաւուրքն ընդ այսմ օրինակի․ 'Ի քարոզելն պօղոսի զանծանօթն ած առաջի աթենացւոց, * կացուցին առաջի նը կոյր մի, զի լուսաւորեսցէ ։ Յայնժամ ասաց դիոնեսիոս՝ որ գլխաւորն էր քաղաքին․ մի մխեր զձեռն քո 'ի դա, այլ 'ի զատ կաց, և ասա, թէ բացի՛ր անուամբն քո․ և թէ բացցի կոյրն, հաւատասցուք 'ի նա՝ զոր դու քարոզես ։ Պնդիեա պօղոս, և ասաց նմա․ դու ասա զայդ բանս, և տես զզօրութի այն իմոյ ։ Յայնժամ

տեսաց դիոնեսիոս՝ բարձր ձայնիւ՛ անձև հա-ւատով, թէ ով կոյր դու բացի՛ր անուամբն քրի. և առժամայն բացաւ կոյրն. և դիոնե-սիոս հաւատաց 'ի քս, և այլք 'ի քաղաքէն ը̅ նմա. և ապա եղև դիոնեսիոս քաղաքապետն եպս ||: (10)

Յայտնի է յա̃ծաբանական գրոց դիոնեսիոսի և այն ա̃մ, զոր յառաջ բերաք 'ի վարս երկ-րտասան վ̃պաց, թէ բարեփառ առաջնորդն յուեթէոս՝ որ և հերոթէոս, ոչ̃ էր վարժա-պետ դիոնեսիոսի յարտաքին գիտութիս, նոյնպէս և յետ դարձի նր̃ 'ի հաւատս՝ եղև հրահանգիչ նր̃ 'ի խորհուրդս ա̃ծայինն վ̃պու-թե. զի ինքն յառաջագոյն էր հաւատացեալ: Այլ երկոքեանն իսկ յեէ̃մ գտան յաւուր փոխ-ման նր̃ ա̃ծածնի ը̅ այլ առաքելովն. ոչ̃ է տեսանել 'ի տօնի վերափոխման. զորոյ ըղ-պատմութիւնն գրէ նա ինքն դիոնեսիոս 'ի թուղթս իւր՝ որ առ տիմոթէոս և առ տիտոս, զորս տօնեմք ընդ նմա: Գրեն և ոմանք յա-ւանդութէ, թէ 'ի տեսանել դիոնեսիոսի զառաջինն զա̃ծամայր նր̃. կոյսն՝ հրաշագեղ տեսլեամբ, լուսազգեաց և պարուեալ 'ի զուարթնոց, ասացեալ իցէ. որչ̃ ա̃ծուհի պաշտէի զկոյսդ, եթէ ոչ գիտէի զհաւատոյ աւետարանին:

Յուաւնքն դիոնեսիոս 'ի գրելոյ առ նա նքյն պօղիկարպոսի զմիւռնոյ հայրապետին, զի ապողոփանէս իմաստասէրն բամբասէր զնա վ̃ դառնալոյ նր̃ 'ի քրիստոնէութի, և կոչէր զինքն հայրասպան և հայրենատեաց՝ վասն թող-

Թովմայ գնդիոն հայրենիս, և յաղագս 'ի կիր արկանելոյ զգիրս հելլենացւոց զդէմ նոցին իսկ հելլենացւոց ։ Եւ այս պինի արար դիոնեսիոս ․ բայց դու առէ յուշ արա նմա, զի ոչ փայլրապար եկն 'ի հաւատս քն, այլ ամենայ-յն ազդմամբ և ահեղ սքանչելեօք, որովք պարտ էր և նմին ապողոփանեայ շարժիլ և գալ 'ի նոյն հաւատս մեր ․ քանզի ը̃ իս էր և նա յարեգ քաղաքի, յորժամ եղև խաւարումն լուսաւորաց 'ի վեր քան զբնութիւն յաւուր խաչելութեն փրկչին ։ Իսկ յաւել յորդորել զպօղիկարպոս, զի ջանասցի ձգել զապողոփանէս 'ի հաւատս ․ որ և յաջողեցաւ իսկ այն ․ մեծ և դիոնեսիոս գրեաց զկնի թուղթ առանձին առ ապողոփանէս իբրև առ նորոգ հաւատացեալ ․ ուր յուշ առնէ նմա, թէ 'ի ժամանակի խաւարմանն՝ զոր տեսաք յարեգ քաղաքի, ես էի իբրև ամաց քսան և հնգից ․ և դու ևս գրեաւ թէ իմ հասակակից էիր ։ Այսմ ապողոփանեայ աշակերտ եղև 'ի զմանկունս պողեմոն փիլիսոփայ լաւոդիկեցի ․ այլ աշակերտ գտաւ արիստիդէս ճարտարախօս իմաստասէր հաւատացեալ 'ի քն ․ այն՝ որ ետ գիրս ջատագովութեն վն քրիստոնէից առ կայսրն ադրիանոս ։

Գրեաց նոյն դիոնեսիոս՝ բաց 'ի բազմապատիկ թղթոց, և ճառս և գիրս ա̃ծաբանականս՝ խորին տեսութբ, և ազգի ազգի պիտանութիւնս ․ յորոց զբազումս այրեցին և կորուսին աթենացիք, և որք մնացինն՝ ոչ առամենեսին ծաւալեցան 'ի սկզբանէ, այլ յետ

ժա

ժամանակաց. որպէս առ հռովմայեցիս 'ի վախ-
ճան վեցերորդ դարու մեծն գրիգոր պապն յի-
շէ զգիրս նոյն դիոնեսիոսի, և 'ի մեզ ստե-
փաննոս սիւնեցի քերթողն եբեր զայնս 'ի
հռովմայ 'ի սկզբան ութերորդ դարու. և
յայնմ հետէ հռչակեալ է 'ի գիրս հարց և
վ̃դպաց յա̃մ եկեղեցիս, և մանրախուզութե̃
մեկնեալ և հետաքննեալ 'ի հզօր մ̃ծապա-
նից, և պաշտպանեալ ն̃դէմ ոմանց ոմանց
'ի դիմախօսաց:
Իսկ յաղագս կատարման նոյն դիոնեսիոսի՝
կրկին են կարծիք և աւանդութիք, ըստ որում
երկբայութի եղև 'ի վաղուց հետէ, եթէ
երկո̂ւ իցեն ն̃ր հայրապետք առաքելա-
նմանք՝ դիոնեսիոս անուանեալք, մին աթենացի
կոչեցեալ, և միւսն փարիզացի, եթէ մի և
նոյն ն̃ն դիոնեսիոս արիսպագացի երթեալ
իցէ 'ի փարէզ քաղաք գաղղիացւոց, և անդ նահա-
տակեալ: Ի՝ միայն դիոնեսիոս ճանաչեն
յայսմաւուրք հայոց, յունաց և հռովմայեց-
ւոց. բայց հայոցն դնէ զնա յաթէնս նահա-
տակեալ հրով. հռովմայեցւոցն 'ի փարէզ
ասէ նահատակեալ սրով. իսկ յունացն՝ յա-
թէնս դնէ, բայց գլխատեալ. և այն այն-
պիսի հանգամանօք՝ որք միաձայնին ը̃ պատ-
մութե̃ փարէզու: Այլ քանզի իւրաքանչիւր
ոգւոյ կան պատճառք հաւանելի, երկպա-
ռակութի կարծեաց կայ մնայ միշտ առ իմաս-
տունս քննօղս: Իսկ մեզ մնայ նշանակել և եթ
զզանազանութի աւանդից:
Տօնդ յայսմաւուրք մեր առնի այսպէս. * Սե̃ն-
դիռ

դիոնեսիոսի արիոպագացին ... ( բաց յերկից գրոց՝ որ յաղագս Հրեշտակաց , և Եկեղե-ցւոյ , և Հաւատոց ) գրեաց և այլ գիրս . և եդ անուն 'ի գրապահ տեղիսն աթենացւոց ։ Իսկ Հելլենացի կռապաշտքն նախանձեալ ընդ նմայն , այրեցին զդիոնեսիոս , և զգիրս նորա տասն հատորս . երեք գիրք միայն մնացեալ յա̃ծաշունչ տառից նորա առ հաւատացելոցն 'ի պահեստի . զոր այժմ ունի ս̃բ եկեղե-ցի || ։ (11)

Իսկ դարձեալ երկրորդէ 'ի վախճանի , թէ * եղև դիոնեսիոս քաղաքապետն եպս նոյն քաղաքին աթենայ . և այնպէս քաղաքավա-րեցաւ և նահատակեցաւ , որպս գրեցաւ || ։ Զայնակցին այսմ ընդ հանրապէս յօրովք յա-րեմնեան մատենագրաց առ մեզ . յորս լաւ նոյնս բազմօք հաստատէ , թէ նաև բանք նախնեաց ոչ այլուր ցուցանեն զդիոնեսիոս նահատակեալ , բայց յաթէնս 'ի միջնակի իւ-րում , և ընդ նմին պարզապս ասէ . * 'ի վախ-ճանի տարեալ կրից ծանր տանջանաց՝ վկայ-ութբ կատարեցաւ , և որբազանեաց զաթէնս արեամբ իւրով || ։ Այլ ըստ հռոմ կատարումն իւրև աւանդութի ժամագրոց իւրեք յունաց 'ի հոկտեմբերի . գ . յիշէ և կալմէթ 'ի մեկն. գործոց . ժէ . 34 ։

Իսկ բասիլեան յայսմաւուրք յունաց այս-պէս գրէ զնմայն . * Զարախօսեալ 'ի կռա-պաշտից առաջի իշխանին աթենացւոց՝ ըմ-բռնեցաւ համդերձ երկու աշակերտօք իւ-րովք . և բազում տանջեալք՝ նախ խիջն գլխա-

գլխատեցաւ. և՝ առեալ զգլուխն իւր ինքնին ձեռօք իւրովք՝ շրջեցաւ մղոնս երկու. և ոչ վաղագոյն եդ զայն, մինչև հանդիպեցաւ կնոջ քրիստոնէի, և աւանդեաց նմա զայն. յետոյ գլխատեցան և երկոքին աշակերտքն նորա||: Ուր քաղաքն միաբանի ընդ նախագրելոց. բայց կատարումն ակնարկէ յաւանդութիւն արևմտեայց:

Ապա յայսմաւուրք կմ վկայագիրք հռովմայեցւոց գրեն այսպէս. * Ի լուտետիա փարիզացւոց կատարումն սրբց վկայիցն, դիոնեսիոսի եպսի արիսպագացւոյ, հռուստիկոսի քահանայի, և եղևթերիոսի սարկաւագի. յորոց դիոնեսիոս՝ ի պօղոսէ առաքելոյ մկրտեալ՝ առաջին եպս աթենացւոց ձեռնադրեցաւ. և ապա ի հռովմ եկեալ՝ յերանելոյն կղեմայ հռովմայ հայրապետէ առաքեցաւ ի գաղղիա վն քարոզութե. և հասեալ ի նախասացեալ քաղաքն (լուտետիա, որ և փարէզ), և զամս քանի մի անդանօր գեղեցիկ ի գլուխ տարեալ զգործն՝ որ նմա հաւատացաւ, հուսկ յետոյ ի փեսկեննինոսէ դատաւորէ յետ ծանր ծանր և ազգի ազգի տանջանաց ընկալեալ զվճիռ գլխատման՝ ընկերօքն հանդերձ, ելից զընթացս նահատակութե||: Այս այն պատմութիւն է, զոր հաստատեն և յոյնք ի ժամագիրս անդ իւրեանց՝ ընդ սիմէոնի մետափրաստեսի, ոչ և միքայէլ սինկեղոս երէց եմացի, և մեթոդիոս կամ մետրոգորոս. և մեծագոյն մասն լատինն մատենագրաց, որոց գլուխ է հիլդուին

ուինոս աբբայ վանաց սբյն դիոնեսիոսի 'ի գաղղիա յիններորդ դարու . և է ըստ սոցա կարգ և ընթացք վկայաբանութեն սբյն այսպիսի : (12)

Սբն դիոնեսիոս արիոպագացի՝ յետ մկրտելոյն 'ի պօղոսէ ընթացակից եղև նորա 'ի քարոզութեն զամս երիս . և ապա դարձ արարեալ 'ի թեսաղոնիկեայ՝ ձեռնադրեցաւ յառաքելոյն եպս աթենացւոց, և լուսաւորեաց զբազումս բանիւ՛ և գրով, և սքանչելի օրինակաւ վարուց իւրոց, շրջելով առաքելաբար և քարոզելով զաւետարանն մինչև 'ի տրովադա . և ել համբաւ նորա ը̃ ամ̃ տեղիս . զոր ը̃ ազգի և հայրենեաց կոչէին յոնիկոս, ա̃յ յոյն, այլ առ մեծի սրբութեն մակարիոս կարդային, ա̃յ երանելի :

Մինչդեռ 'ի լակեդեմոնիա էր, էառ զլուր 'ի հռովմայ՝ թէ գլխաւոր առաքեալքն պետրոս և պօղոս արգելեալ են 'ի կապանս հրամանաւ ներոնի . և փութացեալ գնալ 'ի տեսնել, մանաւանդ թէ նահատակակից լինել նոցա, դարձ արար յաթէնս . և եդեալ անդ զոմն 'ի տեղի իւր եպս ( ը̃ ոմանց զՃբն յաւթէոս վճպ իւր ), եկն 'ի հռովմ . և եգիտ զառաքեալսն վկայութե̃ կատարեալ :

Ապա հանդիպեալ նոյն կղեմայ հայրապետի, ը̃ յորդորելոյ նորա՝ առեալ 'ի նմանէ ընկերս և գործակիցս, շրջեցաւ յարևմուտս՝ քարոզել զաւետարանն մինչև 'ի գաղղիա և 'ի գերմանիա (13) . և էին ը̃ նմա երկու աշակերտք՝ հռուստիկոս քահանայ, և ելևթերիոս

բիոս սարկաւագ, և երեք այլ ընկերակիցք՝ աստուածինոս, մարկեղոս, և ղուկիանոս. յորոց զաստուածինոս առաքեաց յակուինտանիա, զմարկեղոս 'ի սպանիա, և զղուկիանոս քահանայ զայր առաքինի և հզօր 'ի քաղաքն բեղոնակայ կղզւոյ: Իսկ ինքն հրաման առեալ 'ի հրեշտակէ ա՟յ՝ եկն երկու աշակերտօք նախ 'ի քաղաքն արեղատայ, որ 'ի մուսս ծին գաղղիացւոց. և անդ եկեալ դադարեաց 'ի լուսետիա, ք՟ի 'ի փարէզ, որ էր յայն ժամ քաղաք փոքրիկ. ուր բազում աշխատութ՟բ՝ նշանօք և զօրութ՟բ ամոքեաց զկայրենամիտս 'ի հնազանդութ՟ն հաւատոց:

Իսկ իբրև որ քան զօր բազմանային հաւատացեալք, խնդրեաց երանելին դիոնեսիոս 'ի լեսբիոսէ ազնուական առնէ փարիզացւոյ հաւատացելոյ, զի վաճառեսցէ ինքեան զագարակ իւր՝ շինել անդ յանքայթ տեղւոջ զմկրտարան և զեկեղեցի. և 'ի կամիլ նո՟ր ձրի տալ զտեղին՝ ասէ դիոնեսիոս. ո՟ր մեր և ա՟ծ յո՟քո՟՝ որ արարիչն էր ա՟յս, վ՟ո փրկուե մերոյ յանձն էառ ծնանիլ 'ի տեղի մի կալեալ 'ի վարձու. վ՟ոյ և մեզ չէ արժան ձրի ստանալ զտեղի վերբաքին ծնանելոյ աւազանաւ. ո՟պ և գնով առեալ նո՟ր գնեցաւ ագարակ 'ի գերեզմանս օտարաց. արդ և ինձ արժան է գնով գնել զայս ագարակ. ուր հանդերձեալ են օտարացեալքն յա՟յ և գերեալքն 'ի բանսարկուէն վերագրիլ յազատութ՟ն հաղորդութ՟բ արեան կենարարին. արդ եկեալ կամիցէ քեզ, առ զգինս ագարակիդ, և բաշխեա աղքատաց. և

նա.

ւոր նոյն զդիոնեսիոս ծերացեալ ։

Արդ կալեալ սպասաւորաց զնա ծերունին՝ արկեցին փոկով պնդապէս, և ձգեալ ածին ձաղանօք առաջի իշխանին՝ զնա, և զերկո-սին զաշակերտսն զհռուստիկոս աւագերէց, և զելևթերիոս սարկաւագապետ ։

Ասէ ոստիկանն ցդիոնեսիոս. դո՞ւ իցես աղ-ձատեալ ծերն՝ դիոնեսիոս յոյն կոչեցեալ, և մակարիոս կարդացեալ, որ ունայնացուցա-նես զդիցն պաշտօն, և արհամարհես զհրա-մանս անյաղթ ինքնակալին ։ Պատասխանի ետ երա-նելին. արդարև ծերացեալ իսկ եմ մար-մնով, այլ ջերմութբ հաւատոց տն յի քի կամ մնամ միշտ երիտասարդ առոյգ, և պաշ-տեմ զպաշտօն նր ժրութբ 'ի փրկութի հոգ-ւոց. զի նա է ամենայաղթ իշխան բոլորե-ցունց ։ Իշխանն ասէ. ո՞վ է սա, զո՞ր դու պաշտես ։ Յայնժամ 'ի մի բերան ասեն սրբքն երեքեան. զքս տն զէակից հօր և զփառակից սբ հոգւոյն. և սկսան քարոզել զփրկական տնօրէնութիւն քսի, և զմիւսանգամ գալուստն 'ի դատել զտիեզերս ։

Ասէ իշխանն. չի՞ք իմ հրաման 'ի պայքար մտանելոյ ընդ ձեզ վն այդպիսի բանից, ո-րովք մոլորեցուցանէք զամբոխն, առաւե-լապէս չար ծերդ՝ ճարտար առ որսալ զմար-դիկ. զի անուն կախարդութե քո եհաս մինչև 'ի հռովմ. զայն տո՛ւք ինձ գիտել, եթէ հնա-զանդի՞ք կայսեր՝ պաշտել զանմահ դիցն. ապա թէ ոչ՝ թողեալ զբանս, զանձի՞ն հար-ցից զձեզ ։

Յայնմ վայրի յառաջ մատեաւ Լարկիա կինն Լեսբիոսի , և բողոք կալաւ զԴիոնեսիոսէ . Դա յիմարեցոյց ասէ զայր իմ մոգութբ իւրով , և ձգեաց 'ի մոլորութի իւր ։ Իսկ կոչել իշխանն զԼեսբիոս . և հարցեալ զնա , և հաստատուն գտեալ 'ի քս , հրամայեաց սըրով կարճել զնա 'ի կենաց յահարկուի ամ քրիստոնէից ։ Իսկ զԴիոնեսիոս պատուա՛կան ալևորն մատնեաց 'ի ձեռս դահճաց՝ մերկացուցանել և գան հարկանել հրապարակաւ . և նա հայրապետն ասէր . Օրհնութիւս ամն խօսեսցի բերան իմ , և օրհնեսցէ ամ մարմին իմ զանուն նր նր . զի արժանի եղէ կրել 'ի մարմնի իմում զչարչարանս քսի վն խոստովանութե նր . որ այն իսկ է փառք և պարծանք ձեր ո հաւատացեալք և սիրուն եղբարք . վն զգո՛յշ լինիջիք , զի մի լքանիցիք 'ի նեղութիս իմ , այլ առաւել վառեսցին սիրտք ձեր զուարթութբ յայսպիսի անցս վն սիրոյ փրկչին մերոյ ։ Դան հարին խստագոյն և զհռուստիկոս և զելևթերիոս . և ծանր շղթայիւք փակեցին զերեսեանն 'ի բանտ խաւարին ։

Յետ այսորիկ միւսանգամ գտեալ զնոսա յատենի՝ յորսայս արկին , և վերստին գան հարին . և 'ի գոհանալ նց զԱծէ՝ տարածեցին զերանելին Դիոնեսիոս 'ի վր երկաթի մահճաց , և 'ի ներքոյ լուցին զկրակ ։ Ապա կիսայրեաց մարմնով առաջի արկին զնա գազանաց սովելոց . իսկ նքն կնքեալ ընդեմ նց զնշան նը խաչի՝ յաղօթս կայր յերկինս 'ի վեր

մեան բազմերին Մեռկուռիոսի, որ Հերմեայ :

Յայնժամ ծանուր եղեալ նոյն դիոնեսիոսի ընկերօքն համդերձ՝ եկաց յաղօթս. և յաւել նոց զամէնն՝ հատին դահիճքն զգլուխս երեցունց սկայիցն, դիոնեսիոսի, հռուստիկոսի և եղևթերիոսի. կտորեցին 'ի նմին աւուր և զայլ բազմունս հաւատացելոց շուրջ զքաղաքաւն փարիզու :

Իսկ եղև անդ նշան սքանչելի. զի մարմին նոյն դիոնեսիոսի յետ գլխատմանն յարեաւ 'ի գետնոյ անտի, և առեալ 'ի ձեռս զգլուխ իւր՝ գնայր հեզիկ յընթացս իբրև մղոնս երկու, մինչև եհաս 'ի տեղին՝ ուր այժմ հանգչի (ասեն զաղղիացի պատմաբանք,) առաջնորդութեամբ հրեշտակի՝ համդերձ փայլմամբ երկնաւոր լուսոյ, և ձայնիւ զուարթնոց՝ որք նուագէին. փառք քեզ տէր, ալէլուիա. զոր տեսեալ բազմութեան հեթանոսաց՝ կէսք փախեան ահիւ մեծաւ 'ի տեղւոջէն, և կէսք հաւատացին 'ի քս. Ը որս և տիկին լարկիա. որ և արժանի եղև նահատակիլ և մկրտիլ արեամբ իւրով:

Իսկ այլ ոմն տիկին՝ անուն կատուղա, (որում ետ ասեն նոյն դիոնեսիոս զգլուխ իւր,) հաւատացեալ 'ի տէր զօրութեամբ սքանչելեացն՝ հնարեցաւ թաքնալ նաև զմարմինս հռուստիկոսի և եղևթերիոսի, զորս կամէին դահիճքն գետընկեց առնել. կոչեաց զդահիճսն 'ի տուն իւր, և արար նոցա ընդունելութիւն մեծ. և իբրև կերան և արբին՝ յանհոգս լինել նոցա առաքեաց զաղախն կատուղա զծառայս իւր, և

եւ տանել զմարմինս վկայիցն յագարակ իւր՝ վեց մղոնաւ հեռի 'ի քաղաքէն . զորս յետոյ եբարձ անտի գիշերայն գործակցութբ հաւատացելոց , և բերեալ ամփոփեաց ը մարմնոյ նոյն դիոնեսիոսի՝ 'ի լերին անդ հերմեայ , որ զկնի կոչեցաւ լեառն մարտիրոսաց՝ յանուն նոյն դիոնեսիոսի և նահատակակցաց նր :

Եւ ահա այս վկայաբանութի է , զոր յոլովք իմանան յանուն նոյն դիոնեսիոսի արիսպագացւոյ . իսկ այլք համարին , թէ այլ ոմն նը եպս դիոնեսիոս անուն նահատակեալ իցէ 'ի փարէզ՝ հանդերձ երկու ընկերօք առ դեկոսիւ յամի տն իբր 250. ուր զառաջնոյն կատարումն դնեն յամի տն 95 , կմ 100 , կմ 117 :

Այլ քանզի անյայտ է և այս զանազանութի , ասելի է՝ թէ թէպէտև երկու դիոնեսիոսք իցեն , բայց 'ի միասին լինի յիշատակ երկոցունց իբրև զմիոյ յամենեկեղեցիս արևելեայց և արևմտեայց . այլ առաւել հռչակաւոր է 'ի մէջ ազգին գաղղիացւոց 'ի սկզբանէ և այսր : Որպ յայտ է 'ի հին և 'ի վաւերական յիշատակարանաց և յաւանդութէ ազգին մինչև ցայսօր , զկնի դարուց հալածանաց՝ շինեցաւ տաճար հոյակապ 'ի վր տապանի նոյն դիոնեսիոսի անդ 'ի գաղղիա . և եղեն 'ի տեղւոջ անդ բազմապատիկ սքանչելիք և նշանք բժշկութե :

'Ի մէջ այլոց հրաշից հանդիսացեալ է այն , զոր գրէ զանձնէ ստեփաննոս հռովմայ հայ-

րա

քապետ երկրորդ՝ յութերորդ դարու, առանձին կոնդակաւ՝ պատմենիմս այսուհիկ.

* Ստեփաննոս եպս՝ ծառայ ծառայից այ:

Որ օրինակ չէ արժան ումեք պարծիլ ընդ լաւութիւն իւր, նոյնպէս չէ պարտ զգործս այ զ՚ի նմա եղեալս 'ի ձեռն մրց իւրոց առանց ինչ նորուն արժանեաց՝ լռել, այլ՝ քարոզել. զի այսպէս խրատէ հրեշտակն զտոբիթ:

Արդ 'ի պատճառս հարստահարութե եկեղեցւոյ մրյ յերեսաց բռնակալ և հայհոյիչ այստուլփոսի անանուանելի արքայի (լոնգոբարտացւոց)՝ եղև ինձ գալ առ բարեպաշտ և քրիստոսէր արքայն՝ մեր պիպինոս հաւատարիմ մերյն պետրոսի՝ 'ի փռանսիա. ուր խօթացայ մինչև 'ի մահ, և կացի զժամանակ ինչ 'ի փարիզեան աւանի՝ 'ի պատուականն ուխտի երանելի վկային քրի դիոնեսիոսի:

Անդանօր յետ անյոյս լինելոյ բժշկաց յինէն՝ եղէ յաղօթս յեկեղեցւոջ նորին երանելոյ վկայի 'ի ներքոյ զանգակայ. և տեսի առաջի բեմին զքաջ հովիւն զմր պետրոս, և զվրդպն հեթանոսաց զմր պօղոս, արթուն մտօք ճանաչելով զնս 'ի ձևոյ նց, և զերիցս երանելի զմր դիոնեսիոս յաջմէ տն պետրոսի, անօսր մարմնով և երկայնահասակ, գեղեցիկ երեսօք և սպիտակ հերովք, զգեցեալ կողոբ սպիտակափայլ, և ծիրանի նկարէն, և եմիփորոն համակ ծիրանի ոսկեհուռն. և խօսէին զուարթագին ը միմեանս: Եւ ասէ քաջ հովիւն մր պետրոս. եղբայրս մեր այս խնդրէ զառողջութի. և երանելին մր պօղոս

տաւ․ այժմ բժշկեսցի․ և մատուցեալ եարկ
զձեռն իւր ընտանի սիրով 'ի ծոց մնն դիոնե-
սիոսի, և հայեցաւ 'ի տր պետրոս ։ Եւ տր
պետրոս ասէ զուարթութը ցտր դիոնեսիոս․
քո շնորհ է առողջութիւն դորա ։ Եւ անդէն
երանելին դիոնեսիոս ունելով 'ի ձեռին ըզ-
բուրվառ խնկոց և զարմանալի՝ հանդերձ
երիցամբ և սարկաւագաւ, որ կային առ նմա,
եկն առ իս, և ասէ ցիս․ խաղաղութիւն ընդ
քեզ եղբայր, մի՛ երկնչիր, ո՛չ մեռանիցիս՝
մինչև յաջողութը դարձցիս յաթոռ քո․ արի՛
ողջամբ, և զայս խորան նուիրեա՛ 'ի պատիւ
այ և առաքելոց նր պետրոսի և պօղոսի՝ զոր
տեսանես, մատուցանելով զպատարագ գո-
հութե ։ Եւ էր անդ անպատմելի պայծառու-
թիւն և բուրումն անուշից ։

Եւ առ հա նոյնժամայն ողջացեալ իմ շնորհօքն
այ՝ կամէի ձեռն 'ի գործ առնել և կատարել
զոր ինձ հրամայեցաւն․ իսկ որք անդն կայ-
ին, ասէին զինէն՝ թէ յայլոյ խելս է․ վսյ
պատմեցի նցա կարգաւ, և թագաւորին գլխա-
վրին և մեծամեծաց նր, զոր ինչ միանգամ
տեսի, և թէ որպէս ողջացայ ։ Եւ կատա-
րեցի զամ՝ որ ինձ հրամայեցաւ․ օրհնեա՛լ
է ած ։

Այս եղև յամի տն 754․ 'ի յուլիսի 28․ և 'ի
մատուցանել ստեփաննոսի հայրապետի զսբ
պատարագ 'ի խորանի անդ, զոր նուիրեաց
յանուն նցա առաքելոցն պետրոսի և պօղոսի,
ես և նոյն դիոնեսիոսի՝ յանդիման տապանի
նր, եօծ 'ի թագաւոր զաղղիացւոց զպի-
պին

պլինոս արքայ, և զերկոսին զարքայորդիսն զկարոլոս և զկարլոմանոս. (յորոց կարոլոս՝ որ մեծն կոչեցաւ, եղև յետոյ և կայսր.) նոյնպէս և զԲերտրադէ թագուհին և զաւագանին օրհնեաց, եդ օրէնս՝ զի յայնմ հետէ յազգւոց նոցին պիպինեան լիցի ժառանգ թագաւորութեան. և եդ 'ի խորանի անդ 'ի յիշատակ ընդհանրապետական պալլիումն, իւր զեմիփորոնն իւր, և զանուանեալս յօրինակ փականացն պետրոսի. և ինքն եկաց 'ի նշխարաց նորին դիոնեսիոսի՝ զաւագունակ մի նր կամ զոսկր յոսկերաց անձոյն, և տարաւ ընդ իւր 'ի հռովմ. ուր հիմնեցոյց վանս յանուն նորին դիոնեսիոսի. այլ 'ի վախճանիլ նր յառաջ քան զկատարումն շինուածոյն յամի տն 757, եղբայր նր և յաջորդ պօղոս հայրապետ ընդ կատարէր նորա 'ի գլուխ տարաւ զայն. և կարգեաց անդ պաշտօնեայս յազգէ յունաց. և ժողովեալ անդ այլ ևս նշխարս վկայից՝ կոչեաց զտեղին դպրոց յունաց առ նր վկայս, կամ առ նր վկայս 'ի դպրոցի յունաց, առ 'ի յիշատակէ նորին դիոնեսիոսի ։

Իսկ 'ի գաղղիա դիքա՝ ոչ առաջին թագաւորք բազում ընծայիւք պատուէին զտապանն նորին դիոնեսիոսի, և յամ կարիս իւրեանց դիմէին յօգնականութիւն նր, ըստ նմին և մեծն կարոլոս մեծաւ հաւատով ապաւինէր միշտ 'ի բարեխօսութիւն նորին. մինչ զի և 'ի խաղալ պատերազմաւ ընդդէմ սաքսոնաց վտարանջելոց՝ տարաւ ընդ իւր 'ի բանակն զմարմին նորին դիոնեսիոսի և զերկուց աշակերտաց նորա. և ընդ

հաւատոյ իւրոց գեղեցիկ 'ի գլուխ տարաւ զյաղթութիւն, և զաւագանս ձգեաց 'ի քրիստոնէութիւն. և զօրացեալ յամի՝ օծաւ կայսր արեւմտեան յամի տն 800 ։

Իբրև եանց դար մի 'ի վր, համբաւեցաւ 'ի մէջ ալամանաց, որպ թէ ոմն յաւագ իշխանաց արնալփոսի կայսեր երթեալ 'ի գաղղիա 'ի վանս դիոնեսիոսի՝ հնարիւք գողացեալ իցէ զմարմին նորին, և տարեալ 'ի գերմանիա 'ի հռատիսպոնա քաղաք բաւարիոյ ։ Յամի տն 1050, Ենրիկոս արքայ գաղղիոյ գրեաց առ Ենրիկոս կայսր ալամանաց, զի առաքեսցէ յիւրոցն՝ գալ տեսանել զմարմին նորին 'ի տեղւոջ իւրում. եկին դեսպանք, և յանդիման նոցա բացաւ տապանն, և գտաւ ամբողջ մարմինն հանդերձ գլխովն, բաց 'ի քանի մի ոսկերաց սփռելոց յայլ և այլ տեղիս. և յայնմ հետէ կատարիւր 'ի վանս անդ դիոնեսիոսի ամի ամի յիշատակ յայտնութեան կմ բացման տապանի նորին դիոնեսիոսի ։

Իսկ յամի 1190. փիլիպպոս արքայ գաղղիացւոց պատրաստեալ 'ի խաղալ յարևելս՝ յառումն եճմի, գնաց նախ 'ի տապան նորին դիոնեսիոսի, և հայցեաց զձեռնտուութիւն նր, ընկալաւ անդ 'ի ձեռաց քեռւոյն իւրոյ գուիլլելմոսի արքեպիսին հռեմայ առաքելական նուիրակի զմախաղ և զգաւազան 'ի նշանակ ուխտաւորութե ։ Այլ յետ մեկնելոյ նր՝ տիկինն նր ադեղա թագուհի եա բանալ զտապան նորին դիոնեսիոսի, և դնել զնշխարս նր 'ի վր բեմի ընդ այլ նշխարս նոց 'ի տաճարի նր,

նր , և մատուցանել հանդիսապէս պաղա-
տանս վ֊ն տուն իւրոյ ևնիզակակցաց նր եղե-
լոց 'ի պաղեստին . և այս եղև յամի 1191 . յօ-
գոստոսի . 25 . յորում աւուր եղև յաղթու-
թի երևելի 'ի ձեռն քրիստոնէից :

Իսկ յամի 1244 . յորժամ իննովկենտիոս չոր-
րորդ խոյս տուեալ յերեսաց բռնակալութե
փրիդերիկոսի կայսեր՝ անկեալ էր 'ի գաղ-
ղիա առ ՚րքն լուդովիկոս արքայ , հիւանդա-
ցաւ ՚րք թագաւորն մերձ 'ի մահ . և ՚ը խնդ-
րոյ նր և մօր իւրոյ բլանքայ դշխոյի բացա-
տապան ՚րբյն դոմենիկոսի , և եղև թափոր
և աղօթք հասարակաց . որով իսկ և իսկ 'ի
լաւ անդր փոխեցաւ և զօրացաւ արքայ , և
փութապէս ընկալաւ զկատարեալ առողջու-
թի : Այնպէս և յամ ժամանակս եցոյց ՚րձ
զայցելութի իւր բարեխօսութե ՚րբյն դոմենի-
կոսի , որոց հաւատով կարդային առ նա :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

(1) Ոչ է նշանակելոյ մեր յընթացս պատմութեան զեւ-
րոպաքանչիւր տեղիս , յորոց բազկանոյ վարք և վկայութ-
նութի սրբյն դոմենիկոսի , միաբանաբար և զօրինակ միա-
բանութե անվիճելան կարծեաց , չունիմք պէտս յերկա-
րել ստատանոր զքննութիս , յորս գեգերեցան մեծամեծ
անձինք մատենիւք չափ : Միայն զայս ծանուցանեմք
բանասէր և Ճշմարտասէր անձանց , զի թէ 'ի ձեռս բեր-
ցեն զքննութի միոյ կողման յայս և յայն կարծեաց , մի
շտապեսցին նովաւ , այլև զմիւսոյ կողմանն քննեսցեն ա-
նաչառ . զի յայնժամ իմանան զգժուարութի իրացն և
զպարզ մերումն բաղդատածոյ 'ի զանազանից : Նոյնպէս և

որ

կատարան դնէք 'ի գիւղ անդր. և քննեալ զգամն՝ ար֊
գարացուցին զարէս մեցեալ մեռաւլք. մեզ անգլին կո֊
չեցաւ արեսի գիւղ։

(3) Ծաւըննտիրն Ա. սկսանի այսպէս. * Կեանք գիո֊
„ նեսիոսի որդւոյ սոկրատայ և գլխաւորի աթենաց֊
„ ւոց, որ կոչի քաղաքէ իմաստասիրաց։ Պատմեաց յա֊
„ ղագս անձին իւրոյ, և ասէ. Ես ենքարբք իմաստուն
„ սիրող՝ դիոնեսիոս որդի սոկրատայ || ևն։ Իսկ Ծ. Ե.
այսպէս. * Պատմութիւն սրբոյն դիոնեսիոսի՝ յաղագս
„ ծննդեանն և սննդեանն և քաղաքավարութե և իմաս֊
„ տութե, աշակերտի պօղոսի։ Ես ենքարբք իմաստու֊
„ թե սիրող || ևն։ Յորմէ ունիս իմանալ, զի գրիչ 'ի
վր գրքն ունի տարբերութ. և յայտ է թէ նաև 'ի յու֊
նականն օրինակս գտանէին տարբերութիք՝ ոչ միայն ա֊
կամայ, այլև կամաւոր. զի ոմանք ոչ կարեն օրինակել
ինչ առանց այլայլելոյ ը իմիք կմ պարզելոյ իւիք. և
այսու մտանեն երբեմ հատուածք ինչ օտարք 'ի մատեանս
հեղինակին. որպ նորագունթե ատենին արխայացեալ իբ֊
րև առաջին չինութի էր ձևացեալ 'ի գրչաց. զոր գիւ֊
րաւ ուղղագրեն իմաստունք։ Այն պատմութեւս է պարզ
և միջակ. զի թէև բուն գրուած դիոնեսիոսի լինէր,
ոճն պատմական լինի առաւել հարթ. բայց գուցէ և
'ի խորթին բանից հեղինակին՝ ոճն 'ի հին պատմութեանց
վերածեալ իցէ յայս ձև պարզութե։

Իսկ յիշատակարանն 'ի Ծ. Ա. է այս. * Այս պատ֊
„ մութի սրբոյն դիոնեսիոսի 'ի Ռոբ քաղաքն եկեալ էր թարգ֊
„ մանեալ 'ի յունականէն 'ի վիրականն. իսկ 'ի մերս
„ թարգմանեաց յովհաննէս բժիշկ, իշկ ։ յիթ թուականս
„ նիս հայոց, 'ի փառս քնի մրյ մերոյ ||։ Կամ ըստ Ե.
* Այս պատմութիս դիոնեսիոսի սրբյ 'ի քաղաքս եկեալ
„ թարգմանեալ իրիցու յունական. իսկ 'ի մերս թարգ֊
„ մանեաց յոհաննէս բժիշկ. յՅը թուաբերութես հայոց,
„ 'ի պատիւ և 'ի փառս քնի մրյ ||։ Սոր չեն ինչ այլ տար֊
բերութիք դժուարիմացք. չնա է, զի թուականն թարգ֊
մանութեն չէ յայտ այլափոխեալ. զի ը միում լինի յա֊
մի տռն 880. և ը միւսումն 869։

Մեծ գարու և կիսով յառաջ էր և ստեփաննոս սիւ֊
նեցի, որ թարգմանեաց զմնծարանական գիրս դիոնե֊
սիոսի յամի Փրր 717։ Որպ և անանուն գրողքս համ֊
մայ յամի 876. թարգմանեաց 'ի յունէ 'ի լատին զմեկնա֊
բանութի դիոնեսիոսի զշարագրեալն 'ի մաքսիմոսէ նա
պատարիարգէն կոստանդնուպօլսոյ յամի 842։ Որով իմա֊
նաս,

նաս. թէ յայնուհետև զարս լեալ է գրգիռ իմն ծաղկե-ցուցանելոյ զգիրս, և զվարս գիտնականաց, այլ և ըղձկայարանութիւն նոր ուրոյն. թող զգրեալսն 'ի Մետափրաստեսէ և յորոց զկնի :

Այլ առաւել քան զամենեսին աշխատասիրեաց 'ի նոյն գործ Հիլդուէնոս գաղղիացի աբբայ վանից սրբոյն դիոնեսիոսի պաշտպանին փարիզու. քանզի արքունի հրովարտակաւ հրամայեաց սմա Լուդովիկոս պիոս որդի մեծին կարոլոսի, այն՝ որ թագաւորեաց յամի տն 814, 'ի մի հաւաքել զամ պատմական յիշատակարանս՝ որ յաղագս սրբոյն դիոնեսիոսի արիոպագացւոյ, 'ի յունական և 'ի լատին մատենից և 'ի հնութեանց գաղղիոյ. և նա արար ըստ հրամանի նր. զորոյ զգրութիւն 'ի մէջ բերեն սուրիոս և այլք : Դարձեալ աշխատասիրեաց և աշակերտ նորին Հիլդուէնոսի՝ հինկմարոս եպս հռեմայ, և միաբան նոյն ուխտին սրբոյն դիոնեսիոսի 'ի գաղղիա. և գրեաց ճոխագոյն 'ի նամակի իւրում առ կայսրն կարոլոս երկրորդ, որ նստաւ յամի 876 : Բայց ոչ ոք 'ի սոցանէ 'ի ձեռս բերեալ է զառաջին վարս դիոնեսիոսի կամ զպատմութիւն գործի նր. զոր ունիմք 'ի ճառընտիրս մեր :

(4) Զայս սովորութիւն խորհուրդ հարցանելոյ օտարաց յարիոպագէ աթենացւոց յիշէ և վաղերիոս մաքսիմոս, գրելով զայսպիսի պատմութի. Գիրք. Է. Գլ. 1. * Տիկին
« ոմն զմիւռնացի սպան զայր իւր և զորդին, որոց սպա-
« նեալ էր զզաւակ նր՝ որ յառաջին առնէն, զուշիմ
« պատանին : Իբրև մատուցաւ այս խնդիր յատեան դա-
« տաւորելոյ (որ էր փեսայ կիկերոնի՝ հիւպատոս և
« դատաւոր յասիա), նա յղեաց և զեկոյց զիրան յա-
« թէնս յատեան արիոպագին. զի ինքն ոչ արձակել
« իշխէր զշաղախեալն կրկին արեամբ, և ոչ պատու-
« հասել հանդուրժէր զշարժեալն յարդարացի ցասուց :
« Խոհեմք և հեզութբ վարեցաւ յայսմ դատաւորն հռով-
« մէական ժողովրդեան. այլ ոչ նուազ իմաստութբ գոր-
« ծեցին և արիոպագացիքն. որոց հայեցեալ 'ի դատա-
« ստանն, եդին վճիռ, զի յետ հարիւր ամաց յատեան
« եկեսցեն դատախազն և պարտաւորն, նովիմբ զզգա-
« ծեալք կարեկցութբ ՟Է դողալելոյ || . Ճր ողոք կա-
ցուցին : Զնոյն գրէ իմիք տարբերութբ և գեղղիոս. ատտիկ. Գիրք. ԺԲ. 7 :

Ծանիր և զայն, զի ուր մեք է՛ զի քահանայ, և է՛ զի քուրմ եդաք, ճառընտիրն միշտ քահանայ դնէ յայսմ պատ-

պատմութե․ խմա խորհրդով․ զի առ եգիպտացիս, և աթենացիս անգամ, քահանայ կոչէին ոչ միայն քուրմք զոհագործք, այլև կարծեցեալ գիտնաւորք սրբազանք․ զորս և մարգարէս անուանէին․ այն իսկ են մոգք ի պարսից, քաղդէայք ի քաղդէացւոց, մերկիմաստակք ի հնդկաց, և տրուիդք ի գաղղիացւոց։

(5) Զգալուստ դիոնեսիոսի յարեոպ. քաղաք եգիպտացւոց հաստատեն և այլ մատենագիրք և վկայաբանք․ այլ առ չգիտելոյ զպատճառս գալստեանն, զի առ չունելոյ 'ի ձեռին զլիակատար պատմութիւն ճառընտրաց մերոց, կարծեցին ի շրջիտայ՝ թէ վն ուսման երթեալ իցէ անդր․ ոչ արարին ամենք 'ի նախնի փիլիսոփայից․ վն և հոլլոյես յիշեան զայն անստոյգ մակաբերութի 'ի ձեռս առեալ՝ ի լայնէ այսպէս․ * 'ի մանկութե քաջ
• ուսեալ (ասէ) զազատական արուեստ 'ի տան կամ 'ի
• քաղաքի իւրում, որ էր ծնօղ և դշխոյ այնպիսի ար-
• ուեստից։ Եւ զարգացեալ նոքիմբք՝ 'ի գուրս ել պա-
• տանին, և գնաց յեգիպտոս իբրև 'ի միակ վարժարան
• առաւել սրբազան և գաղտնի վարդապետութե ․․․ վն զի
• անդր գիտէին ուշիմ անձինք յետ այլոց մարզից առ 'ի
• հմտութի աստուածաբանութե և աստեղագիտութե և
• սրբազան իրաց ․․․ ոչ պիւթագորաս, թաղէս մի-
• լեսացի, պղատոն, եւդոքսոս, և այլ բազում փիլի-
• սոփայք ականաւորք ․․․ մանաւանդ զի առաւելն 'ի
• ժամանակի անդ սորին դիոնեսիոսի ցուցեալ լինէին
• յարեոպ. քաղաքի յարկք քահանայից, զի իմաստնոցն
• եգիպտացւոց, և բնակարանք պղատոնի, եւդոքսի,
• և այլոց երևելի արանց ||։ Բայց յայտ է թէ 'ի ժամանակս դիոնեսիոսի աթէնք գերազանցեալ էր զեգիպտոսիւ յամ ուսման և յաստուածաբանութե, և առաւել յեգիպտոսէ յաթէնս դիմէին, քան յաթենայ յեգիպտոս․ վն պատճառ գալստեան դիոնեսիոսի յարեոպ. քաղաք ոչ էր 'ի պէտս ուսանելոյ, այլ ուսուցանելոյ զեքուսն՝ ըստ ճառընտրաց․ որում անծանօթ գտանի հոլլոյես։

(6) 'ի Ճ․ գրեալ էր․ * և ամ աստեղք աներևոյթ եղեն ||․ սոր մեք հարկեցաք յաւելուլ 'ի բացատրութի․ * երևութացան և աներևոյթ եղեն ||․ զի զերևելին պահանջէ խաւարումն արեգական ի լուսնի, և զաներևութանալն յաջորդ բանն՝ որ վն թանձրութե խաւարին և միգին ասելոյ․ և կասկածիմք իսկ, թէ 'ի բնագրի էր բառ համաձայն յունական, իբր բացերևիլ կմ բա-
ցա-

ցածածկիլ. զոր Թարգմանիչն յեղեալ է պարզապէս՝ աներեւոյթ լինել։ Զայս նոյն հաստատէ և Եւսեբիոս 'ի քրոնիկոն կանոնի վկայութեամբ արտաքին մատենագրաց. ասէ. * Յն օծեալն այ՝ տր մեր, ըստ մարգարէութեանցն՝
,, որ զնմանէ էին, գայ 'ի չարչարանս յինննուտասներորդ_
,, դի ամի տիբերի թգրութեան։ Ըստ որում ժամանա_
,, կի և յայլ յունական յիշատակս գտանք՝ ը նմին օրի_
,, նակի բանից պատմեալ, թէ արեգակն նուաղեաց.
,, բիւթանիա շարժեցաւ, նիկեայ մեծ մասն կործանե_
,, ցաւ. որ և միաբանք իսկ պատմին իրացն՝ որ 'ի չար_
,, չարանս փրկչականին մերոյ պատահեցան։ Գրէ և
,, փղեգէոն, որ զողոմպիադացն անգամին 'ի նոցանէն
,, յերեքտասաներորդումն պատմէ՝ զայս ձև օրինակի
,, բանից, թէ 'ի չորրորդում ամին երկերիւրորդի և
,, երրորդի ողոմպիադին՝ եղև մեծ նուաղութիւն արե_
,, գական, քան զոր յառաջագոյն ոչ ոք գիտէր. և գի_
,, շեր 'ի վեցերորդ ժամանակեանն եղև. մինչև աստեղաց
,, յերկինս երեւել. շարժումն մեծ 'ի բիւթանիա, և
,, մեծ մասն նիկիայ կործանեցաւ ||։ Եւ եթէ 'ի նիկիա
այնչափ ազգաց շարժումն՝ որ յեղեն, ես առաւել յեդիպսոս՝ որ մօտ եւս է. թող զի գուցէ զառաւել իմն նշան եցոյց տր յարեգ. քաղաքի, որ պարծէր անուամբ արեգական և բազմութ. աստուածոց եգիպտացւոց. զի իմասցին՝ թէ ոչ բնութիւն էր գործ ահաւոր անեւիլ այնր աւուր, այլ՝ տն բնութեան. ոպ 'ի միտ էառ և իմացոյց նաև այլոց մեծն դիոնեսիոս։

(7) Հայելոյէս առանց գիտելոյ զբան Ճառընտրին՝ այսպէս համաձայնէ զտարբերութիւս այլոց. * Մարթ է
,, (ասէ) ասել, թէ սբն դիոնեսիոս 'ի պէսպէս գիր_
,, ոճածս երկրորդելով զյիշատակ այդր խաւարման,
,, այլեւայլ օրինակաւ՝ ոպ ստէպ հանդիպի՝ խօսեցեալ
,, իցէ. ուր և յաւետարանեան գլխովին՝ այլեւայլ օրի_
,, նակաւ յառաջ բերին յաւետարանչաց բանք քնի ||։
Բարւոք է, և կարեւոր իսկ այդ մեկնութիւն յամ հնութիս. բայց ուր այլք հարեանցի 'ի մէջ բերեն, բանք ամենեցուն վերածելի են առ լիակատար պատմութիւն մեր հնագոյն քան զայլ աւանդս։ Նա ինքն դիոնեսիոս նաև 'ի թուղթն առ ապողոփանէս նշանակէ, թէ յայնժամ յարեգ. քաղաքի անդ 'ի դիր անցուցի զօրն և զաւարին այս նոյն անցից։

(8) Այսպէս նշխարան ամ գրի 'ի Ճ. Ե. որ քաղայարմար է ժամանակին. ուր վրիպակաւ գրչի եղեալ

է

'անծանօթի էոյ ենթադրէ անդանօր․ և պատճառ այս դոյս, թէ յետ հաւաքելոյ ամենայնի պաշտօնաւորութ̃ զդիս ամ ազգաց՝ խիթացեալ, թէ գուցէ կայցէ և այլ ոմն անծանօթ ինքեանց, յաւելին զայն բագին յանուն անծանօթի էոյ։

Ուղղագրելի է և կարծիք յայսմաւուրաց Հ․ առեալ յանանուն յոյն մատենագրէ, որում զհետ չոքան և յալովք 'ի լատին գրչաց, ոք պետրոս կոմեստոր, հուգոն, ալմերան, և գառապար սանկիոս, որպէս թէ ինքն իսկ դիոնեսիոս արիսպագացին իցէ առեալ կանգնել զայն բագին յետ տեսանելոյ զխաւարումն արեգական․ որ է վերոյական իմացուած գրելոցս 'ի մէնջ ը անվրէպ աւանդուէ, ը որոյ դոյր այն բագին յաթէնս յառաջագոյն։

Իսկ թէ աթենացիք, մանաւանդ արիսպագացիքն, էին ոչ միայն պաշտօնասէրք անծանօթի էոյ, այլև սիրողք թաքուն գաղտնեաց, և ծածկողք զխորհուրդս ը խորին թաքնութ և լռութ, յայտ է յասածէն՝ որ կայր 'ի մէջ հելլենացւոց․ * գաղտնապահիկ քան զարիսպագացին||։ Զայս գաղտնապահութիւն տեսանէ ոմ ոք և յընթացս գրոց դիոնեսիոսի։

(10) Խորհրդով պահեցաք աստ զչարագրութն Հ․ զի իմացցին բանախնդիրք, թէ ուղղագոյն օրինակաց հետևողութն երեւի 'ի նմա, քան յայնմ՝ զոր բերէ հիլդուինոս աբբայ․ իբր զի սա յետ պատմելոյ, թէ դիոնեսիոս լսելով 'ի պօղոսէ զբանս՝ որ յաղագս անծանօթին էոյ, հաւանեցաւ հաւատալ 'ի քս, 'ի վր բերէ․ * 'ի
,, վաղնջ անգր՝ յորժամ գնայր պօղոս զճանապարհայն,
,, կոյր ոմն սկսաւ 'ի ձայն աղաչանաց պաղատել առ
,, նա․ իսկ նա առաքեալն եդ զնշան խաչին 'ի վր աչաց
,, նր փակելոց 'ի ծնէ, և ասէ․ քս տրն և փրկիչն մեր,
,, որ եդ կաւ 'ի վր աչաց 'ի ծնէ կուրին, և լուսաւո-
,, րեաց զնա, նա ինքն իւրով զօրութբ լուսաւորեսցէ
,, զքեզ։ Եւ ընդ տեսանել նր վաղվաղակի՝ ասէ ցնա․
,, երթ առ դիոնեսիոս, և ասա նմա, թէ պօղոս ծա-
,, ռայ յսի քսի առաքեաց զիս առ քեզ, զի յուշ արարեալ
,, զխոստումն քո՝ մի գանգատեսցիս գալ առ նա․ յոր-
,, մէ ընկալեալ զմկրտութն փրկարար՝ մարթասցիս ար-
,, ձակիլ յամ կապոյ յանցանաց։ Իսկ այրն՝ որ լուսա-
,, ւորեցաւ, հպատակօրէն կատարեաց զբան հրամայա-
,, զին․ և փութապէս երթեալ առ դիոնեսիոս՝ կար-
,, գաւ պատմեաց նմա զբանս պօղոսի։ Եւ դիոնեսիոս

„ Ը կանխելոյ շնորհաց ընտրութեան, իբրև ետես զկոյրն՝
„ զի տեսանէր, որ յառաջ զուրկ էր ՚ի լուսոյ. ասէ
„ ցնա. դու՞ ես այն, զոր ամ ծանօթք գիտէին կոյր
„ ծնեալ. նա ասէ այնի. ես ինքն եմ, որ ՚ի ծնէ կոյր
„ գոլով ոչ տեսանէի ցարդ զլոյս արևու. բայց պօղոս՝
„ զորոյ բերի առ քեզ զփրկաւէտ պատգամս, կարդա-
„ լով զզօրութիւն յԷ քն մեջպին իւրոյ, ընծայեաց ինձ
„ զլոյս առողջութեան: Յայնժամ փութապէս յարուցեալ
„ նա հանգերձ ամ տամբ իւրով և զամօրեաւ կնաւ
„ իւրով ... կանխեաց առ հրաման սրբոյն պօղոսի. և
„ հաւատացեալ ՚ի բոլոր սրտէ. և ՚ի բաց հերքեալ ըղ-
„ ձմլորութիւնս հեթանոսաց՝ ընկալաւ զմկրտութիւն սր
„ տապանին ||: Սոր թէպէտև մի և նոյն պատմութիւն
է, բայց մեզ հաճոյ թուէր համառօտագրութիւն Հ., քան
զերկարաբանութիւնս գիտնաւոր գրչի՝ տարբեր հանգա-
մանօք:

(11) Նշաստարէ գրելոցս ՚ի Հ. այն՝ զոր գրէ ամն ՚ի նախ-
նեաց ՚ի յունական հին օրինակի գրոց դիոնեսիոսի,
այսպէս. * Գիտելի է, զի ամենք յարտաքին իմաստա-
„ սիրաց, և առաւելապէս պղատոն, բաղում անգամ
„ ՚ի կիր արկանեն զանուանս երանելւոյն դիոնեսիո-
„ սի, և այն՝ նովիմբք իսկ մերկ բառիւք: Յորմէ ՚ի
„ դէպ է իմաստասիրել, թէ յաթենս հնագոյնքն յի-
„ մաստասէրս իւրացուցեալ զնր գործս՝ ծածկեցին ||:
Ուստի տանանէ կարծեաց Հ. և Յ. որ զն կատարման
սրբոյն յաթէնս, այն՝ զի հալլոյէս համարի, թէ աթենա-
ցիք յետ զկնանալոյ Է գատապարտել իւրեանց զսոկրատ
զն խնդրոյ հաւատոյ, չիցեն այնու հետև հերքեալ զարիս-
տոբուլ զն հաւատոց, զի և յետ քաղաքս գտանին տանք
մարտիրոսք, բաց յաթենայ: Այլ այդ բաղում քննու-
թե կարօտի. թող զի Ը դկ. Լ. յէշէն քանի մի մար-
տիրոսք նահատակեալք յաթէնս:

(12) Թէպէտև չիցեն միաբան նաև զաղղիացիք ՚ի վաղ
ժամանակաց հետէ զն բանիցս այսոցիկ, բայց արժան
է լսել զհիմնական խուզարկութիւն գիտնաւոր աբբայից
հելգոնէնոսի ՚ի Թ դարու, ունելով բանին այսպէս.
* Յաղագս վախճանի դիոնեսիոսի արիսպագացւոյ ոչ-
„ ինչ առաջին յոյն մատենագիրք. զի առ հռոմայեցւոց
„ Ծաց՝ կատարումն նր խաղաղ անծանօթ եղև նոցա:
„ Բայց ունիմք զյունական վկայաբանութե առեալ ՚ի
„ հատորոյ գիմանագրութեց կոստանդնուպօլսոյ, որ
„ այնչափ հնութե է քայքայեալ, մինչև բաղում զգու-
„ շու-

„ շութն պէտք են մերձենալ յայն . յորում գտանեմք
„ նշանակեալ զօր կատարման նր . և զի էր եպս աթե_
„ նացւոց (որէշ 'ի գիոնեսիոսէ եպսէն կորնթացւոց) ։
„ Եւ այս վկայաբանութի , ոպ հնութի նր քաջ ցուցա_
„ նէ , ոչինչ տարադէպ թուէր մեզ լինել 'ի ժամանակէ
„ անտի յայնմանէ , յորժամ հրամանաւ կոստանդիանո_
„ սի՝ Ը յայանի ատթին վկայութիք սրբ ՃՆ յամ տիե_
„ զերաց հաւաքեցան ('ի ձեռն եւսեբի կեսարացւոյ) ,
„ և բերեալ եղեն 'ի կեսարիա ։ Այլև մինչև ցայսօր
„ ծերքյունաց և բնակիչք աթենայ վկայեն՝ 'ի գրու_
„ թէ պատմութեց և 'ի յաջորդութէ աւանդութեց
„ ուսեալք , թէ 'ի քաղաքի անդ առաջին եպս էր նա ,
„ յորժամ տիմաթէոս նոյնգունակ աշակերտ պօղոսի
„ զեփեսացւոցն հովուէր զաթոռ . և թէ՝ եդեալ նորա
„ զամե 'ի տեղի իւր եպս՝ 'ի հռովմ շոգաւ . և ոպ իրա_
„ զեկ եղեն՝ յազգի սոս գաղղիացւոց կատարեցաւ վա_
„ ռաւոր վկայութբ ։ Զօր և թարասիոս պատրիարգ
„ կոստանդնուպօլսոյ 'ի ձեռն նուէրակաց իւրոց հե_
„ տաքննեաց ‖ ։ Այսպէս ասեմ հիւլգոէնոս խօսել ընդդէմ
այնոցիկ յազգայնոց իւրոց , որք ոչն հաւատային , թէ
արիսպագացին իցէ գիոնեսիոսն պատմեալ 'ի մէջ իւ_
րեանց . և զերկրորդն տարածեցւոյ ինչ ինչ վրիպանս
'ի պատմականս՝ պարզմաութբ նորին անբասիր առնէ ։
Դարձեալ գրէ հիւլգուէնոս 'ի թուղթն շրջաբերական՝
որ եդեալ կայ 'ի սկիզբն վկ . գիոնես . արիսպագացւոյն ,
այսպէս . * Կարեւոր համարեցայ և յայսմ մասին ընդ
„ քերոն մտանել սակաւուք՝ առ 'ի տալ տեղեկութիւն
„ մե ընթացից կենաց , և քարոզութեան , և 'ի հռովմ
„ գալստեան , ոպ և մե բաղձայապ վկայութե երից
„ երանելւոյն գիոնեսիոսի . որ առաւելապէս 'ի յու_
„ նացն պարունակեալ պատմութիս և ոպ թէ թաղեալ ,
„ 'ի նախնեացն արկեղս առ լատինս ոչ սակաւ մասամբ
„ ծածկեալ պահիւր , 'ի լոյս հանել օգնականութբն
„ քեր .... Եւ արդ վերծանեսցեն (ընթերցասէրք)
„ զճշմարիտ բանս զ'ի ճշմարտապատմից գրեալս զնմա_
„ նէ , և պարզապէս 'ի մի հաւաքեալս ('ի մենջ) հա_
„ ւատարմութբ . և եթէ Ը մերս անգիտութե զչարեա_
„ ցին , 'ի նախնեացն յիշատակարանս ընթացին . զի
„ մեք ոչ զմեր ինչ , և ոչ զնոր ինչ արձանագրեմք , այլ
„ զհնոց զհին ասացուածս յիսպառ ծածկել մասանց
„ 'ի դուրս հանեմք . և զճշմարտութն պարզութի պա_
„ հեալ՝ յայտնագոյն ոճով 'ի գիր գրոշմեմք ։ Եւ որպս


„ կար_

,, կարծեմ. ոչ ունիք ’ի միտս ունողաց գժուժկալընկալ
,, երևեցին այսորիկ՝ յաղագս անգիւտ լինելոյ սոցին
,, յառաջ ժամանակաւ, երբ քաղ գիտեն, թէ որ ա-
,, րարն զնմ ինչ միանգամայն, ոչ կամեցաւ զնմն և
,, ոչ ամենեցուն յայտնի առնել համանգամայն։ Եւ
,, զարձեալ՝ բազում ինչ յայտնիք՝ ծածկեցան ժամա-
,, նակաւ. քանզի պայծառ է յոյժ ամել զգրեալն յածե-
,, ղէն տառս մն գրոցն օրինաց, թէ Է երկար ժամա-
,, նակս ծածկեալ կայր, և անգրէն վերստին գտաւ. որ
,, էր զարմանալոյ արժանի։ Եւ եթէ ասէ գանիել,
,, անցցեն (կամ ուսցին) բազումք, և բազմասցի գի-
,, տութիւն, որչափ ես առաւել չունի որ ժխտել, թէ
,, յականարկել բազմաց յուղեկցաց այլ ուրեք, տարատամ
,, որք կմ՟ յամբընթաց յետաքայլ չկարիցէ գտանել զկո-
,, րուսեալն ’ի ճանապարհի, զոր յառաջընթացքն կո-
,, րուսեցին և անցին ||։ Գեղեցիկ և լի իմաստութեամբ են
բանքս. որ և ’ի բազում իրս պիտանի, այլ առաւել ’ի
վարս և ’ի գործս գիտնականաց։ Արդ զաւանդս գաղղիաց-
ւոց զմեյն՝ առաւել ’ի բանից այսր հեղինակի քաղե-
ցաք, հայելով և յայլս ’ի յունաց և յարեւմտեայց։
(13) Զերթն գիտնականոյն ’ի հռովմ հաստատէ հիւլգ-
ոէնուս նաև վկայութեամբ արխատարքոսի հին ժամագրի
յունաց ’ի Թուղթն առ ոնեսիփորոս. ոնց և զգնալն ’ի
գաղղիա հաստատէ ’ի յունացն աւանդութենէ։
Բան սքչն գիտնականոյն ’ի նշանակեալ տեղիդ այս է.
* Եւ զի թուեցաւ ոմանց առ ’ի մէնջ սրբազնաբանից՝
. ածայնագոյն գոլ զտարփմանն անուն քան զսիրոյն.
. գրէ իսկ և ածայինն իգնատիոս, իմ տարփումն խա-
. չեցաւ ||. այն բան է ածազգեցին գրեալ առ հռով-
մայեցիս փոքր մի յառաջ քան զնահատակութիւն իւր։
(15) Զնոյնպիսի սքանչելիս ’ի մէջ բազմաց ’ի նոյն վկայից
լեալ՝ հաւաքէ յերկար հալլոյես յՄեան. գլ. Ի. ծան.
Է. երես. 169։ Որ և զօրինակս մն հաղորդելոյ երկ-
նային տեսլեամբ. ’ի գլ. ԺԹ. ծան. Գ։ Բազում և
այլ բանք են առ նմա. այլ եթէ ’ի ձեռս անկցի ուրուք
հատորն բոլլանդեանց, յորում փակի 9. որ հոկտ.
տեսցէ՝ թէ միաձայնին արդեօք, եթէ ոչ, հալլոյես և
ընկերքն նր բոլլանդեանք։ Մեզ շատ լիցին՝ զոր հաւա-
քեցաք ’ի միաձայնութենէ բազմաց։

ՎԿԱ

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սր̄ առաքելոյն Տիմոթէի աշակերտին պօղոսի ։

Հ. Յ. յունվար. 22 ։ Լ. յունվ. 24 ։ Ճառընտիր. Ի. Տկ̄թ = Տյա. Ը. Օ. ճծբ = ճծէ ։ Բոլլանդ յաճախանեաս. 'ի Է հատորին. յունվ. էջ. 562 — 569. 'ի պոլլեկրատեայ, 'ի Մետափրաստեան. Ճա̄ ։ (1)

ԱՍՏՈՒԱԾԱՊԱՏԻՒ կոչմամբ ք̄ս անունանն ընտրեալ և պատուեալն յն̄յ, և որդեգիր սիրեցեալն 'ի պանծալի վր̄պետն հեթանոսաց՝ երանելի առաքելոյն տիմոթէոս՝ էր 'ի լիւստրայ քաղաքէ լիկայոնացւոց, որդի հօր հեթանոսի հելլենացւոյ, որոյ անունն ոչ յիշի (զի կարծի մեռեալ 'ի հեթանոսութեան), և մօր հրէի այրւոյ՝ որ կոչիւր եւնիկէ, ք̄ս բարեպաշտ, և ը̄ մօր իւրում ք̄ս հանւոյն տիմոթէի՝ կոչեցելոյ լօռդէ կամ լօիս (2), ջերմեռանդն հաւատով աշակերտեալ էր ք̄նի 'ի ձեռն նորին պօղոսի ։ Սորա օրինակաւ և ինքն տիմոթէոս յարեցաւ 'ի պօղոս յառաջնում գալստեանն նր̄ ը̄ բառնաբայ 'ի լիւստրա. և մկրտեալ 'ի նմանէ՝

աշակերտեցաւ աւետարանին ։

Եւ էր յայնժամ Տիմոթէոս պատանի տիօք, բայց իմաստութեամբ մտօք և հեզ բարուք, սնեալ 'ի մանկութենէ 'ի ձեռս մօրն և հանւոյն 'ի բարի վարս, և կրթեալ 'ի սբ գիրս ․ մինչ զի վկայեալ էր առաքինութին նր 'ի լիւստրացւոց և յիկոնացւոց ։ Բայց միայն վս անթլփատ գոլոյն խորշէին 'ի նմանէ հրէայք իբրև յօրդւոյ հեթանոսի ․ վսյ և պօղոս 'ի միւսանգամ գալստեան իւրում 'ի լիւստրա՝ առեալ թլփատեաց զնա, զի համարձակ մուտ ունիցի և 'ի ժողովուրդս հրէից ։

Եւ ապա տարաւ զնա ը իւր զոյգ ը շրջայր 'ի քարոզութին աւետարանին ․ զի տեսանէր զնա արժանաւոր առաքելական շնորհի, վառեալ 'ի գործ տն, և փոյթ 'ի բարեպաշտութեն քնի ․ մինչև քաղցր արտասուօք իւրովք 'ի լուր բանիցն պօղոսի և յաղօթսն նր՝ ուրախ առնել և զմտպն իւր ․ որ և յիշատակաւ նորին պարարէր յոգւոջ, և խանդաղատէր զնովաւ ոպ զսիրելի զաւակաւ՝ 'ի մօտոյ և 'ի հեռուստ ․ ըս որում ասէ և 'ի թուղթն առ նա ․ * Տիմոթեայ որդւոյ սիրելւոյ՝ շնորհք, ողորմութի և խաղաղութի … Անպակաս ունիմ զքէն յիշատակ յաղօթս իմ զցայգ և զցերեկ․ ցանկացեալ եմ տեսանել զքեզ՝ յիշատակեալ զարտասուսն քո, զի լցայց ուրախութբ, զմտաւ ածեալ զանխիղծ հաւատոն՝ որ են 'ի քեզ ․ որ յառաջագոյն բնակեցաւ 'ի հանւոյ քում լաւոդեայ, և 'ի մօր քում եւնիկեայ ․ հաստատեալ եմ՝ թէ և 'ի քեզ է ॥ ։

Մոգ

Արդ որ այսպիսի ջերմ հաւատով վառեալ երանելին տիմոթէոս՝ եթող զտունն իւր և զազգատոհմ վ՟ն ք՟նի , և չոքաւ զհետ ս՟բյն պօղոսի , 'ի սկզբան անդ գտաւ իբրև պաշտօնեայ կ՟մ ո՟չ որդի սիրելի , և ապա իբրև պաշտօնակից կ՟մ ո՟չ եղբայր հաւատարիմ . զի ու՟ր և շրջէր վ՟դպն հեթանոսաց և հայր համատարած ը՟ ոլորտս տիեզերաց , և առաւելապէս յասիա՝ յելլադա և յիտալիա , ը՟ նմա էր և տիմոթէոս , կցորդ քարոզու՟ե ն՟ր և հալածանաց վ՟ն աւետարանին ։ Եւ բազում այն էր , զի իբրև նուիրակ ն՟ր ընթացեալ 'ի տեղիս տեղիս՝ տանէր զկենդանի պատգամ նորին կ՟մ զա՟ծաշունչ թուղթս . որպէս և երբեմն իբրև մտերիմ խորհրդակից պօղոսի և առաքելակից՝ գրիչ լինէր առաքելական թղթոց զոյգ ը՟ նմա ։

Այնմ իրի՝ ասեն Ճառընտիրք , սիրեաց զնա պօղոս ը՟ անձին իւրոյ , որպէս էր զգաստ և ք՟ասէր . և ձեռնադրեաց զնա եպ՟ս եփեսացւոց քաղաքին . և կացոյց զնա անդ վ՟ն տեղւոյն բարեխառնութ՟են . զի կազմութ՟ե մարմնով հիւանդոտ էր՝ քաջառողջն և յոյժ առաքինին ը՟ հոգւոյ . վ՟ն հոգայր պօղոս զնմանէ , և գրէր թուղթ առ նա խրատագիր՝ հայրական գթով . և զկնի բազում պատուիրանի զգուշանալ հրամայէր նմա վ՟ն ստամոքսին սակաւ գինեակ խառնել . զի ներդևեալ էր 'ի բազում պահոցն , և խաչակցեալ ը՟ ք՟սի ։

Գրէ պօղիկլրատէս եպ՟ս եփեսոսի 'ի վախ֊

ճան երկրորդ դարուն , թէ որն տիմոթէոս եղև առաջին եպս եփեսացւոց յաւուրս կայսերութե Ներոնի , և 'ի վերակացութե մաքսիմոսի փոխանակի բդեշխի ասիացւոց . և անդ 'ի գործ արկեալ զվճպուհ ճշմարտութե՝ համդերձ զօրութբ նշանաց , արար բժշկութիս և գործս մեծամեծս 'ի վեր քան զմտածութի մարդկեղէն խորհրդոց . զնոյն առնէր և յայլ բազում տեղիս առաքելական քարոզութբ : Այս է ասելն ճառընտրաց . բազում սքանչելագործութիք արար նա 'ի բազում գաւառս , և զբազումս լուսաւորեաց բանիւն կենաց . շինելով եկեղեցիս , և ձեռնադրելով քահանայս , հանապազորդ յաւելլով 'ի պաշտօն մն ժողովուրդ՝ անթիւ բազմութի , երկրորդ լուսաւորիչ տիեզերաց զկնի մեծին պօղոսի գտաւ Ցի :

Այլ յիրաւի՝ զի ըստ գրելոյ պօղիկրատեայ , ոչ միայն մեծին պօղոսի կցորդ եղև երանելւոյն տիմոթէոս , այլև մծաքան աւետարանիչին յովհաննու 'ի գալ նորա յեփեսոս յետ փոխման տիրամօրն . յորմէ և աթոռն տիմոթէոսի անուանեցաւ 'ի փառաւոր անուն աւետարանչին յովհաննու : Այլ յորժամ յետ կատարման պետրոսի և պօղոսի առ ներոնիւ , աքսորեցաւ և յովհաննէս հրամանաւ դոմետիանոսի 'ի պատմոս կղզի կիկլադայց , նախ քան զդարձ նր յաքսորանաց յաւուրս ներուայ՝ 'ի նոյն աւուրս նահատակեցաւ և երանելւոյն տիմոթէոս ըս օրինակիս ըս այսմիկ . Կայր յեփեսոս հեթանոսական գարշ տօնի-

րաւ

րութիւն, զի 'ի պատիւ պիղծ չաստուածուհւոյն Արտեմեայ, յն Անահիտայ, զոր եփեսացիքն համարէին փառք և պարծանք իւրեանց, առնէին ամ ընդ ամէ զաւուրս քանի մի զտօն նոցա՝ անուանեալ գադաղօղիոն, այս է պանդոկական. յորում յետ հրապարակական զոհից՝ առնէին զհրապարակն իբրև զպանդոկ խուռն ժողովելոց յարանց և 'ի կանանց, ուտէին և ըմպէին և խաղային խենեշաբար. և ծածկեալ զերեսս իւրեանց պատրուճակօք և դիմակօք առ 'ի չճանաչելոյ՝ թէ ո՞ ոք իցէ, գործէին զլցեալսն ամենայն անարժանութեամբ. Թող զցետամուսս և զարեան ճապաղիս 'ի պաշտօն պղծութեան :

Յայսպիսի յետին վատթարութեան հեթանոսաց բազում անգամ կշտամբէր նա առաքեալն Տիմոթէոս, այլ նոքա ոչ կասէին 'ի չարեացն. ապա 'ի միում նոճագի՝ իբրև դարձաւ նա 'ի քարոզութենէ այլոց քաղաքաց, և եկն եմուտ յԵփեսոս, տեսեալ զքաղաքն ողջոյն յայնպիսի դիւական տօն պարապեալ, ոչ կարաց հանդուրժել. այլ եդեալ զանձն 'ի մահ՝ դիմեաց 'ի հրապարակ անդր, ուր զգարշութիւն գործէին իբրև օրէնս հայրենիս. և հայեցեալ ընդ նա՝ լի արտասուօք լինէր. աղաչէր զնոսա, մաղթէր 'ի բաց կալ նոցա յայնպիսի մոլորական խաբէութենէն :

Իսկ նոքա զչարեալ ընդ բանս նորա՝ խուռն ամբոխիւ 'ի վերայ յարձակեցան նմա առաքելոյն բրօվք և քարամբք, և որ ինչ 'ի ձեռս էր իւրաքանչիւրոց. և այնպէս անխնայ հարին զնա,

մին-

մինչև բարձաւ ի բաց և զմեռեալ յաշակերտաց անտի իւրոց. և բերեալ 'ի լեառն մօտակայ՝ անդ աւանդեաց զհոգին 'ի ձեռս ա̃յ։ Սուր ժողովեալ այլ ևս բազմութե̃ն քրիստոնէից՝ պատուեցին զպատուական մարմին նորին մաքուր կտաւովք, և ջահիւք լուցելովք և բուրմամբ խնկոց եդին 'ի տապանակի միում. և բերեալ թաղեցին 'ի տեղւոջն՝ որ կոչիւր պիոն, (կամ ըստ յունաց՝ բիօն, որ թարգմանի պարարտ,) յոյնկոյս նաւահանգստին աբիոյ. ուր և յետոյ շինեցաւ վկայարան յանուն սրբոյն։

Եւ եղև կատարումն նր̃ առաքելոյն տիմոթէոսի, ըստ ասիացւոցն հաշուի՝ յամսեանն չորրորդի՝ յաւուր երեսներորդի, յաւուրս պերեգրինոսի անթիպատոսին ասիոյ. յամի տն̃ իբր 96. այն է վերջին ամ դոմետիանոսի, և առաջին ամ ներուայ կայսեր, յամսեանն յունվարի, որ օր իբ̃ էր ամսոյն (ըստ ոմանց՝ իա̃. կամ իէ̃)։ (3)

Իսկ յետ ժամանակաց՝ 'ի դադարել հալածանացն, և 'ի հաստատիլ հաւատոյ քրիստոնէութե̃ն, յաւուրս կոստանդեայ կայսեր որդւոյ կոստանդիանոսի (յամի տն̃ իբր 356, կմ̃ 358) գնացեալ արքունի հրամանաւ արտեմիս փառաւոր պատրիկն (որ նա ինքն է արտեմիս վկայն նահատակեալ զկնի առ յուլիանոսիւ) 'ի տապան նր̃ առաքելոյն տիմոթէի յեփեսոս, եբարձ անտի զպատուական նշխարս նր̃, և եբեր պատուով 'ի թագաւորեալ քաղաքն 'ի կոստանդինուպօլիս. ուր է-

եղաւ մեծապէս փառօք ընդ նշխարաց նորին ղուկայ , և օծին անդրէն 'ի վկայարանի նոցա առաքելոց , փայլեալ նշանօք և զօրութիւնք 'ի բարութի հաւատացելոց ։

Նոյն զայն եկեղեցի՝ որ կոչիւր նոր առաքելոց , մեծացոյց յետոյ , և հոյակապ շինուածով պայծառացոյց մեծն յուստինիանոս կայսր . այլ անշարժ եթող զսեղան նոր խորհրդոյն . և 'ի մէջ տաճարին կանգնեաց զայլ խորան արծաթի՝ անդ ամփոփեաց զնշխարս նոր առաքելոցն , որ յառաջին ծածկեալ էին 'ի տեսութենէ և իբր անյայտացեալ . բայց յայնժամ 'ի բերել զտեղին՝ գտան յառանձին տապանս իւրաքանչիւր յանուանէ . ասէ գրէ պրոկոպիոս ժամանակակից . Գիրք . Ա . ԴՂ . Շին . յուստ ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Երեք գլխաւոր վկայաբանութիւնք կան օծին Տիմոթէոսի՝ միաձայնութեամբ իւրեանց ընդ էութեան . որոց հայնակցին և յայսմաւուրք և յետինք առ հասարակ ։ Առաջինն առէ լինել գործ պողիկրատեայ եպիսկոպոսին եփեսացւոց՝ առն երեւելւոյ 'ի Բ և Գ դարու յաւուրս սեւերոսի կայսեր . զոր քաղէ և փոտ 'ի մատենագր . ճծդ . առանց անուան հեղինակի . գտանի և յայլ հին մատեանս յն . և լտ . զոր և իբրև հարազատ գործ պողիկրատեսի ջատագովէ բոլլանդ ընդ կարի ։ Երկրորդն է ճառընտրիս մերոյ , որ է հետեւողութիւն օծ գրոց , միանգամայն և պողիկրատեայ և այլոց 'ի նախնեաց , համառօտ և կարգաւորեալ ոճով , Երրորդն է մետափրաստեսի . որ զնոյն բանս ճոխացուցանէ ճառօրէն ընդ իւրում կերպի , 'ի վերջ ածեալ և զփոխագրութիւն նշխարաց ։ Եւ

ահա

տեղս ՚ի սոսին ակնարկելով և մեր՝ գրեցաք զոր գրեցաքն :

(2) Անուն հանուոյ, զի մեր մերն տիմոթէոսի յուղղականն կոչի առ յոյնս լօիս, որոյ հոլովականն լօիսի, առ լատինս գրի լօիսէ, և ՚ի մեզ լաւոգէ, լաւոգեայ, խմն եղեալ առ փոխ հնչմանս ս: * Զարմանամք (ասէ ,, բոլլանդ), զի երկու այսու սրբ. կանայք լօիգէ և եւնիկէ չգտանին ՚ի տօնացուցս սրբց՝ ոչ առ յոյնս և ոչ առ ,, լատինս ||: Բայց յայտ է թէ ոչ միայն չկան առանձին պատմութիւնք կատարման նց, այլ եղեալ եւս՝ թէ չևս էր գովութիւն առաքելոյ զնոցանէ, բազում և այլ սրբք պակասին ՚ի տօնացուցս մեր ազգաց. ՚ի դէպ եկեղ առ եւսեղ պինեայ նորին բոլլանդեայ՝ առ այնոսիկ, որք ասենն՝ թէ զիարդ եւսեբիոս և հերոնիմոս յիշեն զայս վկայաբանութիւն ը այլ գրուածս ինչ պողիկարպեայ. քանզի բարւոք ասէ. * Նոքա նաև զայլ գործսք այ- ,, լոց մատենագրաց զանց առնեն ||:

(3) Զկատարումն սրբյն տիմոթէոսի պողիկարպոսս և այլք ՚ի վկայաբանից դնեն յաւուրս ներուայ. որոյ փոխան ՚ի Ճառընտրի մերում և առ ոմանս ՚ի լատինացւոց վրիպակաւ գրեալ է ներոն. իսկ դնելն մետափրաստեսի և այլոց ոմանց առ դոմետիանոսիւ, հայի ՚ի վերջին ամն ը փոտայ. որ և առաջին ամ ներուայ: Հ. և Ց. ով և ոմանք ՚ի լտ. զօրն դնեն՝ իը յունվարի. իսկ Ծ. իա. այլք առ լատինս հնրկօրէն՝ իգ: Թող զի են առանձին վկայաբանք՝ որք յիշեն զտօն սրբյն ՚ի մայիսի. ժդ. կմ յօգոստ. իթ. և կմ ՚ի սեպտ. իէ. որ եթէ չիցէ չփոթութիւն ը այլ համանուն սրբյ, խառնել է ը աւուր փոխադրութեն նշխարաց. զոր ՚ի մայիսի 9. կատարեն լատինք, գրելով ըստ սովորական օրինակաց. * ՚ի կոստանդնուպօլիս՝ փոխադրութիւն սրբց՝ ,, անդրէի առաքելոյ, և ղուկայ աւետարանչի յաքայիայ, ,, և տիմոթէոսի աշակերտի երանելւոյն պօղոսի առա- ,, քելոյ յեփեսոսէ ||. կամ ը օրինակին ադոնի, բեդայի, և այլոց. * ՚ի կոստանդնուպօլիս յիշատակ սրբյն ,, տիմոթէի, յորժամ յեփեսոսէ անդր բերեալ եղեն սրբ. ,, ոսկերք նր ||:



# ՎԱՐՔ ԵՒ ՀԱՆԳԻՍՏ

## Սր̃ առաքելոյն Տիտոսի ։

Հ. յուլ. 29 ։ Յ. օգոստ. 25 ։ Լ. յունվար. 4 ։
Ճառընտր. Ա. ՃԿԷ = ՃԿԸ. և Օ. ՃԺԷ = ՃԺԸ ։
Բոլլանդ յովհաննէս. ՚ի Ա հատ. յուլ. էջ. 163 ։
Պետրոս նատալեան. օգոստ. 25 ։

ԵՐԻՏԱԳՈՅՆՆ ՅԱՇԱ-կերտս պօղոսի՝ նք առաքելոյն Տիտոս, էր ՚ի թուոյ աշակերտաց վաղագոյն դարձելոց ՚ի հեթանոսութէ ( Ա̃ գաղատ. Բ. 1. և 3. ) . մինչև թուել զնա ոմանց Ի̃ եօթանասունն և երկու աշակերտս քի̃ (1). ազգաւ և քաղաքաւ կրետացի, այլ կարծեցեալ ՚ի տիտոսէ յուստոսէ կորնթացւոյ. վերապատուեալ ՚ի նմին պօղոսէ Ք զծմ աշակերտս և զգործակիցս իւր. զոր թեպէտև ՚ի թուղթն առ նա խանդաղատանօք կոչէ որդի իւր սիրելի ( տիտ. Ա. 4 ), բայց ՚ի թուղթն առ կորնթացիս՝ է զի եղբայր իւր անուանէ ( Բ. կոր. Բ. 13 ) . և է զի ՚ի վեր քան զանուն եղբայրութե պատուասիրէ զնա, ասելով. * Բայց շնորհք այ՝ որ ետ զնոյն փոյթ վս ձեր ՚ի սիրտ տիտոսի. զի զաղաչանսն ընկալաւ, և փութացաւ յօժարա-

բագդոյնս դիմեաց գայլ առ ձեզ. և առաքե-
ցաք ընդ նմա զեղբայրն՝ որոյ գովութիւն յաւե-
տարանի անդ է ընդ ամ եկեղեցիս... Բայց
եթէ վն տիտոսի ինչ բանք են, իմ հաւատար
է՝ և ձեր գործակից. և եթէ եղբարք մեր՝
առաքեալքն եկեղեցւոյ, և փառք քսի ||.
(բ. կոր. ը. 16. և 23:) Իսկ դարձեալ՝ թէ
* աղաչեցի զտիտոս, և առաքեցի ընդ նմա
,, զեղբայրն. միթէ ագահեաց ինչ զձեր տի-
,, տոս. ոչ նովին ոգւով գնացաք, ոչ նովին
,, շաւղօք շրջեցաք ||:

Յելանել պօղոսի յեէմ զառաջինն ընդ բառ-
նաբայ՝ ընդ նմա էր և տիտոս (գաղ. բ. 1).
ապա առաքեցաւ 'ի նմանէ, և առաքելաբար
շրջեցաւ մինչև 'ի դաղմատիա (բ. տիմ. դ.
11). Թողաւ զկնի 'ի կրետէ իբրև եպս այնր
կղզւոյ (տիտ. ա. 5). և դարձեալ հրաւի-
րեցաւ 'ի նմանէ 'ի նիկոպօլիս (տիտ. գ.
12): Ոչ այնպէս կախեալ էր ոգի նր զնմա-
նէ 'ի քարոզութեան աւետարանի, մինչև ասել.
* Այլ իբրև հասի ես 'ի տրովադա յաւետա-
րանն քսի, և դուռն բաց էր ինձ 'ի տր, ոչ
եղու հանգիստ հոգւոյ իմում. քանզի ոչ
գտի ես անդ զտիտոս զեղբայր իմ. այլ հրա-
ժարեալ 'ի նոցանէ՝ գնացի 'ի մակեդոնիա ||:
(բ. կոր. բ. 12. 13:)

Անձն զայլ գործակցութիւս 'ի քարոզութեան աւե-
տարանի, առ յոմանց ընդ հերոնիմոսի, թէ
տիտոս էր նաև թարգման պօղոսի, որպ մար-
կոս պետրոսի, եթէ՛ բանիւ և եթէ գրով.
զի թէպէտև պօղոս ինքնին գիտովին ունէր

ըղ-

զշնորհս լեզուաց, եւս առաւել պերճախօս էր յեբրայական բարբառ, այլ Տիտոս իբրեւ անդստին սնեալ ՚ի հելլենական ուսմունս՝ քաջ թարգմանէր ՚ի լեզու յունական զոգի պօղոսի որ յեբրայականն ։

Միաձայնի է այսմ ամի եւ առանձին վարք Տիտոսի ՚ի սկզբանէ դարձի իւրոյ մինչեւ ցվախճան. որ ասի գրեալ զառաջինն ՚ի զինասայ, որ ՚ի զենոնէ օրինական դպրէ յիշատակելոյ ՚ի թղթի անդ պօղոսի առ Տիտոս. (տիտ. գ. 13.) ուստի առնուն եւ վկայագիրք առհասարակ, եւս առաւել ճառընտիրք մեր՝ է առաջիկայ օրինակիս ։ (2)

Տիտոս էր ՚ի կրետէս կղզւոյն, յոյժ բարեբարոյ եւ մեծազգի, եղբօրորդի արքային մինովսայ թագաւորին կրետայ (3). եւ էր ուսումնասէր յոյժ, եւ ցանկայր ուսանել զիմաստասիրական գիրս, զհելլենական դպրութի, եւ զհանճար հոմերոսի եւ զպղատոնի, եւ զնոցին նմանեաց իմաստասիրացն զատորագութիս ։ Նա էր այնուհետեւ ամաց քսանից. եւ լուաւ ձայն յումեմնէ յաներեւութից, որ ասէր ցնա. Տիտոս տիտոս՝ պա՛րտ է քեզ ելանել աստի, եւ կեցուցանել զոգիդ քո. զի ոչինչ է օգուտ քեզ ուսանել զգիրս հոմերոսի եւ պղատոնեայ, զոր խորհեալդ ես ։ (4)

Նա նա ՚ի զարմացման եղեալ՝ սկսաւ այնուհետեւ ընթեռնուլ զգիրս մարգարէականս. եւ առեալ զգիրս մարգարէին եսայեայ՝ եբաց զայն տեղին, յորում գրեալ էր. Նորոգեցարուք առ իս կղզիք. եւ խփեալ զգիրսն՝ գի-

տաց,

տաց, եթէ եղև առ նմա շնորհք իմն ածային։ Այլ խսկոյն եղև լուր համբաւոյն քնի առ թգւորն մինոս, և ծաւալեցաւ յամ կղզին կրետայ նշան սքանչելեացն՝ զոր առնէր քն յէմ։ Զարմանայր թագաւորն, և ցան-կայր տեսանել զքն. ոչ եդեսացւոց քաղա-քին աբգար թագաւորն։ Այլ խորհուրդ ա-րարեալ ընդ իշխանս կրիտոսոյ՝ առաքեաց զեղ-բօրորդին իւր զտիտոս յէմ, և ընդ նմա սուր-հանդակս և արս իմաստունս՝ տեսանել զքն և զսքանչելիսն զոր առնէր. և զի դարձեալ պատմեսցեն նմա ստուգութբ զամ։

Այլ յորժամ գնաց տիտոս յէմ, ետես զքն, և երկիր եպագ նմա. և ականատես եղև սքանչելեացն՝ զոր առնէր քն յէմ. և գրեաց ստուգութբ առ թագաւորն վն քնի. և առա-քեաց զիշխանսն և զսուրհանդակսն 'ի ձեռն թղթոյ առ հօրեղբայրն իւր։ Այլ ինքն ան-դէն մնաց յէմ՝ յարեալ յաշակերտսն տռն. և ականատես եղև չարչարանացն քնի և խա-չելութեն և մահուն և թաղմանն և յարու-թեն 'ի մեռելոց և համբարձմանն յերկինս։ Այլ 'ի գալստեան սբ հոգւոյն՝ 'ի վերնա-տանն ընդ ժբ առաքելոցն էր տիտոս. և թուե-ցաւ 'ի թի եօթանասունն և երկու աշակեր-տացն տռն. կմ ոչ այլ օրինակագիրք ասեն, համարեցաւ 'ի թի հարիւր և քսանիցն։ (5)

Իսկ 'ի հաւատալն պօղոսի 'ի քն, 'ի կեսարիա պաղեստինացւոց ձեռնադրեցին առաքեալքն զտիտոս եպս, և առաքեցին ընդ պօղոսի 'ի քարոզութն ընհանուր տիեզերաց. որք եւ

ԺԴ թեալ

թեալ աւետարանեցին զքս յիմ քաղաքս և 'ի գաւառս, և սերմանեցին զբանն կենաց ։ Այլ բազում տանջանս և նեղութիւնս կրեալ համբերեցին վս անուանն քնի, և լուսաւորեցին մկրտութբ զբազումս ․ և անթիւ տանելովն չարչարանս և արուեստս մեծամեծս՝ այնու հաւանեցուցանեցին հաւատալ 'ի քս ․ և անթիւ բազմութիւն հաւատացելոց հանապազ նուիրեցին այ ։

Եւ երթեալ 'ի կրետէս կղզի՝ կացոյց պօղոս զտիտոս եպս գորտինեայ քաղաքին, որ էր նր իբրև ժառանգութիւն իւրն հայրենի (6) ։ Այլ անտի եկեալ եկին յասիա և յեփեսոս ․ և մտին 'ի քաղաքն, և սկսան քարոզել զաւետարանն փրկութե ․ և բազում հիւանդաց դնէին ձեռս, և կարդալով զանուն տն յնի՝ առժամայն բժշկէին ։ Այլ և համբաւ սքանչելեաց նոցա ըն ամ գաւառն ․ և բազումք 'ի հրէից և 'ի հեթանոսաց անսային հաւատոցն ։ Իսկ պօղոս ըն հրաւիրելոյ զնա հոգւոյն սբյ՝ դարձաւ անտի, և եկն 'ի հռոմ ։ Այլ տիտոս ոչ եթող զպօղոս 'ի սկզբանն քարոզութե նր մինչև ցկատարումն նորին ․ այլ հանապազ ըն նմա ուղևորեալ՝ շրջէր 'ի քարոզութիւն բազում և մեծամեծ վշտօք ․ մինչև ընկալաւ պօղոս զվճիռ մարտիրոսութե 'ի ներոնէ կայսերէ՝ սրով հատեալ զգլուխն 'ի հռոմ քաղաքին ։

Այլ շատ ողբացեալ սբյն տիտոսի՝ որ մնաց 'ի սբյն պօղոսէ, և իբրև որբ մնալով՝ դարձաւ բազում արտասուօք 'ի հռոմէ, և եկն 'ի

սամիա, 'ի կամբանա, և 'ի գորտոնն, որ և գորտունինա . և արար զգորտունինա միտրոպօլիս, որ Թարգմանի մայրաքաղաք . և եղև անդ վեց ամ՝ հաստատելով զնա 'ի հաւատս ամենասուրբ երրորդութեն . և բազում և անչափ սքանչելիս արար անդ : Այս օրինակ բարեաց լինէր ամ Ծին . քանզի էր առաքինի պայծ և անխինչ . և կերակուր նր բանջար լոկ 'ի պարտիզէ, և ջուր լոկ ըմպելի . և զգեստ նր խոշոր :

Այս եղեն աւուրք կենաց նր այսչափ . քանզի ամենայն էր՝ յորժամ գնաց յեէմ յերկրպագուն քսի . և եղև առ նմա ամ մի . և եղև հետևող պօղոսի առաքելոյ 'ի քարոզութե ամս ԼԸ . և 'ի կրետէ յաթոռն իւր ամս Է . և շրջեցաւ 'ի գաւառն իւր Ը ամ կղզին ամս Թ . և եղեն ամք կենաց նր յծի՝ զոր եկաց, ամս ՀԶ (7) : Այս զայսչափ ամս ճնշէր զմարմին իւր ազգի ազգի առաքինութե . և 'ի քնոյ ժամուն հանգչէր ոչ 'ի վր բարձի, այլ 'ի վր գետնոյ՝ խորգոյ և մոխրոյ :

Իսկ յորժամ հանդերձեալ էր փոխիլ առ քս (Ըստ նախագրեալ հաշուի՝ յամի տն իւր 86), եստես զունմբս հրեշտակաց դաց՝ որք իջին առ նա . և տունն լի եղև անուշահոտ խնկով . և ամպ լուսաւոր հովանի եղև 'ի վր նորա . և պայծառացան երեսք նր, և ժպտեցաւ . և յարուցեալ տարածեաց յերկինս զձեռս իւր, և ասէ . Տր իմ յս քս, զհաւատս քո անշարժ պահեցի, և ժողովրդեանս քո անդրդուելի զգուշացայ . այսուհետև դու տր ան-

խախտելի հաստատեալ, և պահեալ զհօտս քո. և ես զհոգիս իմ յանձն առնեմ՚ի ձեռս քո. և յաւել զամէնն՝ աւանդեաց զհոգին առ ա͞ծ իբրև զխունկ անոյշ՚ի հոտոտութիւն կամացն ն͞յ։

Իսկ առեալ զմարմին ն͞ր պատուեցին մաքուր և ն͞ր կտաւովք, և օծին իւղովք և անուշահոտ խնկովք։ Իսկ յորժամ տանէին՚ի թաղումն գերեզմանին, երև նշան սքանչելի. զի որ ղուղեալ և թաքուցեալ կային բազմունքն ՚ի կղզւոջն, ամենեքեան անկեալք խորտակեցան. զոր տեսեալ ամենեցուն՝ առաւել հաստատէին՚ի հաւատս տ͞ն մերոյ յի͞ ք͞ի. որում փառք յաւիտեանս, ամէն։

Այս է քաղաքավարութիւն և ննջումն ն͞ր առաքելոյն տիտոսի՝ առեալ՚ի գրութէ աշակերտակցի նորուն, ք͞ն զենոնի օրինականն դպրի։ Յիշէ զտիտոս և իգնատիոս ա͞ծազգեաց ՚ի թուղթն առ փիղադեղփացիս՝ գովելով զորբափայլ և զկուսակրօն կեանս ն͞ր։ Կան և թուղթք դիոնեսիոսի արիսպագացւոյ առ տիտոս՝ երկու. մին ՚ի կարգի ա͞ծաբանական գրոց իւրոց՝ զոր արար ՚ի խնդրոյ տիտոսի. և միւս ևս ուրոյն՝ յաղագս ննջման և փոխման ամենասուր͞բ կուսին ա͞ծածնի։ Իսկ յաղագս նշխարաց ն͞ր առաքելոյն տիտոսի՝ ոչ͞ գրեն յայսմաւուրք, թէ ՚ի տապանէ ն͞ր լինին բազում սքանչելիք, նոյնպէս և յետին մատենագիրք և ձեռհագիրք աւանդեն, թէ պատուական գլուխ ն͞ր ամբողջ պահի ՚ի գանձատունս յարքեպիսկոպոսանիստ քաղաքին

կրե-

կեայ , և 'ի սահմանեալ ժամանակս մե-ծաշուք հանդիսիւ՛ դնի յերևելի տեղւոջ 'ի յարգութիւն ժողովրդեան՝ 'ի հոյակապ տա-ճարի անդ , որ կանգնեալ է յանուն նորին տիտոսի սրբ առաքելոյ :

Ըստանօր վայելչապէս տեսանեմք եդեալ յերկուս և յերիս ձեռագիր օրինակս տօնա-ցուցից և գլխաւորաց այլոց աշակերտացն պօ-ղոսի առանց անուան · այլ քանզի յոլովա-գոյն օրինակք զկնի չորից աւետարանչաց դնեն՝ խառն ընդ այլ վկայս , անդանօր մնայ և մեզ անել զարժանն :

Յայսմ վայրի զայն յուշ արասցուք , թէ բաց 'ի տիտոսէ առաքելոյ գոյր և այլ համանուն յաշակերտս պօղոսի՝ յիշատակեալ 'ի գործս առաքելոց · ԺԸ · 7 · հեղլենացի կմ հռովմայե-ցի 'ի կորնթոս · ուր իբրև ոչ եգիտ ինքն պօ-ղոս ընդունելութիւն առ հրէայս , ասաց · * քա-ւեալ եմ ես , յայսմ հետէ 'ի հեթանոսս եր-թամ · և գնացեալ անտի՝ եմուտ 'ի տուն ուրումն , որում անուն էր տիտոս յուստոս՝ պաշտօնեայ այ · որոյ ապարանքն էին մերձ 'ի ժողովետղն || , իբր մերձ 'ի ժողովարան հրէից · ուր և կրիսպոս ժողովրդապետ հրէից հաւատաց 'ի տր : Ըրդ քանզի և առաքեալն տիտոս բազում անգամ եկն ընդ պօղոսի 'ի կորնթոս , և բզմ անգամ առաքեցաւ անդր , վսյ և ստէպ յիշէ զնա պօղոս 'ի թուղթն առ կորնթացիս ; համարեցաւ ոսկեբերան 'ի ճառն · ա · 'ի փիլ · թէ նոյն իցէ ընդ տիտոսի յուս-տոսի · զոր այլք 'ի նախնեաց և 'ի յետնոց

քաջ զանազանեն, զառաքեալն Տիտոս կրե-
տացի կոչելով, և զպաշտօնեայն Տիտոս յուս-
տոս՝ կորնթացի․ երկոքեին ևս 'ի հեթանո-
սութէ դարձեալ։

Արդ վն Տիտոսի երկրորդի յուստոս կոչե-
ցելոյ կայ այս աւանդութի, թէ յետ շրջե-
լոյ նախ ը̅ ՚նքն պօղոսի, և ապա ը̅ եւգի-
նէոսի ումեմն յաշակերտաց, գնաց քարոզել
'ի սպանիա՝ 'ի կարպետանիա գաւառ տար-
րակոնացւոց, որոյ մայրաքաղաք է տոլետոն․
ուր և յիշատակ նր̅ և մեծուն̅ սքանչելեացն
քարոզեալ լինէր 'ի սկզբանէ հետէ։ Սմա
հանդիպեցաւ 'ի կողմանսն յայնոսիկ կամ
յարևելս (զոր ոմանք 'ի կրետէ ասեն՝ շփո-
թելով ընդ առաջնոյն Տիտոսի) իմաստուն
այրն և հիւպատոս հռովմյեցի առ տրայիա-
նոսիւ պլինիոս կրտսեր՝ որ և կեկիլիոս սե-
կունդոս քեռորդի մեծին պլինիոսի սեկուն-
դոսի․ և 'ի վր̅ հասել ճանապարհին ճշմար-
տութե՝ ձեռնտու եղև հաւատացելոց․ և
տեսել զբազմութի նց̅ նահատակել առանց
իրիք յանցանաց՝ վն պաշտելոյ ևեթ զք̅ս,
գրեաց առ տրայիանոս, և հաւանեցոյց զնա
դադարեցուցանել զհալածանս․ ոպ̅ գրէ և
եւսեբիոս․ ուր 'ի հայերէն օրինակի եդեալ
է պլոնիոս սակենդոս՝ փոխանակ գրելոյ
պլինիոս սեկունդոս։ Յաւելուն այլք, թէ
յաւուր միում անցանէր Տիտոս յուստոս առ
տաճարաւն՝ զոր պլինիոս սեկունդոս կրտ-
սերն շինէր յանուն դիոսի հրամանաւ ինքնա-
կալին․ և յանխնանել տիտոսի զդիոս և զտա-
ճար

ճար նր̃՝ իսկ և իսկ հիմն 'ի վեր տապալեցաւ գործն ։ Յայնժամ ընթացաւ սեկունդոս առ տիտոս, և աղաչէր զնա արտասուօք, զի մի՛ արգելօք և ը̃ նա անցցէ վասն ինչ 'ի գործոյ անտի ։ Իսկ տիտոս պատուէր եդ 'ի վր̃ նր̃, զի շինուածն սկսանիցի յանուն միայն տր̃ քրիստոնէից. և այնպէս մարթ է քեզ ասէ 'ի գլուխ տանել զգործդ. որ և եղև իսկ. յայնժամ 'ի կատարել գործոյն մկրտեցաւ սեկունդոս համդերձ որդւովն իւրով. և յայսմ պատճառէ կարծի նահատակեալ սեկունդոս, գուցէ և տիտոս յուստոս ընդ նմա, 'ի կողմն քաղաքի իտալիոյ առ տրայիանոսիւ կմ̃ ադրիանոսիւ. քանզի և նոյն սեկունդոս էր կոմացի, տր̃ 'ի կոմոնայ՝ որ և նովոկոմոն կոչեցաւ յետ նորոգութե, յինսուպրիա գաւառի՝ 'ի սահմանակցութե միդիոլանու և վերոնայու ։ Նո՛յն է և սեկունդոս զօրական 'ի գնդէ թեբայեցւոց նահատակեալ անդ 'ի կողմն առ մաքսիմիանոսիւ ը̃ այլ վկայս ։ (8)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Նախընթացքն մեր աստանօր անխտիր կոչէն զտիտոս աշակերտ պօղոսի, և մի յեօթանասնունն և երկու աշակերտաց քր̃ի. որպէս և Հ. ապր. ց. և Յ. ժամանակագրութ. 5. 'ի վերայ եօթանասնից, պարզապէս 'ի թիւ եօթանասնից կարգեն զտիտոս. զի թէպէտև եօթանասուն և երկու աշակերտացն էին յայտնի հրէից, իսկ տիտոս հեթանոս, բայց քանզի առ քր̃ի աշակերտեցաւ ը̃ պատմութեն վարուց իւրոց, կամ իբրք կը̃ պատուեով էր 'ի համարի նոյն աշակերտաց ։ Իսկ թէ յօրինակս ինչ առ-

նայուցի կոչի աշակերտ պօղոսի Ը տիմոթէոսի, ՚ի բաղ-
մացոյն օրինակս չէք անուն աշակերտութեան պօղոսի,
այլ պարզապէս կոչի տիտոս առաքեալ. և կարգ անուանցն
տիմոթէոսի և տիտոսի եդեալ է ՚ի ամենայնսն՝ հայե-
լով ՚ի կարգ թղթոցն պօղոսի. ապա թէ ոչ Ը ճառընտ-
րաց նախ գրի վարք տիտոսի, և ապա տիմոթէոսի:
Յայտնի է և այն, զի առ մատենագիրս առ հասարակ
չփոթ աւանդութիւ՝ է զի աշակերտք պօղոսի վերածին
՚ի թիւ եօթանասնից, և է՝ զի աշակերտք քի ՚ի թուոց
եօթանասնից՝ վերածին ՚ի թիւ աշակերտաց պօղոսի.
զի առ հասարակ էին գործակիցք առաքելոց:

(2) Չիք վկայաբանութիւնս գտեալ ՚ի ճառընտիրս մեր
թէպէտև առ այլս չգտանի այժմ ամբողջ, բայց քաղ-
ուած նը է՝ զոր միանգամ առաջի առնեն ժամագիրք
յունաց, և պետրոս նատալեան, և այլ վկայաբանք,
զորս ՚ի մէջ բերէ կմ յիշատակէ բոլլանդ. և ոչ ամե-
նեքին ասեն, թէ զվարս տիտոսի գրեաց զենաս կամ
զենոն օրինական դպիրն, նոյնպէս և ճառընտիրք մեր
զնա ճանաչեն առաջնորդ բանիցս՝ սկիզբն դնելով օրի-
նակ զայս. * Վարք և պաշտնէականագործութե և հանգիստ
• սբ առաքելոյն տիտոսի աշակերտին պօղոսի առաքե-
• լոյն. զոր ձեռնագրեաց եպս գորտինեայ քաղաքին ՚ի
• կրետացւոց կղզւոյն: Զենաս (Ը մեզ՝ զենոն), զոր յի-
• շատակէ պօղոս ՚ի թուղթս իւր, նա գրեաց զպատ-
• մութի վարուց սբյն տիտոսի առաքելոյ, որ էր մի
• յեօթանասնից անտի: Սա էր ՚ի կրետացւոյ կղզւոյն ||
ևն: Զնոյն ընդօրինակէ և Հ, քան թէ քաղէ՝ որպէս
այլքն:

(3) Մինաս կմ մինով էր անուն թագաւորի կրետաց-
ւոց նաև յառաջ Ք զքն. ուստի ծագել համարի պետ-
րոս նատալեան և զփշխան կղզւոյն զազգականն տիտո-
սի, կոչելով զանուն նը հռուստիղիոս. բայց Ճ. և Հ.
ցուցանեն՝ թէ նաև անուն ազգականին տիտոսի էր մի-
նոս: Յերկուս միտս է իմանալ և զբանս Յ. Ժմ. * Այս
• երանելիս (տիտոս) ՚ի մինովեայ արքայէն կրետայ գո-
• լով Ը ազգի (կմ ազգակից), ոչ ասէ զենաս օրինա-
• կանն՝ որ զվարս նը գրեաց ||: որպէս և զենի գրէ.
* Անթիպատոսն կրետայ, որ և հօրեղբայր (կմ քեռի)
• սբյն տիտոսի ||. ևն: Բայց դնծ կոչէ զնա հռոմա-
տիկոս:

(4) Յ. Ժմ. յաւելու զպարագայ տարւոյ մեոյ՝ յասելն.
* Լաւ ձայն ՚ի վերուստ եկեալ առ նա՝ որ ասէր. տի-
• տե,

բերի. * հաւատացին 'ի ժամուն յայնմիկ ոգիք աւելի
• քան զերկոտասան հազար մարդ. Է այր և Է կին և
• Է մանկունս. և մկրտեցան 'ի նմին աւուր ||: Զայս
ոչ գտաք յայլ ընթերցուածս. և 'ի կարծիս լինիմք, թէ
այդ գումար ոչ հայի 'ի մի տեղի և 'ի ժամանակ, այլ 'ի
հաւաքումն հաւատացելոց յայլևայլ տեղիս և 'ի ժամա-
նակս: Այլ այն' զի դարձոյց յետոյ տիտոս զհինգ հա-
րիւր ոգիս միանգամայն 'ի կրետէ, միօրինակ գտանի
յամ օրինակս:

(7) Անվրէպ երևի չափ ամաց և ժամանակաց' զոր եդաք
Թ Ծ. ուր Ց. ժմ. և պետր. նատալ. ընթեռնուն փո-
խանակ ՀԶ. ամաց' զամս կենաց տիտոսի ՂԶ. Թ որոյ և
բոլլանդ. հարկաւորի դնել զվախճան տիտոսի յամի Տն
ՃԵ 105:

(8) Վասն տիտոսի յուստոսի և պլինիոսի սեկունդոսի
կրտսերոյ գտանեմք զայնպիսի բանս 'ի Ժամագրութն
դեքստորոսի' յամի Տն 220. որ պարտի լինել գոնէ 120.
'ի նոյն հայրն և բանք պետր. նատալ. բայց երկոքեանն
իսկ նոյնացուցանեն զերկուս տիտոսս' Թ ոսկեբերանի:
Բոլլանդ. այսչափ ասէ. * Արդեօք պլինիոս սեկունդոս
• ինչէ՞ դարձեալ 'ի ձեռն տիտոսի, չեք իմ վէճ. միայն
• թէ ոչ է սեկունդոսն այն. որոյ տօնն կատարի 'ի 7.
• օգոստ. 'ի կոմոն... նահատակեալ առ մաքսիմիանո-
• սիւ ||: Զբանս եւսեբեայ եդաք 'ի վարս շմաւոնի ազ-
գականին քՏի' Թ հայերէն օրինակի. հատ. Ա. էջէ.
536: Նա ինքն պլինիոս կրտսեր 'ի Ժ գիրս թղթոց իւ-
րոց' 'ի նամակի իւրում առ տրայիանոս մեծապէս յաւ-
գէ զքրիստոնեայս:

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Մատթէոսի առաքելոյ և աւետարանչի ։

Հ. Յ. Նոյեմբ. 16. Լ. օրըստ. 21 ։ Ճառընթ. Ա. շկը = չհէ. և Խ. ձկէ = ձծա. և Ն. ծղ = ջա. և ղէ ։ Ըստ Լատինացւոց տոմարին. 'ի Հ. հոկտ. օրըստ. ԵՁ. 194 = 227 ։



ՐԵՀՏԱԿՆ Ի ՄԱՐԴ-կանէ՝ մարդ թեւաւոր 'ի խորհրդեան չորեքկերպեան կենդանեաց, առաջինն ասեմ 'ի նոր աւետարանիչս, երանելին առաքեալն քնքոյ Մատթէոս, տնօրինաբանեալ յայլևայլ լե-զուս՝ երգ կենաց կը փրկութեն, պարզև, և տնտեսականն, եր որդի ալփեայ. և առաջին անուն նորա Ղևի. մինչ էն որ յաղգէ իսաքա-րայ ասեն, և են՝ որ 'ի ցեղէն ղևեայ. եղ-բայր կարծեցեալ յակոբու ալփեան ։ (1)

Սորա՝ ոչ իւրքնին իսկ պատմէ զանձնէն անա-պատրաստ, եր յառաջին մաքսաւոր. որ էր գործ վաստակն՝ ուրեմն էհաս 'ի մեղաւորէ, էր որում առաւել ստրուկական արծաթասէր անձանց. և ահա 'ի նստել իւրում 'ի մաքսա-տան կափառնաումայ քաղաքի յեզր տիբերա-կան

կան ծածուն գալիլեացւոց, անցեալ է այն
յանի, իբրև ետես զնա, ասէ ցնա. եկ զկնի
իմ. և նա վաղվաղակի լուեալ ձայնին կոչ-
մանն, և թողեալ զամենայն մեծութիւն իւր և ըզ-
հոգս աշխի՝ աշակերտեցաւ փրկչին. և եղև մի
յերկոտասան առաքելոց:

Սա յաւուր անդ հրաժարելոյ յամէն՝ արար
ընդունելութիւն մեծ տեառն իւրում և վարդապետի 'ի
տան իւրում, հանդերձ աշակերտօք նորա, և
բազմութե՛ ծանօթից իւրոց մաքսաւորաց,
յայտնելով ամենեցուն զուրախութիւն սրտի
իւրոյ ընդ թողուլ զկորստական ինչս և զպատ-
րանս աշխի, և ընդ զերծանիլ իւր 'ի ծառայութէ
մամոնայի, լինելով ճշմարիտ ծառայ այ, և
հարազատ աշակերտ երկնաւոր վարդապետին և
փրկչին տիեզերաց:

Սա յետ առաքինակայ լինելոյ տեառն մերոյ քարոզութե՛
և տնտեսութե՛ կենարարին մինչև 'ի համ-
բարձումն նորա յերկինս, ընկալեալ զզեղումն
հոգւոյն սրբոյ 'ի վերնատան ընդ այլ առաքելովքն՝
քարոզեաց առ ժամանակ մի 'ի սահմանս
հրէաստանի: Սա յորժամ հանդերձեալ էր
գնալ 'ի հեռաւոր տեղիս 'ի քարոզութիւն ա-
ւետարանին, աղաչեցին զնա հաւատացեալքն՝
որ յերուսաղէմ, զի զոր աւետարանեաց նոցա բանիւ,
աւանդեսցէ և գրով 'ի յիշատակ անմոռաց.
Ըստ որում գիտէին զնա և անդստին կիրթ 'ի
դպրութիւն. և նա յանձն էառ և գրեաց ազդ-
մամբ սրբ հոգւոյն զաւետարանն իւր յերուսաղէմ
քաղաքի անդ յեբրայական բարբառ, ոչ ընդ
հին լեզուին եբրայեցւոց՝ որ 'ի հին կտակա-
րա-

րանի, այլ և սովորական լեզուին պաղեստի-
նացւոց յայնմ ժամանակի, որպէս և զխմրդ խօ-
սէր Տէրն մեր 'ի մէջ նոցա 'ի բարբառ նոցա, որ էր
առաւել մօտաւոր ասորւոյն՝ քան թէ քաղ-
դէականին. որպէս և նշանագիրքն էին քաղ-
դէական. և այս եղև իբր եօթն կամ ութ ա-
մօք զկնի համբարձման Տեառն ։ (2)

Այլ քանզի յունական լեզուաւ առաւել
տարածեցաւ քարոզութիւն աւետարանին ընդ
աշխարհ, վասն այսր՝ թէ կամէր ինքն Տէրն մատ-
թէոս, կամ այլ ոք յառաքելոց և յաշակերտաց
անդէնևանդ թարգմանեաց զնոյն և 'ի յոյն
բարբառ. և մի յառաջին օրինակաց անտի էր՝
զոր տարաւ ընդ իւր սուրբն բառնաբաս, և յետոյ
գտաւ 'ի տապանի նորա. որպէս գրեցաք 'ի վարս
նորա ։ Մինչ զի և յունական օրինակն իբրև
բնագիր համարեալ եղև յամս դարս, մանա-
ւանդ յետ պակասելոյ եբրայականին ։ Ոչ է
թէպէտ գտանէին օրինակք ինչ եբրայե-
ցերէն մինչև 'ի չորրորդ և 'ի հինգերորդ
դար, այլ ոչ ունէին զճշգրիտ վաւերականու-
թիւն յունականին. զի հրէամիտ եբիոնիտք
և այլ աղանդաւորք խարդախեալ էին զեբ-
րայականն հետզհետէ. և եթէ կայցէ ա-
րեք ցարդ այնպիսի օրինակ. օտար 'ի յունա-
կանէն, չէ ընդունելի յեկեղեցի այ ։

Իսկ պատմութիւն քարոզութեան և կատարման
սրբոյ առաքելոյն և աւետարանչին մատթէո-
սի՝ որպէս և բազմաց յառաքելոց, մնայ տար-
տամ և անստոյգ՝ վասն պէսպէս և անմիաբան
աւանդից, որք գտածին յայսոսիկ ։ Յե-
թէ

Թեոդոսիա քարոզեաց և կատարեցաւ ասեն
Հռուփինոս , սոկրատ , մեծն գրիգոր , և մեծ
մասն արևմտեան վկայագրաց . և այն՝ ըստ
ոմանց 'ի մերձաւորն եթէովպիա մօտ յե-
գիպտոս , և Ծ այլոց 'ի ներքսագոյն՝ որ է
հապէշստան կամ երկիր խափշկաց : 'Ի պարսս
ասէ ամբրոսիոս : 'Ի պարթևս՝ պաւղինոս նո-
լայեցի Ը հերոնիմեան վկայագրոց . կամ 'ի
հերմէս պարթևաց՝ հիպողիտոս : Իսկ դո-
րոթէոս՝ ըստ օրինակաց ինչ , 'ի հերապօլիս
պարթևաստանի , կամ ըստ այլ օրինակաց՝
յարապօլիս կամ 'ի յերապօլիս ասորւոց . նոյն-
պէս դնէ և նիկետաս պափղագոնացի : Մ՝ե-
տափրաստէս՝ նախ 'ի պարթևս ասէ , և ապա
յեթովպիա : Ա՝սորիք և քաղդէացիք՝ նաև
յԾ իւրեանց եկեալ տաւանողեն , և անցեալ
'ի հնդիկս :

Յայսմաւուրք հայոց 'ի յունիսի 30 . ասէ ,
թէ զկնի քարոզելոյ զՔս 'ի բազում տեղիս՝
* կատարեցաւ յապամիա ( ասորւոց ) հրով
այրեցեալ . և բերաւ նշխարքն 'ի մեծն ան-
տիոք . և անդ հաստատեցաւ աթոռ նր . և
յետոյ տարան յայսկոյս ծովուն ( յարև-
մուտս ) Ա : Իսկ յայսմաւուրք յունաց 'ի նոյ-
եմբերի 16 . ( որում անդանօր ձայնակից լի-
նի և յայսմաւուրք հայոց ) դնէ , թէ * գնաց
'ի քաղաքն գաւառս հեթանոսաց՝ ուսուցա-
նելով զբանն քի , եւս և մինչև 'ի մարդա-
ապանս՝ զորս ոմանք մարդակերս ասեն . յորս
բազմօք տարժանել , և եղս արարել զպղա-
տոն կոչեցեալն , եթող անդ , և եկն յերա-
պա

պօլիս ասորւոց . և անդ ուսուցեալ բազմաց զբանն ք՟սի և մկրտեալ, կատարի ‖ ։ Զնոյն գրեն և այլք ՚ի վկայաբանից, այլ անդէն յետին մարդակերաց նահատակեալ ասեն, և թաղեալ ՚ի պղատոնէ եպ՟սէ . և այլք նոյն համարին զ՟ն մարդակերաց ը՟ եթէովպիոյ ։ Բայց որ մեծն է, որք միանգամ զ՟ն մարդակերաց յիշեն՝ այլ պատմութիւն ՚ի մէջ բերեն, և որք զեթովպիա յիշեն՝ այլ . մինչ զի թէպէտև ոչ մին յաղթէ միւսումն հեղինակութբ՟, բայց երկաքանչիւրն ունի ՚ի ձեռին զհին վկայաբանութիւն ը՟արձակ ուրոյն ուրոյն . մին առաւել համախոսացեալ առ արևելեայս, և միւսն առ արևմտեայս . և այսմ յայտնի պատճառ թուի շփոթումն երկուց նմանաձայն անուանց, մատթէոս (որ և մաթթէոս գրի), և մատաթիաս (որ և մաթթիաս ասի) . և երևի՝ թէ մին ՚ի վկայաբանութեանց անկ է մատթէոսի, և միւսն մատաթեայ ։ Զբովանդակութիւն միոյն և միւսոյն յառաջ բերցուք ՚ի կարգի ծանօթութեանց ճոխագոյն ։ (3)

Ըստ զանազանութեան պատմութեանց բազմամապատիկ են բանք և վ՟ն նշխարաց ս՟բյն մատթէոսի, որ գտանին յարևմուտս ՚ի զանազան տեղիս պէսպէս յիշատակարանօք և աւանդութբ՟ք . յորս առաւել հռչակաւոր է սալեռնոն քաղաք ծովեզերեայ յիտալիա մօտ ՚ի նէապօլիս . և զայսմանէ ևս տացուք տեղեկութիւն ՚ի ծանօթութիւնս (4) ։ Սող ըզ-բազմութիւն եկեղեցեաց կառուցելոց յանուն ս՟բյ աւետարանչին մատթէոսի՝ ՚ի հռովմ,

՚ի

„ տեսն 'ի գաւիթոնէ փարիսեցւոց ||: Մեք զայս գիտեմք, զի արդարև տպագրեցաւ յայնմ ժամանակի եբրայական օրինակ Մատթէոսեան կարծեցեալ աւետարանն՝ յամի 1533 'ի Բասիլէա. և յամի 1555 'ի Փարէզ. բայց չէր ընդունելի՝ իբրև մտացածին գիւտ յետնոց՝ անհամաձայն յունականին: Ընդ հակառակն՝ ոմանք 'ի յետնագունից, մանաւանդ 'ի Նորաղանդացւոց՝ պնդեցին, թէ Մատթէոս յունարէն իցէ շարագրեալ. որ է օտար 'ի հին աւանդութենէ և 'ի կարծեաց հարց առհասարակ:

(3) Յերկուց զանազանեալ հին վկայաբանութեանց՝ որ յանուն սրբոյն Մատթէոսի, առաջինն այն հանդիպացեալ առ արևելեայս՝ ոչ միայն գտանի 'ի ճառընտիրս մեր իբրև մասն վարուց սրբոյն առաքելոյ. որպէս և քաղուած նորա 'ի Հ. Նոյեմբ. 30, և Նոյեմբ. 16. և 'ի Յ. ժմ. Նոյեմբ. 30. ('ի վարս առաքելոյ), և 'ի գիրս Նիկեփորոսի. Բ. 41. այլև 'ի յունական հին մատեանս պէ. վատիկանեան գրատան, թէպէտև խառնեալ առաւել օտարոտի բանիւք. ուր առաւել անխառն երևին օրինակք ճառընտրաց մերոց. մինչզի որպէս բովանդակեանն սուրբ լատինինգ քաղ ընտրութեանն է այս և է այն օրինակ լատինական, և ասէ՝ թէ յետինք զառաջինն կամ են ողորկեալ, և կամ խանդարեալ. նոյնպէս և յունական օրինակն քաղեալ 'ի նմանէ՝ խանդարեալ է կոչելի. իսկ մեք ունիմք քաղել զողորկն ըստ ճառընտրաց մերոց. թէպէտև մեզ չէ և այն ողորկ ասելի. որպէս և սուրբ լատինինգ վկայէ զլատինականեէն ողորկ կոչեցելոյ, թէ նաև անդ կան բանք անհաւանելիք:

Լրագոյն օրինակ այսր առաջին վկայաբանութեան 'ի Ճառընտ. Ե. ունի խորագիր այսպիսի. * Յաղագս սրբոյն „ առաքելոյ, և Նորին աշխատութեանց՝ զոր ած „ եցոյց յԱստուծոյ մարգարէութեանց 'ի ձեռն նորա, և Մաթէի՝ որ „ էր նորա քարոզ և առաքեալ ||. ուր յընթացս պատմութեան՝ յորժամ սկսանին լինել բանք վասն Մաթէի, ասի. * Մինչդեռ առաքեալն Մաթէոս և աւետարանիչն 'ի „ լերինն էր ||. եւն. և տես այլ ճառընտիրք ասոր ըն-կանեին զվկայաբանութեն սրբոյն Մատթէոսի. զոր նոյնպէս գտեալ և սուրբ լատինիգս 'ի յունական մատենի իւրում՝ զարմանայ, թէ որպէս յանպատրաստից և իբր թերակատար սկիզբն գնի պատմութեան. զի ոչ գիտէ՝ թէ այն է երկրորդ մասն վկայաբանութեան առաքելոյ առ յոյնս. սակի պարտ է լրացուցանել յառաջին մասնէ նորուն և զգործս Մատթէոսի:

Իսկ երկրորդ վկայաբանութեանն յանուն Մատթէոսի համ-

գիտացեալ առ արեւմտեայս' է այն. որ լատիններէն եւեթ գտանի 'ի զանազան ձեռագիրս նց. յորս հնագոյնքն' ասէ ստիլատինգ, երեւին գրեալ 'ի ԺԳ դարու. եւ յամենե-սին կան անհեթեթ հանգամանք եւ պակասաւորութիւնք, յորոց աղաս գտանի առաւել օրինակն վատիկանեան 'ի մատեանն ՃԽԶ. զոր եւ տպագրէ իսկ ստիլատինգ' թէ-պէտեւ ոչ ամբողջապէս հաւանելով: Հեղինակ այսպիսի օրինակաց հնքերէն կոչի աբգիաս եպս բաբելոնի, որ առ քննիչս է կասկածելի' ոչ սոս, նոյնպս եւ 'ի վերա այլոց ամանց յառաքելոց: Բայց քաղեմք եւ զաս յետ ա-ռաջնոյն 'ի պէտս բանասիրաց, եւ տպս զմեր կարծիս 'ի վր բերցուք:

Քաղուածք' ի վկայաբանութե սբյն Մատթէոսի ըստ ճառընթե-րաց յունաց և հայոց:

Յետ համբառնալոյ տն յերկինս, եւ խլանելոյ հոգւոյն սբյ 'ի գլուխս առաքելոց' եհաս վիճակ մատթէի առա-քելոյ եւ աւետարանչի երթալ յԵն մարդակերաց. (որ եւ սինոպացիք կոչին 'ի Յ. Ժմ. եւ 'ի Հ.) եւ էին բնա-կիչք Եին այնորիկ մարդախոսն իբրեւ զգազանս, եւ ու-տէին զմեռեալս իւրեանց. իսկ զօտարս կենդանւոյն կալեալ 'ի ճանապարհաց ծովու եւ ցամաքի թմբրադե-ղօք հանէին 'ի խելաց. զգէրան 'ի նոցանէ մատուցանէին իբրեւ զոչխարս 'ի զենումն. իսկ զմարմինս կուրացուցա-նէին, եւ պարարէին գարեմանօք իբրեւ զանասուն զա-ւարս երեսուն, եւ ապա զենուին. զմիսն ուտէին, եւ զարիւնն ըմպէին. այս սովորութիւն էր նց, ոչ վարել եւ ոչ վաստակել, այլ գազանաբար կեալ' ոչ գիտելով զԱծ ճշմարիտ: (Յ. Ժմ. հրէայս ասէ զնա լինել):

Ապա իբրեւ եմուտ մատթէոս 'ի քաղաքն նց, կալան զնա իբրեւ զօտար, հանին զաչս նր, եւ ետուն նմա թմբրա-դեղ, որ եւ դեղ յիմարութե, եւ կարգեցին նմա զար-ման գիրացուցիչ 'ի գիրպահոլ: Բայց նորա ոչ լուծա-նիրան 'ի դեղոյն, եւ ոչ եղեւ 'ի նմա այլայլութի մտաց, այլ եւ ոչ նուազութի տեսութե. այլ յաղօթս կայր առա-Տր եւ ասէր, ցո՞յց Տր զզօրութի ածուէդ քո 'ի խորտաս անմարդաշատացս. ապա եթէ հաճոյ է քեզ ինձ այսպէս մեռանել ոչ զանատուն, եւ մարմնով իմով կերակրել մարդակերացս, եղիցին կամք քո: Յայնժամ լոյս ծա-գեաց 'ի բանտն, եւ եղեւ ձայն յերկնից. մատթէ սիրե-

լի

Ես եմ, մի՛ երկնչիր, զի ես ընդ քեզ եմ. համբերեա՛ դու զաւուրս Ի և Է, և ապա եկեսցէ Անդրէաս՝ որ հանէ զքեզ 'ի բանտէդ : Եւ տեսանէր Մատթէոս, զի տանէին զայլս 'ի մարդկանէ 'ի զենումն յարգելարանէ անտի զարմանոցաց. և մի իւր եւս լսէր 'ի դահճաց, զի ասէին. յորժամ կատարեսցին աւուրք Լ. զենցուք և զայլս զայս, և կերիցուք.

Եւ երևեցաւ Տէր Անդրէի առաքելոյն 'ի Թեսաղոնիկէ, և ասէ. արի՛ մուտ յերկիր մարդակերաց, զի հանցես զՄատթէոս 'ի բանտէն : Եւ 'ի վարանիլ Անդրէի՝ թէ զիարդ գնասցէ ծերացեալ և տկար անձամբ յայն անծանօթ, յաւել Տէր երիցս և չորիցս երևիլ նմա, և քաջալերեալ զօրացոյց զնա : Եւ Անդրէաս յարուցեալ վաղվաղակի գնաց աշակերտօքն յեզր ծովուն. և եգիտ նաւ մի պատրաստական, որոյ նաւապետն ինքն Քրիստոս էր, և հրեշտակք նաւավարք. այլ ոչ ծանեաւ Անդրէաս. մինչև յանկարծակի գտաւ յերկիր մարդակերաց : Եւ մտեալ 'ի քաղաքն անդր՝ ուր էր Մատթէոս, միւսանգամ ետես զՏէր նմա մանուկ գեղեցիկ, որ ասէր ցնա. արի՛ մուտ 'ի բանտն, և հանցես զՄատթէոս և զամենայն կալանաւորսն. և կաց մնա 'ի քաղաքիս, մինչև դարձուցես զբնակիչս երկրիս յաստուածգիտութիւն. ապա թողցես զՄատթէոս 'ի քաղաքիս քարոզ աշակերտելովքն հանդերձ. և դու դարձցիս աշակերտօքդ 'ի վիճակին՝ որ քեզ հաւատացաւ. Գնաց Անդրէաս և աղօթիւք եբաց զդրունս բանտին, և արձակեաց զՄատթէոս և զորս ընդ նմա. յայնժամ յաղօթս կացին առաքեալքն, և եդին ձեռս 'ի վերայ արանց՝ որոց բրեալ էին աչք, և թափեալք 'ի մտաց, և նոյնժամայն զգաստացան, և լուսաւորեցան աչք նոցա, և հաւատացին 'ի Քրիստոս. զորս առաքեաց Անդրէաս ընդ Մատթէոսի 'ի լեառն մի, (ուր էր առաքեալն Պետրոս՝ ընդ նմ.) հանդարտել առ ժամանակ մի : Եւ ինքն Անդրէաս կրեաց բազում վէրս և չարչարանս 'ի ձեռաց մարդակերաց, մինչև դարձոյց նշանօք և արուեստիւք զմեծ բազմութիւն նոցա 'ի հաւատս. և յետ շինելոյ եկեղեցիս և հաստատելոյ զհաւատացեալս՝ դարձաւ 'ի տեղի իւր : Իսկ Մատթէոս 'ի լերին անդ ուսուցանէր զաշակերտսն՝ մնալով այցելութեան Տեառն :

Մինչդեռ առաքեալն Մատթէոս և աւետարանիչն 'ի լերին էր՝ բոկ և միով պատմուճանաւ, երևեցաւ նմա Տր 'ի նմանութիւն պատանեկի, և ասէ ցնա. խաղաղութիւն ընդ քեզ Մատթէոս. և նա ասէ. ողջոյն ընդ քեզ և խաղա-

գա մաքրաւոր էր, և եղև աշակերտ Քի խաչելոյն 'ի հրէից. և առդ ելանէ ընդ եպսին պղատոնի ընդ բարեաւ գուռան քաղաքիս. փութացիր և կալցես զնոս անդ դիւրաւ : Առաքեաց Թուրքն չորս զօրականս՝ բերել զնա. և նոքա գնացեալ 'ի գուռան՝ ձայն խօսից լսէին, բայց տեսանէին և ոչ զոք. և երթեալ պատմեցին արքայի. և նա առաքեաց զկնի նոցա այլ տասն զօրականս զինուք : Սոքա յորժամ մերձեցան, տեսին պատանի մի ղամբար 'ի ձեռին, որ այրեաց զերեսս և զաչս և զմօրուս նոցա. և յահէ լեալ՝ դարձան առ Թուրքն համրացեալք, և ոչ կարէին խօսել: Յայնժամ գեն երևեալ 'ի ձև զօրականի խոստովան եղև, թէ ոչ կարես սասանել ինչ Մատթէոսի աշակերտին Քի. զի նորա հրամանաւն եկեալ է աստ. և ինքն եղև իբրև ծուխ, և չիջաւ՝ անյայտ լեաւ : Եւ յահէ լեալ Թագաւորն՝ ոչ եկեր և ոչ արբ, և ոչ ննջեաց յերկիւղէն. և յարուցեալ ընդ արշալուսն առաւօտուն երկու իշխանօք հանդերձ՝ գնաց յեկեղեցին նենգութեամբ սպանանել զՄատթէոս. և իբրև եմուտ 'ի ներքս, խոնարհեցան առաջի նորա. զձայն առաքելոյն լսէր, բայց զնա ոչ տեսանէր. և ասէ. ցոյց ինձ զքեզ առաքեալ Քի, և հաւատամ. զի այժմ ծանեայ՝ որ նա միայն է Ճշմարիտ Ած, զոր քարոզես. և յասել նորա զայս՝ բացան աչքն. բայց ոչ դադարեաց 'ի նենգութենէ սրտի իւրոյ: Ասէ ցնա առաքեալն. ով արիւնարբու բռնաւոր՝ մինչև ցե՞րբ Թաքուցանես զԹոյնսդ 'ի սրտիդ, և ոչ յայտնես և կատարես զկամս հօրն քում սատանայի. զի արեան խմոյ ցանկայ անձն քո :

Ջամեթի հարաւ Թուրքն, և եկեալ անդրէն յապարանս իւր՝ հրաման ետ բազմութեան զօրականաց երթալ յափշտակել զառաքեալն 'ի միջոյ ամբոխին, և այրել կենդանւոյն 'ի բացի : Եւ նոքա կալան զՄատթէոս, և տարան 'ի տեղին՝ ուր զխարագործսն տանջէին մերձ 'ի ծովն. և տարածեցին զնա յերկիր, և կապեցին 'ի չորս ցիցս զձեռսն և զոտսն. և կուտեցին 'ի վերայ նորա չոր փայտ, և վառեցին հուր. ցանէին և 'ի վերայ ձէթ և ձիւթ և ճարպ. և էր պատուէր զօրականաց 'ի Թագաւորէն, եթէ ողջ ընդ իմանիցայ ձեզ, նոյնպէս հրով այրեսջիք և զնա : Եւ ժողովեցան հաւատացեալքն 'ի վերայ գահճաց, և կամէին բռնութեամբ հանել զառաքեալն 'ի ձեռաց նոցա. բայց նա սաստեաց նոցա, և դադարեցին. և հուրն բորբոքեցաւ 'ի վերայ Մատթէոսի: Եւ նորա համբարձեալ զմիտսն՝ աղաչեաց զԱծ վասն փրկութեան Թուրքին և քաղաքին, զի

դարձցին յետ և մի կորիցեն. և առաց. խաղաղութի
ընդ ձեզ. և նոյնժամայն աւանդեաց զհոգին ՚ի վեցե-
րորդ ժամու ուրբաթուն ՚ի նոյեմբերի ժէ (կամ հոկ-
տեմբերի. ժը:) Եւ տեսեալ պղատոնի եպիսկ զհոգի ա-
ռաքելոյն յօդս վերացեալ՝ սկսաւ սաղմոսել. և երկու
սքանչելատեսիլ արքն՝ որ իջին ՚ի բորբոքեալ հուրն,
առին զմարմինն ողջանդամ պահեալ, և տարան եդին՝
ուր քրիստոնէիցն ժողովքն էին:

Եւ նոցա տեսեալ՝ յոյժ ուրախ եղեն. և ժողովեցան ՚ի
տեղին քաղաքն ամ. և աղաղակէին, եթէ ոչ գոյ այլ
այ, բայց ՚ի միոյն՝ զոր մատթէոսն քարոզեաց: Եւ
լռեալ թգրին զաղաղակն՝ զարհուրեցաւ. և ընթացեալ
փութապէս առ եպիսն՝ անկաւ յոտս նր, և մեծաւ հա-
ռաչմամբ խնդրեաց թողութի: Եւ տեսեալ եպիսն ըզ-
ջերմեռանդն զզջումն թգրին՝ օրհնեաց զնա և երե-
խայեցոյց, և յետ երից աւուրց մկրտեաց. յայնժամ
երեւեցաւ մատթէոս ՚ի վր աւազանին, և ասէ. թագա-
ւորն անուանեսցի անուամբ իմով մատթէոս, որպս և
որդի նր. իսկ կինն անուանեցաւ սոփիա, և հարսն՝
սիւնեսիս: Եւ ելեալ թագաւորն յաւազանէն և ՚ի սր
խորհրդէն՝ խորտակեաց զամ կուռս, որ յապարանսն և
՚ի քաղաքին. և առաքեաց հրաման յամ գաւառս իւր՝
զնոյն առնել:

Յետ այսորիկ առաքեալն ՚ի տեսլեան ձեռնադրեաց
զթագաւորն քահանայ, և զորդի իւր սարկաւագ, պատ-
մելով զժամանակ փոխման եպիսին, և զյաջորդել նոցա
զկնի նր: Եւ յետ երից ամաց երանելի եպիսն պղատոն
փոխեցաւ առ այ. և թագաւորն մատթէոս եթող կա-
մաւորութբ զթգրութի իւր առն բարեպաշտի ազգա-
կանի իւրում. և ինքն ձեռնադրեցաւ եպս քաղաքին
իւրոյ ըստ հրամանի առաքելոյն. և ձեռնադրեաց զորդին
իւր քհնյ: Եւ տուեալ նմա շնորհք յայ, որ միայն աղօ-
թիւք և ձեռն դնելով առողջացուցանէր զհիւանդս և
զդիւահարս. և ածահաճոյ վարուք կեցեալ՝ հանգեաւ
խաղաղութբ ՚ի քս: Եւ նստաւ յաթոռ եպսութե որդին
իւր. և նա նոյնպէս բարւոք վարուք կեցեալ՝ փոխե-
ցաւ ՚ի քս. և ՚ի միասին բարեխօսեն ըստ առաքելոյն առ
տր վասն մեր:

Քաղ

Գլուխ՝ Է Վկայաբանութիւն սրբոյն Մատթէոսի (Երբեմն Մատթէոսի) ըստ ճառընտրաց լատինացւոց ։

Յառաջագոյն ՟Ա վատիկաներան օրինակի ասնի զայս ինչ, թէ Մատթէոս աւետարանիչ էր 'ի ցեղէն Ղևեայ, 'ի մաքսաւորէ առաքեալ ընտրեալ. որ գրեաց զաւետարան եբրայեցւոց լեզուաւ և քանիցս նախ ՟Բ զերթալն 'ի քարոզութիւն, և եթող յիշատակ 'ի հայրենիս իւր. նախ 'ի հրէաստան աւետարանեաց, ապա 'ի մակեդոնիա. և նահատակեցաւ 'ի պարթևս. հանգչի 'ի լեռինս որոտեալց կամ պարթևաց ։ Այլ սկսանի պատմութիւն վարուց և քարոզութեան յեթեովպիա այսպէս ։

Ընդ այն ժամանակս էին երկու մոգք զարոյես և արփաքսադ յեթեովպիա 'ի մեծ քաղաքն Նադդաբեր, յորում էր թագաւոր եգիպպոս. որ պատրեալ իւրովքն հանդերձ մեծս ամենս համարէր զայն մոգս՝ արժանի երկրպագութեան. վասն զի յանկարծ կաշկանդէին զմարդիկ 'ի գնացս՝ ցորչափ և կամէին. նոյնպէս և զաչս և զականջս անգործ առնէին. հրամային տային օձից հարկանել զմարդիկ, և ինքեանք բժշկէին թովչութեամբ ։ Ընդդէմ սոցա առաքեաց Աստուած զՄատթէոս, որոյ մտեալ 'ի քաղաքն՝ սկսաւ արձակել զկապեալսն 'ի մոգուց, ընդ կուրացեալս և զխլացեալս բժշկել, զօձսն թմրեցուցանել, և զհարուածեալսն բժշկել ։

Զայն իբրև եսես եթովպացի ներքինին կանդակայ դշխոյի մկրտեալն 'ի փիլիպպոսէ, անկաւ առ ոտս առաքելոյն, և ասէ. Աստուած առաքեաց զքեզ. և ընկալաւ զնա 'ի տուն իւր. և բազում բարեկամք ներքինւոյն սքանչացեալ ՟Ա սքանչելիսն և ՟Բ պերճախօսութեան առաքելոյն՝ հաւատացին և մկրտեցան ։ Եւ ասէ ցնա ներքինին. զիա՞րդ դու՝ որ հրէայդ ես, քաջ գիտես զլեզու հելլենացի, եգիպտացի և եթովպացի՝ ՟Գ զհամագգիս. և նա ասէ. Աստուած՝ որ բաժանեաց զլեզուս 'ի կործանել անդ զաշտարակին՝ նա 'ի քակել զչար միաբանութիւն մարդկան, առաքեաց զորդի իւր և զհոգին իւր սուրբ՝ ցուցանել մեզ, թէ զմիաբանութիւն չինեալ կանգնել պարտ է վասն յերկինս ելանելոյ. վասն այժմ աշտարակն չինի ոչ քարամբք, այլ զօրութեամբք քնի ։

Իբրև եկին մոգքն հանդերձ երկու վիշապօք, որ էին մահաշունչ և մահահոտ 'ի սատակումն մարդկան, յայն-

ժամ կնքեալ մատթէի զանձն նշանաւ սբյ խաչին՝ կամէր ելանել 'ի հրապարակն. իսկ ներքինին արգելուլ զնա, և ասէր. եթէ կամիս՝ է պատուհանն խոնեաց է մօգս, և մի ելաներ 'ի տանէս 'ի դուրս. այլ նա ասէ. դու բաց լիձ զդուռն, և դու է պատուհանդ տես զանցս մօգուց: Եւ յելանել նր՝ վիշապքն, որ կային առաջի մօգուց, անկան յոտս մատթէոսի թմրեալ 'ի քուն. և ասէ մատթէոս ցմօգս. ուր է կախարդութին ձեր. զի թէ ոչ աղաչէի զտրն իմ յս քս, այժմ զձեզ յատուածն 'ի ձեզ թափէին վիշապքն: Եւ նք ջանային զարթուցանել զվիշապսն թովելով. և ոչ կարէին: Յայնժամ ամբոխն աղաչէր զառաքեալն՝ ազատել զքաղաքն 'ի դառանաց անտի. և մատթէոս յանուն յսի հրամայեաց նց 'ի բաց գնալ հեզութբ. և այնպէս ելին է քաղաքն և անհետ եղեն: Այնուհետև սկսաւ մատթէոս քարոզել ժողովրդեան զբանն այ, սկսեալ յանկմանէն ադամայ

մինչև ցառաքումն առաքելոց:

Յաւուրսն յայնոսիկ մեռաւ արքայորդին. զոր ոչ կարացեալ մօգուց այրեցուցանել կմ յարուցանել, պատմէին առ արքայի՝ թէ դիքն յափշտակեցին զնա. իսկ ներքինին հաւանեցոյց զթագուհին՝ գնել զմօգս 'ի պահեստի, և կոչել զառաքեալն այ զմատթէոս. և եթէ նա յարուսցէ ասէ զորդիդ, տուր այրել զմօգս միւսակարս քաղաքիս: Գնացին երկու իշխանք արքային, և բերին պատուով զմատթէոս. որոյ առաջի անկեալ թագուհին եւփինիսսա՝ աղաչէր յարուցանել զորդին իւր. զի հաւատամ ասէ՝ թէ յսի գալով աշակերտ՝ կարող ես յարուցանել զմեռեալն: Ասէ առաքեալն. փոխանակ զի՝ մինչև լռեալ լինէին զքարոզութն զքսէ, ասես՝ հաւատամ, տացի քեզ որդին քո կենդանի. և մտեալ առաքելոյն՝ ուր էր մեռեալն, յաղօթս եկաց. և ասէ. յանուն տն իմոյ յսի քսի խաչելոյն արի եւփրոնոս. և

իսկոյն յարեաւ մեռեալն:

Զահի հարաւ թգւրն. և եա բերել առաքելոյն պսակս և ծիրանիս, և քարոզ կարդալ յամ տէրութե իւրում, և ասել. եկայք տեսէք զած 'ի պատկեր մարդոյ: Եւ 'ի գալ ամբոխին մոմեղէնօք և ջահիւք և խնկօք և զոհիւք, ասէ մատթէոս. ես ոչ եմ ած, այլ ծառայ տն իմոյ յսի քսի որդւոյն այ անմահականի, որ առաքեաց զիս առ ձեզ, ոչ զի թողեալ զմոլորութն կռոց ձերոց՝ դարձջիք առ ած. և եթէ զիս՝ որ ձեզ նման մարդ եմ, ած կարծեցիք, որչափ ևս առաւել պարտ է ձեզ ած

հա-

հաւատալ զՏրն իմ, յորոյ անուն յարեաւ աշխարհորդքն. որք 'ի բանից բարձեալ յաշխաց իմոց զայդ ձեր սպասս, և երթեալ շինեցէք տաճար, ժողովել անդր, և լսել զբանն իմ: Իսկ մոգքն փախեան 'ի պարս:

Արդ յաւուրս երեսուն՝ վաթսուն հազար արք կատարեցին զեկեղեցին, զոր մատթէոս անուանեաց յարութի. զի յարութիւն եղև աւիծ շինութե: Եւ նստաւ մատթէոս յեկեղեցւոջ անդ զամս իբ. և կարգեաց քահանայս և պաշտօնեայս. շինեաց և զայլ բազում եկեղեցիս, և կացոյց եպիսկոպոսունս 'ի քաղաքս և յաւանս. մկրտեաց զալէքայ և զդշխոյ և զյարուցեալ մանուկն, և զդուստր արքայի՝ որում անուն էր եփիգենիա: Արար և անթիւ սքանչելիս և նշանս բժշկութե. և միաբան է արքայի քանդեաց զմեհեանս, և կործանեաց զկուռս: Իբրև փոխեցաւ առ Տր եգիպպոս արքայ լի աւուրբք, թգրեաց հիւրտակոս եղբօրորդի նր է նր. սա կամեցաւ առնուլ իւր 'ի կին զեփիգենիա կուսան նուիրական, որոյ առեալ էր զքօղ 'ի ձեռանէ մատթէի, և լեալ մայր կուսից աւելի քան երկերիւրոց: Խոստանայր արքայ մատթէոսի մինչև ցկէս թգրութե իւրոյ, միայն թէ հաւանեցուսցէ զեփիգենիա: Ասէ ցնա մատթէոս. Ը հրամանի նախորդին քո՝ որ յամ շաբաթու գայր 'ի տեղի քարոզութե, հրամայեա գալ ամ կուսանաց է եփիգենեայ, և լուիցես անդ՝ զոր խօսեցայց վս բարւոյ պսակին. և թգրն արար ուրախութբ ըստ բանի նր:

Անդ խօսել սկսաւ մատթէոս, թէ զիարդ օրհնեաց ած զամուսնութի. մինչև մեծաձայն գովել թգրին զբանս նր. և յաւել ասել առաքեալն. պատուական է ամուսնութի, յորժամ լծակիցք կեցցեն սրբութբ և արդարութբ. բայց թէ ոք 'ի ծառայից կամիցի յափշտակել զկին խօսեալ արքայի, մահապարտ է. որդ և դու որդեակ իմ հիւրտակ՝ որ գիտես, զի եփիգենիա հարսնացեալ է երկնաւոր արքայի, զիարդ իշխես կորզել զհարսն հզօրագունի քան զքեզ: Յայնժամ հիւրտակոս լի բարկութբ մեկնեցաւ 'ի եկեղեցւոյն. իսկ մատթէոս անվեհեր յառաջեալ 'ի բանս՝ ասէր. երկրաւոր թգրի իշխանութի սակաւաժամանակեայ է, իսկ երկնաւորին յաւիտենական. և զօրօրինակ անպատում են վարձք հաւատարիմ եղելոց, նոյնպէս և անանցանելի տանջանք՝ որոց անհաւատարիմ գտանին, և թողուն լքանեն զսրբ-բութէ. և եթէ 'ի մարդոյ պարտ է երկնչել, քանի՞ ևս յԱյ:

Յայն-

Յայնժամ անկաւ եփիգենիա յոտս մատթէի, և խնդրէր զօրհնութիւն նորա կուսանօքն հանդերձ՝ ապրել 'ի ցասմանէ Թէփրին. և նա արար աղօթս 'ի վր նց՝ արկեալ քօղ 'ի վր ամենեցուն. և յանձն արար զն երկար օրհնութբ. և յաւել ամենեցուն զամենին՝ կատարեցաւ և խորհուրդ պատարագի. և արձակեցան 'ի տունս իւրեանց: Իսկ մատթէոս կայր տակաւին առ սեղանովն յետ կատարելոյ զխորհուրդ մարմնոյ և արեան տն. և ահա եհաս դահիճն 'ի հիւրտակայ, և հարեալ սուսերաւ զաւագերէցն՝ նահատակեաց 'ի սեղանոջն: Զոր լուեալ ժողովրդեանն՝ դիմեցին հրով 'ի պալատն. բայց քահանայք և ամ ուխտ եկեղեցւոյն և աշակերտք առաքելոյն արգելին զնս, և ասեն. մի առնէք եղբարք Ը դէմ հրամանին այ. այլ կատարեսցուք միաբան ցնծութբ զմարտիրոսութի առաքելոյն, և հնազանդեսցուք տնտեսութեանն այ:

Իսկ եփիգենիա զամ արծաթ և զոսկի և զականս իւր պատուականս ետ քահանայից՝ շինել եկեղեցի 'ի պատիւ առաքելոյն, և զմնացեալն լինել բաշխել աղքատաց. և ինքն մնայ ասէ մերժել Ը հիւրտակայ: Քանզի ասէալ յղէր արքայ զոմն մեծամեծաց հաւանեցուցանել զեփիգենիա. և ոչ լեալ դամագիւտ՝ կոչեաց զկախարդս ձգել զնա դիւթօք. և 'ի դերև ելեալ՝ ետ հուր արկանել զբնակութ կուսանաց: Եւ 'ի պատել հրոյն՝ երեւեցաւ հրեշտակ տն Ը մատթէոսի, և ասէ. զօրացիր եփիգենիա. և մի երկնչիր 'ի բոցոյդ, զի դարձցի 'ի վր նր՝ որ առաքեաց զայն 'ի քո վր. և խելոյն ել հողմ, և դարձոյց զհուրն 'ի պալատն հիւրտակայ. մինչև մազապուրծ ճողոպրել Թէփրին՝ հանդերձ միամօր որդւովն, որ այսահարեալ դիմեաց 'ի տապան մատթէի՝ կալեալ ձեռս յետս, և խոստովան լինէր զչարիս հօր իւրոյ. իսկ հիւրտակ ելեփանդական վիրօք լցաւ յոտից մինչև 'ի գլուխ, և ոչինչ օգտեալ 'ի բժշկաց՝ չոգաւ զիւրովի:

Եւ ժողովուրդն ուրախութբ առեալ Թէփրեցւոյն զեղբայրն եփիգենեայ, որում անուն էր ուգոր, դաստիարակեալ Ը ձեռամբ մատթէի. էր իբր ամաց 'ի Թէփրեւ իւրում, և Թագաւորեաց ամս կգ. և մինչդեռ կենդանի էր, կացոյց զմի յորդւոց իւրոց Թագաւոր. և զմիւսն զօրավար. և էր բարեկամութբ Ը հռովմայեցւոց և ընդ պարսից. և ամ կողմանք եթէովպացւոց լցեալ ուղղափառ եկեղեցեօք՝ մինչև ցայսօր 'ի ձեռն եփիգենեայ օրհնեն զան. և լինին մեծամեծ սքանչելիք 'ի վկայարանի երանելի առաքելոյն մատթէոսի զօրութբ և կարո-

ղու-

ասի անյայտացեալ տապան սորին Մատթէոսի 'ի Սալեր-նոն. որ և գտաւ անդրէն 'ի յաշխարհ գարու յամի Տեր 1075, կամ 1085. և ապա դուքսն Ռոբերտոս Գուիս-կարդոս արկեալ քաղաքին Սալերնոյի՝ շինեաց անդ ե-կեղեցի յանուն սորին Մատթէոսի. ուր եդաւ մարմին սորին փառաւոր տապանակաւ. ուստի կաթէ առեն մա-նանայ պատուական 'ի բժշկութիւն ամ ախտից. և գնան անդ ուխտաւորք յամ տեղեաց: Եւ մեք իսկ գլխովին եղեւ անցանել ընդ Սալերնոյ յամի 1810, 'ի գնալն 'ի Կա-լաբրիոյ 'ի Նէապօլիս, և լուեալ զմեծամեծ սքանչելիս սորին աւետարանչին ընդ վաւերական յիշատակարանաց. այլ չունէաք ժամանակ առօրին յերկար գիտելոյ ընդ տեղեա-նաց մերոց: Բայց կան և երևելի մասունք նշխարաց սորին 'ի զանազան տեղիս. և զի գլուխ սորին Մատթէոսի յիշէ 'ի բերլինա, և 'ի գաղղիա եւս, պարտ է իմանալ կամ մասն 'ի գլխոյն, և կամ գլուխ այլոյ համանուն և նմանանձայն սորա: Որ ոք կամի, Ընդարձակագոյնս տեսցէ զայս-ցանէ առ սանկտորումն Բոլլանդեանց:





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Մարկոսի աւետարանչի ։

Հռ. մարտ. 24 ։ Յ. Լ. ապր. 25 ։ Եգիպտ. կամ ղպտ. մարտ. 26 . Լ. ապր. 25 ։ Ղատընր. Ա. շհէ ։ Բ. ճծա ։ Օ. ճլա ։ Բոլլանդեանն հեռաւորեալ ՚ի Դ հատ. ապր. էջ. 344 = 358 . և 997 . ևս և եղ = Ճ ։



ԲԱՐՁՐԱԲԱՐԲԱՌ աւետարանիչ սրբոյն՝ հզօր իբրև զառիւծ՝ որ առաքելոյն Մարկոս (1), էր ՚ի Թուոց եօթանասունն և երկու աշակերտացն քնի՝ ըստ հասարակ կարծեաց (2). և միանգամայն ընտանի աշակերտ վիմին հաւատոյ՝ իբր ձեռասուն և հոգևոր որդի նր սիրելի . որպէս և անուանէ իսկ զնա ՚ի կաթողիկէ թղթի իւրում (3) ։ Այլ ըստ բազմաց է նոյն ինքն յովհաննէս Մարկոսն կոչեցեալ՝ եղբօրորդի կամ քեռորդի բառնաբայ, և ընթացակից պօղոսի . զոր և հաստատէ ընտանութիւն պետրոսի առ տունն Մարիամու մօրն յովհաննու Մարկոսի, ուր եկն նա յետ ազատութեան ՚ի բանտէ ։ Այլ քանզի ոմանք որոշ համարին, վոյ և մեք ըստ օրինակի նոր տօնացուցից ուրոյն գրեցաք զվկայա-

յով-

յովհաննու մարկոսի՝ մինչև 'ի դառնալ նը 'ի կիպրոսէ առ պօղոս յետ կատարմանն բառնաբայ. ապա թէ ոչ՝ այսր պէտք էին փոխաբերել զայն ա̃մ անցս մարկոսի ։

Արդ՝ եթէ մի իցէ, և եթէ երկու մարկոս անուն 'ի մէջ աշակերտաց, այս ինչ յայտնի է ը̃ միաբան աւանդութե̃ նախնեաց առհասարակ, զի փառաւորեալ աւետարանիչն մարկոս՝ ոչ միայն էր որդիացեալ աշակերտ, այլև թարգման նորին պետրոսի. իբր զի՝ կամ որովհետև ոչ միշտ 'ի կիր արկանէին առաքեալքն զշնորհս լեզուախօսութե̃, մարկոս քաջ ներհուն յոյն և լատին բարբառոյ՝ ըզբանս պետրոսի զեբրայեցի լեզուով խօսեցեալս թարգմանէր 'ի լսելիս հելլենացւոց և հռովմայեցւոց, և կամ էր դպրապետ նորին պետրոսի, և 'ի կամիլ նորա գրել ըզթուղթս՝ մարկոս զկենդանի բարբառ նորա թարգմանաբար 'ի գիր անցուցանէր յունական ։

Մինչ զի և վ̃ն աւետարանագրութե̃ ասաց տերտուղիանոս, թէ * զոր ինչ գրեաց մարկոս, պետրոսի ընծայի, որոյ թարգման էր մարկոս ‖ ։ Ան զի՝ որչափ միաձայն խօսին նախահարք, նա ինքն մարկոս 'ի խնդրոյ հաւատացելոց և 'ի հրամանէ պետրոսի գրեաց զաւետարանն ը̃ թելադրութե̃ հօրն իւրոյ. և պետրոս հրաման ետ հաստատութե̃ ընթեռնուլ յա̃մ եկեղեցիս ։ Իսկ այս եղև իբրու ժբ̃, կամ ժէ ամօք զկնի համբարձմանն տ̃ն. ը̃ ոմանց յաղեքսանդրիա գրեալ 'ի լե-

զու

գու եգիպտացի. և ՟Ը այլոց՝՝ի Հռովմ, յոր-
ժամ անդ էր մարկոս ընդ պետրոսի, ՚ի յոյն
բարբառ՝ որ էր լեզու գրագիտաց առ Հռով-
մայեցիս. և կամ ՚ի լատինն, որ էր բնիկ
բարբառ Հռովմայեցւոց. Թող զի յոր և է
լեզու գրեալ իցէ, թարգմանեցաւ ՚ի նմին
աւետարանչէ կմ առ նովաւ և ՚ի յոյն և ՚ի
լատին. և նախագիծ այն օրինակք ունէին
զվաւերական հեղինակութի սկզբնագրին:
Պատանի ցարդ ևս առ վենետիկեցիս՝ որոց
փառք պարծանաց է աւիւծն ՚նք մարկոս,
հին ձեռագիր աւետարան նորին ՚ի պահեա-
տի գանձուց գաղտնեաց կմ ՚ի տապանի նո-
րա՝ կարծեցեալ սկզբնագիր ՚նք աւետարան-
չին, բայց առ հնութեն թերթ ՟Ը թերթի
մածեալ, և գիր մաշեալ և ժտգունեալ՝ ան-
վերծանելի գլխովին. մինչև անհնար լինել
որոշել՝ յունակա՞ն իցեն նշանագիրքն, եթէ
լատինական. զի և տառք երկուց ազգացս՝
նմանաւանդ երկաթագիրքն՝ գրեթէ ոչ զա-
նազանին ՟Ը ձևոյ: Այս ՚նք մատեան անգին
առի բերեալ յակուիլիոյ ՚ի վենետիկ յամի
տն 1472, կմ 1420 յաւուրս Թովմայի մոչե-
նիկոյ դքսի. ուր հազիւ ասեն մարթացաւ
ոմն ընթեռնուլ իբր յունական նախադրութի
[illegible], [illegible]. զոր այլ ոմն ընթեռնոյր իբրև
վերջաւորութի լատին ձայնի՝ [illegible]. սոյն-
պէս և զայլ ուրոյն՞ական նշանագիրս ոմն յու-
նարէն գուշակէր, և ոմն լատիներէն: Այլ
քանզի առաւել լատինական գոլ երևեցաւ,
՟Ը նմին և հաւաստի դատեցաւ՝ թէ է թարգ-

 մա-

մանուԹի նախկին , քան շարայարուԹի ա-ռաջին ։

Նոր եւ այս իսկ ստոյգ , Թէ մինչդեռ յակ-ուիլէիա էր մատեանս , եկեալ անդր կայսրն կարոլոս չորրորդ յամի 1354 , բազում Թա-խանձանօք եառ 'ի նիկողայոսէ պատրիարգէ տեղւոյն՝ որ էր իւր եղբայր , մասն մի 'ի հնա-ցեալ աւետարանէ անտի . զի իբր յեօԹն տե-տրակաց՝ զերկուս . որ եւ պահի ասեն ցարդ յեկեղեցւոջ պրակայ , ոսկետուփ մարգար-տազարդ յօրինուածով . եւ սկսանի 'ի բնա-բանէ անտի . մարկ. ժբ. 21 . * եւ երկրորդն եառ զնոյն , եւ մեռաւ ||, մինչեւ ցկատարած , լատին տառիւք . զոր եւ ընԹեռնուն 'ի պա-տարագի զատկի եւ համբարձման . եւ զի մնաց-ուածն վենետկեան է անկարդալի , դարձեալ մնայ յերկբայս , Թէ օրինակն պրակայու իցէ հատուած այլոյ մատենի ։ Յայս վայր վը գրուէ սըյ աւետարանին՝ որ ըստ մարկոսի ։

Իսկ ինքն սբ աւետարանիչն մարկոս՝ ըստ միա-բան աւանդուԹէ հին վկայաբանից (4) , յետ բազմօք ընկերելոյ գլխաւոր առաքելոցն պե-տրոսի եւ պօղոսի , գնաց քարոզուԹբ 'ի գա-ւառս եգիպտոսի , 'ի լիբիա , 'ի մարմարի-կա , յամոնիկա , եւ 'ի պենտապօլիս . եւ աւե-տարանէր զՔն նշանօք եւ զօրուԹբ մն . եւ զտեղի առեալ առժամանակ մի 'ի կիւրենա-քաղաք պենտապօլսոյ՝ բազում աշխատելոց առար 'ի հիւանդս եւ յայսահարս . եւ զբա-զմամս յանհաւատից դարձոյց յԱծգիտուԷ , եւ կործանեաց զբագինս կռոց ։

Յետ այսորիկ եւս հրաման 'ի տէրութենէն՝
գնալ 'ի մեծն աղեքսանդրիա եգիպտացւոց,
որ և կոչի քաղաք աղեքսանդրի, և անդ սեր-
մանել զբանն կենաց, և առնուլ զպսակն ։
Յայնժամ վառեցաւ երանելին աւետարա-
նիչն իբրև քաջ նահատակ առ առաջիկայ
հանդէս մրցանաց, և ասէ ցեղբարսն. խօ-
սեցաւ ինձ Տր ը իս՝ յաղեքսանդրիա երթալ. և
նքա յուղարկեցին զնա մինչև 'ի նաւ անդր.
և ճաշակեալ ը նմա զհաց՝ հրաժարեցան 'ի
նմանէ, ասելով. Տր յս քս յաջողեսցէ զճա-
նապարհ քո ։
Իսկ եհաս առաքեալն յաւուրն երկրորդի յա-
ղեքսանդրիա. և ելեալ 'ի նաւէն՝ եկն 'ի տե-
ղի մի կոչեցեալ բենդիդիոն, և անտի գայր
'ի քաղաքն ։ Իսկ յորժամ կօխեաց զսեամս
դրանն, պատառեցան կօշիկքն. և ասէ. ար-
դարև ուղիղ է ճանապարհս այս. և ետ զկօ-
շիկսն 'ի կօշկակարն՝ որում անուն էր անիա-
նոս կը՛ անխանակն. և յորժամ սկսաւ կարել,
խոցեաց ասղն հերունակն զձեռսն, և ճչեաց
առ ցաւոցն, և ասէ. ով մի Աստուած ։ Իսկ առա-
քեալն ուրախ եղև ը բարբառ նորա. և գի-
տաց՝ եթէ յաջողեաց Տր զճանապարհ իւր՝
յայսմիկ առնել զանձն այսու օրինակաւ. վղդ
եթուք 'ի գետինն, և զկաւն եդ 'ի վր խո-
ցոյն՝ ասելով. յանուն Տն մերոյ յի քի որդ-
ւոյն Այ ողջասցի ձեռնդ այդ. և վաղվաղակի
ողջացաւ ձեռն նր ։
Յայնժամ սքանչացաւ կարօճակն ը զօրու-
թենէ բանից առաքելոյն. և հայեցեալ ընդ
ճըդ-

Ճգնազգեաց կերպարանս նր՝ մեծապէս սի-րով հրաւիրէր զնա 'ի տուն իւր. ասէ. աղա-չեմ զքեզ այր Այ, զի եկեալ ագանիցիս 'ի տուն ծառայի քո, և կերիցուք 'ի միասին պա-տառ մի հացի. զի արարեր այսօր ՃԸ իս ողոր-մութիւն ։ Եւ երանելին մարկոս ասէ ցնա զուարթութբ. որ տացէ քեզ յերկնից ըղ-ձացին կենաց. և բռնադատեաց զնա այրն, և եմոյծ 'ի տուն իւր ուրախութբ ։

Եւ 'ի մտանել իւրում ասաց ընդ մարկոս. որհնութիւն ՏԵՆ բնակեսցէ 'ի տեղւոջս յայս-միկ. և աղաւթեալ ազոթս՝ նստաւ ։ Եւ ասէ ցնա անիանոս. հայր, ասա ինձ աղաչեմ, ուստի՞ ես դու. և ուստի՞ քո բանդ այդչափ հզօր և կենդանարար ։ Պատասխանի ետ մարկոս. ես ծառայ եմ ՏՆ իմոյ ՅԻ ՔԻ որդւոյն Այ ։ Ասէ այրն. ցանկայի տեսանել զնա ։ Եւ մարկոս ասէ. ես ցուցից քեզ զնա. և սկսաւ պատմել նմա զաւետարանն ՔԻ. և յաւել առնել զայլ նշանս և սքանչելիս. մինչև հաւատաց անիանոս 'ի ՔՍ, և մկրտեցաւ ամ ընտանեօքն իւրովք ։ Եւ 'ի բազմանալ օր ըստ օրէ աշակեր-տացն՝ հիմն էարկ եկեղեցւոյ ընդ մարկոս 'ի քաղաքի անդ ։ (6)

Ապա երև գլխաւորացն աղեքսանդրացւոց, եթէ գալիլեացի ոմն եկեալ է անդր, քակ-տիչ զոհից դիցն, և խափանիչ պաշտամանց նց. և խնդրէին սպանանել զնա ։ Իմացեալ երանելւոյն մարկոսի զխորհուրդս նց՝ ձեռ-նադրեաց յաղեքսանդրիա փոխանակ իւր ե-պիսկոպոս զանիանոս, որ և անանիոս, և այլ

երիս քահանայս, որոց անուանք էին Մեղրոս կամ Միեղոս, Սաբինոս և Կերդոն. ձեռնադրեաց և եօթն սարկաւագունս. կարգեաց և այլ մետասան անձինս 'ի սպասաւորութիւն
եկեղեցւոյ: (6)

Իսկ ինքն գնաց 'ի բարկա քաղաք պենտապօլսոյ, և արար անդ ամս երկու. դարձոյց զբազումս, և ձեռնադրեաց եպ̃սունս և քահանայս և պաշտօնեայս, և շինեաց եկեղեցիս: Իսկ դարձ առաքեալն յաղեքսանդրիա իբրև 'ի սեպհական աթոռ իւր՝ եգիտ զեղբարսն բազմացեալս շնորհօք և հաւատովք Տն, և բարեզարդեալս զեկեղեցին զհիմնարկեալն յիւրմէ 'ի տեղւոջն՝ որ կոչիւր բուկուղի, մ̃ նախիրք կամ արջառք, մերձ 'ի ծովեզրն 'ի ներքոյ ժայռից. և ուրախ եղև յոյժ. քանզի համարձակութ̃ պաշտէին և քարոզէին զՔս̃: Իսկ ինքն զաւետարանական և զառաքելական պաշտօնն 'ի կիր արկեալ՝ զօրացուցանէր և զուարթացուցանէր զամենեսին. և բազում սքանչելիս գործէր 'ի վր̃ հիւանդաց, կուրաց, կաղաց, խլից և համրից. որով և յաւելան 'ի Տր̃ բազմութիւնք հաւատացելոց: Ընդ որ լցան նախանձու կռապաշտքն, և կրճտէին զատամունս 'ի վերայ Նրյն. և էր շշնջիւն զնմանէ յա̃մ հրապարակս և 'ի ժողովս աղեքսանդրացւոց, թէ մեծ է զօրութի առն այնորիկ: Իսկ եղև յաւուր Տրյ զատկին 'ի ժամ պատարագի, յորժամ և Նք̃ զսերապիականն տօնն կատարէին, դիմեցին 'ի վր̃ առաքելոյն. և կապեցին չուանս

ըն

ընդ պարանոցն, և ընկեցին յերկիր. քար-
շէին ընդ մէջ քաղաքին, և այսպէս առնելով
աղաղակէին. քարշեցէք 'ի նախիրս զբոբո-
ղոնդ զանբան անասունդ: Եւ առաքեալն
աղօթէր և ասէր. գոհանամ զքէն Տէր իմ և
Աստուած իմ Յիսուս Քրիստոս, զի արժանի եղէ զայսոսիկ
կրել վասն անուանդ քո սրբոյ. և այնչափ անխը-
նայ ձգեցին զնա, մինչև կտրատեցաւ ամենայն
մարմինն. և քարինքն և հողն լցան արեամբն.
և տարան արկին զնա 'ի բանտ ընդ երեկս:
Եւ 'ի մէջ գիշերին՝ մինչդեռ դուռն բան-
տին փակեալ կայր, և պահապանքն առ դուրս
նստէին, եղև շարժումն մեծ. և հրեշտակ
Տեառն իջեալ մերձեցաւ 'ի նա, և ասէ. ծառայ
Աստուծոյ Մարկոս, գլխաւոր սրբոցն՝ որ են յեգիպ-
տոս, ահա անուն քո գրեալ է յերկինս 'ի
գիրն կենաց. և համարեսցիս դու 'ի թիւ
առաքելոցն և աւետարանչաց. և անուն քո
ոչ ջնջեսցի յաւիտեան. և նշխարք ոսկերաց
քոց յերկրի ոչ կորիցեն: Զայն լուեալ սրբոյն
Մարկոսի՝ ուրախ եղև և գոհացաւ զԱստուծոյ. և
զձեռսն յերկինս վերացուցեալ՝ ասէ. Տէր իմ
Յիսուս Քրիստոս՝ որդի Աստուծոյ և բան Հօր, մի թողուր զիս.
այլ ընկալ զոգիս իմ, և տուր ինձ ճանապարհ
բարի գալ առ քեզ, և խառնեա զիս 'ի թիւ
սրբոց քոց: Եւ երևեցաւ նմա Տէր նովին կեր-
պարանօք և ձևով՝ որով կայր ընդ աշակերտսն.
և ասէ. Խաղաղութիւն ընդ քեզ աւետարանիչ
իմ Մարկոս. Եւ նա ասէ. փառք քեզ Տէր իմ
Յիսուս Քրիստոս: (7)

Եւ յորժամ առաւօտ եղև, հանին զնա 'ի

բանտէն. և դարձեալ քարշեցին՝ ոչ յառաջին. մինչև յորդիս ապաստան լինել նորին, և ասել. 'ի ձեռս քո տէր յանձն առնեմ զհոգի իմ. և այնպէս աւանդեաց զհոգին՝ յապրիլի իէ. յաւուրս Ներոնի կայսեր, ըստ ոմանց 'ի ժդերրորդ ամի նր, այս յամի տն 67, կմ 68. միով ամաւ զկնի կատարման պետրոսի և պօղոսի. և ըստ այլոց կանխագոյն՝ յամի տն իբր 60 կմ 61, այն է եօթներորդ կմ ութերորդ ամներոնի։ Իսկ զմարմին նորին ընկեցին անօրէնք 'ի հուր, զի այրեսցի. և եղև անձրև սաստիկ և որոտումն և փայլատակունք զօրն ողջոյն. և անձրևք շիջուցին զհուրն. և երթեալ եղբարցն՝ հանին անփոյթ զպատուական մարմինն, և եդին 'ի փորեալ վիմին 'ի տեղւոջն՝ ուր սովոր էր մատուցանել զմշտամռունչ աղօթս յա, րևելեան կողմն տաճարին։ Իսկ յաջորդեաց յաթոռ նր յաղեքսանդրիա անիանոս եպկս ձեռնադրեալն 'ի նմանէ, և հետևող առաքինուեց նր։

Իսկ էր նորն մարկոս՝ ասեն վկայաբանք, անձամբ միջակ, երկայնաքիթ, յօնեղ, աչեղ (այս մեծակն կմ լաւաչեայ), և խտամօրուս (զոր ոմանք թարգմանեն՝ պակասամօրուս ոչ քարձ, և այլք երկայնամօրուս), ճաղատ, ալեխառն, ցորենագոյն մարմնովն, բարետեսակ, լցեալ շնորհօքն քի։

Իսկ եղև տեղի գերեզմանի նորին յաղեքսանդրիա՝ նշանաւոր ուխտատեղի, ուր շինեցաւ տաճար յանուն նր. և անդ թաղեցան նաև յաջորդք նր. անդ եկն և նորն պետրոս աղեք-

սան

սանդղացի , և մօտ 'ի տեղի անդր գլխատեցաւ ․ ոչ՛ ասացաւ 'ի վարս նր̃ ։ Շինեաց և մեծն Թէոդոս կայսր եկեղեցի յանուն նըյն մարկոսի աւետարանչի 'ի կոստանդինուպօլիս 'ի տեղին տաւրոս կոչեցեալ՝ փայտեայ գմբեթաւ ․ յորոյ 'ի կործանիլն 'ի շարժմանէ՝ նորոգեաց զայն ռոմանոս լակապենոս կայսր 'ի Թ դարու ։ Մ․ԱԼ առաւել քան զնմ̃ հոյակապ և տիեզերահռչակ տաճար նըյն մարկոսի է 'ի վենետիկ քաղաքի , ուր փոխադրեցան պատուական նշխարք նորա ․ զորմէ ժամ է գրել ը̃ աւանդից վենետկեցւոց ։ (8)

## ՓՈԽԱԴՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ

### Նշխարաց սբ̃ոյն Մարկոսի 'ի վենետիկ ։

Մարմինն նր̃ աւետարանչին մարկոսի կայր 'ի տեղւոջ իւրում յաղեքսանդրիա մինչև ցուԹերորդ դար ․ յորում ծմկի բերդապատուական քահանայն այսպէս խօսէր 'ի գիրս յաղագս նր̃ տեղեաց ․ գլ․ ծ̃է ․ * Ընդ աջմէ այնոցիկ՝ որոց մտանեն 'ի քաղաքն (աղեքսանդրու ) 'ի կողմանէ եգիպտոսի , է առաջ ելանէ եկեղեցի , յորում հանգուցեալ կայ երանելի աւետարանիչն մարկոս ․ որոյ մարմինն ամփոփեալ է յարևելեան կողմն եկեղեցւոյն առաջի բեմի , ունելով տապան կճեայ քառակուսի ։ Իսկ երյայնժամ եգիպտոս և աղեքսանդրիա անկեալ ընդ ծերութե այլազգեաց ․ զի 'ի նախընթաց դարու տի-

րեալ էր անդ իսպառ-ամիրապետն Օմար ։ Այլ եւ յորժամ թագաւորեաց 'ի վ̃ր յունաց Լեւոն կայսր արծրունի 'ի Թ̃ դարու՝ արգել զիւրսն յերթալոյ յեգիպտոս վ̃ն վաճառուց ․ զնոյն պատուիրեաց իւրոցն եւ յուստինիանոս պարտիկիատ՝ որ եղեւ դուքս վենետիկեցւոց յամի տ̃ն 828 ։ Նայց տասն նաւք վենետիկեան վաճառականաց յաւուրսն յայնոսիկ բռնութ̃բ հողմոյ յակամայս անկան յաղեքսանդրիա ․ եւ ելեալ 'ի քաղաքն՝ զօրհանապազ կանխէին 'ի տապանն Սրբոյն Մարկոսի յաղօթս հանդերձ ազգի ազգի պատարագօք 'ի պատիւ Սր̃բ աւետարանչին, զոր ճանաչէին առաքեալ իւրեանց՝ ունելով յաւանդութէ, թէ նա լուսաւորեաց զակուիլեացիս յիտալիա ։ Այլ ինքեանք էին արք ազնուականք եւ մեծատունք ․ յորս երեւելի էր բոնոս տրիբունն 'ի մետամաւկայ (որ ռամկօրէն մալամօք ասի՝ ծովեզր վենետկոյ), եւ հռուստիկոս 'ի տոռկելոյ (այն է դօռչելլօ՝ մասն հին վենետկոյ) ։

Սոքա 'ի տեսել երթեւեկութ̃ ընտանացեալ Բ̃ յոյն վերակացուս եւ պաշտօնէայս տաճարի Սրբոյն Մարկոսի՝ իբրեւ տեսին յաւուր միում զդէմս ն̃ց տխուրս, հարցին եւ տեղեկացան, զի ամիրապետն այլազգեաց կամեցեալ իւր ապարանս շինել 'ի նորին բաբելոն (կամ 'ի բաղտատ), հրաման է յղեալ, զի որչափ եւ կճեայ սիւնք կ̃մ տախտակք գտանիցին յերկրին եգիպտացւոց՝ եթէ 'ի հրապարակս եւ եթէ յեկեղեցիս, խաղացուսցեն 'ի բաբելոն 'ի

'ի պէտս պալատանն ։ Արդ քանզի սկսեալ էին հաւաքել զայնպիսի քարինս և յաղեքսանդրիոյ, նմին իրի խիթալի էր՝ թէ զնոյն արասցեն և 'ի տաճարի սբյն մարկոսի ։

Ընդ այս զառաջինն սրտցաւութբ կարեկից եղեն վենետկեցի վաճառականք ․ և այս երկոքին իշխանաւորքն բոնոս և հռուստիկոս կոչեցին առանձինն զերկուս 'ի գլխաւորաց պաշտօնէից տաճարին, որոց անուանք էին ստաւրատիոս միայնակեաց, և թէոդորոս երէց՝ զոր և հայրապետ իւր արարեալ էր բոնոս տրիբունն առ որսալոյ զնա 'ի կամս իւր ․ և յորդորեցին զնս բազմօք, զի թէ կամին ազատ լինել 'ի հալածանաց, և ազատել պատուով 'ի ձեռաց օտարաց զպատուական գանձն զմարմին սբյն մարկոսի, բարձցեն զայն գաղտ, և եդեալ 'ի նաւ՝ եկեսցեն ընդ իւրեանս 'ի վենետիկ յմծակերտ կղզին ․ և անդ գտանիցեն զմծ հանգիստ ․ և սբն փառաւորեսցի յերկրի անդ քրիստոնէից ։

Նք զառաջինն յահի եղեն բ բանս ․ զիարդ լինիցի ասեն հանել զաւետարանիչն յաթոռոյ իւրմէ, և օտարացուցանել զլուսաւորիչն և զպաշտպանն աղեքսանդրիոյ և մծ եգիպտոսի ․ զի ոչ ծածկի բանդ այդ 'ի ժողովրդենէ, և մահու սատակեն զմեզ ․ թող զի անուն սբյն հռչակեալ է ը տիեզերս ։ Իսկ բոնոս և հռուստիկոս ասեն ․ մեք իսկ եմք անդրանիկք սբյն մարկոսի՝ վաղագոյն ծնեալք 'ի նմանէ աւետարանաւ 'ի քս ․ և աթոռ նր առ հերակլ կայսերաւ պարգևեցաւ վենետ-

կեցւոց. և եթէ չէր հաճոյ տեառն մարկոսի այց առնել որդւոց իւրոց, ոչ ձգէր զմեզ 'ի կողմանս յայսոսիկ յայսպիսում ժամանակի. ապա յայտ է թէ կամք եղեն այ պարգևել մեզ զհայր մեր:

Այնուհետև եռուն ստաւրատիոս և թէոդորոս, և ասեն. չար է մեզ ունել զաթոռն զոր աւէքզ. այլ զմարմին տեառն անհնար է մեզ շարժել 'ի տեղւոջէն, և ոչ մեզ վտարանդի լինել 'ի հայրենեաց մերոց յերկիր անծանօթ. լաւ է մեզ աստ կալ 'ի սպաս տեառն հալածանօք համբերձ, որ սեպհական է ծառայից քոց: Իսկ բոնոս և հռուստիկոս ասէին. և այն մեզ է պատուիրան՝ փախչել քաղաքէ 'ի քաղաք 'ի ժամանակի հալածանաց. այլ և ինքնին տէր աւետարանիչն խոյս տայր երբեմն յաղեքսանդրիոյ 'ի պենտապօլիս:

Մինչդեռ սոքա զայսօրինակ վիճէին 'ի ծածուկ զաւուրս ինչ, սկսան որքանեակք ամբարշտին ձեռն մխել 'ի քարինս տաճարի տեառն մարկոսի. և յԷ դէմ դառնալ ուրումն 'ի պաշտօնէից՝ զան հարին զնա չարաչար: Զայն տեսեալ ստաւրատիոսի և թէոդորոսի՝ յանձն առին զառաջարկութիւն ազնուականացն վենետկեցւոց. և ժամադիր եղեալ Է նմ՝ եկին և բացին դադա զկճռոյ տապանին, ուր կայր մարմին տեառն աւետարանչին՝ տարածեալ Է երկայնութ, և պատեալ շուրջանակի մետաքսեայ քղամդաւ, և կնքեալ յոտից մինչև 'ի գլուխ յայն տեղի՝ ուր ծայրք քղամդին ծալեալ էին յերկերաց վԷ:

Յայն

Յայնժամ հնարս խորհեալ բառնալ զմարմինն, և զքղամիդն թողուլ 'ի տեղւոջն կնքեալ, զի մի 'ի վեր ելցէ բանն, շրջեցին զսբ̃ մարմինն, և պատատեցին 'ի թիկանց զքղամիդն. և փոխանակ սբյն̃ մարկոսի ամփոփեցին 'ի տեղի նր̃ զմարմին սբյն̃ կղոդեայ կամ կղոդիանոսի՝ որ կայր 'ի նմին տաճարի, և քղամդաւ մարկոսի պատեալ՝ պահեցին 'ի վր̃ լանջաց զառաջին կնիքս ։ Եւ այսպէս անյայտ արարին զգողութի̃ իւրեանց. բայց սկսաւ բուրել ըն̃ ամ̃ քաղաքն անուշահոտութի̃ իմն 'ի մարմնոյ սբյն̃ մարկոսի հանելոյ 'ի տապանէ. մինչև շշնջել հաւատացելոց և հեթանոսաց, ուստի՞ իցէ այս հոտ անուշութե̃ 'ի քաղաքիս ։ Ամենեքեան յաղեքսանդրացւոց 'ի կասկածանս անկեալ վ̃ն նաւուց վենետիկեցւոց, մի՛ գուցէ խարդախեալ ինչ իցեն 'ի ստէպ այց առնել իւրեանց տապանի սբ̃ աւետարանչին, ընթացան յեկեղեցին 'ի զննել զիրան. այլ իբրև եկին և տեսին զքղամիդն կնքեալ, հանդարտեցին և գնացին այր իւրաքանչիւր 'ի տեղի իւր ։

Իսկ վենետիկեցիք պարապ առեալ և բարձեալ զանխուլ զմարմին սբյն̃՝ եդին 'ի զամբիւղ մի ծածկեալ ոստովք ձիթենւոյ, և 'ի վր̃ արկեալ զմիս խոզենի. և այնպ̃ տանէին 'ի ծովեզրն. զոր տեսեալ այլազգեաց՝ 'ի բաց դարձուցանէին զերեսս զզուանօք ըս̃ սովորութե̃ իւրեանց 'ի մսոյ անտի, ասելով իւրեանց բարբառով՝ ըս̃ գրելոյ պատմչին, խանզիր խանզիր, այն է խոզ ։ Եւ այսպիսի ճարտա-

րութք բերեալ վենետկեցւոց զսբ. զանձն
յափն ծովու, եդին 'ի կուր, և տարան 'ի
նաւն. ուր հանեալ զպատուճական մարմինն
'ի զամբիւղէ՝ փաթութեցին 'ի պաստառս ա֊
ռագաստից նաւուն. զի մի լիցի աղեքսանդ֊
րացւոց խուզարկել զնաւն և գտանել զայն։
Եկն 'ի ծածուկ 'ի նաւ անդր և ստաւրատիոս
միայնակեացն. իսկ թէոդորոս երէց թէպէտ
և եա տանել զկարասի իւր 'ի նաւն, այլ
ինքն երկուցեալ 'ի մարդկանէ՝ որ կային 'ի
ծովեզրն, ոչ կարաց անձամբ գալ։ Բայց
դոյր 'ի նաւին և այլ ոմն միայնակեաց լա֊
տին՝ դոմինիկոս անուն, դարձեալ յուխտա֊
գնացուէ եէմի։ Արդ իբրև մեկնեցաւ նաւն
յաղեքսանդրիոյ, հանին զմարմին սբյն 'ի
պատատէ առագաստից, և եդեալ 'ի վայե֊
լուչ տեղւոջ՝ պատուէին հանապազորդեան
լուցմամբ ճրագաց և բուրմամբ խնկոց. և
երկու միայնակեացքն որ 'ի նաւի անդ՝ 'ի
սպասու կային սբյն։

Եւ եղև 'ի Ճանապարհ անկանիլ նաւուն
այն՝ ուղեկցութք այլոց վենետիկեան նա֊
ւուց, որք անգէտ էին իրացս, յաւուր միում
նաւավարք նորա խօսելով ընդ այլոցն՝ ասեն.
ոչ գիտէք զբանն՝ որ եղև. նքք ասեն. զինչ.
պխնի եսուն սք. ընդ մեզ է 'ի նաւիս սբն.
մարկոս. և յոչ հաւատալ նոցա և յասել,
զինարդ մարթ է այդմ լինել, պատմեցին նք
կարգաւ զեղեալսն ամ։ Իսկ մի ոմն 'ի նո֊
ցանէ այսպն արար՝ ասելով. թերևս եգիպ֊
տացւոյ ուրուք մարմին տանիւ ձեզ, և դուք

խըն

խնդայք՝ որպէս թէ զմ̃րն մարկոս ը̃ ձեզ ու-
նիք ։ Մինչդեռ բանքն 'ի բերան նր̃ էին, նաւ-
նըյն անհնարին արագութբ̃ շրջեալ 'ի վր̃ նաւ-
ւուն՝ յորում էր այպանօղն, ը̃ հարաւ ը̃ նա
ուժգին ։ մինչև խորտակել զմասն մի 'ի կո-
ղից նաւուն, և ամենեցուն աղաղակել, թէ
արդարև հզօր առիւծն նը մարկոս է 'ի նաւ-
ւուդ ։

Գտաւ և մի ոմն 'ի նաւաստեաց նաւուս նըյն,
որ ստէպ պնդէր թերահաւատութբ̃, թէ օ-
տարի ուրուք մարմին իցէ այն ։ վ̃յ այսահա-
րեալ չարաչար լլկեցաւ առաջի ամենեցուն ։
մինչև անձեալ առ մարմին նըյ աւետարան-
չին՝ հայցեաց թողութի̃, և ազատեցաւ 'ի
պատուհասէն ։ Իսկ 'ի գիշերի միում 'ի պա-
հու աւեկածութե̃ երևեցաւ նըն մարկոս դո-
մինիկոսի միայնակեցի ։ և 'ի ձեռն նր̃ ազդ-
արար նաւավարաց իջուցանել զաւազաստ՝
վր̃ մերձ լինելոյ ցամաքին, զոր ոչ տեսա-
նէին 'ի մթան ։ և ը̃ լուսանալ աւուրն գը-
տաւ նաւն մօտ 'ի կղզին ըստրոփադայ, որ և
ըստրիվալի ։

Ն̃ւ յայնմ հետէ առաւել ակնածէին նաւա-
վարքն 'ի նըյն, և պատուէին աղօթիւք ։ և
զգուշանային պատմել ումեք 'ի տեղեացն՝
ը̃ որ անցանէին ։ բայց բազումք այն եղեն,
որոց 'ի յայտնութե̃ ն̃ն իմացեալ զիրսն՝ եկին
ը̃ առաջ նաւուն 'ի տեղիս տեղիս 'ի յարգու-
թի̃ նը մարմնոյն հանդերձ ուղերձիւք ըն-
ծայից ։ և երանելի տային վենետկեցւոց վր̃
մեծի գանձուն ։

Իբրև

Իբրև եհաս նաւն 'ի քաղաք մի Իստրիոյ՝ հու-
մակ կամ ումանձն տասցեալ, զտեղի առին
անդ նաւավարքն. և առաքեցին զոմն առ
յուստինիանոս դուքսն վենետիկոյ՝ ասել. ա-
մօթապարտ գտանիմք առաջի ձեր՝ ոչ ան-
հնազանդ երևեալք 'ի գնալ մեր յաղեքսան-
դրիա. այլ գիտէ տր՝ զի ակամայ կամօք ան-
կաք անդր. և ած տն յաջողելոյ մեծագանձ
դարձաք անտի. վ՛ա զի ած մեզ է մարմին երա-
նելի աւետարանչին մարկոսի. արդ եթէ հա-
ճոյ է տնդ մերում անպատիժ ած ունել զմեզ,
բերեմք զնա առ ձեզ. ապա թէ ոչ՝ ած այլ
կողմն ուղղեսցուք զնաւս մեր: Իսկ դուքսն
լցեալ անպատմելի խնդութեամբ ած լուրն, հրա-
մանն տայր գալ նոցա անյապաղ. զի 'ի սէր հո-
գևոր գանձուն ընկալցայց ասէ զձեզ որպէս
որդիս սիրելիս:

Իսկ յորժամ հասանէր նաւն 'ի վենետիկ 'ի
նաւահանգիստն ոլիվոլեան (որ 'ի բնակչացն
գաստէլլօ կոչի), ուր հայրապետանոցն է,
ել ած առաջի սրբ մարմնոյն ուռսոս եպիսկ քա-
ղաքին եղբայր դքսին՝ խաչիւք և ամ եկե-
ղեցական դասուք. զոր և ընկալեալ բերին
թափօրապէս 'ի պալատն դքսի: Ուր 'ի հա-
նել նոցա զայն ած սանդուղս վերնատանն՝ ասէ
պատմագիրն, էր զի անհնարին ծանրութե
զգայլին պաշտօնեայք՝ որոց բարձեալ էր զայն,
մինչև չկարել ոտն յոտանէ փոխել. և էր զի
թեթև յոյժ գտանէին իբրև անզգալի ծան-
րութեամբ. միանգամայն և օթոցն՝ որով պա-
տեալ էր մարմինն սրբոյն, 'ի հանդարտութե
անդ.

անդ. օդոց ինքնին շարժլէր 'ի վեր քան զամ բռնութեն հողմոց ։

Երդ ընկալեալ դքսին զպատուհական մարմինն նորայ աւետարանչին՝ զետեղեցոյց առ ժամն 'ի վերնատանն անդ պալատանն, կարգեալ երկդիչս և պաշտօնեայս 'ի սպաս նորայն . յորոց մի էր և Ստաւրակիոս միայնակեաց եկեալն յԱղեքսանդրիոյ . նմ̄ և Թէոդորոս երէցն եկն եհաս յետ սակաւոյ . իսկ Դոմինիկոս միայնակեացն գնաց 'ի քաղաք իւր ։ Այլ ոչ յետ բազում աւուրց իջոյց դուքսն զմարմինն սրբոյն Մարկոսի 'ի վերնատանէ անտի 'ի մօտակաց դքսական եկեղեցի նորայն Թէոդորոսի, որ էր առաջին պաշտպան քաղաքին . այն է տեղին՝ ուր է այժմ հայակապ տաճար սրբոյն Մարկոսի ։

Այլ մինչդեռ խորհէր նա ինքն յուստինիանոս դուքս շինել եկեղեցի յանուն նորայ աւետարանչին 'ի համբաւ նշխարաց նր̄, եհաս վախճան կենաց նր̄ յերկրորդ ամի գալստեան սրբոյն . և յաջորդեաց 'ի դքսութե եղբայր նր̄ յովհաննէս ։ Սա 'ի գործ արկեալ զխորհուրդ և զկտակ եղբօր իւրոյ՝ շինեաց վկայարան չքնաղ յանուն սրբոյն Մարկոսի կից ը̄ պալատանն՝ ը̄ ձևոյ եկեղեցւոյն, զոր տեսեալ էր նր̄ յեմ̄ 'ի վր̄ տրունական գերեզմանին, ը̄ սր̄ յարութե . և զարդարեալ զայն պէսպէս ճարտար նկարուք՝ անդ համբոյց զմարմինն սրբոյն Մարկոսի՝ պատեալ նա կտաւովք և անուշ խնկովք . կարգեաց և երիցունս 'ի կատարել անդ զպաշտամունս ժամու զտուընջեան

ջեան և զգիշերոյ . և զամն պրիմիկաւ` ի-
բրև աւագերեց դքսական վկայարանին ,
տնտեսել զամ ինչ է կարգաւորութե դքսի . և
յայնմ հետէ հանդիսացաւ սրբ աւետարա-
նիչն Մարկոս ոմ առաջին պաշտպան քաղա-
քի և տրութե վենետկեցւոց ։ Նայց Մար-
մին աւետարանչին ամփոփեալ էր 'ի Մնաս-
րան անուն պղնձի արկեղս 'ի Թաքուն վայրի
է միով 'ի սեանց յօրինելոց կճեայ ախաւե-
ղագխօք . զոր ոչ ոք այլ գիտէր յայտնապէս ,
բայց միայն դուքսն և պրիմիկուսն ։
Նրդ մնաց վկայարանն այն այնպէս աւելի
քան զամս հարիւր` մինչև ցաւուրս պետրո-
սի` գանտիանի կոչեցելոյ , 'ի սանուտեան
տանէ . առ որով եղև քաղաքական խռովութի
մեծ 'ի վենետիկ , և սպանաւ դուքսն յամբո-
խէն , և դքսական պալատն հրոյ ճարակ
տուեալ հանդերձ վկայարանաւ սրբոյն Մարկո-
սի , կամ սրբոյն Թէոդորոսի ։ Ապա միաբան
հաւանութբ ամենեցուն ընտրեցաւ դուքս
պետրոս ուրսէոլոս` այր առաքինի և իմաս-
տուն , որ եղև յետոյ անուանելի սր ։ Սա 'ի սկզ-
բան անդ դքսութե իւրոյ յամի տն իբր 976.
ձեռն էարկ շինել 'ի հիմանց 'ի նմին տեղ-
ւոջ զտաճար սրբոյն Մարկոսի` համակ վիմա-
շէն և զմբէթազարդ , հոյակապ և սքանչե-
լի յօրինուածով , ահաւոր մեծութբ և մե-
ծագանձ հարստութբ . զոր ոչն կարաց բո-
վանդակել 'ի կենդանութե իւրում . քզի յեր-
կարեաց գործն զամս ղէ` մինչև 'ի դքսութի
դոմինիկոսի գոնդարենի ։ Նոյ գեղեցկութեան

գործոյն դրոշմեալ է 'ի կամարի գաւթի տա-
ճարին՝ լինել յամի տն 1071. Թող զի և վեր-
ջին լրումն ներքին և արտաքին զարդուց
ձգեցաւ այլ ևս 'ի ժամանակս երկայնս.

Բայց մինչդեռ վենետկեցիք յայս մեծա-
գործ շինուած դեգերէին, 'ի մոռացօնս ար-
կին զյիշատակ տեղւոյն՝ ուր էր տապան
սբյն 'ի տաճարի անդ. վսյ յամի տն 1084
կմ 1094, վիտալիս փալերիոս դուքսն խոր-
հրդով ծերակուտին հրամայեաց եռօրեայ
պահօք խնդրել յայտ զգիւտ սբ գանձուն. և
յաւուրն չորրորդի՝ որ օր իե էր յունիսի, 'ի
պահու մեծահանդէս Թափորոյ, հերձան
մարմարիոնք՝ որք պատէին զմի 'ի մեծ սեանց,
որ էր 'ի մնացուածոյ հին տաճարի սբյն Թէո-
դորոսի, յայնմ վայրի՝ ուր կայ այժմ խորան
սբյն յակոբայ կամ մօտ 'ի սեղանն լեռնար-
դոսի. և 'ի վեր երևեցաւ ինքնին տապան
աւետարանչին 'ի տես ամ ժողովրդեան, և
ելից անուշահոտութբ զտաճարն ողջոյն. ե-
ղեն և այլ բազմապատիկ սքանչելիք՝ ըստ ա-
ւանդելոյ յիշատակագրաց, առ մերձաւորս
և հեռաւորս բարեխօսութբ սբյն մարկոսի.
և բազումք յիշխանաց և 'ի Թագաւորաց պա-
տարագս սկսան առաքել 'ի մեծարանս տա-
ճարի աւետարանչին ։

Արդ ոչ կատարէին վենետկեցիք զտօն փո-
խադրութե մարմնոյ սբյն յաղեքսանդրիոյ 'ի
վենետիկ 'ի յունվարի լա, նոյնպէս սկսան
տօնել 'ի յունիսի իե զյայտնութի տապա-
նին նր, կոչեցեալ երևումն սբյն մարկոսի.

զորոյ զնախատօնակն տօնարեցան կոչել զօր վարդեջրոյ. զի 'ի յիշատակ անուշահոտութեան բուրելոյ՝ օրհնէին զվարդեջուր 'ի յանունիւն իւր, և սրսկէին զժողովրդեամբ. Թող և ըզ-նաւակատիս տաճարի սրբոյն 'ի հոկտ. Ը։

Բայց զմարմին նորին մարկոսի՝ յետ թողլոյ իբրև զամիսս չորս 'ի տես ժողովրդեան, զաղտ բարձին խորհրդապահք դքսին և ծե-րակուտին 'ի խորանէ անտի՝ ուր եդեալ կայր, և յայլում վայրի ամփոփեցին և անյայտ ա-րարին. զոր միայն երից արանց էր գիտել. ծ͞ դքսին, պրիմիկուրին, և գործակալին սրբոյն մարկոսի. զի 'ի մեռանիլ միոյն՝ յերկուց մնա-ցելոց կայցէ գիտութիւն իրացն. և նոքա յայտ-նեցեն այլում երրորդի յաջորդաբար։

Ի նշանակ անցիցս անցելոց կայ ցարդ և հին նկար 'ի տաճարի անդ՝ սովին արձանա-գրութեամբ. * Երեք աւուրբք պահէ ժողո-վուրդն, և առ Տէր կարդայ. վէմ պատառի, և անդրէն զնշխարն ամփոփեն և զետեղեն ‖. որում և այլ նկար յանտես վայրի ուրեք, ուր իշխան ոմն և եպիսկոպոսունք երկու յառաջիկայու-թե դքսին ամփոփեն զմարմին սրբոյն Ը խո-րանաւ, հանդերձ գրովս. * զետեղումն սրբոյն մարկոսի ‖։ Աստի և մինչև ցաւուրս մեր հա-սարակ կարծիք և աւանդութիւն էր 'ի ժողո-վրդեան, թէ նոր զանձն այն ամփոփեալ կայ կամ Ը աւագ խորանաւ, կամ 'ի թիկանց ա-ւագ խորանին ընդ սիւնազարդ գմբեթաւ, ուր է հին սեղան սրբութեան ։ Իսկ արդարև առ մեօք յամի 1808. ետ բերել զտեղին պատ-

ըհարդ

ըհարգ քաղաքին Նիկողայոս կամպոնի Նեապօլսեցի, և երևեցաւ տապան նորին 'ի սուրբ երկրեայ հին վկայարանի՝ ընդ ուղղութեամբ աւանդ սեղանոյն. զոր իբրև կամէր հանդիսացուցանել՝ խափանեցաւ առ ժամ մի. և ապա յամի 1810. 'ի մայիսի 6. յայլոց վերստին հետազօտեալ՝ գտան ոսկերք նորա աւետարանչին, և ամփոփեցան 'ի տաճարի անդ նորին 'ի բուն աւագ բեմի : (9)

Թողից ասել զմանր մասանց նշխարաց նորին Մարկոսի, որք գտանին սփռեալ 'ի վաղուց յայլևայլ տեղիս. յիշեն և այլ երևելի նշխարք յանուն Մարկոսի 'ի բրակս գերմանիոյ, 'ի կողոնիա, 'ի հռովմ, 'ի գաղղիա, ևն. որք թուին լինել մարմինք այլոց վկայից Մարկոս կոչեցելոց. և եթէ Յովհաննէս Մարկոս իցէ որիշ 'ի Մարկոսէ աւետարանչէ, մարթի լինել և նորա. այլ առ տենչանաց նորա աւետարանչին՝ ամ որ ունի զմասն ինչ ընդ անուամբ նորին Մարկոսի, նովին յարգանօք պահէ և պաշտէ. և ոչ զրկի 'ի բարեխօսութենէ նորա ըստ հաւատոց իւրոց :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ :

(1) Մարկոսդ անուն թէպէտև յոմանց ստուգաբանեալ է յեբրայականն փայլուն կամ ողորկ ևն, բայց 'ի զուր. զի էր սովորական անուն առ հռովմայեցիս 'ի լատինն բարբառ մարգուս. որ ըստ որում ծանեաւ 'ի բայէս մարչէօ կամ մարչէսգօ, նոյնանայ ընդ բառիս մարքոուս, ոգի և մաքրուս. և թարգմանի՝ փախօ կամ հերս

Վախճանն Է. դարու ։ Իբրև անհա զայս օրինակ՝ զոր բաղդատութեամբ ԺԲ օրինակաց յայլևայլ երևելի գրատանց եւրոպիոյ առեալ ապագրեն բոլլանդեանք, 'ի կիր արկաք և մեք՝ միայարելով ընդ ընթերցուածոյ Ճառընտրաց մերոց. Թող և զմասնաւոր Ճառս և զներբողեանս հարց և վկայից ։

Ուր ծանիր, զի Թէպէտև յասել հարց և վկայաբանից՝ Թէ սբն Մարկոս եղև ընկեր սբց գլխաւոր առաքելոցն պետրոսի և պօղոսի ի քարոզութն, իմացեալ լինի ընդ մեզ՝ չլինելն նր անխափան յարևելս և յարևմուտս մինչև 'ի հռովմ և յաղեքսանդրիա եւն, բայց որոշակի չաւանդեն զայդ-հքն օրինակք նախասացեալ վկայաբանութն նր ոչ 'ի հյ. ոչ 'ի յն. և ոչ 'ի լտ. այլ միայն խօսին զքարոզութե նր առանձինն 'ի կողմանս եգիպտոսի և լիբիոյ ։ Իբրև սակայն յերկուս օրինակս լատին վկայաբանութե դառնի և նախընթաց պատմութն քարոզութն սբյն Մարկոսի յարևմուտս. զոր իբրև առայդ ենթադրէ հենսքենիոս բոլլանդեան ընդ այլ լատին մատենագիրս, կոչելով զայն աւանդութն արևմտեայց՝ առաքելութն ակուիլեան, ուր և զքարոզութին յարևելս՝ առաքելութն աղեքսանդրեան ։ Մեր անաչառ խօսելով՝ Թէպէտև ընդունելի է մեզ, Թէ սբն Մարկոս եկեալ իցէ յարևմուտս ընդ սբյն պետրոսի, բայց պատմութին այն ակուիլեան առաքելութե է յօրինուած յետնոց՝ կարկատեալ 'ի գրաւոր և յանգիր աւանդութեց. քանզի է յայտնապէս ոճ յետին դարուց, ունելով բանին այսպէս.

* Յետ փառաւոր համբարձման տն մերոյ յսի քսի յեր-
,, կինս առ հայր... յորժամ առաքեալքն ըստ անճառե-
,, լոյ բարձրագոյն խորհրդոյ հոգւոյն սբյ սփռեցան
,, ընդ տիեզերս ամ... պետն առաքելոց, այն է փա-
,, կակալն երկնային դաղանեաց երանելին պետրոս՝
,, յետ հաստատելոյ յանտիոք զաթոռ քհնյապետութե,
,, իմա 'ի վր այնր վիմի՝ զոր նմին կանխաւ ուսուցեալ
,, էր նա իւրն անվանելի հիմն քի յմ, յերկրորդ ամի
,, անդ կղոդեայ կայսեր (ըստ այլոց՝ գայիոսի կալիգուլ-
,, այ) առ յաղթահարել զսիմոն մոգն՝ եկն ի մուտ յեր-
,, ջանիկ աւուր 'ի հռովմ. ուղեկից ունելով և զմար-
,, կոս զհաւատարիմն աշակերտ իւր, և զսի-
,, րելի որդին վերստին ծննդեանն ըստ աւետարանին...
,, Իբրև զօգտարեալ անդ աւուրս ինչ՝ սերմանելին ձե-
,, ռամբ վէմութե զսերմն բանին այլ պարզ միջոց յան-
,, դամատես որտից ունկնդրաց.... մինչ զի այնուհետև

„ ոչ եւս հրաւիրեալք 'ի մարմնի կոչունս ընթանային.
„ այլ երանաւէտ սովոր յաղթահարեալք՝ ինքնակամ
„ ճեպով փութային միջամուխ լինել. զի կղեմէս ( ա-
„ ղեքսանդրացին ) 'ի վեցերորդ գիրս վիճաբանութե
„ (կմ ատպաւորութեց ) ըստ իւրում նրբամտից ուշիմութե
„ հանճարոյ գնէ ասելով. Բանն ճշմարտութե և լու-
„ սոյ՝ որ պետրոսիւն քարոզեալ լինէր, 'ի միոս ամե-
„ նեցուն հեռաընկալ ընծայիւր. մինչև զօրհանապազ
„ ունկնդրացն չձանձրանալ երբեք. սակն իբր և ոչ լոկ
„ լսելութեն բաւական լինէր նմ, այլ ևս աղերսանօք
„ աղաչէին զմարկոս զաշակերտ նր, զի զոր միանգամ
„ նա բանիւ քարոզէր. առ յաւերժական հրահանգ նո-
„ ցին՝ 'ի գիր անցուսցէ վն յիշատակի. մինչև առ ոտնին
„ և առաքելոյ յայնպիսի խորհուրդս գեղեցիկ նմ:
„ Այսպիսի այսպէս եղելոց՝ երանելի աւետարանիչն
„ մարկոս զառաքելականն պաշտօն յանձին բերեալ՝ ա-
„ ռաքի յակիւպտոս, 'ի քաղաքն ասեմ մեծահռչակ. յոր
„ և հասեալ, այն ինչ 'ի քաղաքի անդ գործակցութե
„ շնորհացն այ առ ժամանակ մի 'ի փոյթ քարոզութե
„ պարապեալ մնայր, զմեծ բազմութի հաւատացելոց
„ դարձոյց 'ի պաշտօն տն քի. և առաքինի փութով
„ հիմնարկեաց անդ զեկեղեցի անխախտելի ամրութբ:
„ Ուր և զաւետարանն տն իւրով գրչաւ ասի 'ի լոյս
„ ընծայեալ ( զի Յօրինակեալ յառաջին բնագրէ իւր-
„ մէ ) . ոչ յայանի քարոզէն նախնեացն յիշատակարանք
„ առ մեզ փոխանցեալ:
„ Եւ վկայ իրացս կայ ցարդ եւս 'ի միջի, որ 'ի հաստա-
„ տութի ճշմարտութեան 'ի նմին եկեղեցւոջ պահի՝ ա-
„ թոռ 'ի հին փղոսկրէ՝ ողորկ տախտակօք զօդել, յո-
„ րում զնա նստեալ գոլ՝ յորժամ զաւետարանականն
„ տառսն գրոշմէր, ոչինչ լսեն յիշատակք նախաճառե-
„ լոց. քանզի և 'ի նստարանի անդ այնր աթոռոյ ոչ ոք
„ երբեք այնուհետև 'ի հայրապետաց համարձակեցաւ
„ բազմիլ. այլ մինչև ցայժմ մեծաւ յարգանօք պատ-
„ ուեալ լինի խոնարհաբար յամ հայրապետաց: Իսկ
„ պսակն մարտիրոսութե յածայիս յառաջիկայէ նմին
„ անօրինել պահիւր յայլում ժամանակի լինել յաղեք-
„ սանդրիա:
„ Ապա զորբափայլ այրն զհերմագորաս 'ի քաղաքէ ան-
„ տի ակուիլիացւոց 'ի գերապայծառ կատարելութե վիճակա-
„ րանին իւրոյ կրթեալ՝ գեղեցիկ հաստատեալ էր, ոչինչ
„ յերկարեցեալ՝ եթէ արժանի է նա քահանայապետական
„ աշ-

„ գատարկանալ պատրիարգական աթոռոյ՝ ընտրեսցեն
„ զմի յերկոտասանից երիցունցն, և օրհնեսցեն զնա. և
„ պատրիարգ հաստատեսցեն. և ապա զմին երևելի
„ այր ընտրեսցեն, և զնա երէց կարգեսցեն ընդ իւրեանս
„ ՚ի տեղի նր, որ եղեն պատրիարգ. և այնպէս միշտ
„ մնասցեն երկոտասան||: Այս ինչ յայտնի է յեկեղե-ցական պատմութեանց առ հասարակ, զի զկնի գահին Հռոմայ նախապատիւ էր ՚ի մէջ այլոց պատրիարգաց հայրապետն աղեքսանդրիոյ. մինչ զի կոչէր նաև պա-պաս կամ պապ՝ ըստ կոչման Հռոմայ հայրապետին, որ հայր հարանց:

(7) Որ ՚ի մեզ գրի մաղթողական ձևով. մի թողուր զիս են, առ այլս գրի ՚ի ձև գոհութեան. ոչ թողեր զիս, այլ խառնեցեր ՚ի թիւ սրբոց քոց, ևն. Եւ բան ընդ առ մար-կոս՝ ՚ի յն. գրի. * խաղաղութիւն ընդ քեզ՝ մերս մարկոս „ աւետարանիչ||. և ՚ի լտ. * խաղաղութիւն ընդ քեզ մար-կէ՝ աւետարանիչ մեր||:

(8) Զպատմութիւն նշխարացս առաք ՚ի մատենագրաց Փռութեցն վենետկոյ. յորոց միջի գլխաւորն է անուանեալ պատմիչ փոխադրութեան մարմնոյ սրբոյն մարկոսի՝ Ճակա-կէց. զորոյ զգործն ՚ի մէջ բերէ Հենշենիոս բոլլան-դեան ՚ի վատիկանեան մատենից: Երևելի է՝ թէպէտև յետոյ ժամանակաւ՝ նաև բեռնարդոս յուստինեան որ-դի լեոնարդոսի հռետորի եղբօր սրբոյն լաւրենտիոսի յուստինեան առաջին պատրիարգին վենետկոյ. զի սա ինքն բեռնարդոս՝ որ յամի 1475. գնաց դեսպանութ ՚ի հռոմ առ սիքստոս չորրորդ հայրապետն, գրեաց զոյգ ընդ հանրական պատմութ ծրութեն վենետկոյ և զեռա-մանեայ գիրս յաղագս վարուց սրբոյն մարկոսի, յաղագս փոխադրութ մարմնոյ նր ՚ի վենետիկ, և զմ սքանչելի յայտնութ նշխարաց նր. զոր և ՚ի լատինէ յիտալա-կանն թարգմանեաց ՚ի սկիզբն ԺԷ դարու յովհաննէս-տարինգա կանոնիկոս տաճարի սրբոյն մարկոսի ՚ի վենե-տիկ. Թող և զդանտոլօ դուքս վենետկոյ, և զայլ պատ-միչն գրիչս: Իսկ վն բանի աթոռոյն սրբոյն մարկոսի փո-խանցելոյ յակուիլէյա և ՚ի վենետիկ՝ որ ոք կամի, տես-ցէ առ բարոնիոսի. յամի 820. համար. ին:

(9) Անդրէաս տանտոլօ՝ որ եղև դուքս վենետկոյ յամի 1336, յետ ասելոյ ՚ի ժամանակագրութ իւրում, թէ * գե-„ տութե զքաղ. պալեմիկուրայ, և գործակալի (որք են „ Թ խուալ", օճէ, բոլիմիէքրօ, և բալզուրաքնաէ )„ զտեղի պատուական մարմնոյն ՚ի թաղման վայրի||. ՚ի

տանց, և կախեալ շղթայէ, որ թերևս արկեալ էր շղարանոցաւ սրբյն ('ի կենդանութ., կմ յետ մահուան):
Առ ընթեր գլխոյն կայր և անօթ մի փայտեայ այլովք նշխարքք՝ ծրարեալ 'ի քող մի թխագոյն. ուր և այլ տուփ նշխարաց բոլորաձև՝ յունական տառիւք դրոշմեալ այիօս անգօծնոս ( այն է՝ սբ անստն ոքքայն ). և հարիւրա_ւոր արծաթի դրամք մանունք գոգաւորք՝ սփռեալք, յորոց մեծ մասն ունէր զքանդակ գլխոյ, կմ նշանաց, կմ անուան սրբյն Մարկոսի. և յոմանց 'ի մի կողմն ուր_ուականն պատկեր և մակագիր (դքսի) Հենրիկոս. և 'ի միւս կողմն՝ սանքդաս մարքոսս (զի սբ Մարկոս): 'Ի նմա_րից սրբյն կայր կապարեայ տախտակ՝ դրոշմեալ խոշոր տառիւք տամներորդ դարու այսպէս ('ի լատին բար_բառ). "Յամի մարդեղութ. յՅի Քի հազարերորդի իննսնե_րորդի չորրորդի, յութերորդ աւուր ամսեանն հոկ_տեմբերի, 'ի ժամանակս վիտալիսի փալերարեան դքսի":
Որ է վկայութի անվրէպ թուականի երկրորդ փոխա_դրութ. մարմնոյ սրբյն Մարկոսի, որ եղև հանդիսապէս 'ի 8. հոկտ. յամի 1094. 'ի ձեռն փալերարայ կմ Ֆալիէր_ոսի, հանդուցեալ 'ի ստորերկրեայ վկայարան ցամա_քուա. բայց յետոյ եղև անմատնելի 'ի բազում դարուց հետէ՝ յերեսաց ջրոց, որք ողողեցին զտեղին :
Արդ՝ յետ քննութե և ստորագրութե 'ի ձեռն ար_քունի նոտարի՝ եղան նշխարք սրբյն 'ի նոր տապանակ կնքեալ կնքովք, հանդերձ մակագրութբ ծածրատր ձե_ռին մուէլլեի գրապետի գրատան սրբյն Մարկոսի||: Իսկ տեղին այն նշխարաց է այժմ 'ի մէջ բուն սեղանոյ աւագ_խորանի մեծի տաճարի սրբյն Մարկոսի. զորոյ զլխակա_տար պատմութե հանդերձ ծանօթութեամբք ունեին գիտնականք և եւս հանդիսացուցանել. մանաւանդ նախանշանակեալ պեպլիոս կմ Ֆիլիպոսի, և լէոնարդոս մանին յընկերութե նոր ճեմարանին աթէնէոյի :



ՍՂԻԲ



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Ղուկասու աւետարանչի :

Հ. Յ. Լ. հոկտ. 18 : Ճառընտիր . Ա . ճԷ : Բ . ճծԴ : Օ . ճլԷ : Սուրիոս ՚ի Մետափրաստեայն և յայլոց . հատ Ե . երես . 933 = 941 .



ԼՈՒՍԱՒՈՐԱՆՈՒՆ և բազմարդիւն՝ ընտիր կարգաւքան նա աւետարանիչն Ղուկաս (1), որոյ սեպհական տօն գոլով յայսմ միջոցի յամսեանն հոկտեմբերի՝ յիւր տօնակցուն ձգեաց զմեզ և զայլ աւետարանիչս, էր Անտիոքացի, ծն ՚ի մեծէն Անտիոքայ ասորւոց . վշյ և յոմանց ասորի ասի ծն ազգի . արուեստիւ բժիշկ՝ աշակերտեալ երևելի ումեմն բժշկապետի (2). Կիրթ յամ արտաքին ուսմունս, և քաջ տեղեակ ասորի և եբրայեցի և յոյն բարբառոյ, պերճախօս և համեղաբան, բարեզգեաց բարուք և կուսակրօն վարուք :

Նա եղև յաշակերտն՝ յորս շրջէր Տր մարդկան ՚ի վերայ երկրի երկնաւոր բժիշկն մեր Քս, լուսաւ նախաբժիշկ կարծեցեալ վշտին Ղուկասու զաքանչելիսն՝ զոր առնէր Տրն բանիւ միայն . իբր զի զմեռեալս յարուցանէր, ըզկոյրս

կոյրս 'ի ծնէ լուսաւորէր , զանդամալոյծս և զանբժշկելի հիւանդս առժամայն առողջացուցանէր , և զխուլս և զհամրս 'ի լսել և 'ի խօսս ածանէր : Նա և զարմացեալ յոյժ ոչ է անհնարին իրս , որք արդարև անհնարինք են 'ի մարդկանէ , առաքեաց զՂուկաս յԵդեմ , զի տեսցէ զնա , և ականատես լինիցի սքանչելեացն , և զճշմարիտն գիտասցէ , և դարձցի անդրէն և պատմեսցէ ստուգութիւն : Այլք ասեն , թէ ինքնին Ղուկաս շարժեալ 'ի լոյս համբաւոյ փրկչին՝ փութացեալ երթայր առ նա : Արդ յորժամ եհաս Ղուկաս յԵդեմ , ետես զնա , և բազում սքանչելեաց ականատես եղև . որպէս և զյառաջագոյն բժշկեալսն տեսեալ՝ եհարց և խօսեցաւ ընդ նմա , իջաւանս արարեալ 'ի տուն տեառնս կնոջն՝ զոր յետ երկոտասան ամաց հիւանդութենէն բժշկեալ էր նորին : Նա և յայնժամ յարեցաւ ասեն Ղուկաս յաշակերտութիւն Քնի , և համարեցաւ 'ի թիւ եօթանասուն և երկու աշակերտաց . զի թէպէտև 'ի հեթանոսաց անտի էր , բայց տեսանեմք՝ զի և քաղաքակից նորա Նիկողայոս եկն Անտիոքացի յաւելաւ յաշակերտս , և եղև ընկեր նոյն Ստեփաննոսի՝ որ էր յեօթանասնից : (3)

Նա և նն այսմ եղին ոմանք ընդ մեծին Գրիգորի , թէ սա ինքն Ղուկաս էր ընկեր Կղէոփայ , և ճանապարհակից նորին յԵմմաուս , ոչ խորհրդով լռեալ զանուն իւր 'ի կարգի պատմութեան : Այսմ 'ի դէպ գայ և ասելն Ղուկայ՝ ոչ միայն , թէ * ոչ ճանաչեցին զնա՝

որ

որ 'ի սկզբանէ ականատես և սպասաւորք ե-
ղեն բանին ||, այլև՝ թէ * կամ եղև և ինձ
որ 'ի սկզբանէ զհետ երթեալ էի ամի ճշմար-
տութե̃, կարգաւ գրել քեզ քաջդ Թէոփի-
լէ || : Իսկ զի անյայտ է Թէոփիլէս այս նորոգ
աշակերտեալն ճշմարտութե̃՝ այլոն անուա-
նի, մարթ է կարծել՝ թէ նա ինքն բժշկա-
պետն անտիոքացի իցէ՝ վկ̃այն ղուկայ, ա-
նուան առեալ յետ հաւատալոյն՝ ամ̃ծասէր.
զի այս է ը̃ յունականին Թէոփիլոս : (4)

Իսկ այլք՝ որ ոչն դնեն զղուկաս 'ի համար
եօթանասնից, գրեն ը̃ ճառընտրաց, թէ
յետ ստուգելոյ զիրսն՝ որոց վկ̃ եկեալ էր
յեմ̃, դարձաւ անդրէն յանտիոք առ բժշկա-
պետն իւր. և ոչ գտեալ զնա կենդանի՝ ինքն
կալաւ զտեղի նր̃ իբրև քաջուս յարուեստին.
բայց խորհուրդք սրտի նր̃ ուղղեալ լինէին
յա̃յ՝ թողուլ զմարդկային զայն ճարտարու-
թի̃ ուսեալ 'ի հեթանոսական կարգի, և 'ի
խնդիր լինել առաւել բարձրագունին :

Ապա դէպ եղև նմա յետ իբր երկոտասան
ամաց գնալ յերկիրն ելլադացւոց 'ի քաղաքն
թեբէս՝ որ և թեբաս կամ թիւաս եօթնա-
դրունն 'ի բիովտիա գաւառի մօտ յաթէնս (5).
և եգիտ անդ զպօղոս առաքեալ, զի քարո-
զեր և ուսուցանէր զքս̃ նշանօք և զօրու̃թ :
Յայնժամ յարեցաւ 'ի նա ղուկաս՝ յիշելով
զա̃մ զոր ետեսն յեմ̃. և ուրացեալ զիւր
հայրենական կռապաշտութի̃ն՝ հաւատաց
'ի քս̃. և 'ի բաց թողեալ զա̃մ ինչ՝ զոր ունէր
յանտիոք, զինչս և զազգականս, աշակեր-
տե-

տեցաւ պօղոսի, և գնաց զկնի նորա. և ոչ նա՝ նոյնպէս և աս եղև քարոզիչ և առաքեալ. և ը՟ նմա եկն յեհէմ. և հանդիպեցաւ պետրոսի առաքելոյ. վ՟յ գրեն այլք, թէ աշակերտ էր պետրոսի, և ձեռնադրեցաւ ընթացակից պօղոսի: Մ՟յլ զկանխագոյն դարձ ղուկասու յայտ առնէ և այն՝ զոր իմանամք 'ի բանից անտի նորուն, և զոր այլք ևս կն գրեն, թէ եւես ղուկաս և զա՟ծածին սբ կոյսն, և լուաւ 'ի բերանոյ նր, ոչ և 'ի բերանոյ առաքելոց զա՟մ տնօրինական գործս փրկչին:

Այլ ը՟ սա այսմ տեղեկութե՟, 'ի խնդրոյ օրհնելի բարեկամին իւրոյ ա՟ծասիրի՝ զոր ոմանք թէոփիլոս զօրավար հաւատացեալ ասեն, հրամանաւ պօղոսի և ազդմամբ սբ հոգւոյն գրեաց զաւետարանն՝ որ ը՟ անուամբ իւրոյ է. զոր ոմանք դնեն լինել 'ի բնիկ քաղաք իւր յանտիոք, ուստի և 'ի լեզու ասորի, զկնի ժէ ամի համբառնալոյ փրկչին. իսկ այլք 'ի նոյն բարբառ ասեն՝ յաքայիա գաւառի՝ ժթ, կմ իզ ամօք զկնի համբարձման տ՟ն. և կէսք 'ի հռովմ համարեցան գրեալ, ը՟ որում անդ նրևի գրեալ և բանն ղուկասու երկրորդ՝ այն է գործք առաքելոց՝ ուղղեալ առ նոյն ինքն քաջն թէոփիլոս իբր տասն ամօք զկնի աւետարանագրութե՟, ուր էր յայնժամ ղուկաս ը՟ պօղոսի յաւուրս առաջին կապանաց նր: Այս ինչ յայտնի է, զի գեղեցիկ հելլենախօսութի և կարգաբանութի փայլէ 'ի գրութիս ղուկասու՝ հանդերձ իւիք իւիք նշանա-

կեղք մտորի ոճոյ անմտութեանց . և այնչափ գովելի հանդիսացաւ աւետարանն նր՝ առաքելոց առաջի , և այնպէս ծաւալեցաւ առ նոքօք ընդ ամ եկեղեցիս , մինչև ըստ հասարակ կարծեաց՝ 'ի վերայ նորին ղուկասու է իմանալ զասացեալն 'ի պօղոսէ առ կորնթացիս . * առաքեցաք ընդ նմա ( այսինքն ընդ տիտոսի ) զեղբայրն , որոյ գովութիւն յաւետարանի անդ է ընդ ամ եկեղեցիս ||. ( բ . կոր . ը . 18 . ) Թող զի՝ ցորչափ ասէ պօղոս , * ըստ աւետարանիս իմում ||, ( հռոմ . բ . 16 . ևն , ) ոմանք իմանան զոյգ ընդ կենդանի բարբառոյ նորին՝ և զգրաւոր աւետարանն ղուկայ . ոչ և աւետարանն մարկոսի կրէր զանուն պետրոսի . Այլ զօր օրինակ մարկոս՝ որդի սիրելի ճանաչիւր պետրոսի , նոյնպէս և ղուկաս՝ եղբայր սիրելի պօղոսի . ըստ որում և ասէ իսկ զնմանէ , * ողջոյն տայ ձեզ ղուկաս բժիշկ և սիրելին ||. ( կողոս . դ . 14 . ) և զանմեկնելի գործակցութիւն նր 'ի քարոզ աւետարանին յայտ առնէ՝ յասել անդ . * ղուկաս միայն է ընդ իս ||. ( բ . տիմ . դ . 11 : )

Ըստ Թէոփիլեայ յառաջնմէ իսկ յարեալ էր ղուկաս 'ի պօղոս , բայց առաւել գործակից և ուղեկից եղև նմա 'ի ժամանակին՝ յորում բառնաբաս ընդ մարկոսի չոգաւ 'ի կիպրոս , և պօղոս ընդ շիղայի գնաց 'ի կողմանս ասորւոց և կիլիկեցւոց . և ապա եկեալ 'ի լիւստրա՝ էառ և զտիմոթէոս . զի յետ այսորիկ յորժամ շրջեցաւ ընդ փռիւգիա և ընդ գաղատիա՝ եկին 'ի տրովադա , այնուհետև յայտ առնէ

Լվ. R որն

որքն ղուկաս 'ի գործս առաքելոց, եթէ և
յինքն ը̃ պօղոսի էր հանդերձ այլովք պաշտօ-
նակցօք. և թէ ը̃ նմա գնաց 'ի մակեդոնիա
և յայլ քաղաքում տեղիս՝ ուսուցանելով և քա-
րոզելով զաւետարանն քի̃. մինչև եկն ընդ
պօղոսի 'ի հռովմ, և սպաս տանէր նմա 'ի կա-
պանս նորա զամս երկու. ուր և աւարտէ նո̃
աւետարանիչն զերկրորդ գործ իւր, ո̃ր ընդ-
պատմութիւն գործոց առաքելոց՝ յամի տն̃
իբր 63 ։

Օ այնու ժամանակաւ՝ ասեն վկայաբանք,
փոքր մի յառաջ կմ̃ յետոյ քան զարձակումն
պօղոսի 'ի կապանաց անտի, առաքեցաւ ղու-
կաս հրամանաւ նր̃ 'ի քարոզութի առանձինն.
և շրջեալ ը̃ քաղաքում տեղիս՝ ը̃ որս եպիփա-
նու, 'ի գաղղիա, յիտալիա, 'ի դաղմատիա,
և 'ի մակեդոնիա, եղև կատարեալ բժիշկ
հոգւոց և մարմնոց մարդկան, առնելով
նշանս 'ի հիւանդս առանց դեղոց, և դար-
ձուցանելով զքաղաքս 'ի տր̃, առաւելապէս
յեօթնադրուռն թեբէս ելլադայ. ուր կա-
լաւ զտեղի իբրև եպս տեղւոյն. քանդեաց
զբագինս, կանգնեաց եկեղեցիս, և կար-
գեաց քահանայս և պաշտօնեայս զընտրեալս
յաշակերտաց իւրոց ։ (6)

Եւ յետ բազում վաստակս վաստակելոյ 'ի
տր̃, և կրելոյ բազում հալածանս վս̃ տն̃ 'ի
հեթանոսաց, յորժամ հանդերձեալ էր կա-
տարիլ, կոչեաց զաշակերտսն իւր և զհաւա-
տացեալ հօտն. պատմեաց նոցա վերստին
զա̃ծային բանսն, և հաստատեաց 'ի հաւատս
ճշմա

Ճշմարիտս՝ զոր ցայն վայր աւետարանեալ էր դրովք և բանիւ. և ապա աղօթեաց առ Ած, և ասէ. Տր ամենակալ՝ որ նստիս 'ի քերովբէս, որ 'ի բարձունս բնակեալ ես՝ և զխոնարհս տեսանես, գոհանամ զքէն, և փառաւորեմ զՏր անուն քո, զի դու կեցուցանես զամենեսեան՝ որ երկնչին յանուանէ քումմէ, և խոստովանին զքեզ միայն Տր երրորդութիւն։ Զամ հրամանս քո կատարեցի ես ծառայ անպիտան. և արդ առ քեզ գալ փափաքեմ, և քեզ յանձն առնեմ զաշակերտեալս Ճշմարտութե։ Սատանայ կապեսցի, զի մի սպականեցուսցէ 'ի հաւատոց քոց զժողովուրդս քո, զոր ստացար արեամբդ քո. դու ինքնին պահեա զնս. զի քո են փառք յաւիտեանս։ Նա յետ աղօթիցն ասացեալ զամէնն՝ աւանդեաց զոգին խաղաղութբ (7) 'ի հոկտեմբերի ժը, յամի Տն իբր 90, 'ի հասակի ութսուն կմ ձր ամաց։ Սոր 'ի վր բերեն Ճառընտիրք մեր. * Նա բազում նշանք և բժշկութիւնք եղեն և լինին 'ի տապանի հանգստեան նր. և է այժմ ողջ մարմինն 'ի կոստանդինուպօլիս ը այլ առաքելոցն ‖։

Զորմէ Ճոխագոյն գրէ մետափրաստէս առ սուրիոսի բանիւքս այսոքիւք. * 'Ի դէպ համարիմ յայսմ վայրի յիշատակել, եթէ ուստի՞ և զիա՞րդ կամ յորում ժամանակի բերեալ եղեն յաքայիոյ պատուական նշխարք սր ոս գանձ ածային, և եդան 'ի Թագաւորեալ քաղաքն մեծապայծառ։

Ընծանէր երբեմն 'ի սիրմիոյ յիստրոն կոս-

տանդ. որդի մեծին կոստանդիանոսի՝ երրորդ.
'ի կարգի եղբարցն. և բանակեալ առ վայր
մի յափն գետոյն իստրոնի, լուաւ՝ եթէ բար-
բարոսք որ յայնկոյս գետոյն, խորհին պատա-
հել պատերազմաւ գնդին հռովմայեցւոց.
զահի հարաւ՝ եթէ զեան ինչ հասցէ զօրուն,
չու արար փաղփաղակի 'ի Թրակիա՝ անցանել
'ի բիւզանդիոն: Եւ եղև 'ի հասանել նր 'ի
գաւառն ողրիսիոյ, ուր ադրիանոս ինքնակալ
հռովմայ քաղաքեր շինեալ յիւր անուն ( այն է
անդրիանուպօլիս ), մատեաւ առ նա եպս ոմն՝
ոչ ուղերձ հաճոյական ընծայել նմա. քզի
պատմեաց արքայի, թէ մարմինք անդրէի և
ղուկասու աշակերտացն քի յաքայիա կան
թաղեալ: Ուրախ եղև արքայ ը լուր աւե-
տեացս. կոչեաց առաջի իւր զարտեմիս ( կմ
զարտեմիոս ) զայրն պիտանի ինքեան յամի,
զորոյ գիտէր զջերմ քրիստոսասիրութի, ( ոչ և ար-
դեամբք վկայեցաւ ածսիրութի նր և առաքինի
նահատակութի՝ զոր յանձին եցոյց վս քի առ
յուլիանոսիւ. ) արդ զսա ինքն զարտեմիս
բարեկամ իւր՝ որ եռայր ածպաշտութբ, փու-
թապէս առաքեաց 'ի բերել զպատուական
մարմինս. քանզի և ինքն կոստանդ էր լաւա-
բարոյ, և մեծապէս փոյթ 'ի շինութի եկե-
ղեցեաց. ուստի և 'ի քաղաքի անդ հօր իւ-
րոյ՝ շուրջ զգերեզմանաւ նր, ոչ հաստուցա-
նելով հօրն պատիւ, տաճար շինէ մեծակա-
ռոյց 'ի հիմանց անտի: Եւ յորժամ եբեր
արտեմիս յաքայիոյ զնշխարս նց առաքելոցն,
անդանօր յածայինն խորանի հանգոյց զնս 'ի

նը

ոք սեղանն ․ իմա՛ զանդրէին փոխադրեալ մարմինն 'ի ք՟ղ՟քէն պատարայ , և զձուկայն 'ի Թեբայ բիովտիոյ ։ Ա՟պ և յետ սուղ ինչ ժամանակի 'ի վ՟ր անցելոյ՝ և զտիմոթէոս , որ 'ի հոյլս աշակերտաց ք՟ի իբրև աստղ գեղեցիկ փայլեաց , 'ի ձեռն նորին արտեմեայ ետ ածել յեփեսոսէ յոնիոյ . . .

Եւ 'ի գալստեան անդ մարմնոյ ս՟բյն ղուկասու՝ սքանչելիք այսպիսի լինին՝ բանի և յիշատակաց արժանի ։ Անատոլիոս ոմն ներքինի յարքունի սենեկապանաց անտի՝ ըմբռնեալ էր 'ի դժնդակ ախտս ինչ մարմնոյ ․ սա իբրև ետես զցաւս իւր անցել՟ զ՟ճարտարութ բժշկաց , քաջ գիտելով՝ եթէ անհնարինքն 'ի մարդկանէ հնարաւորք են ա՟յ , թողեալ զայլսն ա՟մ՝ դիմեաց առ ղուկաս աշակերտն ք՟ի , զնա կարդալով յօգնականութի ը՟դէմ անհնարին հիւանդութ՟ են ։ Զի յորժամ արկղն՝ յորում էր պատուական մարմին ս՟բյն , բերեալ լինէր 'ի նուիրական տաճարն կառուցեալ 'ի կոստանդեայ , մատեաւ եմուտ նա ինքն անատոլիոս 'ի ներքոյ արկեղն՝ առ 'ի բառնալ զայն ը՟ այլսն , որք բարձեալ տանէին ․ և ահա նոյնժամայն ազատ գտանի 'ի դժնդակ ախտէն ․ և կենդանին 'ի մեռելոյ զայնպիսի շնորհս ընկալեալ երախտեաց՝ ոչ ձանձրացաւ զա՟մ ժամանակս կենաց իւրոց գոհանալ զառաքելոյն , և զա՟յ՝ որ 'ի ձեռն ն՟ր գործէր զայնպիսի սքանչելիս ։

Զայսօրինակ բերեալ զառաջինն 'ի Թեբայ մարմին ա՟ծընկալն ղուկասու , մեծապատիւ

և մեծավայելուչ հանդիսիւ եղաւ ը անդրէի և ը տիմոթեայ 'ի տաճարի անդ ( առաքելոց ), զոր շինեաց կոստանդ. որ և բազմօք եցոյց զհաւատս և զջերմեռանդն փափաքիւր 'ի հանգիստ սրբ նշխարացս. այլ աւաղ ողորմ դիպուածոյն և ալէկոծ վտանգին, զի սա ինքն յետոյ ուրեմն իսկն մի թակարդեալ 'ի հաղբս չարին՝ յարիանոսացն շաղախէր պղտոր ուսմունս:

Իսկ յետ բազում ժամանակաց յուստինիանոս առեալ զգաւազան թգրութե՝ մեծ ևս փութով մեծարանաց բերեալ լինի առ սրբ մարմին առաքելոյս. և յարծաթի արկեղ փակեալ զնս՝ հանգուցանէ առ սեղանովն կարւ յոյժ ածսիրաբար, զպատուական գանձս 'ի պատուական ամփոփելով պահարան: Արդ սեղան նբյ խորանին նոյն իսկ տապանակ նցս եղանի. իսկ տաճարն գլխովին՝ հասարակաց անուամբ առաքելոց վերանձայնի. ուր միաբան ժողովեալ հաւատացելոց՝ գովեն զսա ( զնոսն ղուկաս ) իբրև աշակերտ, հռչակեն ոպ աւետարանիչ, և երանեն իբրու անդուլ գործակցի ածայնոյն պօղոսի 'ի սրբ քրտունս և 'ի վաստակս||: Այսոսիկ մետափրաստէս:

Բայց յետ աւուրց նր յանցանել ժամանակաց մարմին նբյն ղուկասու փոխադրեցաւ 'ի կոստանդնուպօլսոյ յարևմուտս. որ և կայ մինչև ցայսօր հանգուցեալ 'ի պատաւիոն ( յմ 'ի պատուա ) քաղաքի իտալիոյ առ երի վենետիկոյ՝ 'ի հոյակապ տաճարի յուստինեայ կուսի՝ յառանձին բեմի 'ի քարեայ տապանի

նի իբրև սեղան խորանի . որոյ և փայտեայ արկղն վանդակապատ՝ որով բերեալ է 'ի բիւզանդիոյ, պահի անդանօր 'ի Թիկանց բեմի Սրբյն Ղուկասու . յորոյ վր̄ մնայ շինել զզարդ խորանի մեծածախ, զոր օրինակ են համօրէն խորանք այնր չքնաղ տաճարի : Թող և զմանաւոր նշխարս Սրբյն սփռեալ յայլ տեղիս : (8)

Աւանդութի՛ն է հասարակաց՝ ըստ գրելոյ Թէոդորոսի վերծանողի, մետափրաստեսի, և այլոց բազմաց, թէ Սրբն Ղուկաս աւետարանիչ էր և պատկերահան ճարտար . զոր և այսպս նշանակեն յայսմաւուրք մեր . * Սա էր խիստ ճարտար գրագիր և պատկերահան . և սա հանեաց զառաջին պատկեր տիրամօրն կուսին և զտղայացեալ բանին այ̄ 'ի քարտիսի, և բերեալ եցոյց առաքելոցն . և նք̄ առեալ հաւանեցան . և ամ̄ օրհնութբ̄ երկրպագեցին ‖ . ըստ որոյ և 'ի յայսմաւուրս յունաց կոչի միանգամայն բժիշկ արուեստիւ և կենդանագիր :

Իսկ ժամագիրք յունաց յայտ առնեն, թէ գիտէր յօրինել զպատկեր նաև հիւսմամբ 'ի թելէ մետաքսի, գրելով այսպէս . * Ասեն զսմանէ, թէ նախ զառաջինն զպատկեր սրբուհւոյ ածածնին՝ 'ի գիրկս կրելով զտ̄րն մեր յս̄ քս̄՝ կենդանագրեաց ըստ կենդանագիր արուեստի իւրոյ 'ի շերամոյ, և զայլ ևս երկուս . և թէ մատոյց զայնս առաքեալն մօր տն̄, եթէ հաճոյ իցէ նմա . և թէ նա երևեցաւ, և ասաց զայն՝ թէ շնորհք առ յինէն

ծնուցելոյն՝ ինն ՟Ը նոսա։ Այլ թէ նոյնպէս և զնոց առաքելոցն և զգլխաւորացն զն՟ր պատկերս ( յօրինեաց )․ և ՚ի նմանէ յ՟նմ տիեզերս ծաւալեցաւ այսպիսի գեղեցիկ և բարեպարիշտ և պատուական գործ ||։

Ի մէջ զանազան պատկերաց ՟որ ՟Ածածնի ՟Ածորդւոյն ՚ի գրկի, եթէ ՚ի կողմն մի ունելով բազկաւն, և եթէ բազմեցուցեալ ՚ի վ՟ր լանջացն, որք կրեն զանուն ՟սբյն ղուկասու, առաւել հռչակաւոր ճանաչին երկու օրինակք․ այն՝ որ ՚ի Հռովմ կայ ՚ի տաճար աւագ մարիամու․ և այն՝ որ ՚ի վենետիկ յեկեղեցւոջ ՟սբյն մարկոսի հրաշագործ, որ բերեալ է ՚ի կոստանդինուպօլսոյ, ուր ՚ի ժամանակս կայսերուն՝ զբազում սքանչելիս ն՟ր տեսեալ էր ՟որութենն յունաց․ և ցարդ ևս անպակաս տեսանեն վենետկեցիք․ սա է փոքրիկ դրիւք քան զհռովմայն, և երևի ինն հիւսեալ քան գրեալ, թող զշղաշատեռն անցուցեալ ըզնովաւ։ Այն որ ասեն, թէ նաև օրինակն հռովմայ բերեալ իցէ ՚ի կոստանդինուպօլսոյ՝ ուր կայր շինեալ առանձին տաճար ՚ի պատիւ ն՟ր․ և մեծ յարգ ն՟ր այն է, զի կարծի առաւել մերձաւոր սկզբնատպին, ՟իք կերպարանաց տիրամօր և տղայացեալ բանին ՟այ․ և արդարև ունի զկենդանագրուն ինն վայելուչ և պատկառելի քան զայլ ՟նմ պատկերս․ և սորա օրինակք առաւել յաճախեալ են յարևելս և յարևմուտս։

անյարմարութի̃ւն. * Եւ պղեղեգեայ հասուին ||:

Արդ մեք յայսմ վայրի թէպէտև ո՛չ տեսանողացն լինիմք հարկաւորեր, այլ վարուց ոՊց տեսելեաց մտաւորբ, բայց սորին վ̃ն խոչ հարկիմք ասել, թէ պա՛րտ է զայս ըմբռ-նութի̃ անհնարինց ուղղագրել այսպէս: Ընդ տեսին ա-ւետարանչաց չէ՛ մարթ խոստանել շյերոյն վէ̀մայս, այլ առ աստուածոյն զաշակերտս պօղոսի. Եւ զնո̃ Եւս ուղղա-գոյն երևի հաստատել ըստ տեսի առաքելագացայն և տի-մոթէոսի և տիտոսի, որպէս առաքեալ է ոմանց 'ի յե-տին օրինակագրաց. Մինչ զի հասկածիմք, թէ գոյցէ նախնիք մեր այնպէս երեին սոսկապէս՝ որպէս ըմբռնեա-նամք 'ի բանի մի յէտագիրս. * Պօղոսեա. առաքելոյ. և տիմոթէ. և տիտոսի աշակերտացն պօղոսի ||. Եւ այլք յաւելլին զէնք. * Եւ այլոց ||: Իսկ զմնացեալ վէմայս՝ քանզի չէ՛ք այլ օր պարտադ յայսմ միջոցի, պա՛րտ է հաստատել ըստ զաւանելեանն քահանայի յառաջնոյն վայ-րի, այսինքն զէնք հաւատարմութեանց: Նաև մեք ըստ հարկի հին տեսանողաց դնեմք զառաջմանն նոցա, այս-ինքն զէնք աւետարանչաց, 'ի բայց թողեալ զանուանն ա-շակերտս պօղոսի. զի ոչ գիտեմք՝ թէ զամենայն արժան իցէ խօսել. Իսկ զորս յիշեցաք 'ի ծայրին վայրաց, զոր օրի-նակ են առաքեալս, փիլիմոն, յասոնի և սոսիպատրոս, ամենին զրեալ 'ի հարկէ յիշատակաց ըստ յայտմարուց:

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբց վկայիցն՝ Տարագոսի, Պրոբոսի, և Անդրոնիկոսի։

Հ. Յ. Ա. Հոկտ. 11, կամ 12։ Ճառընտ. Գ. յնդ։ Մետափր. առ Սուր։ (1)

ՏԱՐԱԳՈՍԱՆՆ ԵՐԵ-քին փառաւորեալ նք վկայք՝ էին՝ ՚ի ժամանակս դիոկղետիանոսի կայսեր, որք երևելիք ՚ի մէջ քրիստոնէից՝ փախստեայ անկեալք յերեսաց հալածանաց ՚ի տարսոն կիլիկեցւոց; գոլով հայրենեօք յայլևայլ տեղեաց։ Սրբն տարագոս կմ տարաքոս երիցագոյն ՚ի նոսա հասակաւ՝ էր ՚ի կղոդիուպօլիս քաղաքէ իսաւրացւոց. պրոբոս ՚ի սիդայ պամփիլիոյ, կմ՚ ՚ի Թրակիոյ. և անդրոնիկոս կմ անդրանիկոս յեփեսոսէ. և եղեն երեքեանն սերտ բարեկամք՝ միասիրտ և միաբան խորհրդով փայլեալք յածպաշտութե. և մատնեալք ՚ի ձեռս մաքսիմոսի կմ մաքսիմիանոսի դատաւորին կիլիկեցւոց՝ քաջութբ խոստովան եղեն զքն ած, անարգելով զկուռս. և ոչ ողոքանաց և ոչ սպառնալեաց ետուն բնաւին զտեղի։ (2)

Յայն-

Յայնժամ դատաւորն զատոյց զնոսա 'ի միմեանց, զի թերևս մի առ մի յաղթել մարթասցի. և կոչեալ նախ զմին տարագրոս՝ հարցանէր. զի՞նչ անուն իցէ քո, և զի՞նչ գործ։ Անունի ես վկայն. զոր դուք իբրև 'ի յանցաւորութե՛ն գրեալ՝ հալածեա զքրիստոնեայս անուն, այդ է իմ անուն պարծանաց. իսկ 'ի ծնողաց տարագրոս կոչեցայ. և զօրական լեալ երբեմն՝ թողի ոչ՛ անպէտ զերկրաւոր զինուորութի. զի զէն քրիստոնէիցս ոչ է մարմնաւոր, այլ հոգևոր 'ի կործանումն հակառակորդին զօրութե՛ն այ։ Արդ արա՛ ընդ իս՝ զոր քեզն հաճոյ թուի. ահա ես ինքնին գրգռեցից զքեզ 'ի մարտս առաջիկայ, և խռովեցուցից զքեզ ամ խմով. զի թէպէտև ընդ մարմնոյ ալիք ծաղկեցին ինձ, այլ զուարթութե հոգւոյ երիտասարդ եմ կատարեալ։ Դատաւորն ասէ. թո՛ղ անդր զյանդգնութն յիմարութեդ, և յա՛նձն առ զպաշտօն դիցն անմահից ըստ հայրենի օրինաց և ըստ հրամանաց ինքնակալին։ Վկայն ասէ. և դու մի՛ ինձ օրէնս հարց կոչեր՝ զոր միանգամ անխորհրդաբար և անբանաբար գործեն թագաւորք. զի մի է մեր ամենեցուն հայր ճշմարիտ՝ ած, որ արարն զմեզ. իսկ դք փայտեղէնք և քարեղէնք 'ի գարշութի համարեցլին, զորս ոչ ամաչէք պաշտել դու և թագաւորն քո։

Արտմնեալ դատաւորին ընդ անարգանս դենին և ինքնակալացն՝ ետ ջարդել զկզակս տարագրոսի, և հարկանել ուժգին զպարանոցն.

նոցն. և յորժամ տանջելին զերանելին յեր-կար, մատուցեալ ոմանց եղելոց յատենի անդ՝ խրատէին զնա թողուլ զյիմարու-թին, և անսալ դատաւորին: Ասէ ցնս զօրա-կանն քո. վաթսուն և վեց ամ կրթեալ յայս յիմարութին վն քո՝ 'ի միում ժամու կորու-սից զայնչափ ժամանակաց ստացեալս. և ոչ բնաւ երբեք. թո՛ղ, զե՛ւս ծանրագոյնս 'ի չար-չարանաց պատուհասացի ինձ մաքսիմոս. աւա-սիկ պատրաստ եմ կրել զամն առ սէրն քո: Իսկ դատաւորն հրամայեաց հարկանել զա-ւազանաւ անխնայ զթիկունս նր. և տեսեալ թէ ոչինչ օգուտ, ետ կապել զնա ծանր շղ-թայիւք, և արկանել 'ի բանտ:

Յետ այսորիկ զերկրորդն զառաջեաւ ածեալ դպրոցոս, հարցանէր. և քաջ նահատակն իբրև ծարաւի 'ի տանջանս՝ արագ արագ պխնի առնէր. Ասէ. ածային և պատուա-կան անուանակոչութբ քրիստոնեայ եմ. իսկ 'ի մարդկանէ պրոբոս ձայնիմ. Թրակացի եմ ազգաւ, և այր սոսկական. զինքնակա-լացդ և զքո բանս հակառակս ճշմարիտ կրօ-նից՝ ո՛վ դատաւոր, յոչինչ գրեմ. և գարշիմ 'ի ձերմէ բարեկամութէ՝ որ յԱյ զիս օտարա-ցուցանէ. զի գնոց գնեցի զքրիստոնեայն լինել, զամ ինչս իմ՝ զոր ունէի, թէպէտև ոչ սակաւ, վն հոգւոյն պատուիրանի առ ոտն հարեալ:

Յայնժամ յանկնարկել դատաւորին կախե-ցին դահիճքն զերանելին զփայտէ, և հա-քին սաստիկ դալար բրօք կմ արջառաջլօք.

զպղծէ՝ որդի մեծատան իշխանի, այլ ծառայ քո՛ի, քանզի քրիստոնեայ եմ. մի՛ոյ զկուռս ձեր ո՛չ պաշտեմ, և դիւա՛ց ո՛չ զոհեմ ։ Սաստեաց ՚ի նա դատաւորն, և ասէ. մի՛ անմտանար, այլ զգօ՛ն լեր, և զոհեա՛ դից ։ Անդրոնիկոս ասէ. իբրաւամբք արդեօք անմտութի՛ւն կոչէիր ո՛վ մաքսիմէ զձգնութի՛ւն մեր, եթէ անյոյս լինէաք իբրև զայլսն. ապա եթէ ոք հայեսցի ՚ի յոյսն՝ զոր խոստացաւ մեզ փրկանակ բանին, անշուշտ ասասցէ և նա ընդ պօղոսի. ո՛չ են արժանի չարչարանք ժամանակիս հանդերձելոց փառացն՝ որ յայտնելոց են ՚ի մեզ ։

Հրամայեաց դատաւորն, և հարին զնա գալար բրօք. հատին զլիլսն, և քերթեցին ըզթիկունս մինչև յոսկերսն. և արկին աղ ՚ի վ՟ի վիրացն և շփէին, զի սաստիկ ցաւեսցի ։ Իսկ ն՟քն ասէ. աղս այս առաւել պնդէ և տոկուն գործէ զմարմինս՝ առ ՚ի կարօղ լինելոյ տանել և այլ ևս տանջանաց. և այնպէս արկին զնա ՚ի բանտ մ՟ն առաջին ո՟ւսն ։ Իսկ յետ աւուրց հանեալ զնա ՚ի բանտէ՝ հարցանէին. և դարձեալ գտին զնոսա հաստատուն ՚ի հաւատս, և անվեհեր ՚ի պնդնիս ։

Յայնժամ վարեցին զերանելիսն կապանօք ՚ի մամեստիա, որ և մոպսուեստիա կոչի մըսիա (3). և անդ ևս ուրոյն փորձեցան վկայքն, և ոչ յետս կացին ՚ի խոստովանելոյ զք՟ս տ՟ր, և ՚ի յանդիմանելոյ զկուռս և զկռապաշտս ։ Այլ եւ դատաւորն ջարդել քարամբք զբերանն տարագոսի, և այրել հրով զերկուսին

ձեռս նր. և դարձեալ կախել զգլխիվայր, և
ծխել 'ի ներքոյ զիրս ժանտահոտս 'ի տան-
ջանս ոռնգաց. յաւելին և խիստ քացախ
խառն ընդ աղի և կծու սերմանեաց արկանել
ընդ քիթս նր։ Իսկ նա արիաբար տարեալ զամ՛
ցուրտ անոռանէր զկրակն առ հրով գեհե-
նին, և անուշակ զկծուհոտ իրսն։
Նւ զորքն պրոքոսի հարին զթիկունս արջա-
ռաջլօք. գերծեցին զգլուխն ածելեաւ, և
կայծախառն մոխիր հնոցի մածուցին. ար-
կին և ընդ բերանն շանթս հրացեղս։ Հրամա-
յեցին հանել և զլեզուն, զի հատցեն. և
նա արար անյապաղ՝ ասելով ցդատաւորն.
կայ իմ լեզու անհատական և անմահական,
զոր լսէ ած, այն՝ որ գիտէ լսել և զգոչումն
արեան. և յասել նր զայս՝ հատին զլեզու
երանելւոյն, և արկին 'ի բանտ ընդ տարա-
գոսի։

Կոչեաց դատաւորն զանդրոնիկոս, և ասէ
ցնա. զգօն լեր և զգուշեա՛, մինչև է քո նո-
րանոր տանջանաց ներքոյ անկեալ. զի զի՞նչ
շահեցան բարեկամք քո 'ի յամառուէ, բայց
զնս դառնագոյն կտտանս. մինչև տարջա-
ցան, և յանձն առին զդիցն պաշտօն՝ ունելք
զանձանց օգուտ։ Պխի ետ նբն անդրոնիկոս.
եթէ զիս հաւանեցուցեր, ապա և զնոսա.
և քանզի ոչ կարացեր հանել զիս 'ի մտաց և
տալ ցնորիլ զհետ մոլորութեանդ քո, ունիմ
յինձ առհաւատչեայ անդրդուելի մտաց նց
զհաստատութի խորհրդոցս իմոց 'ի քն. վս
զի մի է խորհուրդ ածպաշտութե 'ի մեզ. և
ամե-

ամենեքին մեք մի եմք 'ի քս յս ։

Զայրացաւ բռնաւորն և ասէ. զան հարէք զդա չարաչար մինչև 'ի մահ. և այնչափ հարին արջառաջլօք զթիկունս նրյն, մինչև պատառեցաւ մարմինն, և եղև որպ մի վէրք ողջոյն ։ Իսկ նահատակն ծիծաղելով ասէր. սուտ ակրեմն զտան ով դատաւոր սպառնալիք քո. զի անկարող եղեալ նորանոր հնարել տանջանս 'ի յաղթել ինձ՝ դարձեալ յառաջինսն դեգերիս հարուածս ։ Հրաման տայր անօրէնն ջուր աղածոյ արկանել 'ի վր վիրաց վկային. և նա ասէ. տեսանեմ, զի աղն անապական գործէ զմարմինս իմ. և ոչ մնացին յիս հետք առաջին հարուածոց. այլ որպ նորափետուր նորոգեալ գտայ յանդիման ամենեցուն՝ զօրութբ քսին իմոյ սքանչելապէս ։ Յիմարեցաւ դատաւորն 'ի խորհուրդս իւր, և պատուհասել սկսաւ զպաշտօնեայս ատենին, որպ թէ թոյլ տուեալ իցէ նց գալ բժշկաց 'ի բանտ, և դարմանել զկապեալն. և ետ անդրէն տանել և զանդրոնիկոս առ ընկերս իւր, և պահել զգուշութբ ։

Յետ այսորիկ տարան զսսն 'ի քղքն Անարզաբայ. և անդ ևս կացուցին յատենի նախ զՏարաքոս. և 'ի յանդիմանել նր զմոլորութի հեթանոսաց՝ հարին զբերան նահատակին, և հրացեալ շամփրօք խոցոտեցին զմարմինն. և զերկու ականջսն հատին. զերծին ածելեաւ և զհերս գլխոյն, և կայծակունս հրոյ մածուցին 'ի գագաթն ։ Նոյնպէս շամփրօք խանձողեալ զանութս և զթի-

կուռս պրոբոսի՝ փորեցին և զերկու աչսն. և բանի լցին ընդ բերանն նր գլխոյ խառնել յա-րենէ զոհիցն: Իսկ զանդրոնիկոսի այրեցին հրով զոսկրսն և զփորն. և 'ի պիղծ զոհիցն միս և գինի 'ի բերանսն դնէին. և 'ի Թքանել նր 'ի բաց՝ զլեզուն հատին, և զատամունսն քակեցին. բայց սբքն ոչ Թուլացան 'ի խոր-հրդոց իւրեանց:

Իսկ այնուհետև հրաման 'ի բռնաւորէն ար-կանել զվկայսն կերակուր գազանաց 'ի տե-տարանին՝ որ էր արտաքոյ քաղաքի. բայց գազանքն ոչ մերձենային 'ի նոսա. և դատա-ւորն սրտմտեալ 'ի վր վերակացուին՝ որպէս Թէ զհանդարտագոյնս յանասնոց բերեալ իցէ անդր, հրամայէր արձակել զկատաղին յարջս. բայց եկեալ արջոյն՝ նստաւ առ ոտս սբյն անդրոնիկոսի, և լիզոյր զԹարախ վէ-րացն. և Թէպէտ գրգռէր վկայն զգազանսն՝ զի մի խնայեսցէ յինքն, բայց նր զգազանու-Թիւն մոռացեալ՝ հեզիկ կայր առ նմա. զոր 'ի մոլուԹի համարել բռնաւորին՝ առ զայ-րոյԹ սրտին հրաման ետ դահճաց սպանա-նել զարջն:

Ապա Թողին մատակ առիւծ մի ահագին 'ի վր սրբցն. և նա եկեալ մռնչելով՝ զառաջինն սաստկուԹբ մինչամուխ լինէր յասպարէզ անդր. այլ հասեալ առ նահատակսն՝ անկաւ յոտս նց, որպէս այն Թէ երկրպագուԹի մատու-ցանելով: Բուռն եհար զնմանէ սբն տարա-քոս, և ձգէր զնա յունկանէ և 'ի հերացն ընդդէմ իւր. բայց գազանն իբրև գառն հնա-

դարտ

դարս երեւեալ՝ իբրեւ զերծաւ 'ի ձեռաց տա-
րագոսի, դիմեաց 'ի դուռն սապարիզին, և
բուռն առնէր քակել և ելանել արտաքս.
մինչև 'ի ստիպելոյ ամբոխին եբաց վերակա-
ցուն զդուռն, և եհան զնա ։

Ընդ որ մոլեալ մաքսիմոսի՝ եա սպանանել
զերեսուն վկայսն սրով. և ասաց դահճացն
խառնել զմարմինս նց ը մարմինս այլոց սպա-
նելոց 'ի սրախողխող սապարիզի, և զգուշա-
նալ՝ զի մի՛ գողասցին քրիստոնեայք. մինչև
լուցին խարոյկ մեծ՝ այրել զնս ։ Յայնժամ
եղև որոտումն և անձրև սաստիկ, յորմէ շի-
ջաւ հուրն պատրաստեալ. և 'ի փախչել պա-
հապանաց յերկիւղէն՝ եկին հաւատացեալքն
գիշերի, և բարձին զմարմինս նցն՝ որոշե-
լով յայլոց 'ի ձեռն սքանչելի աստեղն, զոր
եցոյց ած 'ի վր միոյ միոյ 'ի նահատակաց.
և եդին զնս 'ի Թաքստի 'ի լերին միում ։ (4)

Իսկ ոմանք յեղբարց անտի՝ որք հետևողք
եղեն նցս, և ականատեսք անցիցն անցե-
լոց, որոց և լուեալ էր զպինդս նց յատե-
նի, գրեցին զպատմութի նց. և ծախեալ
երկերիւր դահեկան՝ առեալ տարան զմար-
մինս պատուական վկայից յիկոնիոն քաղաք,
և եդին զնս պատուով 'ի տապանի ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Համառօտութն վկայաբանութեն մօրինակ պատա-
նի 'ի Հ. և 'ի Ճ. Դ. ամ և 'ի Ց. և Լ. գտցի սա-

թերութիւն. իսկ Ճարձակն գտանի առ սուրբ Թադէի յանուան Մեսրոպատառեսի. յորմէ առաք առաւել զառեհնախօսութիւնս, իսկ զատանձանս վկայից և զայլ պարագայս պատմութեան պահեցաք յաւելու Ը Հ. և Ց. որք առաւել միաբան ընթանան։

(2) Զոր Մեսրափր. կոչէ մաքսիմոս, և Հ. մաքսիմիանոս գտանուոր, Ծ. վերիպակաւ մաքսիմիանոս կայսր գրէ։ Ց. բա. պարզապէս իշխան կիլիկիոյ ասէ, զոր Ց. Ժմ. փլաբիանոս գտանուոր կոչէ։ Ժամանակն յամենեսին է նոյն՝ առ կայսերութեամբ դիոկղետիանոսի և մաքսիմիանոսի։

(3) Մեսրափր. ոչ յիշէ զմամեստիա և զանարզաբա. յաւրոց զառաջինն յիշէ Ց. իսկ Հ. նաև զերկրորդն, յայս է թէ ՚ի լրագոյն օրինակաց առեալ. նոյնպէս և ՚ի բացատրութեան իւրաքանչիւր տանջանաց գտանին գոյզն տարբերութիւնք ընթերցուածոց կամ թարգմանութեանց. զորս ոչ արժէ նշանակել մի առ մի։

(4) Հ. բազում աստեղս ցուցանէ յորոշել զՍրբցն անդամս իւրաքանչիւր, ոչ թէ կոտորեալք իցեն. իսկ Մեսրափր" ասող մի ասէ հանգոյն աստեղն երևելոյ մագուց, որ եցոյց զմարմինս միոյ միոյ ՚ի նոցա։ Դարձեալ Մեսրափր" յիշէ միայն զամփոփել նց ՚ի լերին. իսկ Հ. յաւելու և զփոխադրութիւն նց յիկոնիոն։ Կասկածելի թէ մի չարչարեալ գուցէ սրբցս ՚ի տարսոն, և նահատակելոյ ՚ի կողմանս կիլիկիոյ, խառնեալ իցեն ոմանք զվկայքս ՚ի կարգս տօնի ընդ այլ աշակերտս պօղոսի՝ զոյգ Է պերղաքեայ կուսի տարսոնացւոյ։ Ցայտնի է և այն, զի ՚ի ժամանակս կիլիկեցւոց յօրինեալ է յաւելուած շարականն ինչ ՚ի պատիւ սրբցս նահատակելոց ՚ի կիլիկիա։

Իսկ զկնի դարուց կիլիկեցւոց առեալ ոմանց ՚ի գըրչաց տօնացուցից, թէ յայսմ վայրի խառնեալ են անուանք Սրբց զանազան դարուց, յաւելեալ են և ինքեանք գրետագայ անուանս ('ի չորս օրինակս)։ * Եւ նոր նա-
" հատակացն՝ յովհաննէս հայրապետի, և սարգսի ե-
" պիսկոպոսի, և դաւթայ կրօնաւորի, որ նոճիրակ
" առաքեցան յէջմիածնէն, և նահատակեցան ՚ի կա-
" տանդնուպօլիս գլխատմամբ սրոյ, թվին հայոց ՋԾԷ||.
այն է յամի տն 1508. այլ չեն անցեալ անուանք սց և ոչ ՚ի կարգս սրբց յիշատակելեաց Ը յայսմաւուրաց. զի և չիք ՚ի միջի պատմութիւն նահատակութեան նց. և զարմանք են, զի և առաքել պատմիչ զանց առնէ զոսա.

ՎԱՐՔ



# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Պեղագեայ կմ՟ պեղիգեայ կուսի ։

Երկլին են անուանմբս այսուհիկ հռչակաւոր կուսանք վկայեալք 'ի դարս հալածանաց . մինչ զի անխտիր յերկոսին միանգամայն մարթի հայել տօնս առաջիկայ . կայ և երրորդ համանուն կին ապաշխարօղ . և երեքեան ևս միօրինակ կոչին առ յոյնս պեղագիա կմ՟ պեղագիէ, ( ըստ հնչման նց բէլաղիա կմ՟ բէլաղիի, ) և 'ի մեզ պեղեգիա կմ՟ պեղիգեա . զորոց մի առ մի զկարս կամ եղև մեզ գրել աստանօր կարգաւ , առ քաջ իմանալոյ զզանազանութիւն նց յիրերաց ։

### ՊԵՂԱԳԻԱ ԿՈՅՍ ՏԱՐՍՈՆԱՑԻ ։ (1)

Հ. հոկտ. 8։ Յ. բռ. հոկտ. 7 ։ և ժամանակը. մայիս. 4 . և հոկտ. 8 ։ Լ . մայիս . 4 ։ Բոլլանդեանն բռ. բնագրոտ . 'ի ա . հատ . մայ . էջ . 452 = 458 . և 747 = 752 ։



ՊԵՂԱԳԻԱ ԿՈՅՍ ՔԱ-ղաքակից մեծին պօղոսի , և ընթացակից նրա տարագրութեանց չարչարելոց 'ի նմին քաղաքի և 'ի նմին ժամանակի առ դիոկղետիանոսիւ , էր

էր օրինօք չքնաղ և իմաստուն՝ դաւառր մե-
ծատանց հեթանոսաց 'ի տարսոն քաղաքէ
կիլիկեցւոց։ Սա երկե յաւուրս դաւանութե
հալածանաց՝ շրջէր 'ի կիլիկիա առաքելաբար
ընդ եպսն կղեոնոն կմ կղինոմն, դարձուցանէր
և մկրտէր զբազումս. և խնդրակքն սորօ-
նի՝ որ շրջէին զկնի նր, իմացեալ զգալուստ
նր 'ի տարսոն, առին զդրունս քաղաքին՝ ու-
նել զնա. բայց նա խոյս ետ ազդմամբ ածն 'ի
տեղւոջէն, և ոչ կարացին տեսանել զնա
կռապաշտք. յայնժամ կալան զբազումս 'ի
նցէ՝ որք 'ի ձեռն նր աշակերտեալ էին. զո-
մանս սպանին վս 'ի քս հաւատոց, և զոմանս
'ի բանտ և յաքսորանս մատնեցին։
Յայնմ ժամանակի կոյսն պեղագիա վառեալ
'ի սէրն քի 'ի լոյս և 'ի տեսոյ համբերութե
քաջ նահատակաց՝ ցանկայր տեսանել զկղե-
նոն եպս, և լսել 'ի նմանէ վս ճանապարհին
ճշմարտութե, և ոչ կարէր. զի խօսեցեալ
էր 'ի ծնողաց իւրոց ումեմն երիտասարդի՝ որ
էր որդեգրեալ դիոկղետիանոսի, որդի սիմպ-
լիկիոսի դատաւորի՝ որ հրամանաւ կայսեր
հալածիչ էր քրիստոնէից եղելոց 'ի տարսոն։
Բայց երկնաւոր փեսայն քս՝ որ հաճեցաւ ընդ
պեղագիա, ձգեաց զնա զհետ իւր տես-
լեամբ. քանզի երևեցոյց նմա յերազի զկեր-
պարանս կղեոնոնի եպսի, և յայտնեաց զտե-
ղին՝ ուր թաքուցեալ էր նա արտաքոյ քղքին։
Ապա յարուցեալ կուսին 'ի վաղիւն անդր՝ թա-
խանձեաց զմայր իւր յղել զինքն 'ի տեսութ
դայեկի իւրոյ. մնացեալ ընակելոյ արտաքոյ
տաղ

տարածանի․ և զարդարեալ գնայր ոչ թէ առ գայթակղն հանդերձ երկու նաժշտօք, և քանի մի ներքինեօք և հաւատարիմ սպասաւորօք․ յորս էին ղանգլինոս և յուլլիանոս 'ի ծածուկ քրիստոնեայք։ Իսկ ահա հանդիպեցան ութ եպիսկոպոսն 'ի լեռնակողմանս, զի շրջէր 'ի մէջ ծառոց։ Յայնժամ թողեալ պեղագեայ զսպասաւորսն հանգչել ընդ ծառով միով՝ ինքն յառաջեաց երկու աղախնեօքն, և եկն երկիր եպագ եպիսկոպոսն ասելով․ ողջոյն Տէր քեզ ծառայ քոյ։ Իսկ նա զարմացեալ՝ թէ ո՞ է կոյսն այն շքեղ, և զի՞նչ խնդրէ, ետ պինն․ խաղաղութիւն քեզ ընդ իմոյ եղիցի Տէր

քեզ դուստր։

Ասէ պեղագիա․ օրհնեալ է Տր՝ որ 'ի քո կերպարանս երևեցաւ ինձ, և առաքեաց զիս առ քեզ՝ պահել զանձն իմ 'ի կորստենէ․ և արդ աղաչեմ զքեզ Տէր իմ և հայր, ասա ինձ, զի՞նչ ինչ կարևորագոյն իցէ՝ որոց կամիցին քրիստոնեայ լինել ընդ քում։ Իսկ եպիսկոպոսն ծանոյց նմա զխորհուրդ մկրտութեն, և խօսեցաւ առ նա բանս կենաց։ Իսկ կոյսն յօժարութեն ընդկալեալ զամ ասացեալսն՝ փութապէս խնդրէր զքաւական կնիքն․ և յաղօթել եպիսկոպոսին՝ բղխեաց 'ի տեղւոջն աղբիւր ջրոյ կենդանւոյ․ և ետես պեղագիա երկուս հրեշտակս՝ զի կային 'ի վերայ աղբերն, և ունէին 'ի ձեռս հանդերձս սպիտակս։ Յայնժամ մկրտեաց եպիսկոպոսն զպեղագիա, և զերկու նաժիշտս նորա ընդ նմա․ և հաղորդեցոյց զնա Տր խորհրդոյն, զոր Տէր իւր կրէր 'ի պատճառս հալածանաց․

կամ

կմ՛ոմն այլք կարծեն՝ մօտ էր 'ի տեղին, ուր մատուցանէր 'ի ծածուկ զնա պատարագ։

Յետ այսորիկ համբուրեալ պեղագեայ ըզգարշապարս նորայ եպիսին՝ խնդրեաց զշնորհի նորա՝ զօրանալ շնորհօք նորա հոգւոյն, և առատն կախեալ զամ մեծութի տան իւրոյ և զսեր երկրաւոր փեսայի՝ ընծայեաց զանձն 'ի հարսնութի երկնաւոր փեսային իւրոյ քնի։ Եւ ասէ ցնա եպսն. աՃ՛ որում ետուր զգրաւական անձին քո, նա առաքեսցէ առ քեզ զօգնութի 'ի նորայ բնակութէ իւրմէ, և տացէ քեզ յաղթել հակառակորդին։

Յայնժամ հանեալ պեղագեայ զմեծագին հանդերձս իւր՝ ետ եպսին, և աղաչեաց տանել ուրեք հեռագոյն, և բաշխել աղքատաց. և ինքն զգեցեալ զգեստ աղքատին՝ դարձաւ առ ծառայս իւր. և ուր հեթանոսքն էին 'ի նմ՝ ձգեաց 'ի հաւատս քնի. և եկն նոքօք 'ի տուն դայեկին իւրոյ. որոյ ծանուցեալ զքրիստոնէութի կուսին՝ երկեաւ ըմունել զնա առ իւր, և փութով դարձոյց զնա երթալ առ մայր իւր։

Որքև եկն պեղագիա 'ի տուն, տեսեալ զնա մօրն 'ի զծուծ հանդերձս՝ եհարց և գիտաց, զի քրիստոնեայ եղև դուստրն. անկեալ յերկիր՝ լայր և կոծէր և ծեծէր զերեսս իւր և զգլուխն. յղեաց փութանակի և զեկոյց խօսնառն նմ. զի նա թերևս հնարեսցի փոխել զմիտս դստերն իւրոյ։ Իսկ երիտասարդն իբրև իրազեկ լինէր, 'ի խոր տրտմութի ընկղմէր և յանյուսութի. քանզի գիտաց՝ թէ յետ

լև

լինելոյ կուսին քրիստոնեայ, անհնար է որ տալ զնա 'ի սէր իւր. և առ յոյժ յիմարութեն մոլեալ 'ի սաստիկ սիրոյ աղջկանն՝ անձնամահ եղև սրով ։

Եհաս բանն 'ի լսելիս սիմբլիկիոսի կմ̃ մաքսիմոսի դատաւորին տարսոնի, որ կարծի հայր երիտասարդին. և մինչդեռ խորհէր նա վրէժ առնուլ 'ի պեղագեայ, անագորոյն մայրն կուսին անձամբ փութացաւ մատնել զդուստր իւր 'ի ձեռս դատաւորին, կմ̃ թագաւորին, պատճառս դնելով զերկիւղ բնաջինջ լինելոյ ամ̃ տամբ իւրով՝ եթէ ոչ լինիցի ինքնին դատախազ զաւակի իւրոյ ։

Արդ իբրև ածաւ անարատ որոջն քրի պեղագիա յատեան դատաստանի, ասէ ցնա բռնաւորն. չի՞ք քեզ հնար այլազգ ապրիլ 'ի ձեռաց իմոց, եթէ ոչ 'ի բաց կացցես 'ի քրէ՝ զոր ոչն գիտէիր 'ի մնէ. արդ եթէ հաւանեսցիս կամաց իմոց, բարի լինիցի քեզ, և 'ի մեծ փառս բարձրացուցից զքեզ. ապաթէ ոչ՝ նորահնար մահուամբ կարճեմ զքեզ 'ի կենաց ։ Իսկ երանելի կոյսն առ ոչինչ համարեալ զողոքանս և զսպառնալիս՝ ետ պինի ամ̃ համարձակութբ̃, ասէ. քաւ ինձ անսալ չար կամաց քոց. զի փառք իմ տր է, որ պսակէ զհաւատարիմ սիրելիս իւր անթառամ պսակօք. և որչափ յաւելուս ինձ տանջանս դժնդակս, այնչափ առաւել զտից շնորհս առռաջի քրի տն իմոյ և այ ։ Եւ արդ ասեմ քեզ. գիտեա՛, զի ոչ կարես հեռացուցանել զիս 'ի քրէ՝ եթէ՛ կենօք և եթէ մահուամբ. արդ

զոր

զոր ինչ առնելոց ես, արա՛, եւ մի՛ հեղգար։
Յայնժամ ելանէր հրամանն դառնութեան 'ի
բռնաւորէն՝ փաղարեան տանջանօք կորու-
սանել զպեղագիա. քանզի ջեռուցեալ դահ-
ճաց զպղնձի ցուլ մի որ՟ հուր՝ արկին 'ի ներքս
զորբուհի կոյսն. եւ նա մտեալ ուրախութ՟ե՟
'ի մեջէնայ անդր՝ փառս վերառաքէր ասե-
լով. փա՛ռք քեզ միածին որդի բարձրելոյն
ք՟ս ա՟ծ, որոյ գալստեամբ շնորհեցաւ յառա-
ջագոյն որոշելոցն առ 'ի քէն պատրաստնօք չա-
րին՝ միւսանգամ դառնալ 'ի ձեռս քո, եւ կը-
խան առնելով զզօրութիւն թշնամւոյն՝ կա-
տարեալ լինել 'ի քեզ։

Եւ այնպէս աղօթելով աւանդեաց զհոգին
իւր առ ա՟ծ. եւ պատուական մարմին նոր ձեն-
ձերեալ հալեցաւ 'ի մէջ հրացեալ ցլուն որ՟
զմով. եւ բուրեաց հոտ անուշութեան ը՟ն՟ քա-
ղաքն ա՟մ. մինչեւ հաւատալ բազմաց 'ի ք՟ս.
ը՟ն՟ որս էին եւ ագաթանկոս (կա՞մ թէոնիկոս)
եւ յուլիանոս յաղթող զօրականք. որոց հար-
ցեալ 'ի բռնաւորէն, եթէ մեռա՞ւ աղջիկն
արկեալ 'ի ցուլն պղնձի, արարին պ՟խնի. ո՛չ
մեռաւ, այլ՝ մարտիրոս եղեւ. զի վկայեաց
ա՟յ ճշմարտի, եւ ոչ ուրացաւ զարարիչ իւր եւ
զա՟ծ։ Եւ վ՟ս բանիս այսորիկ մատնեցան նք՟
'ի կապանս եւ 'ի բանտ, եւ վկայական պսա-
կաց արժանի եղեն։

Իսկ զմնացեալ ոսկերս պեղագեայ հանեալ
անօրինաց ը՟ն՟ հրամանի բռնաւորին՝ ընկեցին
'ի լեառն լինատոն, զի մի՛ թաղեսցի պատ-
ուով 'ի քրիստոնէից. Եւ ահա հրամանաւ
ա՟ն

ձ̃ն եկլին առիւծք չորս , որք պահէին զնշխարս
Տ̃րյ կուսին յայլոց գազանաց և 'ի թռչնոց .
մինչև երևեցաւ սրբուհին կղեմնտեայ եպսի
'ի տեսլեան , և յայտնեաց զտեղի ոսկերաց
իւրոց ։ Իսկ նր̃ եկեալ զայնոսիկ , և տա-
րեալ եհան 'ի գագաթն նոյն լերին . ուր գտեալ
մարմարիոն քար մեծ և ողորկ` 'ի ցածնուլ
հալածանաց եա բերել քարակոփս , և շի-
նեաց սեղան և մատուռն . և անդ հանգոյց
զնշխարս ոսկերաց սրբուհւոյն . ուր խուռն
ընթանային հաւատացեալք , և ընդունէին
իւրաքանչիւր զհայցուածս իւրեանց բարե-
խօսութք̃ Տ̃րյ կուսին պեղագեայ . յորմէ և
տեղին կոչեցաւ յանուանէն նորա սինայօղէս , ո̃ր
լեառն ժողովման ։ Իսկ էր գրեալ 'ի կղեմնտ-
նայ եպսէ յիշատակ վկայուհւոյն 'ի վր̃ գե-
րեզմանի նր̃ այսպս . * Սրբուհին պեղագիա`
որ եա զանձն գրաւական ա̃յ , և մինչև ցվախ-
ճան մրցեցաւ 'ի վր̃ ճշմարտուե̃ , աստանօր
հանգուցեալ է մարմնով . որոյ հոգին յերկինս
թագաւորէ ը̃ք̃ հրեշտակս ‖ ։

Իսկ յետ ժամանակաց անցելոց` նշխարք կու-
սին գէթ ը̃ մասին կարծին բերեալ 'ի բիւ-
զանդիա . ուր շինեցաւ վկայարան յանուն
նր̃ 'ի բէրա , ո̃ր յայնկոյս ծովու յանդիման
կոստանդնուպօլսոյ` 'ի խաղաթիա կմ̃ 'ի պէյ
օղլու . ը̃ որում գրի 'ի հին ժամագիրս ինչ
յունաց 'ի մայիսի Ե . թէ * Կատարի տօնա-
խմբութի̃ նր̃ 'ի վկայարանի նորուն` որ 'ի բէ-
րան , մօտ 'ի ս̃բ վկայն կոնոնոս ‖ ։

Կատարումն Տ̃րյն պեղագեայ կուսին` ը̃ ո-
մանց

մանց անկանի յամ՛ին 290, 'ի սկիզբն կայսերութեան Դիոկղետիանոսի, յորում ժամանակի բազումք նահատակեցան 'ի տարօն առ սիմպլիկիոս դատաւորաւ. զորմէ ասի՝ թէ առ արծաթսիրութեան վաճառէր զմարմինս նահատակաց. ոմն վաճառեաց ասեն զմարմին նորին վոնիփակիոսի հռովմայեցւոյ: Այլ եւ՝ որք դնեն յամի ՏՆ 305. յորժամ յետ հրաժարելոյ Դիոկղետիանոսի 'ի կայսերութենէ տեւէր հալածանքն յանուն նր հռոմանաւ Գաղերիոսի Մաքսիմիանոսի:

Արդ թէպէտեւ տօնեալն 'ի մէնջ յայսմ մեջոցի առընթեր աշակերտաց պօղոսի երեւի սա ինքն պեղագիա կոյս տարսոնացի՝ զոյգ ընդ տարագոսեանց նահատակելոց զայնու ժամանակաւ 'ի կիլիկիա, բայց ոչ նմայ արդեօք արտաքոյ եւ միւս պեղագիա կոյս անտիոքացի. որ իբրեւ քաղաքակից սորին զուգասաւ աւետարանչի թերեւս եղեալ է առընթեր տօնի նր, կմ ղուկիանոսի քահանայի անտիոքացւոյ, որում աշակերտեալ էր երկբորդն պեղագիա ըստ յովհաննու նիկոմիդացւոյ հին վկայագրի: Թո՛ղ զի սա առաւել քան զառաջինն հանդիսացեալ է առ նորահրաշ կատարման իւրոյ, եւ յառանձին ներբող առեալ 'ի սրբոյ ոսկեբերանէ քաղաքացւոյ իւրմէ, որպէս եւ 'ի նորին ամբրոսիոսէ. արդ ժամէ լսել եւ զընթացս վկայութեան նր:



## ՊԵՂԱԳԻԱ ԿՈՅՍ ԱՆՏԻՈՔԱՑԻ. (2)

Հ. ապր. 30։ Յ. հոկտ. 8։ Լ. յունիս. 9. և հոկտ. 19։ Բոլլանդեանն յամննէինգ. 'ի ՟Է հատ. յու. էջ. 154 = 164։ Մոշեէ. 'ի Ներբող պեղագ. հատ. ՟Ա. երես. 585. և Ամբրոս. առ սեմելին. և գիրք ՟Գ. յղ. կուսութե։

ԵՐԿՐՈՐԴԻՍ ԱՅՍ ՊԵՂԱ-գիա կոյս սքանչելի՝ նորօրինակ նահատակ ցուցեալ, ըստ ոմանց էր ժամանակակից առաջնոյն՝ առ դիոկղետիանոսիւ և մաքսիմիանոսիւ, և ըստ այլոց փոքր մի յառաջ քան զնա առ կայսերութեամբ Նումերիանոսի, ծննդեամբ յանտիոք քաղաքէ ասորւոց, հաւատովն քրիստոնեայ, 'ի փառաւոր ազգէ, և մեծատուն ծնողաց զաւակ, առանձնացեալ 'ի տան ընդ բարեպաշտ մօր իւրում և երկուց այլ քերց իւրոց մաքուր կուսից՝ ընդ սրբութեամբ և առաքինութեամբ։ Եւ մին 'ի քնդ հաւատոց մատնեցին զնոսա իշխանի քաղաքին, թէ անարգեն զկուռսն, և պաշտեն զխաչն. և թէ են կոյսք և գեղեցիկք տեսլեամբ, առաւելապէս համբաւելով զպեղագեայ զչքնաղութիւն և զաստուածպաշտութիւն, որ էր յայնժամ ամաց իբրու հնգետասանից։ Իբրև լուաւ անօրէն իշխանն,

տառապեաց զօրականս, զի բռնութեամբ յափշ-
տակեալ տարցին զպեղագիա առնա, եդեալ
'ի միոյ հանել զնա 'ի հաւատոց, և կիմ կատա-
րել զկամս չար ցանկութեան իւրոյ: Այլ հասեալ
զօրականաց յանկարծակի 'ի տուն տանգրն՝ գա-
զանաբար որսալ կամէին զանբիծ աղաւնին:
Պիտակացեալ պեղագեայ զպատճառս գալըս-
տեանն նց, և տեսեալ՝ թէ չիք հնար զերծա-
նելոյ նմա 'ի ձեռաց չարաց և 'ի մօտալուտ
աղտէ մեղաց, կարդաց 'ի սրտէ առ ած՝ ցու-
ցանել նմա ելս հնարից. և անդէն լուսաւո-
րեալ յայս՝ զուարթ դիմօք և անխռով մտօք
խօսեցաւ առ զօրականսն, և աղաչեաց ընդ
համբերել սակաւիկ մի. մինչև մտեալ 'ի
ներքին սենեակն՝ զգեցցի զհանդերձն իւր
մեծագինս, և շքով երթիցէ առաջի իշխանին
հանդերձ նաժշտօք իւրովք: Այլ խնամօքն
այ կամակից եղեն նմ զօրականքն; և ոչինչ
երկմտեցան է բանս նր, զի ոչ իմացան ըզ-
միտս ասացելոյն, այլ տուեալ հաւանեցան՝
իբրև թէ յոյժ հաճոյական իցէ այն և իշխա-
նին իւրեանց.

Այլ մինչ նստան նք առ դուրս և 'ի սրահի
տանն, ել սրբուհին 'ի վերնատունն՝ ուր սո-
վոր էր զաղօթսն մատուցանել. ամբարձ ըզ-
ձեռս իւր յերկինս, և ասէ. Տր ած հարցն մե-
րոց՝ դու գիտես զեղեալս և զոր լինելոց է.
փրկեա զիս յորոգայթէ որսողացս. Քո զի
զզուշութ պահել եմ զմարգարիտ կուսութէ
իմոյ, ակնունելով երկնաւոր հարսանեաց
առագաստին՝ զոր պատրաստեցեր սիրողաց
քոց,

քոյ , և ես ձեռակիմ փութով գալ առ քեզ ա-
նարատ մարմնով , անախտ սրտով , և ամբիծ
հաւատով :

Զայս ասացեալ՝ կնքեաց զինքն նշանաւ խա-
չին , և 'ի վերուստ 'ի վայր ընկեց զանձն ընդ-
դատտուհանն , եթէ յուսով փախստեան , և
եթէ կամաւոր յանձնառութեամբ վտանգի կե-
նաց , ոչինչ զանգիտեալ 'ի մարմնոյ մահուա-
նէն , զի ապրեսցի հոգին և մարմինն : Այլ
զի յայտնի լիցի՝ թէ յաղթմանէն այլ արար
զայն , 'ի վր բերէ յայսմաւուրքն մեր՝ թէ
հրեշտակ ած ընկալաւ զնա , և եդ անվնաս
'ի վր երկրի . այս է՝ ոչ եղև 'ի նմա վնաս
ինչ խեղութեան կամ խորտակման , այլ մերձ
եղև յանշնչանալ . վսն յաղօթս կացեալ լաւ-
թք , և եղեալ խաչանմանն զձեռսն 'ի վր
կրծիցն՝ ասէ . 'ի ձեռս քո յանձն առնեմ ըզ-
հոգի իմ . և այնպէս աւանդեաց զհոգի իւր
առ ած :

Սոր զեղեցիկ բարբառի բերանն ոսկի՝ ունե-
լով բանիւն այսպէս . * Այլ զի ուսցիս , եթէ
ոչ առանց այլ եղև այս իմ , առաւելապէս
յայտ առնէ զայդ՝ պնդութիւն յօժարութեա-
նն , և չիմանալն զօրականաց զգաւն , և չնոր-
հել նմ զխնդրելին , և 'ի կատար հանել ըզ-
գործն : Աւ փոքր մը զձաւեալքս՝ և յօրինակէ
վախճանի նր է զայս իմանալ . ապաքէն բնմք
'ի բարձր տանեաց փայրաքերելք՝ ոչինչ կրե-
ցին դժնդակս ( այդ ոչ մեռան ) . և այլք գար-
ձեալ անդամօք ինչ մարմնոյ խեղացեալք՝
զբազում ժամանակս կեցին յետ անկմանն .

T 2 այլ

այլ 'ի վր̄ երանեւլոյս այսմիկ և ոչ զմի յայս-
ցանէ Թուղացոյց ա̄ծ հանդիպել · այլ փու-
Թապէս հրամայեաց Թողուլ հոգւոյ զմար-
մինն · և ընկալաւ զնա որպէս ա̄ծ բաւականին
ձգնեալ, և զա̄մ կատարեալ, զի ոչ բնուե
անկմանն էր գործ մահն այն, այլ ա̄յ տնտե-
սութեն ॥ ։ Օ այլ պանծալի բանս սր̄յ վր̄պես
տեսցես 'ի կարգի ծանօթութեց ։

Մրդ տեսեալ զօրականացն՝ եթէ յամեաց
կոյսն, ելին 'ի վերնատունն, և զնա ոչ
գտին · մինչև խոնարհեալ էր պատուհանն՝
տեսին զնա մեռեալ ոտք Թէ 'ի քուն ։ Իսկ եր-
Թեալ պատմեցին զայս իշխանին · և նա յայժ
զարմացեալ զղջացաւ ։ Իսկ վր̄ մօր և քերց
պեղագեայ յայտ առնէ ոսկեբերանն, եԹէ
փախեան · բայց յայլում ճառի (հատ. ա.
երես. 634 . և 646) ուրոյն ներբողէ զերկուս
անտիոքացի կուսանս զբերնիկէ և զպռոսդո-
կէ, և զմայր նց դոմնինա, որք զայս օրինակ
գետամէջ առնելով զանձինս՝ նահատակե-
ցան · և յիշատակ նց լինէր առ անտիոքացիս
քսան աւուրբք զկնի տօնի սր̄յ խաչին · զո-
րոց պատմէ և եւսեբիոս կեսարացի (պատմ.
եկեղ. է̄ . 12 . և ժամագիրք յունաց յիշեն 'ի
հոկտ. 4)։ Իսկ ահա զնոսին իսկ արդեօք քոյր
և մայր պեղագեայ համարի ամբրոսիոս, յա-
սել անդ, Թէ իբրև տեսին զօրականքն՝ ե-
Թէ եւ պեղագիա 'ի ձեռաց իւրեանց, սկսան
'ի խնդիր լինել մօրն և քերցն · այլ նք̄ վա-
ղագոյն աճապարեն՝ դիմեցին յափն գետոյ ·
և յանձն արարեալ զինքեանս ա̄յ՝ ասեն ·

Օ քեզ

Ո՛ քեզ աղաչեմք հաստի՛չդ ամի ամծ, մի՛ թո՛ղ
զուր զմեզ բաժանիլ 'ի միմեանց կենօք եւ
մահուամբ. եւ այնպէս ձեռն 'ի ձեռն տուեալ
արկցին միաբան զանձինս 'ի գետ մի վկայութե
անուանն քո, եւ մի պահպանութե կուսա-
կան մաքրութե ։

Ուլ զի մի՛ ոք 'ի տկարամտաց, եւս առաւել
'ի փառասէրս օրիորդաց, ձախողակի իմաս-
ցի զպատմութիւնս, եւ օրինաւոր համարեսցի
անձնասպան լինել յայսպիսի վտանգս կու-
սութե, յիշեսցեն զառած մեծին օգոստի-
նոսի, եթէ առաւել պարտ է զարմանալ ընդ
այսպիսիս՝ քան հետեւիլ. զորմէ զօրաւոր եւ
ազդու բանիւք ճոխագոյն ճառէ նա վերպս
'ի գիրսն յաղագս քաղաքին այ ։ Իսկ մեք
յուշ առնեմք ընթերցանելեաց երկու ինչ
կարեւոր. Նախ՝ զայն, զոր ոսկեբերան եւ ամ
բրոսիոս եւ օգոստինոս եւ այլ վրդք միաբան
վկայեն, թէ յայն սակս գովլի գործ պեղա-
գեայ եւ նմանեաց նր թուով սակաւուց, զի
առանձին տնտեսութբ եւ ազդմամբն այ ե-
ղեւ. եւ ո՞ իշխէ ասել՝ թէ ում եւ է անխտիր
հաստանէ ունել զշնորհս այնպիսի տնտեսութե
եւ ներքին ազդմանն ։ Բայց թէ ոք համա-
րեսցի, եթէ եւ զնոցայն՝ որք ընդ վկայուհիս
գրեցան, դժուարին է ցուցանել զներքին
ազդումն, հարկի ասել՝ եթէ սխալեցան
մարդկօրէն, եւ արդարացան ածօրէն. եւ յի-
րաւի կարէ ոք 'ի միամտաց սխալիլ անյաղ-
թելի տգիտութբ՝ կարծելով, թէ չէ՛ք այլ
ճանապարհ հաճոյ լինելոյ այ կմ փախչելոյ

՚ի մեղաց. և այժմ արդարացուցանէ զայնպի-
սիս եթէ առ միամտութե, և եթէ առ առա-
ւելութե սիրոյն այ. և ո՞ ոչ տեսանէ՝ թէ ՚ի
պեղագիա և ՚ի նմանիս նորա կատարեալ էր
սէրն այ:

Նորկրորդ՝ զայն, թէ արժանն է սրբասէր կու-
սից ոչ անգիտանալ զայս ճշմարտութի, թէ
կուսական մաքրութիւն առաւել պարտի լի-
նել ՚ի սրտի քան ՚ի մարմնի. մինչ զի ոչինչ
բռնութի կարող իցէ խախտել զսիրտն՝ թէ-
և մարթասցի բռնութեան առնել մարմնոյ. զի ե-
թէ զոհեալ միս բռնի դիցեն ՚ի բերան ու-
րուք, ցորչափ ոչ կամի նա ճաշակել, ոչինչ
մեղաւ. այլ առնէին ընդ բազումս ՚ի վկայից:
Նմա որ արիաբար վանէ զթշնամին կուսութե,
զօրանայ այք հանգոյն թեկղեայ և հռիփ-
սիմեայ. և կայ մնայ անպարտելի հոգւով և
մարմնով: Նոյնքիկ ՚ի ժամուս հերիքացին
առ ի մանալ զճշմարտութի խնդրոյս, և զիա-
կապէսն նահատակութի ոբյ կուսին պեղա-
գեայ. զոր ոպ հարք, նոյնպէս և այժմ վկայա-
բանք և քննիչք, ընդ որս և բոլլանդեանք յե-
սուին խուզարկուք՝ գովեն և փառաւորեն իբ-
րև զճշմարիտ վկայուհի առաքինի. և այժմ ե-
կեղեցիք քրիստոնէից տօնախմբեն ՚ի փառս
քնի. և գերեզման նորա էր ուխտատեղի
անուանի յանտիոք յաւուրս ոսկեբերանի:
Նաև՝ թէ գոյր երբեմն վկայարան և ՚ի կոս-
տանդինուպօլիս յանուն սրբին պեղագեայ
կուսի. զոր այլք ընծայեն առաջնոյն. որպէս
և ոմանք վերջնոյն. զորմէ մնայ մեզ խօսել,
զի

զի ծանիցեն զանթառամանեալ ծաղկունս դրախ-տին մեր համանուան պեղագիա կոչմամբ ։



## ՊԵՂԱԳԻԱ ԱՊԱՇԽԱՐՈՂ ԱՆՏԻՈՔԱՑԻ

Յ. յունիս. 9 ։ Յ. Լ. հոկտ. 8 ։ Համառօտեալ ՚ի Հարանց վարս. ԷՂ. 376 = 380 ։ (3)

Երրորդն պեղագիա աղախինն մեր՝ տօնե-լի ընդ զառաջինսն , զի ոմանց կարծի լի-նել ժամանակակից նմա , զի այլոց ՚ի հինգե-րորդ դարու առ կայսերութեամբ Թէոդոսի փո-քու՝ յանտիոք քաղաքէ , երբեմն հեթանոս և պոռնիկ , և ապա հաւատացեալ և կատա-րեալ ապաշխարող և ճգնաւոր . զորոյ զվարս գրեաց յակոբոս սարկաւագ ժամանակակից և ականատես՝ աշակերտ նոյն նոննոսի կամ նոննոսի եպիսկոպոսի եղեսիայ ։

Սորա՝ եղև երբեմն ժողով ութ եպիսկոպոսաց յան-տիոք առ հայրապետ անտեղւոյն . և էր մի յե-կեղեց անուանի նոյն եպիսկոպոսն նոննոս միաբան վա-նացն տաբեննացւոց , որ զի յորդորելոյ այլոց եպիսկոպոսաց՝ յորժամ նստեալ էին ՚ի դուռն վկայա-րանին նոյն յուլիանոսի , խօսէր բանս կենաց ՚ի շինութիւն լսողաց ։ Եւ մինչդեռ զարմացեալ էին ամենեքեան ընդ հոգեւորական վարդապետութիւն նորա , տեսին՝ զի ահա անցանէր ընդ այն բազում շքով պերճագեղ պոռնիկն , որ և խաղացող և եր-գեցիկ դիւական՝ գլուխ կաքաւչաց և միմո-

 սաց

ռաց անտիրաբացուաց, մարգարիտ կարդացեալ
'ի հոմանեաց իւրոց. ոչ և եր իսկ բովան-
դակ անձամբ յոտից մինչև 'ի գլուխ զարդա-
րեալ մարգարտօք և ակամբք պատուակա-
նօք, և մանեակ ոսկի 'ի պարանոց նորա. և
ինքն նստեալ 'ի վրա իշոյ. և յառաջոյ և զկնի
նր. բազմութին երիտասարդաց և աղջկանց
'ի հանդերձս ճեծագինս. և պչնութիւն ամ
Յաւէրժ է տարապայման գեղ պեղագեայ,
և հոտ մշկոյ և այլոց խնկենեաց բուրեալ 'ի
նմանէ՝ լնոյր զմերձակայ վայրս:
Զոր տեսեալ եպսաց, զի հոլանի և անա-
մօթ լկտութբ անցանէր՝ այնպիսի փառօք
հանդերձ, հեծելին, և զաչս 'ի բաց դարձու-
ցանէին: Իսկ երանելին Նոննոս խորհրդով
յերկար նայեցեալ է նա նաև յետ անցանե-
լոյն, ապա դարձաւ և ասէ ցեպսունսն՝ որ էն
նմա. դուք ոչ հիացայք արդեօք է գեղեց-
կութին դորա՝ ոչ եսս: Զայս ասաց, և ե-
դեալ զերեսս իւր 'ի վերայ ծնգաց իւրոց՝
ելից արտասուօք զգոգ իւր. և յոգւոց հա-
նեալ 'ի խորոց սրտէ՝ զնոյն բան երկրորդեաց.
ոչ հաճեցայք ասէ դուք է գեղ դորա ան-
նման: Այլ 'ի լուռ լինել նց ասէ. ես կա-
րի յոյժ հաճեցայ է այդ գեղեցկութին. վն
զի զնոյն զայն հանդերձեալ է ած 'ի դէմս
ածել մեզ յահաւոր բեմի իւրում՝ 'ի դատել
զմեզ և զեպսութին մեր: Սա զի ուր դա վն
կորստական սիրոյ Յի զամ փոյթ 'ի մէջ ա-
ռեալ է զարդարել զանձն ամ զարդուք, մեք
վն այս և ոչ զաղտ հոգւոց մերոց 'ի բաց սըր-
բեմք.

բեմք. և ոչ յուշ ածեմք զերկնաւոր փեսային, որ խոստացաւ մեզ ցուցանել զարփիահրաշ դէմս իւր, յոր ոչ իշխեն հայել քերովբէք, և պարգևել մեզ զանպատում բարիս : Յետ այսորիկ եկեալ Նոննոսի եպսի ը՟ յակովբայ սարկաւագի իւրում' 'ի սենեակ եկեղեցւոյն' անկաւ 'ի վ՟ր երեսաց իւրոց յերկիր, բաղխէր զկուրծս, ողբայր և ասէր. Տ՟ր յ՟ս ք՟ս ներեա՛ ինձ մեղաւորիս և անարժանիս, զի միոյ աւուր զարդ պոռնկին յաղթեաց ա՟մ զարդու հոգւոյ իմոյ. որո՞վ դիմօք ակնարկեցից 'ի քեզ, կամ որո՞վք բանիւք արդարացայց առաջի ծածկագիտիդ ա՟յ. վա՛յ ինձ, զի յանդիմանն լինիմ ս՟բյ սեղանոյ քո, և ոչ մատուցանեմ զհոգի գեղեցիկ' ո՟պէս պահանջես յինէն. կինն այն մեղաւոր խոստացաւ հաճոյ լինել մարդկան, և արար. ես ուխտեցի քեզ հաճոյանալ, և ստեցի առ հեղգութենս. մերկ եմ յանդիմանն երկնի և երկրի, և անյոյս 'ի գործոց բարեաց. այլ յոյս իմ և փրկութի՟ իմ դու ես Տ՟ր ողորմութ՟ք քով : Իսկ յառաւօտու միաշաբաթուն յետ գիշերային պաշտամանց ասէ եպսն ցսարկաւագ իւր. տեսանէի յանուրջս, զի 'ի կալ իմում 'ի ս՟բ բեմին' աղաւնի մի սեաւ և շաղախեալ յոյժ աղտեղութ՟ք թռչէր առնոյր զինև. որոյ ոչ կարէի տանել զաղբութենէն և զարշ հոտոյն. և եկաց մօտ առ իս, մինչև յասել սարկաւագին, մի՛ ոք յերեխայից, և յայնժամ եղև աներևոյթ. այլ զկնի պատարագին իբրև ելանէի ը՟ դուռն տաճարին, միւս

ան

զրոյց. և իբրև գիտաց՝ եթէ ՚ի վկայարանին սրբոյն Յուլիանոսի ագանի, յղեաց առ նա գիր աղերսանաց օրինակ զայս. * Մեծ աշակերտին Ք̃սի՝ կինս մեղաւոր և աշակերտ սատանայի ։ Լուեալ է իմ յաղագս Այ̃ն քո, զի խոնարհեցոյց զերկինս, և էջ յերկիր, ո՛չ վս̃ արդարոց, այլ զի զմեղաւորս կեցուսցէ. այնչափ խոնարհեալ, մինչև մերձ լինել մաքսաւորաց. և թէ՝ յոր քերովբէքն ոչ իշխէին հայել, շրջեցաւ ը̃ մեղաւորս ։ Եւ դու տր̃ իմ, որ սրբութի̃ յոյժ ունիս, թէպէտև մարմնոյ աչօք ոչ տեսեր զտ̃ր Ք̃ս Յ̃ս՝ որ յայտնեաց զանձն սամարացի կնոջ պոռնկի առ ջրհորովն, բայց ճշմարիտ պաշտօնեայ ես նորա. ա̃պ ՚ի պատմելոյ քրիստոնէից լուա՛յ ։ Արդ եթէ ճշմարիտ աշակերտ ես Ք̃սին այնմ, մի՛ անտես առներ զիս զցանկացօղս տեսանել քև զփրկիչն. այլ արժանի արա տեսանել

ինձ զսբ̃ երեսս քո ॥ ։

Իսկ եպ̃սն Նոննոս գրեաց առ նա պիտանի բանիւքս այսոքիւք ։ * Ո՛վ և իցես՝ յայտնի ես Այ̃ և՛ դու և բանք քո և կամք քո. այլ ասեմ քեզ, մի՛ փորձեր զիմ նուաստութի̃. զի ես այր մեղաւոր եմ՝ ծառայ Այ̃. եթէ ստուգապէս է ՚ի քեզ փափաքումն ա̃ծութե̃ և յօժարութի̃ ընդունելոյ զհաւատս, և վս̃ այն կամիս զիս տեսանել, են ընդ իս և այլ եպ̃սունք. եկ և յանդիման նց̃ տեսցես զիս. վս̃ զի առանձին ո՛չ կարօղ ես տեսանել զիս ॥ ։ Լուեալ պոռնկին զայս նամակ՝ ուրախ եղև. եւ գնաց փութա̃պս յիջևան եպ̃սին. և իբրև

լու եղև գալուստ նորա, կոչեաց Նունոս և զայլ եպսունս. և ապա հրաման ետ Պեղագեայ գալ մտանել 'ի ներքս ։ Իսկ նորա մատուցեալ յատենի եպսաց ընկեց զանձն 'ի գետին, և թուռն հարեալ զոտից Նունոսի՝ ասէ. աղաչեմ զքեզ տէր իմ, նմանօղ լեր վճպին քում և տն յի քի, և ցոյց առ իս զզեղումն մարդասիրութե քո, և արա զիս քրիստոնեայ. զի ես տէր իմ ( ըս անուան իմոյ ) Պեղագոս եմ, ծով մեղաց համատարած, և անդունդք անզղջնութե ։ Յայնժամ եպսն բռնադատեաց զնա յառնել 'ի գետնոյ, և ասէ ցնա. Մանանք քահանայականք օրինադրեն չմկրտել զպոռնիկն, եթէ ոչ երաշխաւորս տացէ, զի մի թաւալեսցի վերստին 'ի սովորական զազրագործութին ։

Իսկ Պեղագիա դարձեալ անկաւ յոտս եպսին, և արտասուօք թանայր և հերով գլխոյն մաքրէր՝ ոպ երբեմն կինն պոռնիկ զտրունական ոտսն. և ասէր. դու համար տացես այ վն հոգւոյ իմոյ, եթէ յապաղես մկրտել զիս և մաքրել զաղտեղութի յանցանաց իմոց. և այնչափ ինչ խոսեցաւ ջերմ արտասուօք, մինչև զարմանալ ամ եպսաց և ժառանգաւորաց ընդ կատարեալ դարձ նորա ։ Յայնժամ յղեաց Նունոս զյակոբ սարկաւագ իւր առ հայրապետ քաղաքին՝ պատմել նմա զայս ամ, և խնդրել զոմն սարկաւագուհի, զի լիցի կնքամայր պոռնկին ։ Իսկ հայրապետն ուրախ եղև յոյժ, և յղեաց ընդ սարկաւագի զաւագ սարկաւագուհին զկոյսն Ռոմանա.

որք

որք եկեալ գտին զպոռնիկն, զի տակաւին անկեալ կայր արտասուօք առ ոտս եպսին ։ Ապա յարոյց զնա եպսն. և երախայացուցեալ զնա՝ լուաւ զանկեղծ խոստովանութի̃ մեղաց նր̃, և մկրտեաց զնա և դրոշմեաց, և հաղորդեցոյց 'ի տր̃ խորհրդոյ մարմնոյ և արեանն տն̃. և յանձն արար ռոմանայ սարկաւագուհւոյն՝ որ ընկալաւ զնա յաւազանէն, տանել զնա յերեխայանոցն, և ուսուցանել զամ̃ կարգս ճ̃դպաշտութե̃ զեօթն օր ։

Ոի թեպէտև ոմանք հայեցեալ 'ի սովորական կանոնն՝ գրեն, թէ նախ երախայացոյց զնա եպսն զեօթն օր յառաջ քան զմկրտութի̃ն, բայց յակոբ սարկաւագ ականատես վկայ յայտ առնէ, թէ առ օրին մկրտեաց զնա տր̃ ջերմեռանդն փութոյ նորա. և ապա ետ զեօթն օր յերախայանոցն ։

Յայնժամ երևեցաւ սատանայ մարդակերպ առ դուրս եպսին նոննոսի, և նախատէր զնա բանիւք բազմօք, և կոծէր զանձն ողբով մեծաւ. անիծեալ լիցի աւր օրն՝ յորում դու ծնար. չէի՞ն քեզ բաւական, զի զերեսուն հազար սարակինոսս հանէր 'ի ձեռաց իմոց, և մկրտեցեր. և զբնակութի̃ իմ զհեղինուպօլիս կապտեցեր յինէն. և արդ բարձեր յինէն և զպոռնիկն զայն, որ էր ամ̃ ակնկալութի̃ իմ ։ Նոյնպէս և առ պեղագիա քանքարտալով տաէր չարն. զա՞յդ ինձ հատուցանես տիկին իմ պեղագիա, և իմուսս յուդայի լինիս նմանող. զի նա պատուեալ առաքելութբ̃՝ մատնեաց զտր̃ իւր, նոյնպէս և դու ընդ իս

արար.

տարաւեր ։ Իսկ նորին նոննոս ասէ ցպեղապետն ․ Տեսագրեա՛ զանձն քո նշանաւ խաչին քրի, և հրաժարեալ 'ի սատանայէ՝ փչեա՛ և թքա՛ք յերեսս նորա ․ և իբրև արար զայն, անյայտ լինէր չարն ։

Եւ յետ երկուց աւուրց՝ յորժամ էր պեղագիս ՚ի ռամանայ յերեխայանոցի, զարթոյց զնա դևն 'ի քնոյ ձայնելով մարգարիտ անուամբ ․ և սկսաւ յուշ առնել նմա զմեծութիւն՝ զոր ստացեալ էր գործակցութն նր ․ և ասէր ․ Եթէ՞ որոտմեցուցի զքեզ՝ զի թողեր զիս ․ աւա՛ղ, զի լցուցիր զիմ կամս քո, և մի՛ յամօթ առներ զիս առաջի քրիստոնէից ։ Իսկ աղախինն այ պեղագիս դարձեալ կնքեաց զանձն նշանաւ այ խաչին, և փչեաց ընդդէմ բանսարկուին՝ ասելով ․ այծ իմ՝ որ կորզեաց զիս 'ի մէջոյ ժանեաց քոց, և վերածեաց յերկնաւոր առագաստ իւր, նա ինքն ընդդէմ կացցէ քեզ Քս իմ․ և անդէն աներևոյթ եղև դևն, և այլ ոչ երևեցաւ ։

Ապա յաւուր երրորդի ետ բերել պեղագիա զամն ինչս իւր, և կոչեաց զեպսն նոննոս՝ ետ 'ի ձեռս նր զամն, ասելով ․ այս մեծութիւնք են տր իմ, որովք ճոխացոյց զիս սատանայ ․ արդ թողում 'ի կամս սրբութե քո, զի արասցես՝ զոր արժան համարիս ․ զի ինձ ցանկալի են մեծութիւնք տն իմոյ յի քի ։ Իսկ եպսն կաչեաց զկոնոմոսն եկեղեցւոյ, և երդմնեցոյց զնա՝ զի մի ինչ յընչից անտի մտցէ յեկեղեցի, այլ որբոց և այրեաց և կարօտելոց բաշխեսցի առէ ամն ․ և մեծութիւնք կնոջն մեղաւորի

ւորի եղիցին գանձք արդարութեան ։ Կոչեալ պեղագիայ ընդ խրատու եպիսին և սարկաւագուհւոյն նաև զամենայն ծառայս իւր և զաղախնայս, ազատեաց զնոսա՝ տալով նոցա ձեռամբ իւրով բաժին յընչից իւրոց և ՚ի զարդուց ․ և ասէ ․ փութացարո՛ւք փրկել զանձինս ձեր յաշխարհէ աստի չարէ, որ լի՛ն է մեղօք ․ զի որպէս ՚ի միասին եաք յաշխարհիս յայսմիկ, նոյնպէս ՚ի միասին լիցուք յաւիտեան յերանաւէտ կեանս հանդերձեալ աշխարհին ։

Իսկ յաւուր ութերորդի՝ յորում հանդերձել էր պեղագիա ՚ի բաց դնել յանձնէ զսպիտակ հանդերձն, զոր զգենուին նոր մկրտեալքն զաւուրս եօթն, վաղայարոյց լեալ՝ եհան զայն յանձնէ, և առանց զգացուցանելոյ ումեք առեալ զմազեղէն պարեգօտ եպիսին՝ արկաւ զիւրեաւ, և խորգ մի կապեաց ՚ի թիկունս իւր ․ և այնպէս ՚ի ձև առն և ՚ի կերպարանս աղքատի ել գիշերայն, և գաղտագնաց եղև մինչև յԵրուսաղէմ ․ ուր ելեալ ՚ի լեառն ձիթենեաց՝ արգելական եղև ՚ի խուց մի որպէս միայնակեաց՝ պեղագիոս անուամբ ․ և ոչ ոք գիտաց երբէք, եթէ կին իցէ ։

Եւ եղև յետ երից կամ չորից ամաց ժամանակի՝ ասէ պատմօղ բանիցս, ցանկացայ ես յակովբոս սարկաւագ երթալ յԵրուսաղէմ, և երկիրպագանել սուրբ յարութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։ Եւ ՚ի խնդրել իմում հրաման ՚ի նոննոսէ եպիսկոպոսէ իմմէ՝ պատուիրեաց ինձ, և ասէ ․ քե՛զ ասեմ եղբա՛յր սարկաւագ, իբրև հասանես յԵրուսաղէմ, խնդրեա՛ անդ զոմն եղբայր պեղագիոս՝ աբե-

ղայ և ներքինի, փակեալ յառանձնումն յա-
մաց հետէ. և ե՛րթ 'ի տեսանել զնա, զի
կարող ես ստուգանօք շահել 'ի նմանէ ։ Այլ
զայս ո̃մ ասէր ինձ զաղախնոյն ո̃յ զպետղա-
գեայ՝ ո՛չ յայտնապէս ։

Արդ իմ հասեալ յեկեղեցին և երկրպագեալ Տե̃
յարութե̃, ելի զկնի 'ի խնդիր ծառային ո̃յ.
և գնացեալ գտի զնա 'ի լերինն ձիթենեաց
'ի տեղի աղօթականութե̃ ո̃ն մերոյ, զի կայր
'ի խուց մի անձուկ՝ փակեալ շուրջանակի,
պատուհան փոքր յորմն ունելով ։ Այլ իբրև
բախեցի զդուռն պատուհանին, վաղվաղակի
եբաց ինձ, և ծանեաւ զիս. բայց ես ոչ ծա-
նեայ զնա. զի զի՞արդ մարթ էր ինձ ճանա-
չել՝ զոր յառաջագոյն տեսեալ էր իմ անհամե-
մատ գեղով, թարշամեալ այնուհետև 'ի բա-
զում պահոց. իսկ աչք նր̃ ո̃ւ փոքր երևէին ։
Այլ ասէ ցիս. ուստի՞ գաս եղբայր. և ես
ասեմ. առաքեցայ առ քեզ հրամանաւ Նու-
նասի եպ̃սի ։ Իսկ նա ասէ. աղօ՛թս արասցէ
վ̃ր իմ, զի արդարև տր̃ ո̃յ է նա. և անդէն
փակեաց զփեղկ պատուհանին, և սկսաւ
սաղմոսել զերրորդ ժամուն. իսկ իմ աղօ-
թեալ առ որմոյ սենեկի նր̃՝ մեկնեցայ ան-
տի, շահեալ յոյժ 'ի հրեշտակային տեսու-
թե̃ նորա. և դարձ արարեալ յեկեղեցին՝ շրջիլ
սկսայ ը̃ վանորայս՝ այց առնելով եղբարց ։
Այլ լուեալ զհռչակ համբաւոյ մեծի առ ամե-
նեսին զո̃ր պետղագիոսէ. նմին իրի խորհե-
ցայ միւսանգամ երթալ տեսանել զնա, և
մխիթարիլ փրկաւէտ վ̃իպութե̃ նր̃ ։ Արդ

ՌԽ հա

հասեալ 'ի խցիկն՝ իբրև համարձակեցայ բա-
խել, մանաւանդ թէ յանուանէ ձայնել զնա,
ոչինչ ետ պատասխանի. սպասեցի երկայնամտեալ
ցօրն երկրորդ և երրորդ. և ստէպ կարդայի
յանուանէ՝ տէր պեղագիէ. և ոչ լուայ բը-
ձայն ուրուք. վասն ասէի ընդ միտս, կամ ոչ ոք
է աստ, և կամ մեկնեալ իցէ՝ որ աստ բնակէր
միայնակեացն: Ապա ընդ ազդելոյ տեառն՝ ասեմ.
տեսից, մի՞ գուցէ մեռեալ իցէ. բացի զփեղկ
պատուհանին. և իբրև հայեցեալ տեսի զնա
վախճանեալ, փակեցի զփեղկն, և կաւով
ծեփեալ ամրացուցի. և ընթացեալ յԵրուսաղէմ՝
պատմեցի բնակակցաց իմոց, եթէ սուրբն պե-
ղագիոս միայնակեաց նշանաւոր հանգու-
ցեալ է: Յայնժամ եկին սուրբ հարքն հանդերձ
զանազան ուխտիւք միանձանց, և քակեալ
զմուտս խցկանն՝ հանին զսուրբ մարմին նորա ար-
տաքս՝ ամփոփել արժանաւոր պատուով իբ-
րև զգանձ ոսկւոյ և ականց պատուականաց:
Եւ յօծանել անդ և 'ի պատել զնա հարանց
զմռռով, յայնժամ ծանեան՝ եթէ կին մարդ
է. և խորհեցան ծածկել զսքանչելիսն. այլ
չէր հնար թաքչիլ յամբոխէն. աղաղակեցին
մեծաձայն, և ասէին. փա՛ռք քեզ տէր Յիսուս Քրիստոս,
զի բազում են քո գանձք ծածկեալք 'ի վերայ եր-
կրի, ոչ միայն յարանց, այլ և 'ի կանանց:
Եւ հնչեաց լուր նորա յամ ժողովս. և եկին
համօրէն ուխտք կուսանաց՝ որ յերիքովէ և
որ 'ի յորդանանէ, մոմեղինօք և ղամբարօք.
և այնպէս երգովք օրհնութեան բարձեալ 'ի
սուրբ հարանց՝ ամփոփեցան սուրբ նշխարք նորա:

Այս վարք են պոռնկին, և այս քաղաքավարութիւն՝ անյոյս համարեալ անձին, ամե-գրիչն. Քս որում և մեզ տացէ տր գտանել զողորմութիւն իւր յաւուրն դատաստանի. զի նմա վայել է պատիւ և փառք, կարողութիւն և իշխանութիւն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

(1) Զառաջինն պեղագիա տարսոնացի՞ թէպէտև առանձին ներբողեն յոյնք 'ի ժամագիրս իւրեանց. 'ի մայ. Դ. տուգաքանութէ աներևան՝ խոր և անդընդային. կմ նման համառօտ ծովու. ուր և սկզբնատառք երգոցն յօդեն զայս բան, * Պեղագիայ ներբող յանկաւոր հիւսեմ!! բայց միւսանգամ յիշատակեն զնա զոյգ Ը. երկրորդին և երրորդին 'ի հոկտ. 8: Ընդ հակառակն բասիլեան յայսմաւուրք յունաց ոչ յիշէ զառաջինն 'ի մայ. 4. այլ միայն 'ի հոկտ. 7. յոր յարէ և 'ի հոկտ. 8. զերկրորդն և զերրորդն: Իսկ Հ. 'ի հոկտ. 8. դրէ զառաջնոյն եւեթ. ոմ և զերկրորդէն 'ի 30. ապր. և զերրորդէն 'ի յունիսի. 9: Իսկ Լ. զառաջինն դնէ 'ի մայիսի 4. զերկրորդն 'ի յունիսի. 9. և զերրորդն 'ի հոկտ. 8: Յորոց ունիս իմանալ, թէ երեքին սք դժուարաւ բաժանին յիրերաց ըստ տոնի. ոմ և ժամանակն ոչ ըստ ոմանց նոյնանայ, թէպէտև ըստ այլոց զանազանեսցի:

Վարք առաջնոյն միօրինակ քաղուածով գտեալ 'ի յայսմաւուրս մեր ազգաց՝ ունի զմի այլիւր հնագոյն, որ չերևի այժմ 'ի միջի. ուստի առեալ է և ընդարձակ օրինակն լիպոմանոսի և սուրիոսի յանուն մետափրաստեսի. զորոյ և զյունական բնագիր գտեալ 'ի գրատան վատիկանու տպագրէ բարեպաշտ բոլլանդեան. բայց մեք ոչ տեսաք 'ի նմին զոգի մետափրաստեան, և կարծեմք լինել այլոյ ուրումն յետնոյ բաղադրութի անշուք ոճով. նմին իրի սակաւ ինչ առաք 'ի նմանէ առ տառակեալ բացայայտութի համառօտաբանութե յայսմաւուրաց: Այս եթէ կարծէ բարեպաշտ պատմական սխալմանս

դատա-

դատանել յՅ̄արձակն, վա̄յ և առաւել ընտրէ զհամառօ_
տութիւ, խաչի. զի գոյացութի̄ պատմուեան նոյն է յա_
մենեսին՝ մինչև ցի կարծեցեալ սխալանաց անգամ. յորս
գլխաւորն այն է, զի յիշէ որդի գիտակցեալիանոսի՝ որոյ
ոչ գոյր որդի. և ինքն գիտակցեալիանոս ասի լինել ան_
ձամբ 'ի տարսոն, որ ոչ երբէք երևի եկեալ 'ի տարսոն:
Եւ սակայն դիւրին է լուծումն իրացդ, զոր և ինքն
քաջ քննիչն ոչ դանդաղի տալ. զի թէ գործք դատաւո_
րին տարսոնի՝ որ 'ի դիմաց կայսեր, յանուն կայսեր է
դրեալ 'ի վկայաբանից. որ և յայլ պատմութիւս հանդի_
պի: Նոյնպէս ասելի է, թէ զոմն սիրելի կայսեր իբր
որդեգիր նո̄՝ որդի անուանեն կայսեր: Իսկ թէ ո՛ էր
դատաւոր տարսոնի 'ի ժամանակի անդ, 'ի վկայաբա_
նութեց այլոց նահատակաց քաղի մակաբերութ̄ լինել
սիմբլիկիոս կա̄ մաքսիմոս անուամբ:

Գովեմ զբարեպաշտ. զի յորժամ կամի ստուգել ինչ
մի, ընդ որ ինքն հաւանի, քաջ ճարտարէ զպատճառս.
միայն թէ մի՛ռ 'ի դէպ դայցէ. ո̄ք դիպօղ երևի գրելն
նո̄ տատանօր, թէ ուր սիրելեաս ընթեռնու 'ի ձեռա_
գրի միում, * էառ զհաղորդութիւն 'ի սեղանոյն քո̄ի,
• և բաշխեաց նմա ||, պաշտօնեան օրինակն ունի այս_
պէս. * բաշխեաց նմ̄ զհաղորդութի̄ 'ի սեղանոյն քո̄ի ||.
արդ կարծեցեալ բարեպաշտք՝ թէ սովիմր լինի իմա_
նալ զասակ հաղորդութի առանց պատարագելոյ, իրա_
ւունս դատի 'ի վե̄ բերել. * Առաւել ընտրելի է պա_
• շտօնեան օրինակն համառօտաբան. զի ո՛չ էին 'ի
• մէջ տաճարի, այլ 'ի վե̄ ճանապարհի, ուր կարօղ
• էր եպ̄ս ունել առ իւր զնշխարն մարգարիտն, զի
• այսպէս սովոր էին կոչել զք̄ս նշխարն. ի̄ որում բա_
• զում անգամ կրէին 'ի ճանապարհի քրիստոնեայք, ի̄
• վկայելոյ սի̄յն ամբրոսիոսի 'ի խօսելն զեղբօրէ իւրմէ
• զո̄րյն սատիւրոսէ ||: Իցէ՞ թէ և յայլ տեղիս այսր
զայսպիսի մեկնութիւնս: Բայց կարօղ էր և ՊՊ հկ̄ն
մեկնել, թէ դուցէ չէր ինչ բացադոյն մատուռն՝ ուր
պատարագէր եպ̄ս, կա̄ ուստի առեալ էր նո̄ զք̄ս խոր_
հուրդն:

(2) Ջերկրորդն պեղագիա՝ զկոյսն ասեմ անտիոքացի,
Հ. և Յ. բս. դնեն առ նումերիանոս կայսերաւ. ուր
Յ. ժմ. զերրորդն պեղագիա զպոռնիկն դնէ յաւուրս
նումերիանոսի. իսկ այլք 'ի վկայաբանից ո՛չ որոշեն
զժամանակ նց̄. և քննիչք՝ են որ անդխտելի խոստովա_
նին, և են՝ որ զերկրորդն դնեն յաւուրս գիտակցեալիա_

„ ռաց, և ոչ յառնեան ելանելոյ, այլ խրախական յօժա-
„ րութե գերազանցութբ կանխէր զնոցուն գաղանու-
„ թբ. զի Թեպէտև պատրաստ էր և առ առանձինն և
„ կատարեալս և առ ամ ատեանս ըլկանաց, այլ խիթայր՝
„ զի մի զկուսութեն կորուսցէ զպսակ...
„ Ձի Թէ էր և զկուսութեան պահել՝ և մարտիրոսութեն
„ պսակաց հանդիպել, ոչ արդեօք 'ի բաց լքանէր ըն-
„ մուսն 'ի յառնեան. այլ քանզի հարկ 'ի վր կայր 'ի
„ միջէն 'ի բաց անկանել, յետին անմտութե վարկա-
„ նէր լինել գործ, առ ձեռն պատրաստ գոլով երկա-
„ քանչիւր յաղթութե հանդիպել՝ 'ի կիսոյ պսակեալ
„ երթալ. նմին իրի ոչ կամեցաւ յառնեան երթալ, և
„ ոչ ատեարան լինել յայրատ աչաց ... այլ յառագաս-
„ տէն և 'ի կուսաստանէն 'ի միւսն չոքաւ առագաստ
„ յերկինս.
„ Մեծ է արդարև զգաստիծս ատեանել. զի շուրջ կան
„ և զկողմն պատառեն. բայց ոչ փոքր և այս է զայն.
„ զի որոց արդէն բարձեալ է զգայութե պէսպիսութ
„ առանձնանաց՝ ոչ ևս աւհարկու մահն երևի, այլ փոփո-
„ խումն և բարձումն վերաhաս ցաւոցն: Իսկ սա չև
„ ևս կրեալ այնպիսի ինչ, այլ տակաւին ողջանդամ
„ ունելով զմարմին, և ոչինչ ցաւ յանձին զգացեալ,
„ մեծի իմն և առաքինի արութե պէտս ունէր առ 'ի
„ բանամահ հանել զանձն յաստի կենացս: Մինչ զի ե-
„ Թէ զարմանաս ընդ նք ժուժկալութեն, զարմասցիր ը
„ սորայս արիութե. եթէ զքանչանաս ը համբերութե
„ նք, զքանչասցիր և ը սորայս արութե ոգւոյ, զի հա-
„ մարձակեցաւ առ կատարած այնպիսի...
„ Ոչ հայրն 'ի ներքս էր, և ոչ մայրն առ նմա. ոչ
„ դայեակ, ոչ նաժիշտ, ոչ դրացի, ոչ բարեկամ, այլ
„ միայնակ էր Թողեալ 'ի մէջ դահճացն այնոցիկ. (ը
„ որս համարձակ խօսեցաւ)... Ո՞չ էր այս մարդկայինս
„ բնութե գործ, այլ առաւել ա՟ծային անճառելութե
„ ձեռնարկութի ... և ը այս ամ անցանել՝ ած օգնա-
„ կանութեն էր և վերին առաջնութե. ոչ զի և զար-
„ մանալ ը նա արժան, և երանել: Երանել յաղագս
„ ած մարտակցութեն, և զարմանալ յաղագս նորին յօ-
„ ժարութեն .... և ոչ մի ինչ գտաւ խռովեցուցիչ ե-
„ րանելւոյն այնմ... զի չէր 'ի ներքս ('ի սենեկի)
„ միայն, այլ՝ ունէր խորհրդակից զա՟ծ. նա մերձ էր
„ ինքեան, նա զննէր զիւր սիրտ. նա քաջալերէր զո-
„ գին, նա միայն զերկիւղն փարատէր. և զայսոսիկ ոչ

 „ վայ-

„ վայրապար տանէր, այլ զի յառաջագոյն զանձն որ-
„ ժանի յարգարեաց այնմ օգնականութեան վկայուհին:
„ Արդ եղեալ շնորհս խնդրեաց 'ի զօրականաց՝ մատ-
„ նել և զհանդերձն փոխել. և մտեալ զգեցաւ զանա-
„ պականութիւն ը̄ ապականուն, զանմահութիւն ը̄ մա-
„ հու, զկեանս անվախճան ը̄ առժամանակեաւ արկեալ
„ զիւրև կենաց: Այլ ես հանդերձ այսորիկ՝ որ ա-
„ սացան, և ը̄ այն զարմանամ. զիարդ շնորհեցին նմա
„ զայս շնորհ զօրականքն. զիարդ խաբեաց զարս կինն.
„ զիարդ ոչինչ կարծիք 'ի միտս անկան նոցա վա̄ լինե-
„ լեացն, զիարդ ոչ 'ի միտ առին զդաւն: Զի և ոչ է
„ ասել զայն, թէ ոչինչ այնպիսի էր գործեալ. զի բա-
„ զումք թերևս և' գահավէժ զանձինս արարին, և 'ի
„ ծով ընկեցին, և սուր 'ի լանջս մխեցին, և խեղդ
„ անձանց արկին, և բազում այսպիսի տեսարանօք լի
„ էր ժամանակն այն. այլ ա̄ծ զախտս նց կուրացոյց
„ առ չիմանալոյ զդաւն:
„ Վա̄յ 'ի միջոյ վարմից վաղեաց, և ո̄ղ եղջերու 'ի ձե-
„ ռաց որսորդաց փրծեալ... սրացաւ ոչ 'ի գլուխ լե-
„ րին, այլ 'ի բուն իսկ երկնից գագաթն, ուր չէր իսկ
„ հնար նց մատչել. և ապա անդուստ նայեցեալ 'ի նա,
„ զի ձեռնունայն 'ի բաց գնային, խնդայր յոյժ՝ զան-
„ հուատիցն տեսանելով զամօթապարտութիւն.... որք
„ արդեամբք ուսան, եթէ ոչ առ մարդիկ, այլ առ ա̄ծ
„ էր մարտ նց:
„ Յովսէփ յորժամ 'ի տիկնոջէ իւրմէ վանեալ լինէր.
„ զզգեստն ըմբռնեալ 'ի պիղծ ձեռաց առ խուժադուժ
„ կնոջն երբեմն թողեալ՝ արտաքս ելանէր մերկ. իսկ
„ աս և ոչ ըմբռնել զմարմինն թողացոյց անառակ ձե-
„ ռաց, այլ 'ի վեր եղեալ մերկ հոգւով, և զա̄ք մար-
„ մինն թողեալ առ թշնամիս, 'ի կարի անհնարութիւն
„ արկ զնա.... Մինչդեռ կենդանին էր, յուսային
„ յաղթել նմա ամենեքին նք. իսկ յորժամ վախճանե-
„ ցաւ, յայնժամ յառաւել անհնարութի անկան. զի
„ ուսցին, եթէ մահ վկայից՝ յաղթութի (է) վկայից:
„ Եւ այն ինչ հանդիպեր, զոր օրինակ եթէ ալիք ա-
„ մանք զնաւն 'ի բերան նաւահանգստի դառեալ՝ բեւրա-
„ պատիկ վաճառուք և պատուական մարգարտօք լի,
„ հանդերձեալ իցեն ընկղմել զնա և սուզանել, և 'ի
„ խուսափել անդ նո̄ 'ի կոհակաց ջրոց՝ սաստութե̄
„ այնր բռնութե̄ արագագոյն ես 'ի նաւահանգիստ անդր
„ յուղարկեցի. յարենման այսմ և երանելին պեղագիա...
„ իսկ

„ իսկ մարմինն նորա վայրաբերեալ քան զամ փայլակն
„ լուսափայլ՝ զաչս բլլբուցանէր բանսարկուին. զի
„ ոչ մեզ այնպ կայծակն յերկնից արձակեալ ահաւոր
„ գտանի, որպ մարմին վկային քան զամ կայծակն ահա-
„ գին՝ գողացուցանէ զգլխաւորն փողանգս .... Ընկեալ
„ գնէր այնուհետև մարմինն՝ ոչ 'ի մահճի, այլ՝ 'ի
„ գետնի. բայց չէր անպատիւ 'ի գետնի եդեալն, այլ
„ ինքն գետինն էր պատուական, զի զայնչափ փառաց
„ արժանացեալն մարմին ընկալաւ. և նովին իսկ գետ-
„ նատարածութբ պատուական ևս էր մարմինն. զի որ
„ վն քոյ նախատինք՝ զառաւելութն մեզ ընձեռեն պատ-
„ ուոյ: Արդ անկեալ գնէր յանձուկ գետնի կուսա-
„ կանն մարմին՝ քան զամ ոսկի մաքրագոյն. և հրեշ-
„ տակք բոլորեալ կային զնովաւ, և հրեշտակապետք
„ զամ պատուէին. և քն ինքնին անդ էր ... Ընկեալ
„ գնէր՝ մեծագին հանդերձ պատանաց ունելով զմար-
„ տիրոսութն, զարդու զարդարեալ խոստովանութն,
„ քան զամ ծիրանի պատուական՝ պատուականագոյն առ-
„ կեալ զիւրեաւ պատմուճան. և զայն կրկնակի, ըղ-
կուսութեան և զմարտիրոսութեան ...

„ Քան զարքունական սրահս պայծառագոյն է առ ա-
„ մենեսին գերեզմանն այն, ուր եդեալ կայ է մարմին
„ առաքինութբ և ածպաշտութբ կեցեալ: Եւ այսմ
„ գուք ձեղէն վկայք. զի ընդ մեծատանց շիրիմս՝ թէպէտ
„ և ոսկեհանդերձս, իբրև ընդ այրս (աւազակաց) քե-
„ րեալ անցանէք. իսկ առ սրբուհիս այս բազում յօ-
„ ժարութբ ընթանայք. զի զմարտիրոսութն և զխոս-
„ տովանութն և զկուսութն փոխան ոսկի հանդերձից
„ զանձամբ արկեալ՝ մեկնեցաւ յաստեացս վկայուհին ||:

Այսպ յորդորէ բերանն ոսկի զունկնդիրս իւր, զի որպ
տարեկան տօնախմբութբ կատարեն զյիշատակ սրբուհ-
ւոյս՝ հաւակելով զառաքինութն նր յամօթ հեթանո-
սաց, նոյնպէս և նմանօղ լինիցին սրբութն նր. * զի
• այսպէս (ասէ) և զտօնս այսմիկ զմեծագոյն առ-
• ցուք ճաշակ, և զնա վկայուհին յառաւելագոյն յոր-
• դորեսցուք խնամարկութն (զմեզ), ճմարիտ պատ-
• ուով պատուելով զնա ||:

Այսոքիկ յառաջին ընդարձակագոյն ճառի ոսկեբերանին,
որ կայ տպագրեալ յունարէն և լատիներէն. կայ նր և
ճառ երկրորդ համառօտ 'ի նոյն վկայուհին, որ լատի-
ներէն միայն գտանի 'ի գործս նր. հատ. Ա. Երես. 591.
թղ և առ Սուրիոսի, նոյնպիսի պանծալի բանիւք յօրի-
նեալ.

ոչ՝ ծայրայեղ խոտորումն լինի, եթէ ոք կարծիցէ՝ թէ ասելովք զատոյելեանցն սերմանեն զվրիպութն, առ որս գիւցազնական համարեալ էր անձնասպանութիւն ․ որպ է տեսանել յանիմաստ վճռութեան իմաստնոյն Սենեքայի ։ Այդ արժան է լսել և զզօրաւոր սաստաշունչ մեծին Օգոստինեայ 'ի լուծումն դժուարապատում խնդրոյս ։

Բանք սրբոյն Օգոստինեայ վճռողութիւնք յօրինուածոյ հարցմանց զանձնասպանութենէ 'ի պատճառս կուսութեան ։

" Այլ քան զամ պայծառ է դնել և հաստատել ( տես
,, 'ի Ա գիրս ․ յղ․ քաղաքին Այ․ գլ․ 16 ), թէ առաքինու֊
,, թիւն՝ որով լինի ուղիղ կեալ, յաթոռոյ անտի հոգւոյն
,, իշխան հրամանատար է անդամոց մարմնոյն ․ և մար֊
,, մինն՝ նա լինի գործածութիւն նա կամաց ․ և 'ի կալ֊
,, մեալ կամաց անդրդուելի և հաստատուն, զի՛նչ և
,, գործեսցէ այլ ոք ըստ մարմինն կամ 'ի մարմինս, յորմէ
,, չկարիցէ խորշել՝ առանց իւր մեղաց, կրօղն ազատ է
,, 'ի յանցանաց ․․․ Եւ մի կարծեսցի եղեալ նաև հան֊
,, դերձ կամօք հոգւոյն՝ այն ինչ, որ գուցէ չկարացել֊
,, նել առանց հեշտութեան իմիք մարմնոյն ։
,, Եւ սակայն ( տես 'ի գլ․ 17 ․ անձնասպանս ) հանդերձ
,, այսու ամիւ, մի՞ այն իցէ գուցէ մարդկայինն՝ որ ոչն
,, կամիցի ներող լինել կանանց, որք անձամբ զանձինս
,, սպանին, զի մի կրեսցեն ինչ յայնպիսեաց անտի ։ Եւ
,, ( ըստ հակառակն ) եթէ կանայք ոմանք ոչ կամեցան
,, անձնասպան լինել, զի մի լինիցի ապիրատութեամբ ան֊
,, ձին խորշել յօտարին ոճրագործութենէ, որ ոք զայդ 'ի
,, յանցանս գրեսցէ նց, ինքն ո՛չ է ազատ 'ի յանցանաց
,, անմտութեան ։ Զի եթէ չէ՛ օրէն առանձնական իշխա֊
,, նութեամբ սպանանել զմարդ կամ մեղաւոր ․․․ ապաքէն
,, և որ զանձն իւր սպանանէ՝ մարդասպան է ․ և այն֊
,, չափ առաւել մեղապարտ գտանի 'ի սպանանել անդ֊
,, զինքն, որչափ առաւել անմեղ իցէ ինքն յայնմ մա֊
,, սին՝ յոր վա կամի զինքն սպանանել ․․․․ Եւ առ 'ի
,, մի՛ անձն՝ որ ոչն արար ինչ չար, ինքն ինքեան չար
,, առնիցէ, և անձնասպան լինելով՝ սպանող լիցի ան֊
,, մեղին, որպ զի մի կրեսցէ ինչ 'ի մեղաւորէն ․ և յան֊
,, ձին իւրում գործեսցէ զանձնական մեղս, որպ զի մի
,, գործեսցի 'ի նմա մեղք օտարին ․․․․․
,, 'Ի բաց կացցէ մոլորութն այդպիսի ( տես 'ի գլ․ 18 ),
,, և

,, և աստուստ առաւել խրատ առցուք, թէ ոչ կորնչի
,, սրբութիւն մարմնոյ 'ի կալ մնալ սրբութեան հոգւոյն.
,, և և խանգարմամբ մարմնոյն (իբր յարտաքին պա-
,, տահարաց, զորոց խօսի կանոնս). ապա կորնչի մար-
,, մնոյն սրբութիւն յապականիլ հոգւոյն սրբութեան, թէև
,, մարմինն անշաղախ մնայցէ։ Սմին իրի չէ՛ և չէ՛ արժան
,, կնոջ պատժել զանձն կամաւոր մահուամբ, յորժամ
,, բռնան լինիցի նմա առանց իւրեք հաւանութեան իւրոյ.
,, և խանգարեսցի օտարին մեղօք, մինչափ ևս առաւել
,, յառաջ քան զիւրագործութիւն։ Մի՛ լիցի գործել զմար-
,, դասպանութիւն առոյգ, ուր տակաւին բուռն չարութիւն՝
,, և այն օտարին, 'ի կախ կայ և անստոյգ ||։

Այսպէս բազմօք ցուցանէ 'ի Գլ. 20. թէ չիք բնաւ ելին իրա-
ւացի պատճառ անձնասպան լինելոյ քրիստոնէի. և 'ի
Գլ. 22. թէ մոլորեցան հեթանոսք՝ որք մեծանգամ զանձ-
նասպանութիւն մեծանձնութիւն առդնէին. զի է առա-
առաւել նշան փոքրոգութեան, վատասրտութեան, և չկամե-
լոյ ամօթ կրել առ մարդիկ վա պէսպէս պատճառանաց։
Եւ 'ի վր բերէ. * Իսկ արդ ասիցես, բազումք չոքան
,, զիւրովի, զի մի 'ի ձեռս անկցին թշնամեաց։ (Պինի).
,, Չէ՛ աստանօր խնդիր մեր, եթէ եղեալ իցէ արդեօք
,, այդպիսի ինչ. այլ թէ արդեօք արժա՛ն իցէ լինել։
,, Այսպէս ողջամիտ բանն նախապատիւ ունի լինել և
,, քան զօրինակս. և բանին ձայնակից լինին և օրինակք.
,, այլ այնպիսիք, որք այնչափ առաւել արժանի են
,, հետևելոյ, որչափ առաւել գերազանց են բարեպաշ-
,, տութք։ Ո՛չ նահապետք, ոչ մարգարէք, և ոչ առա-
,, քեալք գործեցին զայդ (անձնասպանութիւն). Քրիս-
,, և ինքն իսկ քս, յորժամ ազդ արար նց՝ զի 'ի կրել
,, անդ զհալածանս փախիցեն քաղաքէ 'ի քաղաք. կարող
,, էր խրատ տալ նոցա զիւրովի երթալ՝ զի մի 'ի ձեռս
,, անկցին հալածչաց։ Բայց արդ՝ եթէ նա զայս ոչ
,, պատուիրեաց և ոչ ուսոյց, զի իւրքն զայնօրինակ փո-
,, խեսցին յաստի կենաց, որոց խոստացաւ պատրաստել
,, 'ի փոխման նոցա օթևանս յաւիտենականս, զոր և է
,, օրինակս 'ի դէմս մեզ ածցեն հեթանոսք՝ որ ոչն ճա-
,, նաչեն զԱծ, յայտնի է՝ թէ այս չէ՛ օրէն որոց պաշ-
,, տեննն զմի Ած ճշմարիտ ||։

Եւ 'ի Գլ. 25. ուր քաջ ցուցանէ, թէ ոչ լինի մեղօք
խորշել 'ի մեղաց, 'ի վր բերէ. * Ո՛չ այնպէս անմա-
,, նայցէ, մինչև ասել. այժմէն մեղիցուք, զի մի գուցէ
,, յետոյ մեղանչիցեմք. այժմէն իսկ գործեսցուք զմար-
,, դա-



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Ղունկիանոսի կամ Ղոնգինոսի հարիւրապետին . ընդ նմին և Ղոնկինոսի զինուորին :

Հ . Յ . Հոկտ . 16 : Լ . Մարտ . 15 : Ճառընտր . Ա . ՉԿԴ = ՉԿԵ . և Բ . ՉԼԵ = ՉԽԴ : Բոլլանդեանք՝ հեղինակէն . և բաժնեալք . 'ի Է հատ . մարտի . եՂ . 376 = 390 . և 736 = 740 : Նախատիպս երկուց ենծայցէ . յորմէ և ձեռագիր . և այլք :



ՂՈՒՆԿԻԱՆՈՍ ԵՒ ՂՈՆկինոս է մի և նոյն անուն . որ 'ի յունաց կոչի Լոնգինոս , և 'ի հռովմայեցւոց Լոնճինոս . զոր և ըստ հելլենականին մա՛րթ է ստուգաբանել տիգաւոր . բայց չէ՛ յայտ , թէ այսու միով անուամբ մի՞ ոք միայն իցէ հաւատացեալ յաւուր անդ խաչելութեան Ք̃ի , եթէ երկու . կա՛մ որ նոյն է , արդեօք ա՞յլ իցէ հարիւրապետն , որ ասաց , արդարև Ա̃յ որդի էր սա , և ա՞յլ զինուորն՝ որ խոցեաց զկողս Ք̃ի , և հաւատաց 'ի տեսանելն զկրկնավտակ աղբերս , եթէ մի և նոյն անձն : (1)

Պատճառ տարակուսանացս է նախ , զի ուր յայսմաւուրքս Հայոց և յունաց առանց յիշե-

Լոյ զգլխաւորն՝ յիշեն զՂունկիանոս կմ զՂոն-
կինոս հարիւրապետ հաւատացեալ և վկայ-
եալ վն քնի, համեմատեցին աւանդ յիշելոյ
զհարիւրապետն՝ յիշեն զՂոնկինոս զինուոր,
որ խոցեաց զկողս քնի, և հաւատացեալ մար-
տիրոսացաւ. բայց ոչ առաջինն, նոյնպէս
և երկրորդն ասի նահատակեալ ՚ի կապա-
դովկիա: Երկրորդ, զի ուր տօնացոյցք մեր
յայտնապէս զառաջինն նշանակեն այսպէս,
* Ղունկիանոսի հարիւրապետին, որ հա-
ւատաց ՚ի խաչելութեն քնի ‖, Ճառընտիրք
մեր ըն խորագրով՝ * Վկայաբանութի սբյն
Ղոնկինոսի հարիւրապետի և վկայի ‖, պատ-
մեն՝ թէ նա ինքն խոցեաց զկողսն յսի, և
տեսեալ զնշանսն տմ՝ հաւատաց. և այնպի-
սի պատմութի առաջի դնեն, որ տմրէ տարբեր
է ՚ի վկայաբանութէ հարիւրապետին, զոր
գրէ մեծանունն եսիքիոս երեց եհմացի ՚ի
չորրորդ և ՚ի հինգերորդ դարու, և միաձայն
ըն այնմ՝ զոր այլք գրեն զգլխաւորէն:
Նա զի այսօրինակ այսպէս, հարկ համարեցաք
յերկուս տրոհել զՂունկիանոս և զՂոնկինոս
(կմ որ նոյն է, երկուս զՂոնգինոս դնել ըն
բոլլանդեանց), հարիւրապետ մի, և զի-
նուոր մի, և զերկոցունց զվարս ուրոյն ու-
րոյն աւանդել ՚ի կարգիս. և ըն նմին տեսա-
նել զաւանդս այլոց՝ որք երևին նոյնացու-
ցանել:

Թարգմանութեան ոճոյն Պ. Լոնգինոսի ատենաբանի, այսինքն Պ. Լոնգինոսի հռետորականին, բանից խոնարհական ճառօրէն : (2)

Տաղուժեն վկայից շարագրութիւք · քանզի զի զոր օրինակ պատկերահանացն նըրկարք զտեսիլս իմն նմանաձեւեալ քաղաքաց, և զմեծութիւս աշտարակաց, և զկերպարանս արանց և կանանց, է զի մանկահասակս և է զի ծերունիս, է զի արքայականս և է զի սոսկականս՝, է զի տխրադէմս և է զի զուարթածաղիկս ցուցանեն · ՟Նն նմին օրինակի և վկայական մրցանացն պատմօղք բանից՝ զպարուն ոգւոյ և զտարազ առնացի և զ'ի դժնդակս տեւողութիւն աներկիւղ և անվեհեր և անկքելի, և զառ 'ի 'քնէ մարտակցութիւն առնն իջեալ, է զի զքաղմութիւն նշանաց, և է զի զպայտապատում հարստութիւն շնորհացն 'ի բանս, լսելեացն առնեն յանդիման :

Իսկ արդ զղունկիանոսի (կամ ըստ յոյն բնագրի՝ զլոնկինոսի) զճառ իմաստնոյն և առաքինւոյն զանհամեմատ վկայութեան՝ որ վն քնի, յորմէ հետէ սկսաւ խոստովանել զնա, զիա՞րդ ՟Նն արժանւոյն պատմեցից : Զի յորժամ երկիւղին պաշարեալ՝ ուրացեալ լինէր զնա ողջոյն իսկ դաս առաքելոցն (3), և կաղք՝ զորս յոտին կացոյց, կոյրք՝ զորս լուսաւորեաց, և բորոտք հանդերձ նոքօք, զորս 'ի պխտակոտ մորթոյ և 'ի մարմնոյն անմաքրութեց ազատեաց, և այլք՝ զորոց զաղէտս դա-

դարեցոյց , և զցաւս փարատեցոյց , և առ լաւագոյն գիտութիւն յարդարեաց , սք ամենեքին նախ քան զտեսարան խաչին ահարեկեալք՝ ձմեռնային նաւակոծութեան ներքոյ անկանէին ։ Այլ խոստովանութիւն պատուական և ամենապաշտ հարիւրապետին Ղունկիանոսի զօրանայր 'ի լսելիս սնոտի և խաբեբայ ժողովարանին հրէից . զի ասէր , արդարև այ որդի է սա ։ Ով զի ոչ 'ի Պիղատոսէ ակնածեաց 'ի կաշառեցելոյն հակառակ քսի (4), և ոչ զահ այնպիսի խաժամուժին գրեաց ինչ կմ զանգիտեաց 'ի բազմութենէ անհուն բիւրուցն նց ։

Եւ արդ ժամ է , զի գրեսցի գեղեցիկ նահատակութի նց . զոր որք միանգամ 'ի սկզբանէն ականատեսք էին՝ ճառեցին , և ազգին՝ որ զկնի՝ աւանդեցին , և անտի յորս զկնի . և այսպէս մինչև առ մեզ հասեալ Ղունկիանոսի վկայութեն բանք , որպս մարգարիտք ոմանք անարատք՝ որ հարսնարանին քսի զարդարիչք՝ պահեցան ։

Արդ յորժամ զզօրականսն , զորս խնդրէին , ետ Պիղատոս՝ 'ի պահպանութի գերեզմանի միածնի որդւոյն այ , Ղունկիանոս իշխան էր նց . զի ինքն իսկ էր՝ որ և զխաչն քսի պահեաց զօրականօքն , որ ընդ իւրև ։ Այլ 'ի լընել յարութեն քսի , զորօրինակ մեզ ածային աւետարանացն գիրք աւանդեցին , իբրև պատմեցին զօրականքն իշխանաց և ծերոց հրէական ժողովոյն զեղեալ սքանչելիսն , ակնածեալ նց 'ի ժողովրդենէ , և խորհեալ

չև

չիջուցանել զսքանչելիսն, արծաթ յոյժ ե-
տուն զօրականաց՝ զբրպարտել զյարութն քնի.
այսպէս և զպիղատոս հաւանեցուցին ընչիւք
բազմօք լինել զայն զբրպարտութիւն։ Նայց
ղունկիանոս նախամեծար առնէ զբանն ճըշ-
մարտութէ. ոչ էառ զոսկին՝ որ հակառակ
քնի, և ոչ զմամոնայն նախապատուել քան
զնն հանդուրժէր. ոչ աւելասատացուէ ծա-
ռայեալ՝ 'ի խորս նր մահաբերս զանձն ար-
կանէր, և ոչ զզբրպարտութէ սուտ ընդդէմ քնի
յանձն առնոյր, որ զադամ կանգնեաց, և
զմահ եսպան, և զմեռեալս կենդանացոյց։
Նա այսոսիկ պիղատոս և ձոխք հրէից խո-
ցոտեալ ոչ խթանաւ՝ խնդրէին պատճառս
հակառակ երանելւոյն ղունկիանոսի. և ոչ
ունէին պարապ. զի էր ղունկիանոս ականա-
ւոր 'ի բովանդակ զինուորական գնդի։ (Տ)
Ապա այնուհետև խորհեցաւ թողուլ քնի լի-
նել, 'ի բաց լուծանէ զգօտին կայսեր, և
յայնմ հետէ 'ի տան նստի երկու զօրակա-
նօք, որք ընդ նմա և երանելի նահատակու-
թեն ժառանգակիցք եղեն, քարոզք եղեալք՝
որոց տեսինն և լուան՝ ահագին նշանացն։
Նու թողեալ զէնմ՝ դարձ արար հանդերձ
նոքօք ('ի հայրենիս իւր), և լինի կապա-
դովկացւոցն Տի քարոզ քաջ. ոչ թովմաս
հնդկաց, հռովմայեցւոց պետրոս, ասիաց-
ւոց յովհաննէս, պօղոս յեղմէ մինչև 'ի լիւ-
րիկէ, և այլք այլոց, աւետարանել զքն և
զօրս առ 'ի նմանէ և 'ի նմա կատարել խոր-
հուրդս։

«ութեն ժառանգութեւ․ այս մկրտութիւն է, յետ որոյ
«ոչ ոք յանցանէ։ Անցէ՛ զմեզ ջուր, որ բնաւորեցաւ
«վերստին ծնանել զմարդիկ․ անցէ զմեզ ջուրն, որ
«կոյսս յարգարէ․ անցէ՛ զմեզ ջուրն, որ զերկինս բա-
«նայ, զոսկերս ծածկէ, զմահն պահարկէ, մարտիրոսս
«կացուցանէ։ Զքեզ հաստիչ եւիցս ած՝ աղաչեմք, զի
«մի՛ և զանշիջանցեալ մարմինս անհոգիս ցրեսցեն ալիք․
«մի՛ մահն զատանիցէ զմեռեալս, զորոց զկեանս ոչ զա-
«տոյց սէրն․ այլ եղիցի մի միաբանութիւն անշարժ․ մի
«մահ, և մի թաղումն նմանապէս։
«Զայս ասացեալ, և առ փոքր մի զկայ առեալ, լանջ
«ջիւք պատեալովք 'ի ծածկոյթ պարկեշտութեն, և յա-
«նարգել ձեռամբ՝ ձեռն 'ի ձեռն տալով ոտն պարաւորք՝
«յառաջեն 'ի գետամէջն․ անդր ուղղեալ զգնացս՝ ուր
«ուղխք էին յորդագոյն, և խորք զառ 'ի վայր։ Ոչ ոք
«'ի նոցանէ զոտս նահանջեաց, ոչ ոք զընթացս կասե-
«ցոյց, ոչ ոք զննեաց զկառուցման ոտից․ Ի հանդիպումն
«ցամաքի նեղեալք, Ի հուննս դժկամակք, ընդ խորս
«խորախք։ Եւ էր տեսանել զբարեպաշտ մայրն, զի զըս-
«պէր զձեռան յօդիւք, խնդայր Ի դրուականն, խի-
«թայր Ի պատահումն, մի՛ գուցէ կորզեսցեն յորձանք
«'ի ձեռաց իւրոց զզաւակս իւր։ Զայսպիսի քեզ, ա-
«սէր, քո՛ զոհս պատարագեմ, զնախադասս ողջախո-
«հութեն․ զառաջնորդս ճանապարհի, և զընթացակիցս
«նահատակութեն։
«Բայց ո՞ ոք Է արժանաւոյն զարմացի Ի անչափ հաս-
«տատութեն սոցա 'ի կենդանութե, ուր և մահացեալք
«անշարժ պահեցին զդիրս մարմնոց։ Ո՛չ ջուրք զգիտ-
«կուռս մերկացին, և ո՛չ սրընթացութեն գետոյն խա-
«ղացոյց զնս․ այլ առաւել մայրն որ՝ թէպէտև 'ի ըղ-
«ձայուէ զրկեալ զթափիրուե, բայց տակաւին պինդ
«ունէր զողջագուրումն, և զբարեկրօն յօդուածն՝ զոր
«զապեալն էր՝ և ո՛չ մահուամբ թուլացուցանէր․ այլ
«զի որ զպարտս կրօնին էր վճարեալ, ժառանգ թող-
«լով զբարեպաշտութեն վախճանեցի (կմ՛ վարձատրեա-
«ցի)․ զի զորս 'ի մարտիրոսութե էր զօդեալ, մինչ
«'ի շիրիմ անմեկնելի պահէր||։

Արդարև պանծալի՛ են բանք որ վճռապաս երկոցունց՝ մի քան զմի, ո՛չ միայն յարգարացուցանել, այլև կատարեալ գովութե վկայական մահուան պսակել զպերճագեղս և զնմանօղս ն՛ր․ այլ գործ է ողջամիտ ընթերցանելեաց ողջմտութե իմանալ զմիտս բանիցս․ այս թէ

ոչ՝

ոչ՝ ծայրայեղ խոտորումն լինի, եթէ ոք կարծիցէ՝ թէ ամբիծք զառաջինեանցն սրբանցն զվիճակութիւն, առ որս դիւցազնական համարեալ էր անձնասպանութիւն. այլ է սեպանել յանիմաստ վիճակութեան իմաստնոյն Սենեկայի։ Այս արժան է լսել և զզօրաւոր աստացուցածս մեծին Օ-գոստինոսի 'ի լուծումն դժուարապատում խնդրոյս ։

Բանք սրբոյն Օգոստինոսի պախարակողք յօրինուածոյ հերձեալս զանձնասպանութիւն 'ի պատճառս նուաստութեան ։

* Այսու քան զԺամ պարտ է գնել և հաստատել (տես
,, 'ի Ա գիրս. յզ. քաղաքին Այ. գլ. 16), թէ առաքինու-
,, թիւն՝ որով լինի ուղիղ կեալ, յաթոռոյ անտի հոգւոյն
,, իշխան հրամանատար է անդամոց մարմնոյն. և մար-
,, մինն՝ նա լինի գործածութեամբ նա կամաց. և 'ի կալ
,, մնալ կամաց անդրդուէլի և հաստատուն, զի՛նչ և
,, գործեսցէ այլ ոք ընդ մարմինն կամ 'ի մարմնի, զորմէ
,, չկարիցէ խորշել՝ առանց իւր մեղաց, կրօղն ազատ է
,, 'ի յանցանաց ... Եւ մի կարծեսցի եղեալ նաև հան-
,, դերձ կամօք հոգւոյն՝ այն ինչ, որ դուցէ չկարացլի-
,, նել առանց հեշտութեան իմիք մարմնոյն ։
,, Եւ սակայն (տես 'ի գլ. 17. անձնասպանէս) հանդերձ
,, այսու ամենայն, մի այն իցէ գութ մարդկային՝ որ ոչն
,, կամիցի ներող լինել կանանց, որք անձամբ զանձինս
,, սպանին, զի մի կրեսցեն ինչ յայնպիսեաց անտի ։ Եւ
,, (ընդ հակառակն) եթէ կանայք ոմանք ոչ կամեցան
,, անձնասպան լինել, զի մի լինիցի ապիրատութեամբ ան-
,, ձին խորշիլ յօտարին ոճրագործութենէ, որ ոք զայդ 'ի
,, յանցանս դրեսցէ նց, ինքն ոչ է ազատ 'ի յանցանաց
,, անմտութեան ։ Զի եթէ չէ օրէն առանձնական իշխա-
,, նութեամբ սպանանել զմարդ կամ վնասել ... ապաքէն
,, և որ զանձն իւր սպանանէ՝ մարդասպան է. և այն-
,, չափ առաւել վնասապարտ գտանի 'ի սպանանել անդ
,, զինքն, որչափ առաւել անմեղ լիցէ ինքն յայնմ մա-
,, սին՝ յոր վա կամի զինքն սպանանել .... Եւ առ 'ի
,, մե՛ անձն՝ որ ոչն արար ինչ չար, ինքն ինքեան չար
,, առնիցէ, և անձնասպան լինելով՝ սպանող լիցի ան-
,, մեղին, այլ զի մի կրեսցէ ինչ 'ի մեղաւորէն. և յան-
,, ձին իւրում գործեսցէ զանձնական մեղս, այլ զի մի
,, գործեսցի 'ի նմա մեղք օտարին .....
,, 'Ի բաց կացցէ մոլորութի այդպիսի (տես 'ի գլ. 18),
,, և

,, և սատուցեալ տաւել խրատ տալուք, թէ ոչ կորնչի
,, արդարութիւն մարմնոյ 'ի կալ ձևալ սրբութեան հոգւոյն.
,, Եւ և խանդարմամբ մարմնոյն ( երբ յարտաքին պա-
,, տահարաց, զորոց խօսի կանխաւ)․ այլ կորնչի մար-
,, մնոյն սրբութիւն յապականել հոգւոյն սրբութեան, թէև
,, մարմինն անշաղախ մնայցէ: Արդ իրի չէ և չէ արժան
,, կնոջ պատժել զանձն կամաւոր մահուամբ, յորժամ
,, բռնաւ լինիցի նմա առանց իւրոց հաւանութեան իւրոյ,
,, և խանդարեսցի օտարին մեղօք, որչափ ևս առաւել
,, յառաջ քան զիրագործութիւն: Մի լիցի գործել զմար-
,, դասպանութիւն ստոյգ, ուր տակաւին բուռն չարութիւն՝
,, և այն օտարին, 'ի կասկած կայ և անստոյգ ||:
Այսպէս բազմօք ցուցանէ 'ի գլ․ 20․ թէ չիք բնաւ իշխա-
նացի պատճառ անձնասպան լինելոյ քրիստոնէի․ և 'ի
գլ․ 22․ թէ մոլորեցան հեթանոսք՝ որք միանգամ զանձ-
նասպանութիւն մեծանձնութիւն առնէին․ զի է առաւ
առաւել նշան փոքրոգութեան, վատասրտութեան, և չկամե-
լոյ ամօթ կրել առ մարդիկ կամ աղէտալից պատճառանաց:
Եւ 'ի վր բերէ․ * Իսկ արդ առիցես, բազումք չոքան
,, զխեղդեալ, զի մի 'ի ձեռս անկցին թշնամեաց: (Պլինի)․
,, Չէ աստանօր խնդիր մեր, եթէ եղեալ իցէ արդեօք
,, այդպիսի ինչ․ այլ թէ արդեօք արժան իցէ լինել:
,, Այսպէս ողջամիտ բանն նախադասելի ունի լինել և
,, քան զօրինակս․ և բանին ձայնակից լինին և օրինակք․
,, այլ այնպիսիք, որք այնչափ առաւել արժանի են
,, հետևելոյ, որչափ առաւել գերազանց են բարեպաշ-
,, տութեամբ: Ոչ նահապետք, ոչ մարգարէք, և ոչ առա-
,, քեալք գործեցին զայդ ( անձնասպանութիւն )․ Քրիստոս
,, և ինքն իսկ քն, յորժամ ազդ արար նց՝ զի 'ի կրել
,, անդ զհալածանս փախիցեն քաղաքէ 'ի քաղաք, կարող
,, էր խրատ տալ նոցա զխեղդել երթալ՝ զի մի 'ի ձեռս
,, անկցին հալածչաց: Բայց արդ՝ եթէ նա զայս ոչ
,, պատուիրեաց և ոչ ուսոյց, զի իւրքն զայնօրինակ փո-
,, խեսցին յաշխարհէ կենաց, որոց խոստացաւ պատրաստել
,, 'ի փոխման նոցա օթևանս յաւիտենականս, զոր և է
,, օրինակս 'ի գէմս մեզ ածցեն հեթանոսք՝ որ ոչն ճա-
,, նաչեն զած, յայտնի է՝ թէ այս չէ օրէն որոց պաշ-
,, տեն զմի ած ճշմարիտ ||:
Եւ 'ի գլ․ 25․ ուր քաջ ցուցանէ, թէ ոչ լինի մեղօք
խորշել 'ի մեղաց, 'ի վր բերէ․ * Ո՞րք այնպէս անմտա-
,, նայցէ, մինչև ասել․ այժմէն մեղիցուք, զի մի գուցէ
,, յետոյ մեղանչիցեմք․ այժմէն իսկ գործեսցուք զմար-
,, դա-

,, Ինքն պատուհասն, եթէ առանց հրամանի գործիցէ,
,, նոյնպէս պատուհասեսցի՝ եթէ չառնիցէ զհրամանն:
,, Եւ եթէ այդ այդպէս է՝ 'ի հրամայել ինքնակալի,
,, որչափ եւս առաւել 'ի հրամայել անդ արարչին: Ապա
,, ուրեմն որ լսէն՝ թէ չէ օրէն սպանանել զանձն, թող
,, արասցէ զայդ, եթէ նա հրամայեաց՝ զորոյ հրամա-
,, նաւն արհամարհ առնել չէ օրէն: Միայն թէ տեսցէ,
,, արդեօք աստուածային հրամանն ոչ ինչ բերէ յինքեան նշա-
,, նակ անստուգութեան:

,, Մեք 'ի լուր ականջաց դաշնաւորիմք ընդ մտացն խղճի
,, (կամ իմանամք զայլոց միտս). զգաղտնեացն զդատաստա-
,, տան ոչ ձգեմք յանձինս մեր. ոչ ոք գիտէ՝ զինչ գոր-
,, ծի 'ի մարդն, եթէ ոչ հոգին մարդոյ՝ որ 'ի նմա է:
,, Զայս ասեմք, զայս հաստատեմք, զայս հաւատարմա-
,, ցուցանեմք ամ իրօք, թէ չէ պարտ ումեք կամակար
,, մահ բերել անձին. զի մի՛ իբրու փախչելով 'ի ժամա-
,, նակեան դժպատեհութեց՝ 'ի մշտնջենաւորս անդր ան-
,, կանիցի: Չէ պարտ ումեք և վասն օտարին մեղաց. զի
,, մի՛ սովիմք լինիցի ինքեան ծանուանս մեղանչել, ուր
,, ոչ պղծէր զնա մեղք օտարին: Չէ պարտ ումեք և
,, վասն իւրոցն մեղաց անցելոց, յոր վասն առաւել պիտոյ
,, է կեանքս այս, որպէս զի մարթասցի ապաշխարութեամբ
,, բժշկիլ: Չէ պարտ ումեք և իբրու առ տենչանաց
,, լաւագոյն կենաց, որում ակն ունիմք զկնի մահուան.
,, վասն զի լաւագոյնն այն կեանք զկնի մահուան՝ չընդունին
,, զպարտաւորս մահու անձանց իւրեանց||:

Թող զոր երկրորդէ սբ վկայն 'ի յաջորդ. Գլ. 27. Թէ
չէ օրէն մահ բերել անձին վասն խորշելոյ 'ի կարելի մե-
ղաց. ապաթէ ոչ՝ ասէ, մաքրեալն մկրտութեամբ կամ ապաշ-
խարութեամբ յամ մեղաց՝ իրաւունս ունէր սպանանել
զանձն, զի մի՛ անկցի 'ի նոր մեղս, որպէս գիտէ կամ կաս-
կածի, թէ մարդկօրէն ունի անկանիլ բազում անգամ.
* Իսկ քանզի անպատեհ է զայդ ասել, անպատեհ է ա-
,, մենեւին անձնասպանն լինել: Զի թէ առնել զայդ
,, կամակար մարթ՝ լինէր իմիք արդարացի, անշուշտ չլի-
,, նէր այլ պատճառ արդարացի քան զայդ. իսկ արդ
,,՝ և ոչ սա է իրաւացի, ապա չիք և ոչ մի պատճառ
,, իրաւացի||:

(3) Վն երրորդին պեղագեայ գրի 'ի Հ. Թէ Նուննոս
եպս գրեաց զվարս նր. իմա, ոչ անձամբ, այլ 'ի ձեռն
աշակերտին իւրոյ յակոբայ: Լ. գեկտ. 11. լինի յիշա-
տակ և սրբոյն Նուննոսի, որ եղև դարձուցիչ պեղագեայ:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Վասն Ղունկիանոսի կամ Ղոնգինոսի հարիւրապետին. ընդ նմին և Ղոնկինոսի զինուորին ։

Հ. Յ. Հոկտ. 16 ։ Լ. Մարտ. 15 ։ Ճառընտ. Ա. շկդ = շկե. և Բ. շշը = շխդ ։ Բոլլանդեանք՝ Հենսքէն. և Պափէպրոք. 'ի Բ հատ. Մարտի. էջ. 376 = 390. և 736 = 740 ։ Իոսեփոս Սիմոնեան Ասսեմանի. յորմէ և Մորկելլի. և այլք ։



ՂՈՒՆԿԻԱՆՈՍ ԵՒ ՂՈՆկինոս է մի և նոյն անուն. որ 'ի յունաց կոչի Լօնղինոս, և 'ի հռովմայեցւոց Լօնճինոս. զոր և ըստ հելլենականին մարթ է ստուգաբանել նիզակաւոր. բայց չէ յայտ, թէ այսու միով անուամբ մի՞ ոք միայն իցէ հաւատացեալ յաւուր անդ խաչելութեան Քրիստոսի, եթէ երկու. կամ որ նոյն է, արդեօք այլ իցէ հարիւրապետն, որ ասաց, արդարև Աստուծոյ որդի էր սա, և այլ զինուորն՝ որ խոցեաց զկողս Քրիստոսի, և հաւատաց 'ի տեսանելն զկրկնավտակ աղբերս, եթէ մի և նոյն անձն ։ (1)

Պատճառ տարակուսանացս է նախ, զի ուր յայսմաւուրս Հայոց և յունաց առանց յիշե-

Լոյ զգլխաւորն՝ յիշեն զղունկիանոս կամ զղոնկինոս հարիւրապետ հաւատացեալ և վկայեալ վն քնի, հռովմայեցիք առանց յիշելոյ զհարիւրապետն՝ յիշեն զղոնկինոս զլինաւոր, որ խոցեաց զկողս քնի, և հաւատացեալ մարտիրոսացաւ. բայց ոչ առաջինն, նոյնպէս և երկրորդն ասի նահատակեալ 'ի կապադովկիա ։ Երկրորդ, զի ուր տօնացոյցք մեր յայտնապէս զառաջինն նշանակեն այսպէս, * Ղունկիանոսի հարիւրապետին, որ հաւատաց 'ի խաչելութեն քնի ||, Ճառընտիրք մեր ը խորագրով՝ * Վկայաբանութիւն սրբյն ղոնկինոսի հարիւրապետի և վկայի ||, պատմեն՝ թէ նա ինքն խոցեաց զկողսն յնի, և տեսեալ զնշանսն տմ՝ հաւատաց. և այնպիսի պատմութի առաջի դնեն, որ տմիր տարբեր է 'ի վկայաբանութե հարիւրապետին, զոր գրէ մեծանունն խիւքիոս երեց եմացի 'ի չորրորդ և 'ի հինգերորդ դարու, և միաձայն ը այնմ՝ զոր այլք գրեն զգլխաւորէն ։

Իսկ զի այսուքիկ այսպէս, հարկ համարեցաք յերկուս տրոհել զղունկիանոս և զղոնկինոս (կամ որ նոյն է, երկուս ղոնգինոսս դնել ը բոլլանդեանց), հարիւրապետ մի, և զինաւոր մի, և զերկոցունց զվարս ուրոյն ուրոյն աւանդել 'ի կարգիս. և ը նմին տեսանել զաւանդս այլոց՝ որք երեւին նոյնացուցանել ։

Մարտիրոսութիւն սրբոյն Ղոնկինոսի [illegible], այսինքն Ղունկիանոսի հարիւրապետին, երանելի [illegible] Ճառօրէն : (2)

Բազում են վկայից շարագրութիւնք. քանզի զոր օրինակ պատկերահանացն նը-կարք զտեսիլս իւրեանց նմանաձեւեալ քաղաքաց, և զմեծութիւնս աշտարակաց, և զկերպարանս արանց և կանանց, է զի մանկահասակս և է զի ծերունիս, է զի արքայականս և է զի ռամ-կականս՝, է զի տխրադէմս և է զի զուարթածաղիկս ցուցանեն. ը͞ս նմին օրինակի և վկայական մրցանացն պատմօղք բանից՝ զաւ-րութի ոգւոյ և զտարաղ առնացի և զ՚ի դժն-դակս տևողութի աներկիւղ և անվեհեր և անկքելի, և զառ՚ի՝ ք͞սէ մարտակցութին առ-նա իջեալ, է զի զբազմութիւն նշանաց, և է զի զյայտապատում հարստութի շնորհացն ՚ի բանս, լսելեացն առնեն յանդիման :

Նու արդ զՂունկիանոսի (կամ ըստ յոյն բնագրի՝ Ղոնկինոսի) զՃառ իմաստնոյն և առա-քինւոյն զանհամեմատ վկայութեն՝ որ վ͞ս ք͞սի, յորմէ հետէ սկսաւ խոստովանել զնա, զիւր ը͞ս արժանւոյն պատմեցից : Օ ի յոր-ժամ երկիւղիւ՝ պաշարեալ՝ ուրացեալ լինէր զնա ողջոյն իսկ դաս առաքելոցն (3), և կաղք՝ զորս յոտին կացոյց, կոյրք՝ զորս լուսաւո-րեաց, և բորոտք հանդերձ նոքօք, զորս ՚ի պխառակոտ մորթոյ և ՚ի մարմնոյն անմաքրու-թեց ադատեաց, և այլք՝ զորս զաղէտս դա

դարեցոյց, և զցաւս փարատեցոյց, և առ լաւագոյն գիտութի յարդարեաց, ոք̃ ամենեքին նախ քան զտեսարան խաչին ահաբեկեալք՝ ձմեռնային նուակոծութե̃ ներքոյ անկանէին ։ Այլ խոստովանութի պատուական և ա̃ծապաշտ հարիւրապետին ղունկիանոսի զօրանայր 'ի լսելիս մնոտի և խաբեբայ ժողովարանին հրէից ․ զի ասէր, արդարև ա̃յ որդի է սա ։ Վ̃ զի ոչ 'ի պիղատոսէ ակնածեաց 'ի կաշառեցելոյն հակառակ ք̃ի (4), և ոչ զահ այնպիսի խաժամուժին գրեաց ինչ կմ̃ զանգիտեաց 'ի բազմութե̃ անհուն բիւրուց նց̃ ։

Եւ արդ ժամ է, զի գրեսցի գեղեցիկ նահատակութի նր̃ ․ զոր որք միանգամ 'ի սկզբանէն ականատեսք էին՝ ճառեցին, և ազգին՝ որ զկնի՝ աւանդեցին, և անտի յորս զկնի ․ և այսպէս մինչև առ մեզ հասեալ ղունկիանոսի վկայութե̃ն բանք, որ̃պս մարգարիտք ոմանք անարատք ՝ ը̃ն հարսնարանին ք̃ի զարդարիչք՝ պահեցան ․

Արդ յորժամ զզօրականսն, զորս խնդրէին, ետ պիղատոս՝ 'ի պահպանութի գերեզմանի միածնի որդւոյն ա̃յ, ղունկիանոս իշխան էր նց̃ ․ զի ինքն իսկ էր՝ որ և զխաչն ք̃ի պահեաց զօրականօքն, որ ը̃ իւրև ։ Այլ 'ի լինել յարութե̃ն ք̃ի, զորօրինակ մեզ ա̃ծային աւետարանացն գիրք աւանդեցին, իբրև պատմեցին զօրականքն իշխանաց և ծերոց հրէական ժողովոյն զեղեալ սքանչելիսն, ակնածեալ նց̃ 'ի ժողովրդենէ, և խորհեալ

չև

չիջուցանել զսքանչելիսն , արծաթ յոյժ ետուն զօրականաց՝ զըպարտել զյարութն քնի . այսպէս և զպիղատոս հաւանեցուցին ընչիւք բազմօք ըունել զայն զըպարտութի : Բայց ղունկիանոս նախամեծար առնէ զբանն ճըշմարտութե . ոչ էառ զոսկին՝ որ հակառակ քնի , և ոչ զմամոնային նախապատուել քան զած հանդուրժէր . ոչ աւելաստացուէ ծառայեալ՝ 'ի խորս նր մահաբերս զանձն արկանէր , և ոչ զգըպարտութե սուտ ըդէմ քնի յանձն առնոյր , որ զադամ կանգնեաց , և զմահ եսպան , և զմեռեալս կենդանացոյց : Եւ այսոսիկ պիղատոս և ճոխք հրէից խոցոտեալ ոչ խթանաւ՝ խնդրէին պատճառս հակառակ երանելւոյն ղունկիանոսի . և ոչ ունէին պարապ . զի էր ղունկիանոս ականաւոր 'ի բովանդակ զինուորական գնդի : (5)

Սա այնուհետև խորհեցաւ ամիւ քնի լինել , 'ի բաց լուծանէ զգօտին կայսեր , և յայնմհետէ 'ի տան նստի երկու զօրականօք , որք ըն նմա և երանելի նահատակութեն ժառանգակիցք եղեն , քարոզք եղեալք՝ որոց տեսինն և լուան՝ ահագին նշանացն : Իսկ թողեալ զէնս՝ դարձ արար հանդերձ նոքօք ('ի հայրենիս իւր) , և լինի կապադովկացւոցն [illegible] քարոզ քաջ . ոչ թովմաս հնդկաց , հռովմայեցւոց պետրոս , ասիացւոց յովհաննէս , պօղոս յեթեմէ մինչև 'ի լիւրիկէ , և այլք այլոց , աւետարանեալ զքն և զօրս առ 'ի նմանէ և 'ի նմա կատարեալ խորհուրդս :

Իսկ հրէայքն չորք այրեցեալք նախանձու
և դրդեալք 'ի սրտմտութէ, ոչ կարէին տա-
նել զերանելւոյն ղուկիանոսի զվկայութին,
որ տարածանէր ընդ բազում կողմանս երկրի։
Յայնժամ հրապուրեցին զպիղատոս՝ գրել
առ կայսրն ընդդէմ երանելւոյն ղու-
կիանոսի, եթէ ստարոտիս խորհի 'ի հռով-
մայեցւոց արքայութէն, և անտես արարեալ
զպատերազմական զինուք՝ զքսն քարոզէ
թագաւոր՝ ազգաց. և ահա բանիւք որ մե
նր՝ ելից զիւր հայրենիս և զՅն։ Ընդ գր-
րոյս ընդ այսմիկ առաքեն և ինչս, և զղու-
կիանոսի մահն խնդրեն, յանկուցանելով
զլսելիս կայսեր։

Այլ ահա հրովարտակ արքունի 'ի հրէաս-
տան առ պիղատոս հասանէ ընդդէմ ղուկիա-
նոսի և որոց ընդ նմա, եթէ որոց ապախտ ա-
րարեալ իցէ զզինուք, սրով զգլուխս նոցա
բառնալ հրամայեմք։ Աստի փութով մե-
ծաւ տայ պիղատոս զհրովարտակ կայսեր 'ի
ձեռս արքունեկաց մահու. որոց ձեպով յու-
ղի անկեալ՝ 'ի կապադովկացւոցն երկիր ժա-
մանեն. և տեղեկացեալք՝ եթէ 'ի հայրե-
նի ագարակին իմաստասիրէ ղուկիանոս և
ձգնի 'ի հանդարտութե, յոյժ քաղաքական
իրաց զանձն օտարացուցեալ, իսկ և իսկ յա-
գարակ անդր հասանեն, մեղմով զհրաման
պիղատոսի և զկայսեր կատարել կամեցեալ,
զի մի 'ի փախուստ անձապարեսցէ ղուկիա-
նոս (6)։ Այլ այնպէս յանկարծակի 'ի վր հա-
սին առն, ոչ այլում ումեք պատահեալք. և

և ոչինչ ոչ ումեք իշխեցին զեկուցանել յո-րոց ՚ի ձեռս ունէին · ապա մատուցեալ և պա-տեալ զղունկիանոսիւ, ոչ գիտելով՝ եթէ նա է խնդրեալն յիւրեանց և ՚ի պիղատոսէ, հարցանել սկսան, ո՞ւր ղունկիանոսն իցէ ։ Իսկ երանելին ըստ յայտնելոյ նմա ածային հոգւոյն զհանդէսն առաջիկայ՝ ասէ ցնոսա ·
Եկա՛յք զկնի իմ, և ցուցից զնա ձեզ ։
Յայնժամ յանձն իւր զուա՛րթացեալ տրն ղունկիանոս՝ որպէս արժանն էր, և ՚ի պատա-րագ մարտիրոսութեան ձեպեալ, ասէր ցանձն իւր · Իբրև զի գեղեցիկք են ոտք աւետա-րանչացն խաղաղութեան, աւետարանչացն բա-րութեան · արդ զերկինս տեսից բացեալ, արդ նկատեցից զփառս հօր, արդ զանճառելին տեսից զճառագայթ հօր զհոգի (7) · արդ ա-սացից, տէր յս քս ընկա՛լ զհոգի իմ, որպէս ստեփաննոս նախն ՚ի վկայս · զորոյ զմեծա-պայծառ ձայնն լուա՛յ արձակեալ · արդ յեդեմն վերին ՚ի վեր ելից յոսկիպարիսպն, ՚ի հայրենիս հրեշտակաց, և ՚ի մայրաքղքն համօրէն սրբցն դասու՝ ծափաձայն հնչմամբ յաղթողական նուա՛գաց և արքունի յաղթա-նակաց · արդ մերկանամ զկաւեղէն սպա-մուճանս, և զբազմահառաչ կապանս մար-մնոյս ՚ի բաց դնեմ · և փոխիմ յապականու-թենէ, զի յանապականութիւն ձգիմ · և երթամ ՚ի նաւահանգիստ անդր կենաց՝ ուր սրբցն բնակարան ։ Ով արդ ցնծա՛ ո՛վ անձն, զի հանդերձեալ ես երթալ առ քո արարիչն և տէրն · ցո՛յց զուա՛րթ զդէմս քո ժամուս պի-

տոյից, և զհիւրս քո աւետաբերս այսպիսի բարեացս մարդասիրանօք հիւրընկալեցուք ուրախութե̅, և մեծահաց առաջի դիցուք սեղան՝ որոց 'ի թշուառականն ընթրիս զմեզ կոչեն ։

Զայսոսիկ առ ինքն ասացեալ ղունկիանոսի՝ զառ նա եկեալսն ընկալաւ 'ի տուն իւր . և հիւրընկալեալ պայծառապէս, և զուարթագին և շնորհաւոր յոյժ երեսօք ճաշակեալ ը̅ նմ̅ 'ի սեղանի անդ՝ զոր առաջի եդ նց̅, յետ ընթրեացն հարցանել սկսաւ ղունկիանոս, յի՞նչ պէտս եկեալ իցէ նց̅ ։ Եւ նք̅ երդմունս 'ի նմանէ պահանջէին առ 'ի չհրապարակելոյ զբան իւրեանց, և չմերկանալոյ զխորհուրդն՝ զոր հաւատան նմա, ասեն . գրեալ է կայսեր առ պիղատոս, զի ղունկիանոսի հանդերձ ընկերօքն երկու զօրականօք գլուխն հատցի ։

Եւ նորն ասէ . և ո՞յք այնոքիկ իցեն ընկերք ղունկիանոսի . և իմացեալ՝ թէ նք̅ են, ոյք հրէական կաշառաց չետուն տեղի՝ զք̅ս նախապատուելով, բազում փութով գրէ առ նմ̅՝ վաղվաղակի առ ինքն հասանել, մեծաց բարեաց կցորդ լինել ը̅ նմա ։ Եւ այսպէս զոր մի և երկու ասպնջական եղեալ նոցա ղունկիանոս զուարթութե̅ յաւուրն երրորդի առեալ ածէ զնմ̅ յագարակ անդր, ուր մնայր նց̅՝ զորս կոչեաց ։ Եւ իբրև գիտաց մերձ լինել, պատմեաց նոցա, որպէս ինքն իսկ է ղունկիանոսն՝ զոր խնդրէին ։

Իսկ նք̅ զառաջինն անհաւատային . այլ յետ

այնո-

այնորիկ հաւատացեալ՝ յարտաքուստ հարկա-
նէին, փետէին զհերս իւրեանց, և աղեգա-
րով ձայնիւ առ պունկիանոս բարբառէին .
զի՞ քեզ հաճոյ թուեցաւ ո՛ բարեկամ ձեռ-
նարկութիւն այդպիսի . զի՞ է՝ զի զեկեալդ 'ի
քո սպանումն 'ի տուն քո ընկալար . հի՞մ հա-
ւելորդն 'ի խողխողել զքեզ ընթրիս յար-
դարեցեր մեծահաց, և սեղան եդեր առա-
ջի, ո՛չ զմի օր, այլ և զերկուս և զերիս . մի-
թէ ո՞չ տեսանէիր, եթէ գինի քո հանդեր-
ձեալ է խառնիլ ընդ արեան քո՝ յորոյ եաք 'ի
խնդիր ։ Իսկ այժմ զի՞նչ պարտ է ասել, և
զի՞նչ առնել կամ խորհել վ՟ն քո մարթա-
ցուք . եթէ զնա խաղաղութ՟բ, վարձ փոխա-
նակ հիւրասիրութեանդ ընկալեալ 'ի մէնջ ըդ-
մահու արձակուրդ . զի մեք սուր 'ի վ՟ր դը-
նել քո չիշխեմք . պատկառիմք յաղէն, ամա-
չեմք 'ի հացէն . երկնչիմք յ՟այ՝ որ գիտակն
է հիւրասիրութեանդ . լա՛ւ իցէ մեզ միշտ մը-
տանգի կրել 'ի պիղատոսէ՝ քան եթէ զպուն-
կիանոսիդ բառնալ զգլուխ ։ Իսկ զիա՞րդ լի-
նիցի մեզ յա՟մ 'ի կեանս մաշիլ 'ի խղճէ մը-
տաց, և ճաշակիցս մեզ տեսանել զանուա-
նեալսն արիւնախանձ դևս . զիա՞րդ լինիցի
մեզ ձեռն մխել 'ի քեզ . վ՟ն զի ընդարմանան
մեր ո՛չ միայն ձեռք, այլ և ոտք, և բոլոր իսկ
մարմին մեր, եթէ զայդ գործեսցուք, եթէ
սպանօղք բարերարին և ասպնջականին լի-
նիցիմք ։

Օ այնորիկ ն՟ք առ երանելին պունկիանոս
ասէին . այլ ո՛չ ի՟իք հաւանեցուցանէին

զզուարթամիտ՝ և զքաղցրասիրտ նահատակն յետս կալ 'ի մրցանաց, որ մծ էին և փրկչին յի քի. այլ անվեհեր արութ առնէ նց պատասխանի. Մ՚ի՛ լիցի ձեզ կամիլ, զի ես մատնիչ կենաց երևեցայց, կամ փորձիչ գտայց շնորհաց. ո՛չ եղէց ես զայլ՝ զոչխարացն ընտրութի լքեալ, և ո՛չ երբէք ուրացայց՝ զոր միանգամ եդէ խոստովան. ո՛չ մթացուցից զփառսն զայն՝ զոր տեսի տմտանիչ տարերաց (8). և մի՛ լիցին դատաւորք հոյլք արարածոց, ո՞վ թէ ապստամբ լինիցիմ 'ի նմանէ՝ որ մծ երկինք քօղարկեցին զերեսս իւրեանց, և արեգակն ելոյծ զղամբարացն կառս. տի՜ն էլիք զասպարէզ լուսոյ, և գիշեր բռնութ 'ի ներքս մուծաւ. զի ծանրութե խաչին ոչ հանդուրժէր, և զհրէականն ծծամարտութե ոձիրս տեսեալ՝ քերէր անցանէր։ Օ այսօրինակ ես ինձէն աչօք իմովք տեսի. արդ զիա՞րդ վատնեցից զայսչափ առ իս բարեաց մեծութի. զի և ոչ հրեշտակացն յանդիմանութե ժոյժ ունիցիմ։

Մ՚ինչդեռ զայն խօսէր երանելին ղունկիանոս, հասին զինուորքն երկոքեան ընթացակիցքն՝ պատժակից մահու դատեցեք 'ի կայսերէն։ Ընդ առաջ ել նց զուարթ և կայտառ դիմօք երանելին ղունկիանոս, և համբուրեալ զաչս և զպարանոցս նց միանգամայն՝ ասէ. ուրախ լերուք ո՛վ զինուորակիցք քմ, և յաղթօղք ծծային մրցանաց, և ժառանգորդք արքայութեն երկնից. ուրախ լերուք, զի դուռն երկնից բացաւ մեզ, և

հրեշ-

հրեշտակք ա̃յ հանդերձեալ են ը̃ունել զմեր
զհոգիս, և մատուցանել զնոսին միածնի
որդւոյն ա̃յ: Աւասիկ ջահս տեսանեմ, և
պսակս նշմարեմ, և բրաբիոնս նկատեմ, ո-
րովք յանդիման լինիցուք բեմի փեսային:
Եւ զայս ասացեալ՝ ասէ ցդահիճսն. արդ ե-
թէ ունիք ինչ հրաման, փոյթ կատարեցէք:
Եւ առ վերակացու տան իւրոյ ասաց բերել
նմա զմաքուր պատմուճանն, իբրև 'ի հար-
սանիս և յառագաստ կոչեցելումն. և յոր-
ժամ եկն, զգեցեալ զայն, և ձեռամբ ցու-
ցեալ զշիրիմն՝ յորում հրամայէր դնել զմար-
մինն իւր երանելի, և այնպէս ծունր կրկնել
ուրախութ̃բ, և յարդարեալ զանձն՝ հան-
դերձ երկու ընկերօք իւրովք, որք ը̃ նմա
կատարեցին զյաղթական հանդէս մարտին,
գլխատի յամսեանն հոկտեմբերի ժզ̃. և այն-
պէս վերագրին յերկոսին պարս առաքելոց
և մարտիրոսաց. զի սոցայս արիւնն, և նո-
ցայն բարի նախանձու եղեն հետևօղ:
Յայնժամ առեալ դահճաց զգլուխ սր̃յ Պոն-
տիանոսի՝ բերին զայն պիղատոսի. քանզի և
'ի շնորհս հրէից արարեալ էր նր̃ զայս՝ վս̃
ընչիցն, զոր էառ: Եւ յորժամ ածին դա-
հիճքն զգլուխ սր̃յն յեէ̃մ, հրաման տայ պի-
ղատոս ցուցանել զայն հրէից՝ որք ծարաւի
էին մահու նր̃. և բազում ոսկւոյ վաճառէր
զայն հանդէս՝ սովորելոց գնոց գնել զա-
րիւնս արդարոց: Եւ այսպէս ապա հրամայէ
պիղատոս ընկենուլ զպատուական գլուխ
սր̃յն Պոնտիանոսի արտաքոյ առ դուրս քա-

ղա-

զաքին , զահարկուն գիհաց , զհրեշտակաց
տարփալին , և զհրաշալին տարերաց ։ Անդ
անկեալ կայր առ դուրս իբրև գանձ անկո-
ղոպտելի ․ զի թէպէտև աղքիւս յոյժ էր 'ի
տեղւոջն , անարատ պահեցաւ մեծագին մար-
գարիտն քնի ․ և գերեզման նմին առ ժամա-
նակ մի , մանաւանդ թէ տապանակ՝ աղքիւսն
էր , զի երկայնամտելոյն նոյ մարգասիրի և
յայսմ՝ տնտեսութեն աղագաւ ։

Քանզի կին ոմն այրի յՃէ անտի կապադով-
կացւոց , միամօր որդւոյ մայր , զաչս մօրմնոյ
կորուսեալ , այլ հաւատովք՝ ախտին յաղ-
թեալ , եկն եհաս յեՃմ ը միամօր որդւոյ
իւրում , ակնկալեալ անդամոր երկրպագու-
թն սբ տեղեացն զաչսն անդրէն ստանալ ։
Որդ յորժամ ձեռամբքացի ածեալ յորդւոյ
իւրմէ՝ ժողովեաց զհող երկրին , և յաչս իւր
խորհէր մերձեցուցանել՝ թերևս նովաւ գը-
տանել ակնունելով զլուսադեղ տեսութն ,
յանկարծակի 'ի վր եկն հիւանդութի միա-
ծին որդւոյ իւրում , և 'ի բաց խլեաց զնա 'ի
մայրենի ձեռաց ։

Յայնժամ կրկին խաւար աչաց 'ի վր եհաս
նմին , և իսպառ չիջաւ դառնակսկիծ կրիւք
աղետիցն ․ և ձայն արկեալ ողորմագին՝ ա-
սէր առ նծ ․ մինչև յերբ տր մոռանաս զիս
իսպառ , մինչև յերբ դարձուցանես զերեսս
քո յինէն ․ մինչև ցերբ եդից զխորհուրդս
յանձն իմ , զցաւս 'ի սրտի իմում 'ի տուէ և
'ի գիշերի ․ նայեաց , լուր , ողորմեա ինձ տր
նծ իմ ․ և լոյս տուր աչաց իմոց ․ զի մի եր-
բէք

բնքյաուանելութէ տրտմութե և ցաւոց ընկ-
կլայց 'ի մահ ։ Տէր միթէ ե՞ս միայն 'ի վր̃
երկրի մեղաւոր հանդիպիմ, զի զայսպիսի
սաստիկ դատաստանս յանձին կրեմ. ո՞ր մի-
թէ վատթար ե՞ս իցեմ քան զպոռնիկն, զոր
ընկալար 'ի բերել նր̃ առ քեզ զիւղ անոյշ.
այլ զիս զմիայն չոնաւականս և՛ 'ի լուսոյ կա-
սեցուցեր, և զմիամօր որդեակս իմ առեր.
և ո՞չ է ինձ ուստեք յոյս փրկութե ։

Եւ յորժամ կայր նա 'ի բազում անձկութե
և 'ի սուգ անմխիթար, երևի նմա 'ի քուն ե-
րանելին զսնկիրանոս, և պատմէ նմա զամ̃
ինչ զանձնէ իւրմէ. Եւս եմ ասէ զոնկիա-
նոս հայրապետն, որ դաւանեցայ առ խա-
չին զտ̃րն մեր յս̃ քս̃, եթէ արդարև ա̃յ որ-
դի է սա. ուստի յայտնեմ քեզ, զի պիղա-
տոս սուտ չարախօսեալ զինէն գրգռէ ըզ-
կայսրն, և հատանէ զիմ գլուխ, և այսր բե-
րէ և ընկենու արտաքոյ քաղաքիս. իսկ հը-
րեիցն մանկունք գնով արծաթոյ և այսմ
եղեն ձայնակից ։ Արդ աղբ յոլով կուտեալ
է 'ի վր̃. և քեզ պարտ է պահել զայն ժա-
ռանգութի 'ի բժշկութի. զի ե̃ 'ի վեր հա-
նել քո զայն՝ ստասցիս զաչս քո. և այնպէս
յետոյ յանդիման կացուցից քեզ և զորդին
քո փառօք, զի սուգ քո սփոփեսցի ոչ սա-
կաւ ։

Ի բանից աստի քաջալերեալ կնոջն, միան-
գամայն և հզօրացեալ՝ որպս առաքինի և լի
հաւատով, 'ի գործն կանխեր, առաջնոր-
դեալ 'ի տեղին՝ յոր զաղբան կուտէին, ու̃

ու-

ուսաւ 'ի հաւատարիմ առաջնորդաց՝ որք ունէին զձեռանէ նր. և 'ի ժամանել նոցա 'ի դէմ եդեալ վայրն՝ սկսանի փորել ձեռօք իւրովք. ուստի նախախնամութե՛ն այ իսկոյն դնել զպատուականն այ զգլուխ՝ իսկ և իսկ զարեգակնային տեսս ճառագայթս ։ Եւ ողջագուրեալ և լուացեալ ամ փութով. և մեծագին իւղովք օծեալ, գայ անդրէն 'ի քաղաքն, բերել զպատուականն և զանկապտելի մարգարիտն 'ի տունն՝ ուր ագանէր ։ (9)

Եւ յառաջիկայ գիշերին դարձեալ եկն եկաց առ նմա երանելին Ղունկիանոս՝ ունելով զնր զորդին առ կողիւք իւրովք պայծառ և ժպտեալ, և ոմ զհանդերձ փեսայութե զանձամբ արկեալ. և ասէ ցնա. կին դու, ահա՛ որում տենչայիր. սա՛ է միածին քո որդիդ, զոր յափշտակեալ 'ի ձեռաց համարէիր. այլ ած ազատեալ զնա յաղցաւոր և յառժամանակեայ կենաց՝ 'ի վերին արքայութին զինուորեցոյց. և այժմ ը իս ունիմ զսա, զի 'ի փրկչէն ընկալայ զնա, և ոչ մեկնեցի յաջմէ իմմէ երբեք ։ Եւ արդ առցես դու զգլուխ իմ և զմարմին որդւոյ քո, և ամփոփեսցես 'ի մի տապանակ. և մի՛ ևս այլ լացցես զորդին քո միամօր. զի մեծ փառք տուեալ են նմա ը իս 'ի մարդասիրէն այ, և սեղան նր և պատարագք խորհրդականք, և օրհնաբանք պարք, և ամենաժողով տօնախմբութիւք. և այլ ինչ բազում առ այսոքիւք, որոց անհնար է յերկրի կատարել. իսկ յերկինս, զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ,

լուաւ , և ոչ 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ , զոր
մեզ Ա̄ծ՝ արդեամբք և բանիւք զառ մեզ սէր
իւր ցուցանելով պատրաստեաց :

Զբանս զայսոսիկ մայր պատանւոյն՝ ոպ̄ զս̄բ
մարգարէի ընկալեալ պատգամս , փութա-
նակի յարուցեալ 'ի հայրենիսն ընթացաւ .
և առեալ զպատուական և զս̄բ գլուխն՝ զս̄բյն
ղունկիանոսի նշխարն , եդ շքով և պատուով ,
զոր՛ օրինակ պատուիրեաց նմա Տ̄րն ղունկիա-
նոս , 'ի գիւղն անուանեալ սանդրալիս . Ք̄ղի
անտի էր Տ̄րն ղունկիանոս . վերաձայնելով
յանձին իւրում , և ասելով 'ի սրտի , և լեզ-
ուաւ քարոզելով . Պիտեմ իսկ , զի որոց սի-
րենն զԱ̄ծ , յա̄մի գործակից լինի 'ի բարին .
աչս խնդրեցի մարմնոյ , և Է̄ նոսին և զհող-
ւոյս ընկալայ . ցաւէի Է̄ աղէտս զաւակի , և
ահա ժառանգ ունիմ արքայական փառօք
յանգիմանակաց Ա̄յ . ծիրանազգեաց վերակ-
նեմ պատանեակ , մեծավայելուչ նկատեմ
երիտասարդ : Աստեղատեսիլ մանուկ , և
մօրս ժպտօղ , և առ կողիւ ղունկիանոսի
փայլատակօղ՝ հանգոյն արուսեկի առընթեր
արփիական ճառագայթից . ստէպ 'ի գիշերի ,
և ստէպ 'ի տունջեան երևեալ . և ոչ յա-
նուրջս միայն , այլև յայտ յանդիման երևու-
թանայ ինձ՝ վկայիցն օրինակաւ . իսկ վիճակ-
նո̄ր Է̄ մարգարէից , թէպէտև զվարս մար-
գարէից ոչ եկեաց . և Է̄ ղունկիանոսի է խա-
չազգեաց , և զպաշտելին երկնից արքայութե̄
յանձին բերէ նշան յաղթութե̄ . և 'ի մէջ
հրեշտակաց քարոզէ , և յակումբս հրեշտա-
կաց

կապետաց գոչէ, արդարև ով որդի էր սա,
ով Ղունկիանոսի աշակերտ :

Եւ զոր միանգամ սերովբէք Ղունկիանոսի թողացուցանեն փառաւորել, քանզի և ոչ ընդդէմ դառնան օրհնաբանից սերովբէք և քերովբէք, բարբառի և սա զձայն նուիրական՝ օրհնաբանական, յաղթողական, խորհրդական, ներբողական, արդարև ով որդի է սա. և է և եղիցի. զի զոր միանգամ ունէրն նախ քան զյաւիտեանս, և ՚ի յաւիտեանս ունիցի. ինքն հնացուցանէ զյաւիտեանս, և ինքն մնայ անհնանալի. զի արքայութին նր արքայութին յաւիտենական, և իշխանութին նր յաւիտեանս ոչ եղծանիցի :

Ես իսիւքիս էրէց եչմայ բազմօք խուզարկեալ՝ բազում աշխատութբ գտանել մարթացայ զորս Ղունկիանոսի զհարիւրապետին, այն՝ որ առ խաչին քսի ասաց, արդարև ով որդի էր սա, զվկայութին. և գտի զայն ՚ի մատենին՝ որ ՚ի մատենադարանի նր յարուէին. և շարակարգեցի զխոստովանութին նր ներբողենիւ հանդերձ : Բայց արդ երկիրպագանք նմա հաւատացեալք, զի սա է արդարև որդին Ղունկիանոս հարիւրապետն, որ առ խաչին քսի դաւանեաց զնա. որոյ բարեխօսութբ և աղօթիւք պահպանել լիցին ամենեքեան՝ որք ընթեռնուն զայսոսիկ, և որք ունկն դնեն՝ ՚ի քս յս ՚ի տր մեր. որում փառք և զօրութին, և արքայութին հօր և որդւոյ և սբ հոգւոյն՝ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն :

Դ

Դ· բանից ասսալի իսիւքիոսի բառ առ բառ առ-ձեալ գրէ և մետափրաստէս իւրական ոճով զվկայաբանութիւն նոյն ղունկիանոսի․ զոր և անցուցանէ սուրիոս ՚ի կարգ ամսեանն մար-տի, ուր տօնեն հռովմայեցիք զերկրորդն ղունկիանոս՝ որ և ղոնկինոս զինուոր․ զի կամ չէ գտեալ զվարս երկրորդին, և կամ նոյն համարեալ է զնա ընդ առաջնոյն ։ (10)

Սպ և յայսմաւուրք հայոց նոյնացուցանե-լով զերկոսին՝ պատմէ յընթացս զան-ստոյգն զայն աւանդութիւն, որ կայ նաև առ-յոյնս և հռովմայեցիս յաղագս զինուորին, գրելով ՚ի վարս հարիւրապետին օրինակ զայս ։

Պիղատոս առաքեաց ասէ հրամանաւ կայսեր զօրապետ մի ՚ի կապադովկիա՝ սպանանել զղունկիանոս և զերկու ընկերս նր․ և եկեալ զօրապետն ՚ի սանդրալիս յագարակ ժա-ռանգութեան ղունկիանոսի՝ ստիպէր զնա տղ-քանօք և սպառնալեօք ուրանալ զՔս ։ Իսկ նա արիաբար կայր ընդդէմ բանից նորա, և ասէր․ որ լուսաւորեացն զիս հոգւով և մարմ-նով, նա է ած իմ ։ Ասէ զօրապետն․ զիա՞րդ լուսաւորեաց զքեզ ։ Ասէ ղունկիանոս․ ես կոյր էի միով ականամբ․ և ՚ի ժամ խաչելութե-քնի ես հրամանաւ պիղատոսի ՚ի վն կայի․ և ՚ի խոցելն զնա՝ պատառեցաւ կողն նորա, և ել անտի արիւն և ջուր՝ վկայ անմահ ած-ութեն նր, և կենդանի մեռելութեն․ ուստի ցայտեաց կաթ մի ՚ի կենդանարար արենէ կողին քնի ՚ի խաւարեալ աչս իմ, և լուսա-ւո

ւորեաց զնա . Քն նմին եբաց և զաչս հոգւոյն՝ տեսանել զլոյս ածգիտութեն իւրոյ :

Իսկ զօրագլուխսն այպանեաց զատասայեալսն , և բռնադատէր զնա ուրանալ զՔս . և յոչն հաւանիլ ղունկիանոսի՝ եւ խստագոյն չար-չարել զնա : Այլ եղև՝ զի բանիւ նորին խաւա-րեցաւ աչք զօրապետին . և յորժամ աղաչէր զնոսն՝ լուսաւորել զնա , ասաց ղունկիանոս . եթէ ոչ սպանանես զիս , ոչ լուսաւորին աչք քո : Յայնժամ հրամայեաց զօրապետն գլխա-տել զնա և զերկոսեան ընկերսն ընդ նմա . և իսկոյն բացան աչք զօրապետին . և առեալ զգլուխ ղունկիանոսի՝ տարաւ առ պիղատոս յեմ . և այլն որ 'ի կարգին՝ է քաղուած բա-նիցն խուկքիոսի մի գիւտի գլխոյ նորին 'ի ձեռն կնոջ , որոյ բացան աչքն , և ետես զորդին իւր 'ի փառս Քի սրբոյն ղունկիանոսի :

Արդ այս աւանդութիւն կամ է անստոյգ , թէ որում կարծի առեալ յօտար իմացուածոյ բանից յոմն հաննու աւետարանչի՝ որ զանձնէ ասէ , և ոչ զզինուորէն , թէ * և որ ետեսն՝ վկայեաց Ա . և կամ եթէ ստոյգ դիցի , ըստ որում և գրիգոր ածաբանն կարծի հաստա-տել զնորին յոտանաւորս իւր (11), ոչ հարիւրա-պետի է անուն , այլ՝ զինաւորի . որոյ կայ ա-ռանձին վկայաբանութիւն 'ի ճառընտիրս հայոց և յունաց և հռովմայեցւոց . և ահա ժամ է յառաջ բերել և զայն : Աւր ինչ մի միայն երևի ուղղագրելի , զի մի գոլոյ և զինաւո-րին 'ի գնդէ հարիւրապետին և գաւառակից նմա , որ է զինուորութենն կապադովկացի և

'ի գամբրաց՝ ընդ ձեռամբ պիղատոսի պոնտացւոյ, ոմք երկոցունց մի և նոյն անուն ընծայի, քն ղոնկինոս՝ որ 'ի մեզ ասի ղունկիանոս, նոյնպէս և նոյն ինքն զինաւորն կոչի միանգամայն և հարիւրապետ. որով շփոթի ըսկիզբն պատմութեան երկրորդին ընդ առաջնոյն. բայց ընթացք վկայութեան է գլխովին զանազանեալ, ունելով բանիւն այսպէս :

Պատմութիւն մէյն ղոնկինոսի երկրորդի, որ և ղենգինանոս կմ ղունկիանոս զինաւոր, բանից ճառընտրաց :(12)

Երանելի այրս այս ղոնկինոս կմ ղինգիանոս՝ էր յաւուրս տն մերոյ յի քի՝ զինուորեալ հարիւրապետ (իմա ընդ հարիւրապետութբ). որ և մերձ էր 'ի ժամանակի խաչելութեն. և հրամանաւ խոցեաց զկողն յսի. և տեսեալ զնշանսն 'ի խաչին՝ հաւատաց 'ի տր. և թախեր զկուրծս իւր, (և ասէր մեծաձայն. արդարև որդի այ է սա) : Նա և յետ սակաւ ինչ ժամանակի թողեալ զզինուորութին, համբերութբ տայր զինքն խոկալ զյիշատակարանս տն, և լսեր 'ի նը առաքելոցն զբարեպաշտ հրամանս քի. և ճշմարտութբ խրատեալ՝ ուսաներ զճանապարհն այ. և առեալ զտնագրութի կնքոյն քի՝ ամենևին զինքն նուիրէր այ. առնէր ողորմութիւս, և իմաստութբ կրթեր զմարմին իւր, նը պահեալ զմիտսն երկնական վարուք, և տմ քնական առաքինութբք զարդարեալ, և համբերութբ զունարթագունեալ, պարկեշտ ձեռով

և մեղմ հայեցուածովք, հանդարտ իմանա-լեօք և խոնարհ մտօք. անցաւ մարմնով, և անխռով անձամբ ։ (13)

Յորժամ 'ի գամիրս (կմ՟ ըստ այլոց՝ 'ի կեսա-րիա կապադովկացւոց, որ է նոյն)՝ պարա-պեցուցանէր զինքն 'ի խոնարհ և 'ի միանձ-նականն փառս ամն քաան և ուժ (14). և զհա-զուամս դարձուցանէր յամպարշտութէ յանձ-պաշտութի, և լուսաւորէր բանիւն արդա-րութե. խափանէր և զզօրս կռոցն՝ սերմա-նելով զարբեպաշտ հրամանին նմն ։ Յու այս նմ եկեալ հասեալ 'ի լսելիս դատաւորին սկստւորսն՝ հրամայեաց ածել զնա դատա-ւորին ։

Յու իբրև ածին, սկստուրոս դատաւորն ասէ. զի՞նչ է անուն քո ։ Յու նա կատարեալ մտօք և քաջախորհուրդ առ նմ՝ ասէ. քրիստոնեայ եմ. քանզի պա՛րտ է ասէ յառաջ զքարիոզ շնորհացն քնի խոստովանել զանուն ։ Սկստուրոս դատաւորն ասէ. և ոչ ոք յառաջ քան զքեզ օգտեցաւ յանուանէդ յայդմանէ. արդ ասա՛, զի՞նչ անուն է քո ։ Յու նոյն պճնի տուեալ ասէ. զանկլինոս է անուն իմ ։ Դատաւորն ասէ. յորմէ՞ գաւառէ ես ։ Անկի-նոս ասէ. 'ի սուրացւոց եմ (յս յիսաւրացւոց) ։ Սկստուրոս ասէ. ծառա՞յ ես, թէ ա-զատ ։ Անկիւնոս ասէ. ծառայ էի յառաջ մեղաց, և մարդասէրն նծ յս քս մատակա-րարութե իւրով, և երկրպագելի խաչիւն և կողից կրկին շնորհօք ազատեաց զիս, միան-գամ ջրով, և այժմ արեամբ, եթէ կատա-րե-

: ընծայեց յասպարիզի նահատակութեան :
Դատաւորն ասէ . վասն որո՞յ իրաց եկեալ ես
այսր : Պոնկինոս ասէ . քաղաքացի էի՝ զին-
ուորեալ աշխարհիս այսմիկ . և այժմ զինուորեալ
եմ Տն իմոյ Յն Քն : Դատաւորն ասէ . ո՞ ար-
ժանի արար զքեզ թողութեան 'ի հարկաց քա-
ղաքի , և 'ի զինուորութենէն ո՞ ազատեաց :
Պոնկինոս ասէ . վասն հարկաց քաղաքի աղա-
չեցի յոյժ զեղբայրսն իմ , և առեալ զստաց-
ուածս իմ՝ թողուլ արարին . և տային ինձ
յամի դահեկանս հարիւր . զոր առեալ իմ՝
ծախէի 'ի պէտս աղքատաց . և այժմ աղա-
չեցի զՏէրն իմ Յս Քս զճշմարիտ և զերկնաւոր
թագաւորն , և լուծեալ զիս 'ի կապանաց աշխարհիս
այսորիկ , և զերծուցեալ 'ի մարմնական զին-
ուորութենէս՝ շնորհեաց ինձ հոգևոր կեանս .
զի խաղաղութեամբ վարեցայց աստ , և փառա-
ւորեսցի անուն նորա յիս 'ի մեղաւորս :
Ասէ դատաւորն . եթէ այդ այդպէս է , ա-
զատ և մեծ և փառաւոր ոմն այր ես դու .
հնազանդեա լեր այսուհետև թագաւորաց , և
զոհեա՛ դիցն , և ճաշակեա՛ 'ի զոհիցն . և
վարես դարձեալ զնոյն խաղաղ կեանս քո .
զի մի մաշեսցիս առ սակաւ սակաւ տանջա-
նօք : Պոնկինոս ասէ . ոչ ոք կարէ երկուց
տեարանց ծառայել՝ որք ընդդէմ միմեանց խոր-
հիցին . քանզի իմ Տէրն՝ լաւութեան և հանդար-
տութեան , ժուժկալութեան և անընչութեան , խո-
նարհութեան և ամ առաքինութեան , և ածական
վարուց և յաւիտենից կենաց տուիչ է և ա-
ռաջնորդ . իսկ քո տեարքն զհակառակն խոր-
հին .

հին . ցանկացողք են ամ պոռնկութե և խառ-
վութե , շփոթութե , արծաթսիրութեան ,
խստութե և հպարտութե . և ամ առաքի-
նութե ընդդէմ են կռոցն հնարք . արդ զիա՞րդ
կարեմ զկռոցն գործ կատարել , և խոկալ
յամին իմոյ պատուիրանս : Դատաւորն ասէ .
արդ՝ ոչ դուդ ասես այ անձը , եթէ ընդդէմ
խորհին ածքն մեր և ածն քո , զիա՞րդ հեթա-
նոսութի օգնէ թագաւորաց և դատաւորաց ,
և բարձրանայ փառօք՝ բազմացեալ . իսկ
քրիստոնէութի խոնարհի՝ պակասեալ ան-
պատուութբ :

Դոնկինոս ասէ . տեսանե՞ս , զի հեթանոսու-
թի ընդդէմ է քրիստոնէութե , համբերութե
արգելիչ , զգաստութեան վնասիչ , ածպաշ-
տութե խափանիչ , հաւատոց օտարացուցիչ ,
առաքինութե լուծիչ , մտաց խաւարեցուցիչ .
ամ բարեգործութե և խրատուց քանդիչ ,
սրբութե անձին աղտեղացուցիչ . զեղխ խոր-
հրդոց բնակութի . պատերազմաց գործակից .
ոչ բանիւք և ոչ գործովք , ոչ կրօնիւք և ոչ
խորհրդովք ամփոփէ զմարդ , այլ ամենևին
մոլեկան և այլամիտ կացուցանէ : Արդ՝ եթէ
հրամայես , ասեմ և զմեր քրիստոնէութիս :
Ոկտաւիոս դատաւոր ասէ . բազումս խօսե-
ցար , և ոչինչ իմաստութբ բարձրագոյն բար-
բառեցար . արդ մատուցեալ զոհեա ածոցն
և ճաշակեա՛ 'ի մսոյն . և թողութի առնէ
քեզ ածն քո , և ոչ մեղադրէ . քանզի բռնութբ
թագաւորաց զայդ առնես . վա զի տեսանեմ
զքեզ ամենևին նուաղ և գունատ և անզօր ,
և

և տանջանաց ոչ կարօղ համբերել. գուցէ եթէ սկսեալ ՚ի քեզ դառն տանջանօք, յոչ կարելդ ժուժել՝ ամօթով ՚ի հարկէ զայդ առնես ։

Պոնկիանոս ասէ. եթէ արդարև զայդ առիցես, դու մանաւանդ լեր քրիստոնեայ, և յանձն առնու թագաւորն քո. վս զի թագաւոր մեծ և յաւիտենական զած արդարութբ ծանեար. ապա եթէ հարկանել կամիցի զքեզ թագաւորն քո, ոչ մերձեսցին ՚ի քեզ տանջանք. զի թէ կարի տկար իցես իբրև զիս, մի լիցի քեզ փոյթ. միայն լեր հաւատացեալ. քանզի ոչ զօրանայ ամպարշտութի թագաւորաց և տանջանաց նց ՚ի վր բարեպաշտութե քրի ։

Բարկացեալ դատաւորն՝ ասէ. առէք ուռն ատամնահան, և զատամունս դորա թափեցէք. և սրով զլեզու դորա հատէք. վս զի հայհոյէ զածսն, և արհամարհէ զինքնակալ թագաւորսն ։ Եւ դահճացն արարեալ զհրամայեալսն՝ յարմատոյ վաղվաղակի խլեցին զատամունս նր (15) ։ Իսկ երանելին արիաբար համբերէր տանջանացն վս առ ՚ի քս բարեպաշտութե. և ասէ ցդատաւորն. համարիս ածս դիկուռսն. արդ հրամանն տուր ինձ փշրել զնս, և օգնեսցեն իւրեանց ։ Դատաւորն ասէ. ով չարագլուխ, և քո այդպիսի տանջանս ընկալեալ՝ ընդէր ոչ օգնեաց քեզ քսն քո ։ Պոնկիանոս ասէ. տեսանես ով անզգամ, զի այսքան տանջանս ածեր ՚ի վր իմ, և ոչ բնաւ մերձեցան յիս. որպս և դու իսկ

գիտես. արդ տո՛ւր ինձ իշխանութի, և մանու-
րեմ զղջման քո. եթէ կարասցեն մխասել
ինձ, հաւատամ՚ի նմա՝ եթէ ածք են. ապա
եթէ ոչինչ մարթասցին առնել, և իմ ածն
մխասեսցէ քեզ, հաւատասցես՝ եթէ ճշմա-
րիտ ած նա է։ Ակտաւիոս ասէ. տուեալ է
քեզ իշխանութի ՚ի վն ղծոցն։

Այս առեալ նորա զոնկինսաւ փայտատ կամ
տապար՝ մանրեաց զկուռս, և զսեղանս նց,
և զբրակարանս նց եհեղ։ Այս փայլփաղակի
դևքն՝ որ մտեալ էին ՚ի կուռսն և ՚ի սեղանսն,
՚ի դուրս փախեցին. ոմն ՚ի նոցանէ հարաւ
յիշխանն, ոմն ՚ի քահանայսն, և այլ դևքն
յայլ զօրականսն. և էին ամենեքեան ՚ի մե-
ծի մոլեգնութեան ՚ի միասին, հաչէին և բա-
խեալք ՚ի դիւաց՝ ասէին. զի՞ արիք այդր
զսբդ այ զղոնկինսա՝ հալածել զմեզ յառաջ
քան զժամանակն մեր ՚ի բնակութենէ մերմէ.
և անկեալք առ ոտս սբյն՝ ասեն. գիտեմք
զքեզ՝ ո՛վ ես, ծառայ այ բարձրելոյ զոնկինէ։
Այս սկսաւ երանելին սաստել նց և ասել.
որո՞վ պատճառանօք բնակէիք ՚ի զոհարանս
յայսոսիկ։ Այս դևքն ասեն. գտաք զարդա-
րեալ պատկերս քարեղէնս՝ յորս ոչ էր ա-
նուանն քո, և ոչ նշան խաչին ՚ի վն, որում
դևքն երկիր պագանէք. և գտաք զոհս և
խառնելիս արարեալ յանուն մեր. և ծանօ-
ցեալ զտեղի և զմարդիկ մեր՝ բնակեցաք
աստ. քանզի ուր ած ոչ անուանի, և նշան
խաչին ոչ է ՚ի վն, այն մեր բնակութի է. վսն
աղաչեմք զքեզ սբդ այ, մի հալածեր զմեզ

յանև

յանդունդս ։

Ր.ակ զոնկինոս ցբազմութին՝ որ մերձն կային․
զի՞նչ կամիք․ ունե՞լ զգոսա ըստ, և պաշտել
զորս յամօթ տրարի անուանեալն քոյ, եթէ հա-
լածեմ խապար զպիղծ հոգիսդ․ քեզի տեսա-
նէք զդատաւորդ ձեր զօրութեա՛մբ իմոյ փրկ-
փրեալ և անկեալ յոտս իմ ։ Իսկ բազմութին
աղաղակէր, և ասէր․ մեծ է ածն քրիստո-
նէից․ աղաչեմք զքեզ և մաղթեմք սուրբ այ,
զի թողուր զդեւսդ բնակել ՚ի քաղաքիս մե-
րում՝ ՚ի կորուստ և յապականութի մարդկան ։
Օ այն լուեալ երանելւոյն զոնկինոսի՝ համ
բարձ զաչս իւր յերկինս, և ասէ․ տր յս քս
լուր ինձ ըս բազում մարդասիրութե քո, և
ըս անպատում զթութեդ՝ որ ՚ի վը իմ է․ քանզի
զի գիտեմ, զի յամ ժամ լսես ինձ, և հաւա-
տամ՝ զի յառաջ քան զխնդրելն իմ տաս,
մանաւանդ զփրկութե խնդիրս․ և արդ վը
մերձաւոր բազմութեա, և անարժան ծա-
ռայիս քո, և վը փառաց ածութեդ քո՝ հրա-
մայեա պիղծ հոգւոցս ելանել ՚ի մարմնոցս
յայսցանէ․ քանզի գործք ձեռաց քոց են ։
Իսկ ըն ասել նորին զայս՝ գոչեցին դեւքն, մինչ
չև հանել զարմն՝ յորս մտեալ էին՝ արտա-
քոյ քան զքաղաքն, և հարկանել զնա յեր-
կիր, և ելանել ՚ի նոցանէ մեծաձայն աղա-
ղակաւ․ և այնպէս ողջեցան մարդիկն ՚ի
ժամէն յայնմանէ, և եղև ուրախութի մեծ
՚ի քաղաքին․ և բազումք հաւատացին ՚ի տր՝
պարապեալ սրբոյն զոնկինոսի, և ոչ մեկնէին
՚ի նմանէ ։

Նա յետ սակաւ ժամանակի անամօթն սատանայ թիւրեաց զմիտս դատաւորին, և պատերազմէր ընդ ծառային այ Ղոնկինոսի. և հրամայեաց ածել զնա, և ասէ ցնա. իմացա՞ր՝ եթէ ամ քաղաքն հեռացաւ ՚ի զոհիցն վս քո կախարդութեանդ. և եթէ լուր լիցի այդ թագաւորին, մահապարտ եմք՝ ես և քաղաքս: Յայնժամ բանտապետն՝ որում անուն էր Ափրոդիտոս կմ Ափրոդիսիոս, ասէ ցդատաւորն. որ ետ մեզ զփրկութիւս զայս, և զերախտաւոր քաղաքիս՝ դարձեալ տանջե՞լ ձեռնարկես: Դատաւորն ասէ. դա առ աչօք արար զամ՝ կախարդելով զմիտս մեր: Ափրոդիտոս ասէ. մեծ է ածն քրիստոնէից, և ոչ է առ նմա առ աչօք ինչ ենենգութի. մի թերահաւատեր ՚ի նմանէ, և մի խորհիր չար ինչ ՚ի վր ծառայի նր. զի մի չար ևս ինչ լինիցի քեզ:

Օկտաւիոս դատաւոր ասէ. հատանել հրամայեմ զլեզու քո, զի մի խօսեսցիս այ թշնամանականն: Իսկ Ղոնկինոս ասէր. գոհանամ զքէն տր յն քն, զի ցուցեր և այլ պատերազմօղ վս քո բարեպաշտութեանդ: Եւ մինչդեռ հատանէին զլեզու բանտապանին, յոգւոց եհան երանելին Ղոնկինոս առ ած. և փաղփաղակի ձեռն տն եղև ՚ի վր դատաւորին, և լուծաւ յանդամոց, և կուրացաւ. և տեսանելով զնա բանտապետին՝ զի զրկեցաւ ՚ի լուսոյ, աղաղակեաց և ասէ. արդա՛ր ես դու քն, և ուղիղ են դատաստանք քո: Դատաւորն ասէ. եղբա՛յր Ափրոդիտոս՝ հաւա-

ւա

ւանեցօ զմրն իմ Ղոնկինոս՝ առնել աղօթս վն իմ. զի շատ անխրատեցայ 'ի ծառայսն այ : Ափրոդիտոս բանտապետս ասէ. ո՛վ ամենաթշուառ այր՝ ո՞չ ասէի քեզ, թէ մի՛ խորհիր չար 'ի վր ծառային այ. քանզի ածն մեր անյաղթ է. ո՞վ տեսեր և զիս զանարժանս՝ զի ետ ինձ և լեզուահատ խօսել :

Դատաւորն ասէ. վա՜յ ինձ, զի ո՛չ միայն զաչս կորուսի, այլև սիրտ իմ չարաչար տանջի : Ղոնկինոս ասէ. եթէ կամիս ողորմութիւն գտանել, արա՛գ արագ կատարեա՛ 'ի վր իմ զհրամանն արքունի (16). զի յետ մահուան իմոյ աղաչեսցես զմրն իմ քո, և բժշկեսցէ զքեզ. քանզի ա՛յլ համարձակութիւն ունիմ յայնժամ առ տրն իմ։ Եւ վաղվաղակի վճիռ մահու ետ 'ի վր սրբյն դատաւորն՝ սրով սպանանել զնա : Եւ երանելին Ղոնկինոս տարածեալ զձեռս իւր՝ յաղօթս եկաց իբրև ժամ մի. և այսպէս կատարեցաւ սրբն այ՝ սրով հատեալ զգլուխն, և զհոգին յանձնեալ տն խաղաղութը :

Եւ նոյնժամայն չոգաւ դատաւորն 'ի մարմին երանելոյն Ղոնկինոսի. և անկեալ 'ի վր երեսաց իւրոց՝ յոգւոց հանելով և արտասուելով ասէր. մեղայ տր մեղայ, և զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ. և վաղվաղակի ետես և բժշկեցաւ 'ի ժամէն յայնմանէ : Եւ առեալ զնշխարս ոսկերաց սրբյն՝ պատեաց 'ի կտաւս սրբս, և եդ 'ի հանգստարանի. և հաւատացեալ մկրտեցաւ 'ի քս, և պարապեաց քահանայից բարեպաշտութե՝ փա-

ռա,

տաւորելով զնա՝ մինչև ցմահ : Այս երկու կա-
տարումն նոյն զօնկինոսի 'ի գամիրս՝ այս է
'ի կեսարիա կապադովկիոյ, յառաջ ք̅ զութ
կաղանդացն օգոստոս ամսոյ (17) (յն 'ի 25.
յուլիսի), 'ի դատաւորութեան ոկտաւեայ,
և 'ի թագաւորութեան տն մերոյ յի քի. որում
փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից.
ամէն :

Արդ ըստ այսմ վկայաբանութեան՝ որ տմիւ ա-
րիշ է յառաջնոյն, ինքնին զանազանի եր-
կրորդն ղունկիանոս յառաջնոյ անտի, զի
զօնկինոս զինաւորն 'ի ղունկիանոսէ հարիւ-
րապետէ. և մնայ ասել, թէ մարմին սբյն
զօնկինոսի բերեալ յետ ժամանակաց յարև-
մուտս հանգերձ մասամբ 'ի պատուականն
արեանէ փրկչին, է զինաւորին, և ոչ հարիւ-
րապետին. իսկ թէ զիարդ, արժան է գրել
սակաւուք ըստ քաղելոյ բովանդակաց յայլև-
այլ մատենագրաց :

[illegible] փոխման նշխարաց սէջին ղոնկինոսի
կմ̅ ղունկիանոսի՝ ընդ հանդերձ սբ արեանն տն :

Ցամի տն իբր 804, 'ի մանդուանա քաղաքի
իտալիոյ՝ 'ի փորել զգետինն մօտ 'ի
հիւրանոց մի՝ 'ի վեր երևեցաւ արկղ մի փոք-
րիկ արճճեայ, յորում կայր կամփուռակ կմ̅
անօթ փոքր՝ հանգերձ այսպիսի արձանա-
գրութեամբ. * Արեան ՅԻ ՔԻ || : Յետ սակա-
ւուց գտաւ 'ի նմին վայրի և մարմին սբյ ու-
րումն

րուեմն վկայի՛ լօնձինուս անուն, զի ղօնգինոս կամ՝ ղունկիանոս . յորմէ հաւաստի դատեցան մանդուճացիք, թէ այն է ղօնկինոս զինաւորն՝ որ խոցեաց տիգաւ զկողս փրկչին, կամ դոնէ ղունկիանոս հարիւրապետն՝ որ հաւատաց 'ի ժամ խաչելութեան : Այլ առ այս կէսքն ասեն, թէ նոյն ինքն սրբն բերեալ իցէ ընդ իւր յիտալիա զմասն զայն 'ի պատուական արեանէ փրկչին հոսեցելոյ 'ի կենդանարար կողէ նորա, և յետ վախճանելոյ նորա անդ 'ի մանդուա՝ թաղեալ իցէ առ նմա և անօթ նոյն արեան փրկչին . և կէսք ստուգագոյն ևս դնեն՝ որպէս գրեաց և յովհաննէս միլլոտիչ քերթողն մանդուճացի, թէ յետ կատարման սրբոյն ղօնկինոսի 'ի կեսարիա կապադովկացւոց՝ յանցանել դարուց մարմին նորա բերեալ է ընդ ծով յիտալիա հանդերձ սրբով արեամբն քրիստոսի, և ամփոփեալ 'ի մանդուա 'ի տեղւոջ անդուր և գտաւ :

Գոյ և առ յոյնս այլ աւանդութիւն, զոր յիշատակեն 'ի սեպտ . 10 . թէ յակոբ ոմն հաւատացեալ՝ ունէր 'ի դդմենի անօթ ինչ հաւաքեալ յարենէ և 'ի ջրոյ կողին քրիստոսի . և եթող զայն զանձ 'ի ձեռս երկուց անապատաւորաց . մինչև յետ ժամանակաց անկաւ 'ի ձեռս վարիքսաքայ ձգնաւորի սրբոյ . զոր սպանին երկու արք անօրէնք, և առին զանօթն զայն՝ առ 'ի զօշաքաղել նովաւ ինչս բազումս . բայց ասի՝ թէ ունայնաձեռն ելին չարքն . և ոչ նշանակի՝ թէ զինչ եղև նոյն անօթն այն : Այլ գոյ և նշանակ ինչ, թէ բերեալ իցէ այն

'ի

'ի մանդուա . և անօթն իսկ մանդուացւոց որիշ երևի . և ոչ̃ ասեն քննիչք , չէ՛ ինչ ընդդէմ բազմաւորութ̃ի նշխարաց ս̃ք արեանն . զի թո՛ղ զայլ արիւնս հրաշականս՝ ոյ՛ 'ի խորհրդոյ պատարագին գտանի 'ի տեղիս տեղիս , ոչ̃ և զայն՝ որ բղխեաց երբեմն 'ի պատկերէն ք̃ի խոցելոյ 'ի հրէից 'ի բիւրիտոն քաղաքի, ասին լինել և յայլ տեղիս մասունք ինչ 'ի բուն արենէ կողին ք̃ի . զոր մարթ էր յաւուր անդ խաչելութե̃ հաւաքել սրբազան կն̃ի հողախառն բառնալ յերկրէ՝ եթէ զուննկիանոսի և եթէ զոնկինոսի առ օրին հաւատացելոց , ոչ̃ և յովսեփայ և նիկոդեմոսի, և կն̃ի յովհաննու աւետարանչի և մագդաղենացւոյն . թո՛ղ զի 'ի լուանալն զարիւնազանգ մարմնին փրկչին՝ առ 'ի պատել և խնկել , ո՛չ արդեօք 'ի բաց թողին զայն լուացումն արեան կենարարին . վ̃ոյ ոչինչ մնայ տարակոյս առ իմաստուն քննիչս , թէ գրտեալն 'ի մանդուա ս̃ք նշխար՝ էր 'ի ճշմարիտ արենէն ք̃ի , իրական՝ քան հրաշական :
Որ և գործեաց անդանօր ոչ սակաւ սքանչելիս ը̃ ժամանակս ժամանակս՝ ը̃ հաւատոց մերձեցելոցն 'ի նա . և եղև կրկին և երեքկին յայտնութի նո̃ր զոյգ ը̃ մարմնոյ ս̃բյն զունկինոսի՝ այսպէս :
Յամի տ̃ն 1044, բէատրիկէ կին բարեպաշտ՝ վոնիփակիոսի կոմսի 'ի մանդուա , 'ի շնորհակալութ̃ի ա̃յ վ̃ն ծննդեան բարեյիշատակ զաւակին իւրոյ մաթիլդայ՝ սկիզբն արար շինել տաճարի զեկեղեցի յանուն ս̃ք ս̃յն անդրէի
ա-

տուաքելոյ հանդերձ մենաստանաւ : Այլ եւ եկեղեցւոյն այնմ հին հիւրանոցն կամ հիւանդանոց քաղաքին, ուր գտեալ էին վաղագոյն նախայիշատակեալ ՚նք նշխարք, բայց յերեսաց խառնակութեան պատերազմացն թաւղեալ էին վերստին ՚ի պարտիզի տեղւոյն, մինչեւ իսպառ յանծանօթս մնալոյ :

Այլ եւ յորժամ յամի 1049, ՚ի նորաշէն եկեղեցւոջ անդ սրբոյն անդրէի յաղօթս կայր ծեր ոմն երկիւղած՝ ադալբերտոս անուն յազգէ ալամանաց՝ պաշտօնեայ դրան կոմսին, երեւեցաւ նմա ՚նքն անդրէաս երիցս անգամ ՚ի զանազան աւուրս, եւ յայտնեաց նմ զտեղին՝ ուր կայր ծածկեալ պատուական արիւն քնի. պատուիրելով ասել ցտիկինն, զի տացէ բրել զայն ինչ տեղի ՚ի պարտիզին հիւանդանոցի :

Յայնժամ ՚նք ազդելոյ տիկնոջն՝ ՚ի խնդիր եղեն ՚նք գանձուն. եւ գնաց եպն մարտիաղէս հանդերձ եպսակցօք եւ ամ ուխտիւ եւ մեծամեծօք քաղաքին ՚ի տեղին, եւ մատոյց հանդիսաւոր աղօթս առ ած. եւ ահա ՚ի նմին ժամու սկսաւ շարժիլ հող տեղւոյն բաքանչելապէս, եւ բուրեաց անուշ հոտ անուշութեան. եւ իբրեւ բրեցին փոքր մի, գտին կամարս երկուս. եւ յորժամ բացին զնոսա մրձօք, ՚ի միումն գտաւ տապանակ փոքրիկ կճեայ, յորում էր ՚նք արիւն փրկչին եւ սպունգ. եւ ՚ի միւսումն մարմին սրբոյն ղոնկինոսի. զորս բարձեալ եպսաց ՚ի վր ուսոց իւրեանց՝ բերին յաթոռանիստ եկեղեցին, եւ

հանդ

Հանգուցելոյն 'ի մէջ դասուն. մինչև պատրաս֊ տեսցի տեղի արժանաւոր 'ի տաճարի սրբոյն անդրէի:

Սոյն յայսմ հետէ հանդիսացաւ յոյժ 'ի Ման֊ դուա ուխտ ջերմեռանդական առ նշ. արեանն Քսի՝ երևելի երևելի հրաշիւք. մինչ զի և հայրապետն Հռովմայ Լևոն իններորդ եկն անձամբ 'ի Մանդուա յամի 1053. յերկրպագու֊ թիւն փրկչական արեանն. և բազմաց ջա֊ նացաւ բառնալ զայն և տանել 'ի Հռովմ. բայց անհնար եղև Մանդուացւոց թոյլ տալ այնմ. միայն թողացուցին, զի յետ օրհնե֊ լոյ անձամբ զնորաշէն տաճար սրբոյն անդրէի, և զկնի հանգուցանելոյ անդ զմարմին սրբոյն Լոնկինոսի և զնշ. արեան փրկչին, փոքր ինչ մասն 'ի պատուական արենէ անտի առեալ տարցի ընդ իւր 'ի Հռովմ. որ և եդաւ յեկեղեց֊ ւոյ սրբոյն Յովհաննու Լատերանու:

Բայց քանզի քաղաքն Մանդուացւոց բազում պատերազմունս կրեալ 'ի թշնամեաց՝ բա֊ զում անգամ և վտանգէր, եղեան կործան յա֊ մի 1055, դարձեալ եւս թաքուցանել ընդ եր֊ կրաւ զփրկչական արիւնն հանդերձ նշխա֊ րօք Լոնկինոսի՝ 'ի մէջ կամարաց և մարմա֊ րիոնեայ խորանի, զոր եւս կազմել մտ սոցին իրաց. և այնպէս մնաց 'ի թաքստեան ցդարս երիս:

Ապա յամի 1304, յորժամ եկն յիտալիա կա֊ րոլոս արքայն Բոհեմիոյ՝ առնուլ զպսակ կայ֊ սերութեն, զտեղի կալեալ առ ժամանակ մի 'ի Մանդուա՝ վառեցաւ տենչմամբ մեծաւ 'ի֊ տե֊

տեսանել եւ 'ի պատուել երկրպագութ[եամ]բ զամե-
գլին արիւնն յոր զծածկեալն 'ի վաղուց հե-
տէ. եւ առ հասանելոյ փափաքմանց իւրոց
առանց իրիք խռովութեան՝ էր իւր էառ զիշե-
րայն զոմանս 'ի մեծամեծաց եւ յեկեղեցա-
կանաց, եւ եկեալ հանդերձ գործաւորօք յե-
կեղեցի նորին անդրէի՝ ետ խորտակել եւ բա-
նալ զկատակ եկեղեցւոյն յաջակողմն աւագ
քեմին, ուր գիտէին լինել զնոր նշխարսն ըս-
տոյգ յիշատակարանօք եւ հաստատուն ա-
ւանդութեամբ։ Աւ ահա գտան երկու շիրիմք,
յորս կայր նշ[խարք] եւ պատուական արիւնն նորին,
եւ նոր սպունգն. զորս տեսեալ Թագաւորին,
եւ մեծարեալ համբուրիւ երկրպագութեամբ՝ ետ
անդրէն դնել 'ի տեղի իւր անթերի. ապա
հայեցեալ եւ 'ի տապան սորին պոնտիփոսի՝ էառ
անտի զաջ բազուկն, եւ զմասն ուսոց կամ
գլխոյ նորին. եւ բերեալ զնոսին յեր[կիր] իւր՝ ետ
պարգեւ եկեղեցւոյն բրակացւոց. ուստի փո-
խադրեցան յամի 1645 յամրոցն քարլըշդայն.
տայ եւ մասն ինչ վաղագոյն բերեալ էր յամի
1587. յուլիսպոլն։

Եւս այլ նշխարք՝ որք յանուն նորին պոնտիփոսո-
սի կամ պունկիանոսի յիշատակին լինել 'ի
հռոմ 'ի զանազան տեղիս, թերեւս իցեն
հարիւրապետին պոնտիանոսի։ Նոյ եւ 'ի տալ-
դենիա գտաւ յամի 1626. ընդ երկրաւ ամ-
բողջ 'ի տապանի մարմինն այլոյ համանուն
վկայի՝ արձանագրեալ. * Ա. Պ. (այս է Երա-
նելի վկայն) պոնտիփոս, որ եկեաց ամս Ծ,
հանգեաւ 'ի խաղաղութե, 'ի ժԳ Կ. (այս է կա-
ղան-



# ՏՕՆ ՍՐԲՈՅՆ

## Յովսեփայ Ա՟ծահօր :

( Հ. ապր. 6 : Յ. դեկտ. 25 : ) Ա. մարտ. 19 :
Բոլլանդեանք. անդ : Խորէն. Եղբ. առ սահման
արծր. և այլք 'ի հարց : (1)



ՏՕՆԵՄՔ ԶՏՕՆՆ Ե-
լըն յովսէփ՝ Ածահայր անուանամբ
պատուեալ, ոչ ոք զոմն 'ի կար-
գէ հասարակաց մրդ՝ վերծա-
նութեան վարուց կամ վկայաբանութե, այլ իբրև
Ածամերձ և Ածազգի անձն՝ ծնունեան խոր-
հրդոց խորհրդական և վկայ՝ առանց վարուց
և վկայաբանութե. զի վարք նորա են վարք
Յսի և Մարիամու՝ աւետարանեալ 'ի նք ա-
ւետարանի, տնօրինականքն Ածասեմ, յորս
յիշատակ լինի միշտ Յովսեփու ը Տն և Տի-
րամօր : Ամէն իրի և ոչ 'ի յայսմաւուրս կայ
ուրոյն յիշատակ նր, այլ միայն 'ի տօնացոյցս
եդեալ է յայսմ վայրի ը ղունկլիանոսի հարիւ-
րապետի առընթեր անուանակցելն իւրոյ յով-
սեփայ արեմաթացւոյ, առ 'ի նշանակել զի
մի ելից նր յաստեացս, որ եղև վաղագոյն
քան զչարչարանս քսի. վսյ և մեզ աստանօր
կամ եղև յիշեցուցանել՝ որ ինչ բանք են վր
նր

Նշ առանձին 'ի Տր. աւետարանի :

Արդ երից երանելին յովսէփ՝ հայր կոչեցեալ որդւոյն Այ, այր արդար՝ գլուխ արդարոց, ընտրեալ 'ի հազարաց և 'ի բիւրուց նահապետական դասուց, և պսակ նոցին պարծանաց, որոյ գովութիւն ոչ 'ի մարդկանէ է, այլ՝ յԱյ, էր որդի յակոբայ որդւոյ մատթանայ՝ յարքայական ցեղէն յուդայ, 'ի տանէ դաւթի. վրյ և որդի դաւթի անուանեալ 'ի հրեշտակէն պանծալի անուամբ, որ զկնի սեպհականեցաւ որդիացելոյն նմա յՍի փրկչին Քի :

Եւ էր բնակեալ յովսէփ արդարն 'ի Նազարէթ փոքրիկ քղքն գալիլեացւոց՝ իբր աննշան ոք, յերևելի նախնեաց թագաւորմեց յայն վիճակ սոսկական հասեալ, զի որում 'ի ժամանակի անդ նուաղեալ էր տունն դաւթի վերին տէրութե՝ առ 'ի չմնալոյ ումեք, որ բաւական գտանիցի զի մարմնոյ թագաւորել. որպ զի քաջ հանդիսասցի մերձակայ գալուստ երկնաւոր արքային քՍի 'ի նմին ցեղէ գահակալութե դաւթեանց : Եւ այս այնչափ, զի և յովսէփ յազգատոհմին վիճակի սակի էր՝ արհեստաւոր գոլով ատաղձագործ հիւսնութե 'ի գործարան տան իւրոյ առանձինն. զի եւս քան զեւս քաղցրայարմար հայր անուանեսցի այնմ, որ մեծատունն էր՝ և աղքատացաւ վն մեր :

Եւ զի նմին ձոխ էր սքանչելին յովսէփ հոգեպէս, առաւելեալ յոյժ մեծութե հաւատոց և Աստուածպաշտութե, և գերազանցեալ զամ

եր

երկիւղածովք. այր կատարեալ՝ ոչ միայն
յազգի անդ իւրում ը̅ս արդարոյն Նոյի, այլ
յա̅մ դարս և 'ի ժամանակս. 'ի կատար հա-
սեալ արդարութե̅ օրինաց, և 'ի վեր քան
զօրէնսն օրինաւորագոյն գտեալ՝ ն̅ք և անքիծ
հոգւով և մարմնով. մինչ զի ը̅ս ճշգրիտ տե-
սութե̅ կուսակրօն ճանաչի զա̅մ ժամանակս
իւր. և ը̅ս նմին գեղեցիկ պատշաճեալ 'ի հա-
վանի և 'ի պահապան փառաւորեալ միշտ կու-
սին՝ օրինօք անախտ փեսայութե̅, և 'ի փո-
խանորդ հօրն երկնաւորի 'ի վ̅ր երկրի՝ ան-
զուգական անուամբ հայրութե̅ առ ծոցածին
բանն տղայացեալ յանարատ 'ի կուսէն:
Ապա եթէ յոլովք 'ի վճպաց առաջնոց հա-
մարեցան զնա կանխաւ մտեալ 'ի կարգ Յի, և
որդիս ծնեալ յայլմէ կնոջէ, կարծիք իմն էր
այն գուշակական, այլ ոչ եթէ հաստահիմն
վճպութի. զի որդիս յովսեփու համարեցան
ընդ կարծեօք զանուանեալսն յաւետարանի
եղբարս տ̅ն, որ էին անշուշտ որդիք եղբօրն
յովսեփու՝ ա̅յ կղէովպայ. որոյ կինն մարիամ
կղէովպայ՝ կոչի քոյր մօր տ̅ն. ուր և մարիամ
յակովբայ կոչի՝ վ̅ն գոլոյն մայր յակովբայ
եղբայր տ̅ն կոչեցելոյ. և այն զի՝ եթէ կին
լեալ էր նա յովսեփայ, ունէր կոչիլ յանուն
յովսեփայ՝ և ոչ կղէովպայ. վ̅ս 'ի մեծէն
հերոնիմոսէ և այլոց՝ հասարակաց վճպութե̅
համարեալ է կուսութի̅ յովսեփայ արդարոյ:
Իսկ եթէ ոմանք 'ի դէմս նորա առնին զբան
եսայեայ, թէ մատեանն կնքեալ խորհրդա-
ւոր՝ ա̅յ ն̅ք կայսն՝ տուեալ ցայր գիտագէտ. ա̅ղ
թէ

թէ 'ի յովսէփ ամուսնացեալ է այլում, և նա հրաժարեաց 'ի կարօղ լինելոյ ընթեռնուլ զկնքեալն՝ որ մերձենալ յանփորձ և 'ի միշտ կոյսն, քաջիկ ևս 'ի դէմս նորա է իմանալ զմիւս բան ամոլսածնին, թէ յորժամ նոյն մատեան կուսական տուեալ ցյովսէփ, նա ևս ասիցէ, ոչ գիտեմ զգրոյն, յայտ առարեալ՝ եթէ ամենևին իսկ անգէտ էր ամուսնական կարգի. և որ նմին գեղեցկայարմար գտաւ խօսել 'ի հարսնուէ զհարսն անփորձ և զդուռն կնքել և զպարտէզ փակել՝ անվրտանգ պահպանութիւն մաքուր կուսութեան անձին, և անկասկածելի վերակացութիւն անարատ մօր տն և կուսի:

Եւ այս 'ի վերին խնամոց տնօրինել լինէր. զի այր արդար և ողջախոհ՝ պահապան կարգեալ մօրն կուսութեանց, խնամակալ լիցի պատուոյ նորա առ այնոսիկ՝ յորոց ծածկել էր կուսական ծնունդ ածորդւոյն. ոպ և զառաջինն խորհրդով ծածկեցաւ և 'ի նմին իսկ 'ի յովսեփայ, զի յայտ ուսցի զանօրինակ իրացն զգաղտնութիւն. և առաւել արթնութիւն պահեսցէ զգանձն ծածկեալ յագարակի տան իւրոյ իբրև 'ի ներքին գանձատուն արքունի: Ընդ հանդիսանայր և կատարեալ առաքինութիւն արդարոյն յովսեփայ, յորժամ պէտք եղեն նմա վարանիլ ընդ կուսին 'ի վր խորհրդոյն այսր գաղտնեաց, զի մեզ մի մնացէ տեղի վարանաց. քանզի զոր օրինակ ամենայն կոյսն թէպէտև խօսեցել էր յովսեփու՝ յորժամ ընկալաւ զգաբրիէլեանն աւետիս, բայց

քան

քանզի դաշամբ կուսութե էր հարսնախօսու-
թ՞ին, համարձակ եւ պինի հրեշտակին,
թէ զիա՞րդ լինիցի ինձ այդ աւետումն որդե-
ծնութե, քանզի զայր ոչ գիտեմ. մինչև էառ
զլրումն պատգամաց վն կուսութե ծնանելոյ,
և յայնժամ յանձն էառ զա՛ծամայրութի.
նոյնպս և յովսէփ՝ որ 'ի նոյն դաշն պայմանի
անփոփոխ կայր մնայր, իբրև ետես զկոյսն
յետ դարձի 'ի տանէ եղիսաբեթի՝ եթէ նշա-
նակք են 'ի նմա յղութե, սկսաւ 'ի խորհուրդս
տարուբերիլ անհնարինս. զիա՞րդ լինիցի կու-
սիս յղանալ, որ զայր ոչ գիտէ և ոչ ունի գի-
տել. ոչ և ես զնա ոչ գիտեմ և ոչ ունիմ գի-
տել. եթէ խոտորնագոյն ինչ զնմանէ ածից
զմտաւ, ո՞չ հաւատամ. և եթէ զպատիճ նը
պահել կամեցայց, դժուարանամ անպարտ
առնել զնա նը օրինաց. թերևս լաւ է'ս իցէ
լռելեայն արձակել զնա 'ի տուն իւր, որով
պահի երկոցունցս պատիւ:

Իսկ զի արդարն արդարապէս խորհեցաւ, և
ո՛չ մատնեաց անխորհրդաբար զկոյսն անա-
րատ, արժանի եղև տեսլեան հրեշտակի, և
հաստ զտաւ ծածկութե խորին խորհրդոյն,
և նը ազդելոյ մն՝ էառ յինքն զկինն իւր, նք
պատկեցաւ նը նմա օրինօք. և այնպէս զ նը
օրինաց խօսեցեալն իւր՝ այնուհետև գեր 'ի
վերոյ քան զօրէնսն տեսանէր, և ուրախ լինէր
անճառապէս. և զտուեալն յայ նմա 'ի կնու-
թի զմիշտ կոյսն՝ ո՛չ լոկ ոչ տիկին իւր մեծա-
րէր, այլ ոչ իսկ ամպս տիրածին դշխոյ երկնի
և երկրի. և մն փութով զու՛արթութե 'ի
ծա-

ծառայութեան Աստուածամօր և Աստուածորդւոյն կանխեալ յամ տնօրինականս՝ լցեալ լինէր. ամ շնորհօք և Աստուածահաճոյ քաղաքավարութեամբ, որ 'ի վեր է քան զհասութիւն մերոցս խորհրդոց ։

Այլ ո՞ր բան բաւական իցէ պատմել զանստերութէ արդարոյն 'ի վր տանն այ իբրև 'ի վր տան իւրոյ, և զխնամակալութիւն նորա 'ի վր կուսին և կուսածին որդւոյն, յաւուրս հրաշափառ ծննդեան և յայտնութեան . զի նմին և զհօրն. և զփոյթ անպատմելի յաւուրս հալածանաց և փախստեանն յեգիպտոս, և դարձի անդրէն այսր և անդր, և բնակութեան և սնընդեան 'ի տան անդ 'ի Նազարեթ . որպէս և 'ի տանել զմարիամ և զյս ամ ըստ ամէ յերուսաղէմ 'ի տօնն, և 'ի խնդրել զյս մանուկ երկոտասանամեայ՝ սիրտ 'ի բերան շրջելով ընդ մօրն, մինչև 'ի գտանել զնա 'ի տաճարին . նոյնպէս և յընծայել զյս յաճումն հասակի պատանեկութեան մինչև յերիտասարդութի, գործակից գոլով ունելով զտէրն տերանց, միանգամայն և սպասաւորակից 'ի գործս հիւսնութեան իւրոյ 'ի տղայ տիոց մինչև 'ի չափ հասակի կատարելութեան ընդ մարմնոյ ։ Ո՞ կարէ ասել, ասել զանասելիս և զանպատմելիս երջանկին յովսեփայ . որ անճառ տնօրէնութեան մարդացելոյն այ և ինքեան որդիացելոյ՝ յետ Աստուածամօր ականատես էր անընդմէջ, և հայրաբար ընտածիչ ընտանի . ստէպ հայր անուանմբ կարդացեալ սիրողաբար 'ի միածնէն այ հօր, և ինքն որդի կոչմամբ զնա գգուեալ և յանձանձեալ զճշմարիտ որդին այ և կուսի . և զոր ամ որ-

դիս

դիւական հպատակութեն ընկալեր յարարչէն
երկնի և երկրի ․ ած այնմ, * և եր նմ հնա-
„ զանդ ‖ ։

Նայս ամ և առաւել քան զոյնս յայտնի են
'ի Նոր աւետարանին․ ուր բովանդակել զտցես
զամ զօրութեն օքանչելւոյն յովսեփայ 'ի մի
բան գերադրական ․ զի ասի Յովսեփ այրն մա-
րեմայ ․ զոր օրինակ և լրումն գերածայրեալ
բարձրութե մարիամու այն է, զի է Մայր ած ։
Նույնկանեցեալ փոքր 'ի շատէ յուշ առնել
մտաց մերոց զգլխաւորան յատանձին արժա-
նապատուութեց Նոյն յովսեփայ, եթէ յեր-
կոտասան ականց պսակ կմ պսակ աստեղաց
յերկոտասանից յօրինեն նմա ած ուրումն բա-
նի՝ այս աւանդք աւետարանականք ։ (2)

Նախ՝ զի ոչն յովսէփ էր 'ի թագաւորական
զարմէ, և ժառանգ տանն դաւթի, և զնոյ
ժառանգութեն փոխանցեաց յորդեգրեալն
իւր յս որդի կուսին և այ ․ վսյ և ած աւետա-
րանին մատթէոսի՝ ազգահամար քսի յաբ-
րահամէ սկսեալ, և 'ի դաւիթ արքայ ծագ-
կեալ՝ յայս գլխաւորի ․ * Յակովբ ծնաւ զյ-
յովսէփ զայրն մարեմայ ․ որում խօսեցեալ
զմարիամ կոյս ․ յորմէ ծնաւ յս, որ անուա-
նեցաւ քս ‖ ։ Նոյ և 'ի վեր ընթանալով յազ-
գահամարի ած ղուկասու, յովսէփ դնի իբրև
արմատ՝ յասելն ․ * Յս․․․ որպ կարծէր՝ որ-
դի յովսեփայ, որ յակովբայն․․․ որ դաւ-
թին․․․ որ աբրահամուն ․․․ որ ադամայն,
որ այն ‖ ։

Երկրորդ՝ զի նովին իսկ էր ազգակից մա-

րիամու և յնի . զի որպէս մարիամ էր 'ի տանէ դաւթի , նոյնպէս և յովսէփ . և այն մերձաւոր արեանառուք իրերաց , այնչափ՝ մինչև գնիլ յովսեփայ յազգահամարի անդ յնի՝ փոխանակ մարիամու . զի և ոչ գոյր այլ ոք մերձաւորագոյն քան զարդարն յովսէփ՝ առ 'ի խօսել իւր 'ի կին ըստ օրինաց՝ որպէս զամենայն կոյսն ։ Եւ այս իսկ էր պատճառն ըստ բազմաց , զի հարկ եղև յովսեփու և մարեմայ խորհրդաբար պսակիլ ընդ միմեանս , թէպէտ և երկոքեանն կուսութեամբ՝ Աստուծոյ էին նուիրական ։

Երրորդ՝ զի ճշմարիտ խօսնայր եղև , ըստ խօսեցեալ այր և պսակեալ փեսայ Աստուածամօր կուսի . ըստ որոյ աւետարանն կոչէ զյովսէփ՝ այր մարեմայ , և զմարիամ՝ կին յովսեփայ . ոչ ըստ օրինաց ինչ 'ի մարմնաւոր մերձաւորութիւն սահմանեալ , այլ գերօրինակ խորհրդով կարգեալ . յորում փայլէր խորհուրդ անկիզելի մորենւոյն հրով բոցբոցելոյ , և ջահավառեալ անախտական սէր Աստուածահրաշ հանդիսանայր 'ի միջի՝ ծնօղ ամենայն շնորհաց և առաքինութեանց ։

Չորրորդ՝ զի հրաշափառագոյն ևս էր այսպիսօրէն փեսայութեան յովսեփու՝ շուշանափայլ կուսութեամբ ծաղկեալ 'ի հովիտս մաքրութեան , քան եթէ լինէր որդեծնութեամբ սաղարթացեալ ։ Որ քաջ պարտ է նշանակել , զի թէ չունելն յովսեփայ զաւակս յայլմէ կնոջէ՝ է հաւանելի վիպութեն , բայց անմերձ լինելն առ միշտ կոյսն մարիամ՝ է հաստա-

տուն կնիք հաւատոց ։

Հինգերորդ՝ զի եղև պահապան կուսին ոպ̃ հրեշտակ պահպանողական, և դաստիարակ փրկչին՝ ՚ի գութ ոպ̃ ծնողական, տանուտէր արթուն և պաշտօնեայ հաւատարիմ․ որով ոչ միայն ՚ի մարդկան կարծեաց ազատ պահեցաւ պատիւ անարատ մօր ա̃ն և կուսի, այլև ՚ի բանսարկուէն ծածկեցաւ առ ժամանակ մի գաղտնիք կուսական ծննդեան, ոպ̃ հարքն ասեն ։

Վեցերորդ՝ զի եղև խորհրդազգած խորոցն ա̃յ որպէս ներքին խորհրդական գաղտնեաց անօրէնութեան միածնին․ քս̃ որում խնամուա առնէր զնա հրեշտակն մի՛ երկնչիլ առնուլ առ ինքն զմարիամ կին իւր․ զի որ ՚ի նմայն ծնեալ է ասէ, ՚ի հոգւոյն ս̃բյ է․ և յայտ առնէր նմա, թէ վս̃ այն բանն անմարմին մարմնացաւ ՚ի կուսէ, զի փրկեսցէ զժողովուրդ իւր ՚ի մեղաց իւրեանց․ վս̃յ և պատուիրէր անուն դնել նմա յս̃, այս է փրկիչ ։ Նաև զայլ անձառելի գաղտնիս, որոց հասու լինէր արդարն յովսէփ հանապազօր յընտանի կենակցութենէ և ՚ի խօսակցութէ ա̃ծամօր և ա̃ծորդւոյն ։

Եօթներորդ՝ զի որդոր անուանմբ պարզամիտ վերամբայնի յաւետարանի, ՚ի նշանակ ծայրալէր կատարելութեան նր̃ յա̃ծաբանական և ՚ի բարոյական առաքինութիւ̃ս ա̃մ ։

Ութերորդ՝ զի անուանադրութեան յո̃ր հայրօրինակ պատուով գործադիր կարգեցաւ․ և այս ոչ փոքր պատիւ․ զի ոպ̃ առ կոյսն ա̃ծ

ասա

տեսցաւ 'ի հրեշտակէն, * ահա յղասջիր և ծնցես որդի, և կոչեսցես զանուն նր յս ‖, նոյնպ և առ յովսէփ երկրորդեցաւ. * ծնցի ( կոյսն ) որդի, և կոչեսցես զանուն նր յս ‖։

Իններորդ՝ զի ոչ միայն ականատես, այլև հանդիսակից եղև մեծամեծ խորհրդոց ած-ային տնօրէնութե. զք 'ի ծննդեան փրկչին յայրն բեթղեհեմի՝ ընթացեալ անդր հովուաց ընդ աւետարանութե հրեշտակին, գտին զմարիամ և զյովսէփ և զմանուկն եդեալ 'ի մսուր. նոյնպէս առաջիկայ էր յերկրպագութե մոգուց եկաւորելոց առաջնորդութբ աստեղն երևելոյ. և յութօրեայ թլփատութե, և 'ի քառասնօրեայ գալստեան 'ի տաճարն. և յելանելն ամի ամի յեէմ, և 'ի խնդրել և 'ի գտանել զյս երկոտասանամեայ 'ի տաճարին. և յայլ ամ տնօրէնութիս՝ զամ աւուրս իւր։

Տասներորդ՝ զի որպէս ինքն էր հրեշտակ 'ի մարմնի, նոյնպէս և զհրեշտակս երկնից ունէր ընտանի բարեկամ և ազդարարօղ յամի, մխիթար 'ի հոգս և առաջնորդ 'ի դժուարինս. և ընդ այսմ չորիցս նշանակի յաւետարանի երևիլ նմա հրեշտակին. յորմէ ունիմք իմաստասիրել և զոր ոչն գրեցաւ։

Մետասաներորդ՝ զի ոչ միայն խնամածու և օգնական իբրև ընկեր, այլև գլուխ ձանաչիւր ածամօրն՝ որպ փեսայ օրինաւոր. և ընդ նմին որպ 'ի կուսէն, նոյնպէս և յածորդւոյն զվայելչականն ընդունէր հպատակութի։ Ըստ առաջնոյն ասէ առաքեալն. * զի այր

է գլուխ կնոջ. որպէս և քս եկեղեցւոյ ։ Այս ըն երկրորդին ասէ աւետարանն. * և էր նոցա հնազանդ ։ Այս զինչ քան զայս հրաշալի և անթարգմանելի ։

Երկոտասաներորդ՝ գլուխ մեծի է այն, զի սրբն յովսէփ իրաւամբք ընկալաւ զանուն և զպատիւ ծնաւհայրութեն՝ մրն գոլոյն այր կուսին, որ եղև ծնամայր ։ Օրինակ իմն. եթէ յանդաստանի ուրուք՝ առանց սերման ար-կելոյ՝ շերջ ցորենոյ գտցի վերաբուսեալ հրա-շալպէս, տրն անդաստանին է անկ. նոյնպէս և ծնողին անսերմն յղութ ծնեալ յանա-րատ 'ի կուսէն՝ որ խօսեցեալն էր յովսեփու, ոչինչ տարադէպ վարկաւ կոչիլ որդի յովսէ-փու, և հայր սնուճանել զնա՝ որպ եւտեղա-կալ հօրն երկնաւորի 'ի վր երկրի. և սբ կոյսն 'ի խօսելն ընդ ծնողւոյն՝ ասէր առ նա վր յովսեփայ, հայր քո. ըն այնմ, * ահաւա-սիկ հայր քո և ես տառապեալք խնդրեաք զքեզ ։ Բստ նմին և արդարն յովսէփ իբրև ժառանգ իրաւանց հայրութե հայրաբար խնամարկէր որդւոյն այ և կուսի, և 'ի մե-ռանիլն ժառանգ կացուցանէր զնա տան իւ-րոյ, որ և տուն այ, օրինակեալ 'ի բեթղեհէմ. և ընտանիք յովսեփու ոչ այլ, բայց ծն քանն և ծնամայրն. որ 'ի վեր է քան զտեսութիւն հրեշտակական մտաց, թող թէ հողեղի-նացս ։

Իսկ թէ յորում հասակի էր սբ հայրն յով-սէփ՝ յորժամ էառ յինքն զամենասբ կոյսն, և կամ երբ վախճանեցաւ, ստուգագոյն երևե-քան

քան զամ կարծիս այն՝ զոր գրէ մերս Մով-սէս քերթողահայր առ սահակ արծրունի, աւելով. * Յովսէփ քառասունամեայ էր, ,, մինչ կոյսն յանձնեցաւ նմա . և յերեսուն ,, և մի ամի կենարարին հանգեաւ 'ի նազա- ,, րէթ 'ի տան իւրում‖ : Իսկ այսպէս լինին ամ ամք կենաց յովսեփու եօթանասուն և մի կամ հը . և փախչման նր հանդիպի երկու ամօք յառաջ քան զխաչելութ փրկչին : Իսկ յայնմ միջոցի երկուց ամաց՝ էր գրելոյ նորին Մովսէսի խորենացւոյ , * Սպասաւորէր սբյ կուսին յակոբ արդարն 'ի յովսեփայ յանձնե-լի և առ յովսեփաւ նա հոգայր ծառայութս՝ հեզն և արդարն . մինչև 'ի քնէ յովհաննու յանձնեցաւ ( առ խաչին )‖ :

Որ և սա ինքն յակոբ արդարն՝ եղբայր տն կմ ածեղբայր կարդացեալ , էր գլուխ այնո-ցիկ՝ որք անուանեալ կոչէին եղբարք յի , զի որդիք կղէոփպայ եղբօրն յովսեփայ . որք էի պատմելոյ աւետարանին՝ առեալ է իւ-րեանս երբեմն զմայր տն՝ գնացին 'ի տեսա-նել զփրկիչն յաւուրս քարոզութ նր . և ահա երևելին 'ի նս էր յակոբ արդարն՝ առաւել ընտանի տիրամօր կուսի , պարզապէս մակ-անուանեալ եղբայր տն . Իսկ այլքն առա-ւել կոչէին եղբարք նորին յակոբայ : Թո-ղից զայլ աւանդս արտաքինս, որք ոչն ունին զհաւաստիս : (3)

Միայն չէ ինչ անհաւանելի այն աւանդութ կամ կարծիք բազմաց , թէ ածահայրն յով-սեփ եղև մին 'ի ննջեցելոց անտի սրբց , որք 'ի

ժամու խաչելութեան տ͞ն յարեան, և յետ յարութեան ն͞ր ելեալ 'ի գերեզմանաց՝ մտին 'ի քաղաքն ս͞բ, և երևեցան բազմաց ։ Արդ 'ի ձայն պատահէ և տօնելն մեր զյովսէփ ածահայր զոյգ ը͞ն զունկիանոսի հարիւրապետին և յովսէփայ արեմաթացւոյն՝ հանդիսատեսից այնր մեծահրաշ պահու ։ Նոյա ընտրելի համարին ոչ սակաւք, յաւուր համբարձման փրկչին՝ ընդ նմին վերացեալ յերկինս ոչ միայն հոգւով որպէս ամենայնք արդարոց, այլև մարմնով ս͞րբն յովսէփ. և թերևս վ͞ս իսկ ոչ ուրեք երբէք գտան նշխարք ոսկերացն ն͞ր, բաց 'ի հանդերձից և յայլ ինչ ինչ յիշատակաց և 'ի տանէ ն͞ր՝ որ 'ի նազարէթ. ուր և տեղի գերեզմանի նորա ը͞ն ոմանց 'ի ձորն յովսափաթու ։

Բայց վեհ կնձ մահ ածահօրս յովսէփայ՝ քէ զկենդանութ͞ն ն͞ր 'ի մեռելոց, և զ'ի յերկինս վերբերումն. զի այսոքիկ ամենեցուն մեծ͞ն ս͞րբ յաւուր յարութեան հասարակաց, իսկ օրինակ կատարման վախճանի ն͞ր՝ միում և եթ ինքեան սեպհական, յորժամ առ նմա կային 'ի հոգեվարս յս և մարիամ՝ սիրունք և սիրեցեալք և սիրեցողք իւր գերագոյնք, որդին ա͞յ և մայրն ա͞յ՝ որպէս առ ածահօր. և այնպէս խօսելով ը͞ն նմ͞ա և լսելով 'ի նոցանէ՝ ուրախ և զուարթ յանձն առնէր երջանիկն և քիւրիցս երանելին յովսէփ զհոգին իւր մաքուր 'ի ձեռս յ͞սի, և հրաժեշտ վերջին տայր կուսին անարատի ։ Ո՜ր մեծութիւն, ո՜ր պատիւ, և ո՜ր երանութիւն զուգահաւասար

իցէ

իցէ այսմ ։ Սորին վասն իրաւամբ մք հայրս յովսէփ Ճանաչի զօրաւոր բարեխօս ած հոգեվարաց . և մեզ չիք այլ շնորհ կարևորագոյն քան զայս . վսյ խնդրեսցուք հաւատովք , և առնումք նովաւ աներկբայ . վս զի անշուշտ կատարելով կատարէ զխնդիր ածահօրն յովսեփայ յերկինս , որում որդեպէս հնազանդ եղև զամ աւուրս նր ՚ի վր երկրի յս քս տր մեր և փրկիչ , որ է ՚ի վր ամի ած՝ օրհնեալ յաւիտեանս . ամէն ։

Յայտնի են և առ օրքասէր ուխտաւորս մրյն յովսեփայ անքաւութիք հրաշից նորուն յամ կարիս հոգւոյ և մարմնոյ . մինչև իրաւամբք ասաց՝ որ ասացն , այնչափ թուով պրոբատիկէ աւազանք գտանին , որչափ եկեղեցիք և խորանք և աղօթարանք եղբայրութեց կանգնեալ կան յանուն յովսեփայ ածահօր ։ Յորում սակի յառաջ բերեն բոլլանդեանք զյիշատակարանս ժամանակաց իւրեանց ՚ի ժէ դարու , թէ որպէս ՚ի գերմանիա և ՚ի գաղղիա եղեն բարեխօսութք մրյն յովսեփայ պէսպէս հրաշանշանք . առողջութի ՚ի մահաբեր հիւանդութեց , ազատութի յարկածից ծովու և ցամաքի , ծնունդք ամլոց , դարձ անզղջից և յուսահատ մեղաւորաց , սքանչելի պահպանութի ողջախոհ կուսութեն . բուժումն յամ ցաւուց , և ս և ՚ի մահտարաժամէ ։

Մարգարիտ հռիգաւտ անուն կոյս ՚ի վանաց մրյն եղիսաբեթի՝ որ ՚ի լուգդոն , անկեալ ՚ի վերնատանէ՝ մերձեցաւ ՚ի դրունս մահու յերեսաց ջախջախանաց և արեանն հոսելոյ

յամ կողմանց. և իբրև անյոյս եղև յամ մարդկային դարմանոց, կարդալով առ սրբն յովսէփ՝ եգիտ յանկարծակի զողջանդամ առողջութիւն: Ընդունել հանդիսացաւ այցելութիւն սրբյն առ յովհաննա անգեղեան աբբասուհի վանաց ուրսուլինեայ 'ի լաւդոն. Քզի 'ի հասանել նր 'ի հոգեվարս 'ի կշտացաւէ՝ երևի նմա ածահայրն յովսէփ փայլակնացայտ դիմօք՝ իբրև այր փառացի 'ի հասակի քառասուն կմ քառասուն և հինգ ամաց, և օծեալ զկողս նր՝ իսկ և իսկ առողջացուցանէ զնա բոլորովին, և յարուցանէ 'ի մահճէն. մինչ զի յետ ժամու 'ի վր եկեալ կալվինական բժիշկն, և տեսեալ զնա՝ զի շրջէր կատարեալ առողջութբ, զահի հարաւ. և զայս միայն ասաց, ամ ինչ հնարաւոր է այ. և որ մեծն է՝ բազում սքանչելիք եղեն զկնի 'ի չուխայէ անտի կողից աբբասուհւոյն, յոր մերձեալ էր սրբն յովսէփ:

Ուր թողից և զբազմապատիկ սքանչելիս սրբյն յովսեփայ, զոր 'ի վր անձին իւրոյ եղեալ պատմէ փառաւորեալն 'ի կուսանս սրբուհին թերեզիա, թէ որպս բժշկեաց զնա 'ի զանազան ախտից ցաւոց՝ յորս զամս երեք և կէս տառապէր անյոյս 'ի բժշկաց. և որպ 'ի յետին չքաւորութե վանաց իւրոց՝ երևեցաւ նմա սրբն յովսէփ և քաջալերեաց, և ապա յանակնկալ տեղեաց հասոյց նմա ողորմութիւս. և զկնի դարձեալ երևեցան նմա ամենասրբ կոյս ածածինն, և ածահայրն յովսէփ, և ետուն նմա զձև զգեստու կրօնին:

Ոքան

Սքանչելի եղեն և նշաւորք մասն յովսեփայ առ քարոզս բանին՝ առ հեշտեաւ դարձուցանել զքաղցմունս անհաւատից 'ի նոր Ծի. զորս է ուսանել յայլոց պատմութեանց :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

(1) Օրօրինակ 'ի մեր յայսմաւուրս չիք առանձին վարք սրբոյն յովսեփայ, այլ 'ի կարգի ծննդեան և յայտնութեան տն և այլոց անօրէնութեանց յիշատակաւն նր, նոյնպէս է տեսանել և 'ի բազմաց յայսմաւուրս յունաց. Որ 'ի դեկտ. 25. չնի պատմութն ծննդեանն քնի 'ի վր բերի. * Յայսմաւուր յովսէփ խօսնայր և պահապան ,, կուսին առնու հրաման 'ի հրեշտակէ տյ ||. ոմն և 'ի յաջորդ օրն 26. * Ածածինն փախչի յեգիպտոս ||: Իսկ յետ դարուց 'ի ժամագիրս նոյ յաւելաւ ոչ միայն յիշել զյովսէփ ընդ նախահարս 'ի նախընթաց կիրակէի ծննդեան, այլև նմին յովսեփու սեպհականել զկիրակէն, որ հանդիպի յութօրէս ծննդեան, զոյգ ը դաւթի արքայի և յակոբայ արդարոյ Տեառնեղբայրս. ուր սկզբնատառք երգոց 'ի վր սրբոյն յովսեփայ բաղդօղեն զայս բան. * Քնի, զյէզ նկրբայէմ, յաջողակ յանձանձիչ. Յով- ,, սէփ ||. որ առի ը ոմանց լինել յօրինուած սրբ երգաբանին յունաց յովսեփայ սիրակուսացւոյ, որ փայլեաց 'ի Ը և Թ դարու. և են 'ի կարգի երգոցս երեք ինչ կարևորք. նախ՝ թէ կուսութն էր պերճացեալ սբն յովսէփ. երկրորդ՝ թէ հանդոյն աւարոնի ծաղկելով գաւազանին՝ ծանուցաւ խօսնայր կուսին. և երրդ՝ թէ 'ի խոր ծերութն վախճանեցաւ. զորոց և զկնի լիցի բան :

Իսկ լատինք գնեն զտօն սրբոյն յովսեփայ 'ի յայսմաւուրս իւրեանց՝ մեծ յաւուրս աւետման. Որ 'ի մարտի 19. ոմն և զփոխք 'ի յուլիսի 20. յորում աւուր լինի առ լատինս յիշատակ յովսեփի յուստոսի կմ յովսեփայ արդարոյ՝ վիճակակցի սրբոյն մատաթեայ. Թող և զառանձին յիշատակ հարսնախօսութն՝ որ ը սբ կուսին և ընդ սբն յովսէփ, զոր ոմանք համարին լինել 'ի դեկտեմբերի, կմ 'ի յուն-

վա-

վարի, և այլք ՚ի մարտի 19. և զայլ տաւանձին տօնա-հանդէսս սրբյն ՚ի զանազան աւուրս յայլ և այլ տեղիս արևմտից: Իւ զի այս տօնախմբութիւնք ՚ի յետին դարս եղան, պատճառս իմն տամ նոցին և գեղեցիկ բովան-դեանք. զի թէ ած՝ որ խորհրդով կանխեցոյց զվախճան սրբյն յովսեփայ նախ քան զհանդիսանալ փրկչին քարո-զութե͞, թերևս նոյնպիսի խորհրդով ոչ հանդիսացոյց յառաջին դարս եկեղեցւոյ զտօն նր. զի մի հանգոյն ածամօր պատուելով և զածահայրն յովսէփ՝ կարծես-ցեն ոմանք ծնօղ զնա լինել յսի՝ որպէս էհատ ՚ի մօ-րէն, և այնպէս սնաւցին հաւատք կուսական ծննդեան. և սակայն յետ ժամուց՝ յորժամ ոչ ևս գոյր վտանգ այն-պիսի, հանդիսացաւ առեն արժանաւոր տօնախմբութի սրբյն յովսեփայ:

Յօրինակս ինչ հերոնիմեան վկայաբանութե՝ զոր ոմանք վրիպակաւ կարծեցին լինել գործ եւսեբի կեսարաց-ւոյ, տօն սրբյն յովսեփայ դնի ՚ի 19. մարտի, և յայլս ՚ի 20. բայց կարծի չփոթեալ է այլում համանուն սրբյ: Այլ յայսմաւուրս նշանակ տօնի սրբյն յովսեփայ ՚ի հնու-թիս լատինացւոց՝ առեն բովանդակք. այս է, զի գտ-նէ յիններորդ դարու կայր պարզ յիշատակ նր յարև-մտեայս ը͞դ օրինակի եկեղեցւոյն անտիոքացւոց. և տպա ՚ի ժա և ժբ դարու կարգն կարմեղականաց առեալ զնոր-դաւորուն զպաշտամանց եկեղեցւոյն եէմայեաց ը͞դ օրի-նակի վանաց սրբյն սաբայի աբբայի՝ եմոյծ զայն յեկեղե-ցիս. և յայնմ հետէ առ սակաւ սակաւ հանդիսացաւ-անդ որոշ տօնախմբութի սրբյն յովսեփայ. ֆրանկիսկեանք սկսան առնել զայն տօն յամի տն 1399. և այլք ՚ի կար-գաց ՚ի յաջորդ դարու ժե. և հռովմ յետոյ ՚ի հռովմ յամի իբր 1490. յորմէ տարածեցաւ և յայլ մեծացեալ տեղիս. և առ հասարակ տօնեալ լինէր ՚ի մարտի 19. որ միշտ անկանի յաղուհացս. բայց քանզի միգուլեցիք ը͞դ օրինակի արևելեայց ոչ կատարեն զտօնախմբութի սրբյ յաւուրս քառասնորդաց, ձգեցին և զտօն սրբյն յով-սեփայ ՚ի դեկտ. 12:

Բայց քանզի ՚ի սկզբան անդ ոչ պահիւր կիրակէ, այլ միայն տօն յիշատակի յեկեղեցիս, գրիգոր ժնգետասա-ներորդ, և ուրբանոս ութերորդ՝ որք նստան յամի 1621, և 1623. հրամայեցին պահել և ձեռնակաց ատր կիրակէ: Եւ յուշն պահել հրամանիս արտաքոյ իտալիոյ, յաջորդ-նդ իննովկենտիոս տասներորդ՝ որ նստաւ յամի 1644. պատուիրեաց՝ զի պահեսցի և յայլ տեղիս եւրոպիոյ.

ադ

զկոյսն , և հա կմ հճ 'ի վախճանին . զոր Թերևս վրի_պական եղեալ ոմանց վն ժամանակի փեսայութեան՝ հար_կեցան 'ի յետին ծերութիւն ձգել զժիր սպասաւորկութն ան_րակյան անօրէնութենց :

Բայց պատճառ հակամիտելոյ բազմանգեանց 'ի կարծիս առաւել ծերութեն է այլ կարծիք նց գժուճարալուր . զի զյովսեփ համարին եղբայր յովակիմայ , և հօրեղբայր մարիամու . և համարին համոզել զընթերցօղս օրինա_կաւ մուրթքէի՝ որ անուցանէր զդուստր եղբօր իւրոյ զեսթեր՝ առնուլ իւր 'ի կնութիւն , բայց եղև կին ար_տաշէսի արքայի : Այլ այդ գիւտ պոռոսինոսի յնեան զօ_րացեալ առ կարգակիցս իւր բազմանգեանս ոչ ունակք 'ի նախնեաց ունի հաւաստիս , և ոչ հաւանականութն թ ինքեան , թող զմիտս իւրեանց հաճեացին . այլ զայսցա_նէ մեկնիչք :

Իսկ վասն զաւազանին նկարելոյ ծաղկաւէտ 'ի ձեռին յովսեփայ՝ գիտեմք , զի երբեմն 'ի ժամերգութիս արև_մտեայց ոմանց գոյր կարգացումն այսպիսի . * Երկ_
. նայքին պատգամաւ ազդեէ քահանայապետին (հրէից),
. և տեսեալ զզաւանչելիս ծաղկելոյ զաւազանին յովսէ_
. փայ , հանդերձ նշանաւ երևման աղաւնոյ , հրամայէ
. առնուլ զմարիամ յովսեփու , զի լցցի ածայինն անաւ_
. սաւթն || . բայց յետ ժղ երրորդ դարու 'ի բաց բար_ձին զայդ ընթերցուածն : Եւ յիրաւի . զի են աւանդք յանյայտ գրոց առեալք , վղյ և բազմանգեանք ը ան_ընդունելի կարծիս գրեն . և ստոյգն այն է , զի զաւա_զան ծաղկեալ 'ի գեղ գայ յովսեփայ՝ ը որում պահա_պան և դաստիարակ կարգեցաւ զաւազանին բղխելոյ յարմատոյն յեսսեայ , և ծաղկին՝ որ ել յարմատոյ ան_տի . թ պահպանիչ եղև սբյ կուսին , և յանձանձիչ միած_նի նբ յնի քնի տն մերոյ և այ :

Բաղումեն բանք առ բազմանգեանս և վասն մատանւոյ հարսնախօսութե ը յովսեփ և ը մարիամ , որ ասի պա_հեալ 'ի պերուսիոն քաղաք ումբրիայ գաւառի . բայց և այլ երկու մատանիք ցուցանին 'ի բուրգոնտիա և 'ի բելգիոն : Թողեալ և զայլ բանս՝ կնքեմք զծանօթութիւն հաւանական բանիւ , զոր ասաց սբն բեռնարդինոս սե_նացի 'ի քարոզի իւրում առ ժողովուրդն պատճառաւ . * Հոգւով և մարմնով յերկինս փառաւորեալ է սբն ,, յովսեփ || :

ՎԱՐՔ



# ՎԱՐՔ ՍՐԲՈՑՆ

## Յովսեփայ արեմաթացւոյ ։

Հ. ապր. 9 ։ Յ. ժամագր. ձեռ. յուլիս. 31 ։ Լ. մարտ. 17 ։ Բոլլանդեանք՝ անդ ։ Հարք և մեկնիչք ։ (1)

ՅՈՎՍԷՓ ԱՐԻՄԱԹԱՑԻ այրն նախանձելի, անուանակիր ա̃ծահօրն, և կատարիչ մեծի գործոյ թաղման կենարարին, զոր անկ էր առնել առաքինոյն՝ եթէ չէր վախճանեալ վաղագոյն, մեծապէս գովութ̃ հռչակի ՚ի մի բերան ՚ի չորեցունց աւետարանչաց միանգամայն, եթէ էր այր բարեգործ և արդար, պարկեշտ, նախարար և մեծատուն, այս է՝ այր նշանաւոր առաքինութ̃ և իշխանութ̃ ՚ի մէջ հրէից. և որ մեծն է՝ ակնունէր արքայութե̃ն ա̃յ գալստեամբն ք̃ի. և հաւատացեալ էր ՚ի սրտէ՝ թէ յս̃ է ք̃ն. վ̃յ և աշակերտեալ նմա՝ թէպէտև ՚ի ծածուկ առ ահին հրէից ։ Բայց քանզի չէր միաբանեալ ը̃ խորհուրդս և ը̃ գործս նց̃ ը̃դէմ փրկչին, այլ ը̃ տեղւոյն և ըստ ժամուն պատրաստ էր պաշտպան կալ ճշմարտութե̃, վ̃յ իբրև ետես՝ եթէ անօրէնքն

ընկենքն 'ի մահ վարեցին զգառն այ անպարտական 'ի ձեռն պետութե՛ն հեթանոսաց, այնուհետև վառեալ 'ի նախանձ փառաց երկնաւոր վարդապետին իւրոյ՝ յայտ յանդիման կացոյց զհարազատ աշակերտութի՛ իւր ։

Համարձակեցաւ, եդ զանձն 'ի բաւին իւրում՝ ոչինչ ակնածելով 'ի սպառնալեաց հրէից կմ՛ հեթանոսաց. եմուտ առ պիղատոս, և խնդրեաց զմարմինն յ՛սի 'ի պարգևի մասին, յայտ առնելով և զմօրն կսկիծ անպատմելի 'ի վ՛ր անմեղ միածնին, և զիւր սրտցաւութի՛ մեծ, զոր ոչ կարէր այլազգ փարատել, բայց եթէ փառօք հանգուցէ զմատնեալն յանարգական մահ խաչի. զորմէ և ինքն դատաւորն վկայէր, եթէ ոչինչ վնաս մահու գտի 'ի սմա ։ Սոյ և պիղատոս հաւանեցաւ տալ նմա զխնդրելին, իջուցանել զյ՛ս 'ի խաչէն, և թաղել զնա շքով յանդիման ամ՛ բազմութե՛ն թշնամեաց նր՛ ։

Յայնժամ գնեաց յովսէփ նոր կտաւ մի, և պատեաց զտ՛րն փառաց՝ հանդերձ խնկօք անուշիւք, գործակից ունելով և զնիկոդեմոս. և ը՛ օրինի թագաւորաց պատուով ամ՛ փոփեաց զթ՛աւորն երկնի և երկրի 'ի նորափոր վիմի, զոր էր պատրաստեալ 'ի կալուածի իւրում վ՛ն իւր՝ 'ի պարտիզի անդ, որ մերձ էր 'ի լեառն գողգոթայ ։ Զի թէպէտև կամք էին յովսեփայ այլ շիրիմ փառաւորագոյն և մեծածախ տալ յօրինել 'ի դիր հանգստեան յ՛սի յայլ երևելի տեղւոջ, այլ զի երեկոյացեալ էր ժամ ուրբաթուն՝ որ 'ի շաբաթն

բաթն

բաթն մտանէր , հարկ համարեցաւ 'ի գերեզման անդ թաղել՝ զոր մօտ 'ի տեղի խաչելութեան ունէր առձեռն պատրաստ վ՟ն իւր ։ Եւ այս 'ի վերին տնտեսութե՟ն ․ զի յայտնի լիցի ամենեցուն՝ թէ տ՟րն թաղեցաւ 'ի գերեզման յովսեփայ կենդանւոյ , 'ի գերեզման նոր՝ յորում ոչ ոք երբէք էր եդեալ , 'ի գերեզման մօտ առ խաչին ․ և ը՟ս նմին աներկբայ լինիցի յարութ՟ն նր՟ առ ամենեսին , եթէ որ յարեաւն՝ ոչ այլ ոք էր , բայց խաչեցեալն և թաղեալն հանդիսապէս 'ի վիմափոր գերեզմանին յովսեփայ ։

Արդ զոր օրինակ պատուիրեաց երանելին յովսէփ զտ՟ր իւր՝ որչափ և ձեռնհաս էր , ը՟ս նմին և պատուասիրեցաւ 'ի տ՟նէ իւրմէ անզուգական փոխարինօք՝ արժանի եղեալ տեսանելոյ զնա յարուցեալ յաւուրն երրորդի ․ և յայնմ հետէ փառք և պարծանք էին յովսեփայ յայտնապէս դաւանել զանձն աշակերտ յ՟ի ք՟ի , և քարոզել զնա համարձակ ա՟ծ կենդանի՝ տ՟ր կենաց և մահու ։ Եւ ոչ այսչափ միայն , այլև բազում իրօք նպաստ և ձեռնտու լինէր առաքելոց և համօրէն նոր հաւատացելոց՝ ականաւոր մեծութ՟բ ը՟ս մարմնոյ , և ճշմարիտ նախանձաւորութ՟բ փառացն ա՟յ ․ այլ վ՟ն և ոչ փոքր հալածանս և վիշտս կրեաց 'ի հրէից ․ այլ ոչ թուլացաւ երբէք 'ի խորհրդոց իւրոց ։ Եւ այնպէս լի արդեամբք կատարեալ զընթացս իւր 'ի ք՟ս՝ հանգեաւ 'ի հաճոյս ա՟յ տ՟րն յովսէփ 'ի տան իւրում յարիմաթիա քաղաքի հրէից ․ որ ը՟ս ումանց կար-

ծի արեմաթեմ քաղաք սամուելի մարգարէի 'ի լերինն եփրեմի, եւ ը̄ այլոց թերեւս ստուգագոյն՝ այլ քաղաք 'ի հիւսիսոյ եճմի՝ իբրեւ մեց կմ̄ եօթն փարսախ հեռաւորութը̄ ։

Այս ո̄մ քաղի յաւետարանէ ․ իսկ արտաքոյ թէպէտեւ բազմապատիկ եւ մեծամեծ աւանդութիք են զյովսեփայ արեմաթացւոյ, այլ եւ ոչ մի ինչ ստոյգ ․ քանզի առեալ են յանյայտ գրոց՝ որք կոչին գործք պիղատոսի, կամ սուտանուն աւետարան նիկոդեմոսի ․ զորոց բանք լցեալ 'ի ծանօթութիս (2) ։ Այլ ինչ ը̄հատ են եւ այլ պատմութիք յառաջ բերեալք 'ի յետնոց ոմանց վը̄ կատարման, ում եւ վը̄ նշխարաց սորին յովսեփայ ․ յորս ստուգագոյն դատեալ է աջն ն̄՝ որ կայ 'ի վատիկանն հռովմայ ․ եւ զայսցանէ եւս տացուք լիագոյն տեղեկութի 'ի կարգի անդ ծանօթութեց ։ (3)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) 'Ի տօնի եօթանասնից եւ երկուց աշակերտաց եւթներրորդ դնի 'ի թուոյ նը̄ յիշէ Հ ․ զյովսէփ արեմաթացի․ իսկ 'ի Յ, եւ ոչ անդ դասանի ․ այլ միայն յօրինակս ինչ ժամագրոց յունաց գնի յիշատակ նորա 'ի յուլիսի 31 ։ Չկայր եւ առ լատինս յիշատակ նր̄ մինչեւ ցաւուրս բարոնիոսի կարդինալի նորոգողի յայսմաւուրաց նը̄, որ եդ զայն անդանօր՝ յորդորեալ 'ի կանոնիկոսաց վատիկանու՝ վը̄ ունելոյ նը̄ առ իւրեանս զաջ բազուկ սրբյն․ զորմէ զկնի տասցուք ։

(2) Հիմն աղգի աղգի աւանդութեց զյովսեփայ արեմաթացւոյ եւ զայլոց ոմանց եղելոց յաւուրս խաչելութե̄

'փրկչին ( զորոց զնշմարանս տեսանեմք 'ի գիրս ԹՄ ազ-գաց ) է անվաւերական պատմութիւնն՝ որ մակագրի Գործք պիղատոսի կամ առ պիղատոսիւ յաղագս չարչա-րանաց և յարութեն յսի. ուր թէ գրեալ 'ի նիկոդեմո-սէ. ուր ինչ ինչ միաբան է ընդ աւետարանի, և ինչ ինչ գծուծագոյն միաբանի. զոր քաղեմք ասանօր 'ի հա-ւաքմանէ փաբրիկիոսի :

Արդ՝ պատմի անդ, թէ յորժամ չարախօս եղեն զյսէ առ պիղատոս իշխանք և քահանայապետք հրէից. յղէ պիղատոս զսուրհանդակ իւր՝ բերել զյս. և 'ի գալ նր՝ առ նմ ողջոյն երկրպագութե. ուր և դրշակիրք պի-ղատոսի երկիրպագին յսի, զի դրօշք ինքնին խոնար-հէին : Յետ բանից ամբաստանութեց՝ նման և աննման գրելոցն յաւետարանի, իբրև ստիպէին հրէայք 'ի խաչ հանել զյս, յառաջ մատուցանէր նիկոդեմոս, և արդարացոյց զնա՝ Ը ոմանց գամաղիէլի յարդարացուցանելն զաւա-քեալս : Պատմեսց պիղատոսի և անդամալուծն ամբողջ-ութեամբ զբժշկիլ իւր 'ի յսէ, ուր և կոյրն առ երկո-քեայ զլուսաւորիլ իւր, և բորոտն զսրբիլ իւր. և կին մի վերոնիկա անուն զաղատիլ իւր յաղբերէ արեան՝ մերձենալով 'ի քղանցս յսի. և այլ ոմն զփոխարկումն ջրոյ 'ի գինի՝ զոր արար յս 'ի կանա. և հարիւրապետն զբժշկութիւն ծառայի իւրոյ, և Թքրաքն զորդւոյ իւրոյ. այլք զպաղարու յարութիւնն, և այլք զայլ ևս սքանչե-լիս նր :

Իսկ պիղատոս յետ լուանալոյ զձեռս՝ հրամայեաց բե-րել զյս առաջի իւր. և խօսեցաւ առ նա այսպէս. ազգ քո եցոյց զքեզ իբրու թագաւոր. վսյ և ես ուր զատա-ստանք պատուէրեմ զան հարկանել զքեզ Ը սահմանաց առաջին իշխանաց, և ապա 'ի խաչ հանել 'ի տեղւոջն՝ ուր ըմբռնեցար, և զերկուս չարագործս ընդ քեզ. որոց անուանք են գեմաս և կեստաս : Ել յս յապարանից, և երկու աւազակք ընդ նմա. և յորժամ հասին 'ի տեղին՝ որ կոչէր գողգոթա, մերկացին զնա 'ի հանդերձէ իւր-մէ, և ագածին զնա կտաւով. և պսակ 'ի փշոց դնեն 'ի գլուխ նր, և տան եղեգն 'ի ձեռս նր, ( ուր արա-րեալ էին յառաջն ). և ապա հանեին 'ի խաչ : Նոյնպէս և զերկու աւազակս կախեն ընդ նմա. զգեմաս յաջմէ, և զկեստաս ընդ ձախմէ նր. և ծաղր առնէին զյս 'ի խաչէ ժողովուրդք և զինուորք : Աջակողմեան աւազակն գե-մաս ( յորինակս ինչ՝ կեստաս ) հաւատաց 'ի քս. նոյն-պէս և հարիւրապետն հաւատաց 'ի ժամ աւանդման

որ 'ի կոչումն ընծայութեան կիւրղի եէմացւոյ, և 'ի ճառն թարգման առ 'ի զաքարիայ կթղկսէ. ԿՆ. իսմն յաղագս խոստակցութեան քնի Է. ագամայ, և վն բանից մարգարէից. և վն վարանման դիւաց 'ի սանդարամետս անդնդոց, համբերել ելիւք ամ հարց նոց 'ի բանտէն, և մտիւք 'ի դրախտն Է. աւազակին. ոնց թէ անդ իցեն և Ենովք և Եղիա):

Զայս ամ գրեալ Խարինոսի և Լենթիոսի, և տուեալ դքարոտէզի 'ի ձեռս մերձակայից՝ ինքեանք լուսափայլեալք աներևոյթ լինին. և որք լուծանն և տեսին՝ ահիւ և դողութբ երկեան 'ի տունս իւրեանց: Իսկ յովսէփ և նիկոդեմոս երթեալ պատմեն զայս ամ պիղատոսի. և նա այս արձանագրել զտմն 'ի դիւանի. և այսպ երթեալ 'ի տաճարն՝ խօսի առանձին Է. կայիափայ և աննայի. և նք 'ի ծածուկ խոստովան լինին, թէ 'ի գրոց և յելից իւրաց ծանեաք, զի յսն՝ զոր խաչեցաք, է քն որդի այ՝ ճշմարիտ և ամենակալ աճ. ամէն:

Ցայս վայր անվաւեր մատեանն, որ և 'ի վր բերէ զայս յիշատակարան գրչի անգիտելի. * Յանուն ամենասբ
• երրորդութեան կատարեցան գործքս (եղեալք) տր մե-
• րով յիս քիս, զորս եգիտ թէոդոս մծ, ինքնակալն
• յեէմ յապարանս պոնտացւոյ պիղատոսի՝ 'ի դիւանա-
• կան մատեանս, գործեալք 'ի ԺԹ ամի ինքնակալեն
• տիբերեայ կայսեր հռովմայեցւոց, և հերովդի որդւոյ
• հերովդի արքային գալիլեայ՝ 'ի ԺԷ ամի իշխանութեան
• նր. 'ի Է կաղանդաց ապրիլի, որ է ԻԵ մարտի ...
• որչափ ինչ յետ խաչելութեան և չարչարանաց տն պատ-
• մագրեաց նիկոդեմոս եբրայական դրովք||:

Իսկ բոլլանդեանք բերեն զայլ կարկատուն աւանդութիւնս պէսպէս զյովսեփայ արեմաթացւոյ, և նախ անըշուն-լի վճռեն՝ զոր միանգամ գրէ պետրոս նատալեան (հիմնեալ 'ի վր նախաճառեալ անվաւեր պատմութեան), թէ նա ինքն արեմաթացին յովսէփ յետ համբարձման տն մկրտել յառաքելոց՝ յորժամ քարոզէր համարձակ զքս, ըմբռնեալ 'ի հրէից՝ փակեցաւ 'ի մէջ որմոյ հիւսեալ, զի անդ սովամահ կորիցէ 'ի խաւարի: Իսկ տիտոս իբրև եառ զեէմ, 'ի բանալ անդ զորմն զայն՝ եգիտ զյովսէփ պատուական ծերունին, զի կայր անդ կենդանի և զուարթ. և հարցեալ տեղեկացաւ 'ի նմանէ, թէ ո՛ ոք իցէ, և հիմ փակեալ յորմ անդր. և զիարդ իցէ մնացեալ անդ կենդանի. և գիտաց՝ զի երկնային կերակրով ապրէր, և աճային լուսով զօրանայր. յայնժամ ար-

արձակեաց զնա յազատութի. և նր̄ կեցեալ յետ առման երէմի ը̄ աշակերտս՝ վախճանի 'ի խոր ծերութե ։

Այլ չէ՛ք մեր բան ը̄ այսպիսի առասպելս ։

Չե՛ն ը̄ունելի ը̄ բոլլանդեանց և ը̄ մեզ՝ նաև կարծիք այլոց, թէ յովսէփ արեմաթացին ը̄ ղազարու և ընդ քերց նր̄ եդեալ 'ի նաւ անկազմ՝ ելեալ իցէ 'ի մասսիլիա գաղղիոյ. ոչ̄ և ասելն ոմանց, թէ յառաջագոյն իբրև ընկեր սր̄յն յակոբայ երթեալ իցէ 'ի սպանիա, և անդ ձեռնադրեալ 'ի նմանէ եպս՝ քարոզեալ իցէ 'ի կառպետանիա, 'ի կեղտիբերիա, և 'ի լուսիտանիա. և յետ դարձի իւրոյ 'ի հրէաստան և կալոյ անդ զամս ութ՝ նաւարկեալ իցէ ը̄ ղազարու և քերց նորա 'ի գաղղիա ։ Եւս առաւել հերքելի են մնացածին առասպելք կապգրաւիոսի և այլոց ոմանց 'ի բրիտանացւոց, որք ունին պատուական աւանդութիւս վս̄ արտուրի ուրումն արքայի կողմանց այնոցիկ՝ թէ յետ ժամանակաց դառնալոց իցէ անդրէն. և թէ մարմին սր̄յն յովսեփայ արեմաթացւոյ, զոր համարին վախճանեալ յանգղիա հանդերձ համանուն որդւովն իւրով յովսեփաւ, յայտնելոց իցէ յանդգիման ժմ̄ աւերելոյ. և յայնժամ ոչ ջուր և ոչ ցօղ երկնից պակասեսցի 'ի կղզւոյ անտի բրիտանացւոց ։ Թերևս ստեղծաբանութիւնք իցեն վս̄ աւուր կատարածի ։

Բայց հաւանելի դատին և բոլլանդեանք զպարկեշտ աւանդութի անգղիացւոց, թէ չիչ սր̄ արեանն քր̄ի բերեալ եղև յամի տն̄ 1247, յե՛ղմէ յանգղիա՝ իբրև 'ի ժառանգութէ տանն յովսեփայ արեմաթացւոյ. քանզի յայնմ տարւոջ 'ի ժգ̄ աւուր հոկտեմբերի՝ առաջի հենրիկոսի գ̄. արքայի անգղիացւոց և մեծամեծաց նորա և եպսաց Յին, որք առնէին տօն ուրախութե վս̄ ը̄ունելոյ զայն սր̄ արիւն յե՛ղմէ, այսպէս ատենախօսէր հռոբերտոս եպս լինկոլնացւոց՝ ը̄ գրելոյ մատթէոսի փարեզացւոյ ։

* Արդ յետ խաչելութե փրկչին և աւանդման հոգ_
,, ւոյն, յովսէփ խնդրեաց զմարմինն յսի՝ մտեալ առ պի_
,, ղատոս համարձակութ̄բ, որով ցուցեալ լինի այր զօ_
,, րաւոր և ճոխ. և շնորհեցաւ նմա ։ Եւ թէպէտև ա_
,, տամունս կրճտէին հրէայք, բայց նա ժմ̄ շքով և
,, պատուով իջոյց 'ի խաչէ անտի զամենամեծ մարմինն
,, տն̄, որ լի էր վիրօք և արիւնաշաղախ. և ունելով
,, պաստառ բարակ կտաւոյ կախեալ զպարանոցէ իւր_
,, մէ և ղուսոցն, զի մի անարժանութս մերձեսցի մերկ

մութն կարգի դոմինիկեանց, թէ 'ի սպանիա 'ի զամո-րեան վանս կուսանաց կորեաւ թերթ ինչ թղթոյ յոյժ կարեւոր, որով մեծապէս լինէր ուխտին. մինչեւ 'ի հոգս անկանիլ ամենեցուն, եւ կանխել յաղօթս. յայնժամ մարիամ վասկուէզ մելլեան՝ գիտեաց ջերմ հաւատով առ սովորական բարեխօս իւր յովսեփ արեմաթացի. եւ փութանակի եհաս 'ի դուռն վանաց այր ոմն ազնուա-կան հեծեալ յերիվար աշխարհարանց՝ անծանօթ յամե-նեցունց. եւ իջեալ յերիվարէն՝ հրամայեաց կոչել առ ինքն զմարիամ վասկուէզ. եւ 'ի գալ նր̄ 'ի վանդակապա-պատուհանն՝ մատոյց նմա զթերթն խնդրելի. եւ ոչ ինչ այլ առացեալ՝ մեկնեցաւ անտի. յորմէ յայտնի եղեւ զօ-րաւոր բարեխօսութի սրբոյն, որ եւ ինքն կարծի երեւեալ:




ԵՐԿ-

# ԵՐԿՐՈՐԴՈՒՄՆ ՏՕՆԻ

## Սրբ̃ կանանցն Իւղաբերից ։

Եթէ աստանօր ձայն գնէին փօնայոյցք շտապ , նարէ ձայնելով դարձեալ լինէր փօխել ընդ Արէ-մաթացւոյն և ընդ Նիկոդիմոսի . Բայց քանզի եղեալ ձան նոքա ընդ յովակիմայ և Աննայի , յետին օրինակք 'ի բաց բարձին աստի . և փոխանակ այնր՝ ոմանք եդին լոկ այսպէս , * և քերցն Ղազարու || , կ̃մ * և Ղազարու քերցն || . և այլք այսպէս . * և Բարեկամին Ք̃ի Ղազարու , և կանանցն Իւղաբերից || . և յետին օրինակք , * և Բարեկամին Ք̃ի Ղազարու , և քերցն նր̃՝ ( Մարթայէ և Մարիամու ) || . որոց նշանակք չկան բնաւին 'ի հին օրինակս . Վ̃ս զի Ղազար ենթադրեն փօխեալ ընդ եօ-թանասուն և երկու աշակերտս , միանգամայն և յեղա-փակեալ 'ի նախընթաց աւուր Ծաղկազարդի՝ այն է յա-րութե̃ Ղազարու որպէս օր ծ̃րուանականն . Իսկ զնոսա նր̃ իմանան 'ի կարգի անուանց Իւղաբերից ։ Յայսոսիկ հայեցեալ մեր , զմարդոց Իւղաբերից՝ զորոց չիք առա-ջին պատմութի̃ , հաւանեցի խօսեցաք զինի փօխէ յո-վակիմայ և Աննայի . Իսկ զմարդս Մագդաղենացւոյն՝ որ էր պարագլուխ Իւղաբերից , յայս տեղի պահեցաք . և զի խնդիր է անգիտելի , արդեօք նոյն իցէ սա ընդ Մարիամու քեռն Ղազարու , միանգամայն աւանդեմք յայսմ վայրի՝ որ ինչ բանք են վ̃ս Ղազարու և քերց նր̃ զոյգ ընդ Մագդաղենացւոյն ։

թա, և զքոյր նր զՄարիամ, և զՂազար||:
Այս զի՞ր օրինակ քոյրք Ղազարու նշանաւ սի-
րոյ յայտնեցին փրկչին զհիւանդութիւն եղ-
բօրն իւրեանց՝ յասել ՚ի ձեռն պատգամաւո-
րի, * Տէր ահաւասիկ զոր դուն սիրէիր
հիւանդացեալ է||, նոյնպէս և յա՛ նովին նշա-
նակաւ սեան սիրոյ բարեկամութե խօսէր
զղազարոսէ՝ յասել անդ ցաշակերտս իւր.
* Ղազարոս բարեկամ մեր ննջեաց. այլ
երթամ, զի զարթուցից զնա||:

Այլ որ մեծն է՝ առ գորովական սիրոյն ար-
տասուեաց անգամ՝ ցնծութիւն տիեզերաց
Քս՝ ՚ի վե՞ գերեզմանին Ղազարու իբրև ՚ի վե՞
հարազատ բարեկամի և ընտանի սիրելւոյ.
մինչև ասել հրէից. * տեսէք, որչափ սիրէր
զնա||: Այլ նովին անսպառելի սիրով կոչեաց
զնա տէրաբար ՚ի մահուանէ ՚ի կեանս՝ ոչ
միայն ՚ի լնուլ զխնդիր սիրելեաց իւրոց Մար-
թայի և Մարիամու, այլև ՚ի տալ Ղազարու
բարեկամի իւրում վերստին կենդանութե
վայելել ՚ի սէր իւր, որ այն իսկ էր վայելել
և ՚ի սէր նր միանգամայն. զի սէր բարեկա-
մի ը բարեկամի ճշմարտել է ՚ի փոխադարձն
դոյ:

Ուստի ունիմք քաջ իմաստասիրել, թէ Տրն
մեր որպս սիրէր զերեսին զայն հարազատս,
նոյնպէս և տուեալ էր նց զկատարեալ սէր
սիրելւոյ զնա. ըստ որում և արդիւնք գործոց
նց յայտ առնեն: Եւ զի Մարթա առ սիրոյ
երկնաւոր վեհին այնչափ զգաղէր եղբօրն
՚ի սպաս պատրաստութե կերակրոց՝ առ ՚ի

պատ-

պատուհասիրելոյ զնա արժանապէս Յ̅ս իւ-
րում կարի, մինչեւ հարկ համարեցաւ տ̅րն
մերձել զառաւելութի̅ եռանդուն սրտի նո̅ր`
խրատելով սակաւուք շատանալ յարտաքին
եւ 'ի մարմնաւոր պաշտօնս ա̅ծսիրութե̅ գլխա-
վին, եւ ներքնոյն եւ հոգեւորին առաւելագոյ
ուշ ունել խնամով: Բայց զի չէ անպէտ եւ
արտաքինն, յայտնի կացոյց` ասելովն. * սա-
կաւ ինչ պիտոյ է ||: Զնոյն հաստատեաց
տիրապէս` սիրով ընդունելով զմիւսանգամ
ընդունելութին մեծ, զոր արարին նմա զկնի
յարութե̅ ղազարու` 'ի տան սիմոնի բորոտի
'ի բեթանիա` վեց աւուրբք յառաջ քան զզա-
տիկ չարչարանաց տ̅ն. ուր 'ի սպասու կայր
մարթա, եւ ղազար մի էր 'ի բազմելոց ը̅ն նմ̅ա:
Իսկ մարեմայն յայտնագոյն եւս է յորդուե̅
սիրոյ առ երկնաւոր վրդպն` հոգեւոր փու-
թով առաւելեալ յամի. ո̅պ յորժամ առ ոտս
տ̅ն նստէր 'ի լսել զա̅ծային վրդպութի̅ նորա
անյագ փափաքմամբ, մինչեւ մոռանալ ըզ-
մարմնաւոր պիտոյից սպասահարկութի̅. եւ
դարձեալ յորժամ 'ի բազմականի անդ ըն-
թրեաց` որ 'ի տան սիմոնի բորոտի, բերեալ
զշիշ իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ`
թափեաց 'ի գլուխ փրկչին, միանգամայն եւ
զոտս նո̅ր էօծ. զոր եւ հերով իւրով մաքրէր:
Իսկ թէ որքան բարեհաճոյացան տ̅ն երկո-
քանչիւր գործքս այս յառաջագայեալք յա-
ռաւելութէ̅ սիրոյն մարիամու, յայտ է 'ի գո-
վելոյ եւ 'ի ջատագովելոյ զնա փրկչին յերկո-
սին իսկ նուագս անզուգականս գովութ̅ի. ո̅պ
յա

յառաջնումն ասէր առ Մարթա. * Մարիամ մասն բարի ընտրեաց, որ ոչ բարձցի 'ի նմանէ ‖. և յերկրորդումն առ աշակերտսն. * Ո՞ւ աշխատ առնէք զկինդ. գործ մի բարի գործեաց դա յիս. յա՟մ ժամ զաղքատս ը՟ ձեզ ունիք, բայց զիս ոչ հանապազ ը՟ ձեզ ունիք: Արկանել դորա զիւղդ 'ի մարմին իմ առ 'ի թաղելոյ զիս նշանակեաց: Բայց ամէն ասեմ ձեզ, զի ո՛ւր և քարոզեսցի աւետարանս այս ը՟ ա՟մ՟ աշխ՟, խօսեսցի և զոր արար դա՝ 'ի յիշատակ դորա ‖:

Նոյն արդ՝ եթէ սովիմբք Մարիամ տեսական կենաց, և Մարթա գործնականին եղեն գեղեցիկ օրինակք, ապա և զսիրասուն եղբայր նոցա զՂազար՝ երկոքումբք իմասցուք ճոխացեալ, ուր գտեմք զնա սիրելի բարեկամ Ք՟ի կենօք և մահու. ը՟ որում և տիրասպան քահանայապետք խորհուրդ արարին, զի և զՂազար սպանցեն. քանզի բազումք 'ի հրէից երթային 'ի տեսութիւն Ղազարու, և նովին հաւատային 'ի Յ՟ս:

Բայց թէ զի՞արդ, և ո՞ւր եղև կատարումն ս՟ր՟բյն Ղազարու և քերց նր, և թէ ո՞րդեօք Մարիամ քոյր Ղազարու և Մարթայի զանազանիցի՞ կնոջ՝ 'ի Մագդաղենացւոյն (1), պէսպէս են աւանդութիւնք և կարծիք արևելեան և արևմտեան մատենագրաց՝ նախնեաց և յետնոց. զորս քաղեսցուք աստանօր մի ը՟ միոջէ՝ առանց ձգնելոյ վերածել 'ի մի միաբանութիւն, որ անհնարին պատեհ է առ համօրէն բանիբուն քննիչս:

Բան

## [illegible] :

Յաղագս ղազարու բարեկամին Քրիստոսի, որ համարեալն է ի ոմանց ՚ի թուոյ եօթանասուն եւ երկուց աշակերտացն Քրիստոսի, եւ ի ամենեցուն՝ եթէ ձեռնադրեալ յառաքելոց, զայս ինչ յայտնապէս աւանդեն յոյնք՝ ի նոցին եւ հայք, թէ վարք նորա եւ կատարումն գտաւ նշանակեալ ՚ի մի տապանի նորա գտելոյ ՚ի կիտտոնեան քաղաքի կիպրոս կղզւոյն՝ յաւուրս լեւոնի իմաստասէր կայսեր որդւոյ վասիլի արշակունւոյ: Վասնզի սա ինքն լեւոն բարեպաշտ ինքնակալ՝ որ թագաւորեաց յամի Տեառն 886 մինչեւ ՚ի 911, շինեաց եկեղեցի գեղեցիկ եւ բազմածախս ՚ի կոստանդնուպօլիս յանուն նորին ղազարու հանդերձ մենաստանաւ: Նա եւ եղեւ խորհ կատարեաց զշինուածն, եւ եւ օրհնել զտաճարն եւ տալ մեծ նաւակատիս, յայնժամ հրեշտակ Տեառն երեւեալ թագաւորին ՚ի տեսլեան՝ ասէ ցնա. առաքեա ՚ի կիպրոս կղզին ՚ի քաղաքն կիտտոնեան, եւ գտցեն ընդ հողով ծածկեալ տապան մի՝ յորում եդեալ է ղազարոս բարեկամն Քրիստոսի. եւ բերեալ դիցես յեկեղեցին՝ զոր շինեցեր յանուն նորա. զի հրաման եղեւ յԱյ՝ յայտնիլ նշխարաց նորա:

Նա եւ զայս թուեցեալ յոյժ ուրախ եղեւ արքայն. եւ պատուիրեաց պատրիարքին եւ այլ աւագանւոյն զերեւումն հրեշտակին. եւ առաքեաց փութով արս ընտիրս ՚ի սպասաւոր իշխանացն,

նացն, որք գնացեալ գոյին 'ի նշանակեալ տեղւոջ զմարմարիոնեայ տապանն մի. յորոյ վ՛ր փորագրեալ էին բանքս այսոքիկ.

* Այս է ղազարոս բարեկամն յ՛նի չորեքօրեայ մեռեալն, և յարուցեալն 'ի մեռելոց. և յետ իջման հոգւոյն ս՛բյ 'ի վերնատունն՝ եպ՛ս լեալ յառաքելոցն ս՛բց, եկն 'ի կիտուան քաղաքս կիպրոսի. և քարոզեաց աստ զ՛քն. մեռաւ խաղաղութ՛բ՝ յետ ժե՛ տարւոյ յարութեան իւրոյ։ Իսկ որչափ եկաց 'ի վ՛ր երկրի կենդանի, ոչ ծիծաղեցաւ՝ վ՛ս առաջին հոգեվարին։ Իսկ յորժամ փոխեցաւ 'ի կենցաղոյս, եդաւ յայսմ տապանի ‖։

Զայս տապանագիր ընթերցեալ իշխանաց կայսեր, լցան խնդութ՛բ. և իբրև բացին զտապանն, բուրեաց հոտ անուշութ՛ե. և եղև բազում ցաւոց առողջութ՛ի. զ՛ի որ հիացեալ՝ փառս ետուն ա՛յ։ Իսկ հանեալ զպատուական մարմին ս՛րբյն 'ի մարմարիոնեայ տապանէ անտի՝ եդին 'ի կազմեալ տապանակ փայտեայ, զոր ինքեանք ունէին, և առեալ տարան ուրախութ՛բ մեծաւ։ Իսկ եղև 'ի հասանել ն՛ց 'ի կոստանդինուպօլիս՝ ելին ա՛մ քաղաքացիքն, և թագաւորն մեծամեծօք իւրովք ը՛ առաջ ս՛րբյն անպատմելի ցնծութ՛բ՝ խնկօք և մոմեղինօք, և հանդիպեալ ս՛րբյն երկրպագութ՛բ՝ մեծաւ պատուով տարեալ հանգուցին յեկեղեցին իւր. և բազում ախտաժէտք ընկալան զառողջութի ցաւոց իւրեանց 'ի նշխարաց ս՛րբյն ղազարու, որք հաւատով և

սրբու-

սրբութբ մերձենայրն 'ի նա ։

Իսկ վս քերցն ղազարու չի՛ք յիշատակ 'ի բա-
նիլեան յայսմաւուրս յունաց ․ այլ միայն 'ի
ժամագիրս նց 'ի մարտի ․ 18 ․ լինի յիշատակ
օծանելոյ մարիամու քեռն ղազարու զոտսն
յոր նարդեամբ, և մաքրելոյ հերովն ։ Բայց
'ի յայսմաւուրս մեր յապրիլի 9 ․ գրի այսպս ․
* Իսկ մարիամ և մարթա քորքն ղազարու
հանդերձ ղազարիւ եղբարբն իւրեանց հա-
լածեցան 'ի սադուկեցւոցն, և աքսորեցան
(կմ արտաքսեցան) 'ի յոպպէ ․ ուր զտաբի-
թայն մնուցին և ուսուցին ․ և նքա անդ կա-
տարեցան ։ Սուտ կարծի ղազարոս նաւել
'ի կիպրոս ըստ նախագրեալ պատմութե ․ կամ
ելեալ յարևմուտս ինքն և քորք իւր` ըստ այ-
լում պատմութե, զորմէ զկնի ։

Մնայ յառաջ բերել զաւանդութիս արևե-
լեայց յաղագս մարիամու մագդաղենացւոյ,
զոր որիշ լինել ասեն 'ի մարեմայ բեթանիաց-
ւոյ` որ քոյրն էր մարթայի և ղազարու ․ բայց
միանգամայն երևին նոյնացուցանել ։ Քան-
զի յայսմաւուրք յունաց գրէ այսպս ։ * Մա-
րիամ մագդաղենացին էր 'ի մագդաղաց լե-
րանցն ասորւոց ․ սա չարչարեալ յեօթն դե-
ւաց` բժշկեցաւ 'ի քէ ․ և վս այսպիսի բա-
րերարութե զհետ երթեալ նր` եղև աշա-
կերտուհի նորին ․ և առաջին տեսող եղև
յարութե` 'ի բերելն զիւղս ընդ միւս մարեմայ ․
զի յերեկոյի շաբաթուն (կմ յանցանել շա-
բաթուն) ետես զհրեշտակն ․ և ընդ առաւօտն
զերկուս հրեշտակս` որք նստէին 'ի տախ-

 տակս ․

տանկս . և դարձեալ զնոյն ինքն զՏէրն . զոր և
պարտիզպան կարծեցեալ՝ լուաւ 'ի նմանէ ,
թէ մի՛ մերձենար յիս : Ապա յետ համբարձ-
մանն Քրիստոսի գնացեալ յեփեսոս առ Աստուածածինն
յովհաննէս առաքեալ և աւետարանիչ՝ անդ
սրբութեամբ ննջեաց . և եդաւ 'ի մուտս այրին ,
ուր սուրբ և երանելի եօթն ննջեցեալ մանկունք :
Իսկ յետոյ առ Լևոնիւ ամենիմաստ արքայիւ
բերեալ եղեն նորին սուրբ նշխարքն , և եդան
'ի վանս սրբոյն Ղազարու՝ որ կառուցաւն 'ի
նմանէ || :

Սնոյն է տեսանել և 'ի յայսմաւուրս հայոց
'ի զանազան տեղիս , բայց հանդերձ քանի
մի յաւելուածովք . նախ՝ թէ * սա այն պոռ-
նիկ կինն է , որ օծ զոտսն Յիսուսի անուշ իւղովն
'ի տունն փարիսեցւոյն ( սիմոնի ) 'ի նային
քաղաքի . և յայնմ օրէ թողան մեղքն բա-
զում սմա , և աշակերտեցաւ Յիսուսի || . և դարձեալ՝
թէ * նա օծ զՏէրն 'ի տունն սիմոնի բորոտի
( 'ի բեթանիա ) , և ընկալաւ զթողութիւն
բազմամեղ յանցանաց իւրոց . զի պոռնիկ
էր || : Երկրորդ՝ թէ յետ յարութեան և համբարձ-
ման Տեառն՝ * կայր միշտ 'ի սպասաւորութեան սրբոյ
Աստուածածնին . և 'ի քարոզութեան սրբոյ աւետարանին
առաքելաբար շրջէր և քարոզէր զՔրիստոս . և յետ
ժամանակաց գնաց յեփեսոս առ աւետարա-
նիչն յովհաննէս . և անդ ձգնեալ ընդ նմա
մեծաւ ձգնութեամբ՝ հանգեաւ 'ի Քրիստոս խաղաղու-
թեամբ || . բայց այլուր ասէ , թէ * Երկաց 'ի ըս-
պասաւորութեան սրբոյ Աստուածածնին . և յետ փոխ-
ման սրբոյ կուսին բազում չարչարանս կրեաց 'ի

հրէիցն վ՟ր քարոզելոյն զք՟ս. և 'ի նոյն կա-
տարեցաւ յագարակին մագդաղենայ՝ մօտ 'ի
նազարէթ ||: Նշ՟դ՝ զի 'ի վ՟ր բերէ. * Իսկ
միւս մարիամն մագդաղենացի կատարեցաւ
չարչարանօք հեռի յեփեսմայ. է. ապարիսօք ||:
Մեր տեսանեմք, զի առաջին մագդաղենա-
ցին ծանուցեալն յամենեցունց՝ է՟ր իմիք որոշ
աւանդի, և է՟ր իմիք անորոշ և խառն:

Որոշագոյն ևս թուին բանք Ճառընտրաց մե-
րոց, ուր ընաւ չխառնի մագդաղենացին ոչ
է՟ր քեռն ղազարու, և ոչ է՟ր կնոջն մեղաւորի.
այլ պարզապէս և վայելչապէս գրի օրինակ
զայս. * Յաղագս նոյն մարիամու մագդա-
ղենացւոյ՝ հետևողի ն՟ր առաքելոյն յովհան-
նու աւետարանչի: Սէր աղախինն ք՟սի մա-
րիամ էր 'ի սահմանաց մագդաղենայ աշտա-
րակ: Նու յորժամ ծագեաց լոյս ա՟ծութե ք՟սի
է՟. Գ՟ս ա՟մ, յորս մարմնով շրջեցաւ բարի առ-
նել և բժշկել զհիւանդս, և 'ի մարդկանէ
հալածել զդևս, մարիամն այս վտանգեալ
'ի բազում դիւաց. և յորժամ լուաւ զք՟սէ,
եկն անկաւ առ ոտս նորա, և առժամայն
բժշկեցաւ. և այնուհետև պաշտէր զք՟ս՝ ա-
շակերտելով զկնի ն՟ր առաքելոցն. որպէս և
ղուկաս պատմէ յաւետարանի անդ որբունն,
եթէ յորս էր մարիամ մագդաղենացի՝ յորմէ
եօթն դևն ելեալ էին. և աննա կին քոզայ
հազարապետի, և շուշան, որք պաշտէին զնա
յընչից իւրեանց:

Մարիամն սոյն ականատես եղև չարչարա-
նացն ք՟սի և խաչելութեն, ուր ասէ՝ թէ էին
կա-

կանայք որ հայէինն ։ Եւ այլ ոմն 'ի հոգե-
կրացն երգէ , թէ կալով առ խաչին երկնից
բարձողին՝ մինն մայր նորին ըստ մարմնոյ , և
մինն մագդաղենացին , կոծէին 'ի սիրտս ի-
րեանց և հառաչէին ։ մանաւանդ յորժամ
լուան 'ի Քմէ՝ թէ ծարաւի եմ, 'ի սիրտս ի-
րեանց խորովէին ։ և առ յօժարութի ոգւոյն ,
թէ հնար էր , ոչ միայն բաժակաւ ջուր մա-
տուցանել , այլև զյորդանան գետն առ խա-
չին անցուցանել ։ և ոչ էր ձեռնհաս ։ միայն
կոծելով զկուրծսն՝ մահակից լինէր Քմի ։
Եւ 'ի դերեզմանն նա էր առաջնորդ իւղա-
բերից Տր կանանցն , որք բերին զանոյշ իւղն
և զխունկն՝ 'ի խնկել զՏրունոյն մարմինն ։ և
նա լրտեսէր խիզախելով առ պահապանսն ։
քանզի այն ինչ պառաւ էր՝ քաջահաւատ և
Տր ։ Եւ 'ի յարութեն Քմի նա նախ լուաւ 'ի
հրեշտակէն զաւետիս յարութեն ։ Եւ յոր-
ժամ պետրոսեանքն զօղեալ թաքչէին , նա
համարձակ շուրջ զգերեզմանաւն փարէր ,
մինչև ետես զՔս ։ և բուռն հարեալ զոտիցն
Տրունականն՝ հրաման առնու առաքեալ առա-
քելոցն լինել , և հետևօղ առաքելոցն 'ի քա-
րոզութի Տր աւետարանին ։ Իսկ յետ համ-
բարձմանն Տն անցեալ գնաց յեփեսացւոց
գաւառն ։ և եկեալ առ յովհաննէս աւետա-
րանիչն՝ բազում և մեծամեծ առաքինական
ճգնութբ հանգեաւ 'ի Քս , 'ի յուլիսի իբ ‖ ։
Չայս վայր ճառընտիրք մեր ։ Թողից զբանս
հարց և վրդպաց , յորս են որ մի , կամ երկու ,
եւս և երեք և չորս մարիամ քաղեն 'ի բա-

նից աւետարանի. զի այդ մեկնչաց է անկ. մեզ շատ լիցի յառաջ բերել զպատմական աւանդս:

[illegible]

Ի հնումն հռովմայեցւոց և այլոց եւրոպացւոց չիք ինչ աւելի բացայայտագոյն՝ քան զոր նշանակեցաք ը̄ յունաց և ը̄ հայոց. բայց 'ի տասներորդ դարէ և այսր՝ մանաւանդ յերեքտասաներորդէ, տեսանեմք գրեթէ յա̄մ վկայագիրս լատինացւոց առանձին իմ̄ն աւանդութի̄, թէ ղազարոս և քորք նր̄ մարթա և մարիամ, զոր նոյն համարին ը̄ մագդաղենացւոյն և ը̄ կնոջ մեղաւորի, հալածեալք 'ի հրէից վ̄ն անուանն ք̄ի՝ հանդերձ մաքսիմինոսիւ, որ էր ասեն 'ի թուոյ հ̄բ աշակերտաց, և մարկեղաւ նաժշտիւ, եդան 'ի նաւ մի անղեակ և անթի և անառագաստ, և վարեցան 'ի խորս ծովու, զի վտանգեալ կորիցեն: Բայց խնամօք ա̄ն եղին ն̄ք անփուտ 'ի մասսիլիա, որ և մարսիլիա քաղաք 'ի բրովինցիա գաւառ գաղղիացւոց. և սփռեալ յայն Տ̄՝ քարոզեցին զք̄ն, մինչև փոխեցան առ ա̄ր 'ի կողմանսն յայնոսիկ. ղազարոս ասի լինել եպ̄ս մասսիլիացւոց, և մաքսիմինոս՝ ակուանացւոց: Ոմանք յաւելուն, թէ ը̄ նմ̄ էին և մարիամ յակոբեայ, և սողոմէ. և այլք՝ թէ նաև յովսէփ արեմաթացի, որ էանց ասեն 'ի բրիտանիա, և անդ կատարեաց զընթացս իւր:

Օայս

Զայս եղեւ՝ ճոխագոյն եւս աւանդութիւն 'ի մէջ բերեն վն մարիամու մագդաղենացւոյ՝ 'ի յայտնուէ իմեմնէ, որ հանդիսացաւ զկնի գիւտի նշխարացն յամի տն 1279. 'ի դեկտեմբերի 9. օրինակ զայս ։ Կարոլոս իշխանն սալերնայ, որ յետոյ եղեւ արքայ սիկիլիոյ, եկեալ 'ի բլովինցիա գաղղիացւոց՝ գտանէ զմարմին սբյն մարիամու մագդաղենացւոյ 'ի մատուռնն աւանի սբ. մաքսիմինոս կոչեցելոյ, (ուր թաղեալ էր ձեռամբ մաքսիմինոսի նախաձառնէ եպսին ակուացւոց, ) բուրմամբ անուշահոտութե եւ պէսպէս սքանչելեօք հանդերձ. յորոց սակի էր եւ այն, զի 'ի լեզուէ սրբուհւոյն՝ որ կայր դեռ 'ի տեղւոջ իւրում, վերաբուսեալ կայր տունկ որթոյ բազմաշառաւիղօք ։

Գտաւ 'ի տեղւոջն եւ մագաղաթ հին, յորում գրեալ էին բանքս այս. * Յամի տրունեան ծննդեան 716 ( կամ 700. 'ի ժէ աւուր ) յամսեանն դեկտեմբերի, 'ի թագաւորութե օդոյիկոսի բարեպաշտ արքային փռանկաց ( այն է ըն ոմանց դուքսն ակուիտանիոյ ), 'ի ժամանակի արշաւանաց եւ հարստահարութեց սարակինոսաց, գաղտ 'ի գիշերի փոխադրեցաւ մարմինս այս ցանկալի եւ պատուական երանելոյն մարիամու մագդաղենացւոյ 'ի տապանէ անտի իւրմէ եղենգնաքարէ յայս տապան մարմարինեայ առ ահի բարբարոս ազգին . զի առաւել անքոյթ է յայսմ վայրի ։

Զայսոսիկ տեսեալ կարոլոսի իշխանին՝ եւ

ջինել 'ի յաջորդ ամի 1280․ տապանակ ոս֊
կիածոյլ և ականակապ , և անդ զետեղե֊
ցոյց զպատուական մարմին մագդաղենաց֊
ւոյն մեծահանդէս փառօք ․ ուր և զգլուխն
եդ յայլ տապանակ մեծ ․ և շինեալ 'ի տեղ֊
ւոջ անդ յաւանն սըյն մաքսիմինոսի վանս
միաբանակեցաց 'ի կարգէ քարոզչաց՝ 'ի նոյ
ձեռս յանձնարար զայն գանձ նշխարաց մագ֊
դաղենացւոյն ։ Իսկ ահա 'ի նոյն ուխտի դը֊
տաւ զկնի երկուց դարուց և մատեան յիշա֊
տակի ոչ միայն վն այսր գիւտի նշխարաց ,
այլև վն ամ աւանդութեց եղելոց զմագ֊
դաղենացւոյն ․ զոր և 'ի մէջ բերէ երևելի
քարոզիչն 'ի կարգէ անտի դոմինիկեանց՝
սեղբեստրոս մոզոլին պրիերացի , այն՝ որ
զառաջինն գրով յաղթահարեաց զլութեր
աղանդապետ , և վախճանեցաւ յամի 1523․
արդ այս բանք են նորա 'ի գիրսն ոսկեվարդ
կոչեցեալ ։

* Յամի տն հազարերորդի չորեքհարիւրե֊
րորդի իննսունևեօթներորդի՝ յորժամ յայս
ելի ուխտագնացութ 'ի տես այրին , յորում
ապաշխարեաց սրբուհին մարիամ մագդաղե֊
նացի , և պատուական նշխարաց նր՝ որ 'ի սբ
մաքսիմինոս , ցուցաւ ինձ բազում անգամ ոք
և պատուական գլուխ նր , մեծ յոյժ , և բա֊
ւանդակն յամ կողմանց մինչև 'ի բերանն
մերկեալ 'ի մորթոյ , բաց 'ի մասնէ անտի
ճակատուն՝ յոր մերձեցոյց փրկիչն բուրբեց
զձեռն իւր ( յասել անդ , մի մերձենար յիս ) ։
Քանզի յայնմ մասին ակն յայտնի երևէ
մորթ

մորթ 'ի գոյն եթերօվպացւոյ կմ մարմնոյ 'ի վազուց սպանելոյ, և 'ի մորթն յայն երկու փոքր երկուց ծայրից մատանց. յորոց մին է զմիւսն է աւելի յայտնի և խորագոյն, և է մորթով մխս սպիտականիշ: Յուցեալ եղեն և յապակի չիչ՝ հերք նր, ոչ ամն, այլ որովք զոտս քեթի մաքրեր. և չիչ մի այլ՝ լի հողով, որոյ գոյն հարկաներ է կարմիր և է թուխ. զոր 'ի մեծի ուրբաթուն հաւաքեաց 'ի սառ րատէ խաչին երանելի մագդաղենացին: Այլ այն՝ ոչ ամենեքին առանց է բանս ինչ ածելոյ պատմէին ինձ, ամի ամի յաւուր աւագ ուրբաթու 'ի կարգացման չարչարանաց՝ յայտնապես եռալ սկսանի, ոչ թե արիւնն երևիցի անդանօր յեռանդն հարկանիլ. և թե զիարդ պարտ իցէ իմանալ զայս, այլում տեղւոյ թողլի է: Տեսի և զբազուկ նր՝ մեծ և մոմագոյն. իսկ զոսկերսն ամփոփեն յարծաթի տապանակի չկարացի տեսանել: Յուցին ինձ և զ չիչն նարդեան ազնուի մեծագնոյ՝ 'ի մասախլիա յեկեղեցւոջ սբյն մեկտորի: Այլ 'ի հետազօտել իմում զգուշութե զատուգուն ամի այսորիկ, գտի ժամանակագրութի ը օրինակիս ը այսմիկ:

,, Կարոլոս արքայն սիկիլիոյ երկրորդ, որ և կոմս քրովինցիոյ, յամի տն իբր 1279, 'ի նաւական պատերազմ ելեալ ընդ էմ արքային արագոնացւոց՝ 'ի պարտութի մատնեցաւ, և եղև ձերբակալ. և յոդիս ապատան՝ արգելաւ 'ի դժնդակ բանտի 'ի բարկինոն: Այլ այն ինչ անյոյս լեալ յամ մարդկեղէն հնարից՝

մնայր չնչել 'ի մօտոյ զշունչն յետին, հայր խոստովանութեան նր̃ Գուլիելմոս վ̃րդպ սոնայեան 'ի կարգէ քարոզչաց՝ խրատ ետ նմա կարգալ յօգնութի̃ զմագդաղենացին, որոյ քարոզեալ էր զբան ո̃ն յերկիրի անդ ո̃րութե նորա, և ապաշխարութ̃բ վախճանեալ. և նա հաստատուն ապաւինութ̃բ յարդիւնս նորուն՝ յանձն արար նմա զինքն պահօք և խոստովանութ̃բ և արտասուօք:

Իսկ ահա յաւուր անդ հսկման տօնի երանելի մագդաղենացւոյն՝ 'ի մէջ գիշերի եկն եկաց առ նմա ոմն տիկին հրաշագեղ, և քաջահնչօղ ձայնիւ՛ կոչեալ յանուանէ զկարոլոս՝ ասէ. լսելի եղեն աղօթք քո, որդ յաբուցեալ ե՛կ զկնի իմ: Իսկ յաղաչել նր̃ նաև վն̃ թովանդակ տան իւրոյ 'ի գերութի̃ վարեցելոյ, ասէ. դու ե՛կ զկնի իմ, և զքո կնի եկեսցեն քոյքդ առհասարակ. և եղև այնպէս: Իսկ յետ սակաւուց՝ իբրև սուղ մի յառաջ խաղացին, զտեղի կալաւ տիկինն. և յայտնեալ զանձն՝ թէ ինքն իսկ է մագդաղենացին, առ որ կարդաց կարոլոս, ասէ ցնա. գիտիցես արդեօք՝ թէ ո՞ւր իցես այժմ: Իսկ նա ասէ. թէ չխաբիմ, տակաւին կամք 'ի մէջ պարսպաց բարկինոնի: Իսկ նա ասէ. խաբիս. զի այժմ կաս 'ի մէջ սահմանաց իշխանութե̃ քո, և մօտ 'ի նարբոնա միով ասպարիզաւ. (ուր ի̃ բարկինոն և ի̃ նարբոնա է երեքօրեայ ճանապարհ, և երեսուն փարսախ, ևևս աւելի):

Յայնժամ յարտասուս հարաւ կարոլոս, և ասէ.

ասէ . զի՛ նշխարս շնորհս քեզ հատուցանել հնար իցէ ինձ ո տիրուհի փոխան այսպիսի երախտեացդ : Եւ նա ասէ . ես ցուցից քեզ . արդ գիտեա՛, զի՛ 'ի հասանել երբեմն պատերազմի՝ բարձին զմարմին իմ 'ի գերեզմանէ իմմէ , և զայլ մարմին եդին 'ի տեղւոջն . զի խաբեսցին թշնամիք՝ եթէ կամիցին բառնալ զիմ մարմին . և այնպէս եղև . վ՛ոյ տակաւին պահին նշխարք իմ , զի օտարին ոսկերք բարձան փոխանակ իմոցս . արդ երթիջի՛ր յայս նիշ տեղի , և գտցես զայն այսու նշանաւ . զի կայ անդ տունկ որթոյ , զոր խուզարկեալ մինչև ցարմատն՝ տեսցես զայն բղխեալ 'ի բերանոյ իմմէ . անդ է գլուխ իմ՝ մերկիկ ողջոյն 'ի մորթոյ , բաց 'ի մասնէ անտի մսոյ՝ յոր մերձեցաւ 'ի պարտիզի փրկիչն Տէր , 'ի կամիլ իմում բուռն հարկանել զզարշապարայ նո̅ր : Երբքս ա̅մ կորեան , բաց յորոց մերձեցանն յոտս ք̅ի յ̅ի : Եւ գլխով իմով կայ շիշ մի հողով լի , որ թաթաւեալն է 'ի ք̅ի արենէն , զոր առ խաչի՛ն ժողովեցի . և զա̅մ ժամանակս՝ զոր կեցի , պահեցի 'ի յիշատակ ա̅ն իմոյ : Յորժամ զայս ա̅մ գտանիցես , արժանաւոր պատուո՛վ 'ի վե՛ր առնուցուս , և զտեղի հանգստեան իմոյ և ապաշխարութե՛ս տայցես եղբարց իմոց քարոզչաց , քանզի և ես քարոզուհի և առաքելուհի էի . և ուխտի տեղւոյն՝ ուր եղև իմ վախճան , հաւս սահմանեսջի՛ր վ̅ս եղբարց հարիւրոց , զի հանապազ փայլեսցէ անդ փոյթ հասարակաց . և զայս ասացեալ՝ եղև

ան-

աներևոյթ ։ Իսկ նա ընդ լուսանալ առաւուրն տեսեալ զնշխարսն, 'ի տեղւոջն՝ ուր մեկնե-ցաւ 'ի նմանէ մագդաղենացին, հրաման ետ խաչ կանգնել. որ և ցարդ կոչի խաչ տապա-րիզի. և եկեալ 'ի նոյն մաքսիմինոս՝ եպիս-զամ̃ն կարգաւ, և կատարեաց զհրամայ-եալսն . . . .

Այլ զի բանս բուռն ետար զմագդաղենաց-ւոյն, յաւաղ բերից և այլ ինչ ինչ՝ զոր ըն-թերցեալ է իմ . . . Քանզի յամի տն 1370, այր ոմն վաճառական յերկրէն տոսկանայ յայց եւ ուխտիւք յայրն՝ ուր մագդաղենա-ցին ճգնեցաւ. և զի յոյժ էր վառեալ ամծային սիրով . . . 'ի դառնալ իւրում 'ի հայրենիսն՝ յօրինեաց զանցս ճանապարհորդութե իւ-րոյ տասանաւոր բանիւք յԵրկ բարբառ, գե-ղեցիկ և ճշգրտապատում տողագրելով ըզ-տեղիսն և զնշխարսն ամ̃, որ 'ի սրբն մաքսի-մոս, 'ի Մասսիլիա, յարելատ, յաւենիոն և յայլ մերձակայ տեղիս, ուստի ԲՃ հատ յորոց մեք տեսաք աչօք մերովք ։ Բայց ոչ վկայէ դա, յառաջիկայումն իւրում յայտնեաց՝ զոր միանգամ ունիմ գրել 'ի կարգիս, եղբայր եղիայն 'ի կարգէ քարոզչաց, որ զամս ութ-սուն և վեց ծառայեալ էր մագդաղենացւոյն 'ի նոյն այրի անդ . . . քանզի այն ինչ խորհէր մեկնիլ վաճառականն յայրէ անտի, երանե-լի հայրն եղիա ասէ ցեղբայրն, որ ունէր զձեռանէ նր առ ծերութեն. տարցես զիս յիմ տեղին, զի զգաղտնիսն իմ կամիմ յայտ-նել՝ զոր լուեցի. և տեղի իւր կոչէր զայն վայր՝

վայր՝ յորում սովոր էր յաղօթս կալ յայրին՝ 'ի վ̄ր վիմի, ուր գիշերային հանգչէր Մագդաղենացին ։

Այլ վ̄ր արժան է գիտել, զի լեառն մի է 'ի Պրովենսիա՝ որ ունի յարևելից զնիցիա, յարևմտից զմասսիլիա, 'ի հարաւոյ զծով, և 'ի հիւսիսոյ զաւենիոն, ամբարձեալ 'ի բարձրութի երեք մղոնաչափ. և ունի բաւս իմն կամ կատարս քարեղէն՝ ձգեալ յարևմտից յարևելս ցտասն մղոն և ևս աւելի. որ այնպէս երևի յարևմտեան կողմանէ, որպէս թէ պարիսպ ը̄արձակ կարծել. զի գրեթէ հանգոյն երկուց բարձրաբերձ աշտարակաց ամբարձեալ կայ ։ 'Ի ստորոտս ապառաժին կայ քարանձաւ վերամբարձիկ՝ իբրև քարընկէց մի մեծ, մանաւանդ թէ կարի յոյժ մեծ, հնոցաձև, և բերանն նո̄ր ը̄ արևմուտս ։ Առաջի բերանոյ քարայրին է միջոց ինչ անձուկ. իսկ 'ի ներքս՝ ը̄ ձախմէ մտանողին և 'ի միջավայրի այրին՝ քար վերաբուսեալ 'ի գետնոյ՝ դիզացեալ տեսանի ո̄չ կարկառ, այլ տակաւ երթալով 'ի ներքսագոյն կողմն այրին՝ նուաղի և պակասի. ը̄ մէջ սորա և ծայրից այրին՝ աղբիւր կայ ականակիտ ջրոյ՝ ցրտագին և քաղցրահամ յոյժ, մշտաբուղխ, այլ ոչ երբէք 'ի դուրս ստուցեալ յայտնապէս ։ Ասի 'ի հասարակաց համբաւոյ, թէ 'ի վ̄ր այնր քարի պարապէր Մագդաղենացին 'ի խոկմունս և 'ի հանգիստ գիշերոյ. զնոյն վկայէ և որ անդ պատկերն Մագդաղենացւոյ՝ ո̄չ աչօք բացօք ընկողմանելոյ, յօրինեալ՝ որպէս

ա

առեն՝ յերանելւոյն՝ Մաքսիմինոսէ ։ Ուստի՝ ուր բովանդակ քաղաքն ստէպ տամկանայ կայլակօք խոնաւութեն ծնելոյ , միայն քարն այն ասի պահեալ զա̃մ ժամանակս անմասն ՚ի շխասուց կաթուածոց ։

Արդ յորժամ յայս տեղի ածաւ հայրն եղիա, որում զհետ գային ուխտաւորք , և ը̅ տե-սիլ սրբուէն նր̃ յարտասուս ցնդէին , խօսել սկսաւ , և ասէ . Եղբարք , եկն եհաս օրն և ժամն փոխմանն իմոյ՝ որում ՚ի վաղուց մնայի փափաքանօք . և արդ ՚ի միտ առէք զոր ձեզն պատմեմ յաճումն փառաց երանելւոյ մագդա-ղենացւոյն և ձերումդ փրկուէ ։ Յորժամ եկի ես յանապատս յայս և յահագին ապա-ռաժս՝ ցանկանալով ծառայել երանելւոյ մագ-դաղենացւոյն , յետ ամսօրեայ մի ժամանա-կի ձանձրացեալ յառանձնութե՝ սորջացայ, և լռելեայն խորհէի մեկնել աստի ։ Իսկ ՚ի միում գիշերի՝ մինչդեռ պատերազմեալ լի-նէի ՚ի խորհրդոցս , տեսի յանկարծակի զայս լեառն քարեղէն բաժանեալ խաչանման ՚ի չորիր մասունս . մինչև բացան առաջի իմ չո-րեքին կողմանք ծի , արևելք , արևմուտք , հարաւ և հիւսիս . ո̃չ և երկինք ՚ի վերուստ , և անդունդք ՚ի ներքուստ . և զահի հարեալ անկայ յերկիր անշշունչ ։ Այլ ՚ի քաղցր բար-բառոյ ուստեք յարուցեալ՝ ոգի առի , և ՚ի բոլոր սրտէ յօգնութի կարդացի զմագդա-ղենացին ։

Եւ նա իսկ և իսկ եկն եկաց առ իս այնպի-սի լուրջ և ճառագայթարձակ դիմօք , զի

ոչ

ոչ կարէի հայել 'ի նա . ծածկեալ հերովք ,
մերկեալ բազկօք , և ծաղկազարդ ոտիւք .
և ասէ ցիս . Ո՛վ դու յողդողդ և համբակ
միտօք , 'ի քո սակս բացաւ լեառնդ , և վ̅ն քո
եկեալ եմ ես . և ինև՝ միայն թէ կամ իցէ
քեզ , կարգեսցի անձն քո 'ի կեանսն յաւի-
տենականս . դու խորհեցար մեկնիլ աստի
'ի ծառայութենէ իմմէ . այլ լո՛ւր զոր ասեմս ,
և ապա զոր արժանն է՝ արասցես :

Ըստ որում գիտակ իսկ ես՝ ասէ , մեք բազ-
մութե̅ք յեղմէ 'ի մասսիլիա նաւարկեալ ե-
կաք կամօքն ա̅յ . այլ յորժամ մասսիլիա , և
ոչ փոքր մասն երկրիս ընկալաւ զհաւատս յ̅ի
ք̅ի , այնչափ յորդեցին զմեօք մարդկանն սէր
և գութ՝ առ 'ի չթողլոյ զմեզ հանդարտել ,
մինչև 'ի մտի եդի խոյս տալ 'ի մարդկանէ .
և այնպէս յափշտակեալ յա̅ծուստ՝ եդայ առ
դուրս այրիս այսմ : Եւ այն ինչ ակնկառոյց
լեալ է̅ր տեղին պատրաստեալ ինձ յա̅յ՝ այսր
անդր հայէի , յանկարծակի տեսի է̅ր լոյս և
է̅ր խաւար զվիշապն , զոր սպանեալ էր մար-
թայի քեռն իմոյ՝ մեծ քան զբոբողոն . զորոյ
զարհաւիրս չէ՛ ոք բաւական պատմելոյ . տե-
սի և զի̅մ ազգ իժից : Եւ ահա է̅ր գտանիլ
իմում 'ի մէջ այրին , շարժեցան 'ի վ̅ր իմ
վիշապն և բազմութի̅ւք օձից՝ զայրագնեալ
աչօք և շչմամբ . քանզի իժքն յեցեալք 'ի
տոտունս՝ լանջիւք կանգուն կային . իսկ վի-
շապն դժնեայ քան զամենեսին այնպէս ահա-
ցոյց զիս , զի զանգիտէի հայել է̅ր նա , մա-
նաւանդ թէ չհանդուրժէի , այն որ աներ-
կիւղ

կիւղ եւ ՚ի միահոծանէ ։

Յայնժամ ասացի ․ վայ ինձ ո՛ իմ Յս ․ թէ ոչ վաղվաղակի ՚ի թիկունս ինձ հասանես , կամ կլանել դա զիս , եւ կմ՛ յաղթէ ատամն քաղցր հոգիս ։ Յայն բան ամփոփեաց վիշապն ըզգլուխ իւր , որպ թէ չիցէ նր ինչ փոյթ զինէն ․ այլ միւսանգամ յեղակարծուց երկայնեալ եւ ձգեալ զահագին կոկորդ իւր , եւ բաբախեալ զթեւսն , դիմեաց ՚ի կլանել զիս ։ Իսկ իբրեւ ձգեաց ՚ի բերան իւր՝ զի կլանիցէ , անկարօղս լեզուաւ՝ ՚ի խորոց սրտէ մտօք հաստատութեան խօսեցայ օրինակ զայս ․ Քաղցրագութ Տէր դու Յս , մինչ յետ անչափ շնորհաց քոց առ իս՝ ՚ի կերակուր տայցես վիշապին զախրազգեացս եւ զմիայնացեալս յանապատի ։ Իսկ նոյնժամայն հանեալ զիս հրեշտակին ՚ի բերանոյ վիշապին՝ խօսեցաւ առ իս եւ ասէ ․ Երանի՛ քեզ , որ պինդ ունիս զհաւատս ։ Իսկ հարեալ ոտիւք զվիշապն՝ ասէ ․ Ե՛լ սատանայ վիշապդ , եւ ա՟մ իժք ՟Է՟ քեզ ․ եւ զոյգ ՟Է՟ բանին՝ գահավէժ արար զանձն վիշապն , եւ այլ զեռնոցն հոյլք ՟Է՟ նման ․ եւ կէս մի թռուչելով , եւ կէս մի ոտնփոխս լինելով՝ դիմեաց յանապատն ․ ուր յաղթեաց նմա քոյրն իմ մարթա ։ Ապա միքայէլ հրեշտակն փչեաց շաւնչ հոտաւէտ , որ ՚ի բոց յեղափոխեալ՝ լիզեաց զքարանձաւն ողջոյն , եւ ծախեաց ըզգարշ եւ զժահահոտ աղտեղուէս զեռնոց , եւ զբոլանդակ վայրն մաքուր եւ անուշահոտ կացոյց ։

Յետ այսորիկ դարձաւ , եւ ասէ ցիս հրշտկն ․

ա՟ծ՝

ամ՝ որում այնչափ տենչացեալ ես ով մագ-
դաղինէ, և միշտ 'ի քեզ կրես, կամի՝ զի դու
զայս տեղի ոռոգանիցես յորդահոս արտաս-
ւօք. ոչ զի յապագայ դարս օրինակ լինի-
ցիս միշտ ապաշխարութեան: Եւ ես 'ի մեկնիլ
նր՛ յաչաց իմոց կացի մնացի սոսափեալ. և
խուզեալ զտեղին՝ 'ի միտ առի զանմատոյցն
լինել ելից և մտից մարդոյ յերեսաց ապա-
ւածին: Յայնժամ ապա յարտասուս լուծեալ
'ի քաղցրութեան սիրոյ՝ տարածեցի զանձն իմ
'ի գետին, և երկրպագեալ ասացի. փառք
քեզ Քն սէր անբաւելի, զի լցուցեր զամ՛ փա-
փաքումն սրտի իմոյ. արդ աղաչեմ, լո՛ւր
խնդրուածոց իմոց, և աղբերացո՛ ինձ ջուր
յապառաժէ այտի: Եւ նոյնժամայն պայթե-
ցաւ առաջի աչաց իմոց ահագին այս քար,
և ջուրքդ՝ զոր տեսանես ե՛ղիա, բղխեցին 'ի
կարծր գայլախազէ:

Եւ մինչդեռ ծունր եդեալ յանդիման ակա-
նակիտ աղբերն՝ գոհանայի զՔէ, տեսի՝ և
ահա աւելի քան հազար ոգիք կային յաջմէ
քարայրիս, որք նուաղէին երբայեցի բար-
բառով բանս քաղցրաձայնակ սիրոյ: Այլ 'ի
կատարած բանիցն՝ քանզի թելադիր ինձ լի-
նէին, թէ չէ՛ բարւոք անձին այդչափ հանա-
պազորդութիւն անդադար աղօթից, ամբար-
ձեալ զաչս իմ՝ տեսի զօդս արտաքոյ այրին
լի այնպիսեօք. նմին իրի խիթացեալ իմ՝ ե-
թէ դևք իցեն նք, յահի եղէ և գոչեցի առ
յս. և անդէն փաղփաղակի եկն եկաց միքայէլ
հրեշտակ հանդերձ իւրովք զինուորութեմբք,
և

և ասէ. աւասիկ եմ մանգաղազինէ, մի՛ երկն-
չիր: Իսկ ապա ձանկատեղ Եղեմ այսոցն չա-
րաց՝ 'ի փախուստ դարձոյց զամենեսեան սա-
հաստրակ. որք ձայնելով ասէին առ իս.
բայց դու ո՛չ վճ այնորիկ երանելի լինիցիս,
որ աղօթից պարապիս յայրիդ: Յայնժամ
հրեշտակն խաչ կանգնեաց 'ի դուռն այրին,
և ասէ ցիս. զգո՛յշ լեր, մի՛ երկնչիցիս յայսմ
հետէ. զի պահապան քո է բարձրեալն:
Արդ յետ մեկնելոյ նո՛ր անկեալ իմ առաջի
խաչին, իբրև ոչ կարէի ցամաքեալ սրտիւ
յերեսաց ահին մտադրութե՛ կալ յաղօթս,
ժողովեցի արմատս երկուս 'ի բերանոյ անտի
այրին, լուացի և ճաշակեցի. և արբի ջուր
յաղբերէն, ոչինչ այլ մարդկային առեալ
կերակուր: Իսկ ապա փարեալ զխաչիւն, յա-
ղօթս անցուցի զայն տիւ և զգիշերն առաջի
կայ. և 'ի ծագել արևուն ամբարձեալ զաչս
իմ 'ի խաչ անդր՝ տեսանէի զայն սառնատե-
սակ և ճառագայթաւէտ շողացեալ: Իսկ իբ-
րև յանձին զգացի զբոց սիրոյ սաստիկ բոր-
բոքելոյ, անդէն և անդ գտաւ առ իս բազ-
մութիւն յոյժ զուարթնոց 'ի ձայն ցնծութե.
որպէս այն թէ յայրի աստ իցէ կեանքն յա-
ւիտենից:

Յետ այսորիկ յեղակարծում պահու տարեկ
'ի նոցանէ 'ի վայրս դժոխոց՝ տեսօղ եղէ ազ-
գի ազգի տանջանաց և խուժանի պատժա-
ւորաց: Իսկ իբրև տարան զիս 'ի վայրս մաք-
րարանի, այնպիսի քաղցրութե՛ պատեցան
զինև ջերմեռանդն հոգիք, մինչև թուէր
ինձ

ինձ 'ի կայանս լինել երկնից. և առեն զիս բազում աղերսանօք. աղօթեա՛ վն մեր Մագ-դաղենի՛դ մեր. և ես առեմ զնա. իցէ՞ թէ կատարեսցին ինև խնդիրք ձեր. քա՛ջ տեսանեմ, թէ քանի՞ օգնականութե պէտս ունիք ։

Մ՚պա դարձեալ անդրէն եդեալ հրեշտակին զիս առ խաչին՝ ասէ. ցորչափ ժամանակս եկաց 'ի վր երկրի վն քո՝ սէր քո և մեր յն, նոյնչափ և դու դեգերեցիս յայրի աստ. և զայս ասացեալ՝ եղև յինէն աներևոյթ. իսկ ես յաղօթս կայի առ խաչին, և խոկայի զփրկութիւն իմ զքն ։

Այլ 'ի շրջիլ աւուր աւուր՝ գային առ իս զինւորութիւնք հրեշտակաց, և ամբառնային զիս յօդս վերինս. մինչև լսել ինձ զհնչմունս երկնաւոր երգոց քաղցրութե ։ Որ և զկնի իւր եօթն անգամ առնէին միշտ 'ի գիշերի և 'ի տուընջեան ։ Այլ ես այնուհետև յոչինչ գրէի զցուրտ և զսառնամանիս՝ փառել հրոյն նձայլին. և 'ի թօթափիլ հետզհետէ հանդերձից իմոց առ հնութե՝ նոյնպէս տակաւ անձեցին հերք իմ 'ի մարդասիրութենէն այ. և ապա յորժամ զափածանելիս ծուճատեալ 'ի բաց ընկեցի է ժայռդ, այնչափ յորդեցին հերքս, մինչև խափան ինձ լինէին զգնալոյ է քարինս ։

Իսկ 'ի խաչի անդ յանդիմման ինձ լինէին քսական խորհուրդքն տմ. անդ տուճեալ լինէր տեսանել զպատմութի անձնայի և յօժարկիմայ. անդ զմարիամ՝ որ ծնաւն զյն իմ ինձ. անդ զխաչելոյն կերպս դժնդակս. անդ զանապա-

կան արիւնն. անդ զանտանելի զվէրս. անդ
զխաչ նորա և զմահն. նոյն և զելս 'ի դժոխոց,
և զթափանցանց մուտս ընդ լուսաւորս երկնից։
Մ.յախեօք կերակրեր խորտկօք՝ զցայգ և
զցերեկ յողես ծախէի. և 'ի գնալ իմում յաղ-
բիւր անդր լուանալ զերեսս, տեսի զայր 'ի
մարդկային կերպարանս, զի ասէր ցիս այսպէս.
վասն քո պատրաստեցի մարիամ զտեղիս զայ-
սոսիկ։ Եւ շուրջ կային զօրք երկնից զթա-
գաւորաւն իւրեանց՝ ունելով 'ի ձեռս ըղ-
փունջս ծաղկանց, և զոստս ձիթենեաց և
արմաւենեաց։ Եւ ահա յանկարծակի փայ-
լատակեաց առեալ մարդկութիւն, և այլա-
կերպեաց փրկիչն զանձն իւր ընդ օրինակի թա-
բորական լերին. մինչև չբաւել ինձ ակնար-
կել յայնչափ մեծվայելչութիւն։ Եւ թէպէտև
քաղցր սէրն վառէր զսիրտ իմ ամբառնալ
զաչս 'ի տենչալի դէմս անդր, այլ չէղէ բա-
ւական առ այդ։ Եւ յետ յերկար խօսելոյ
ընդ իս բանիւք մխիթարութեան՝ վերացաւ յեր-
կինս. և ցորչափ կեցի, հարիւրիցս և տաս-
նիցս այց առար ինձ յայրի աստ մարդասիրու-
թեամբ իւրով։ Եւ արդ խրատ տամ քեզ եղիա,
և աղաչեմ իսկ, զի 'ի ժամու աստ պարապեա-
ցիս յօրհնութիւս քսի, մինչև տարեալ հա-
սուցից զքեզ 'ի նաւահանգիստն կենաց։ Ես
միայնիկ և սոսկ եկի յանբեր տեղիդ. իսկ
դու զեղբարցդ ունիս մխիթարութիւն, և զպէտս
կերակրոյ և հանդերձի առատապէս. հա՛պա
դի՛ր 'ի մտի հանապազորդել մինչ ի սպառ։
„ Եւ զայս ասացեալ՝ ասէ եղիա, աներևու-
„ թա-

,, Թացաւ Մագդաղենացին յաչաց իմոց. և
,, ես մինչև ցայս ժամ ծածկեցի զայս ամ ՚ի
,, մարդկանէ: Իբրև զայս ասաց, յետ պա-
,, հու միոյ երանելի հայրն աւանդեաց զհո-
,, գին. և նոյնժամայն զանգակք՝ որ կա-
,, խեալ կան յայրի անդ, հնչեցին առանց
,, մերձենալոյ ձեռին մարդոյ: Զայս ամ
,, հանի հաւատարմութբ ՚ի նախաճառեալ
,, մատենէ անտի ||, ասէ գրիչս. և ՚ի սմա-
նէ առնուն՝ որք միանգամ յիշատակեն զվարս
Մագդաղենացւոյն յարևմուտս. Թող և զոր
այլք այլազգագոյնս աւանդեն անմիաբա-
նաբար:

Բայց ՚ի մէջ բազմաձայն կարծեաց՝ մին յեր-
կուց հաւաստի գտեալ է, թէ կամ ան-
ձամբ եկեալ է Մագդաղենացին ՚ի Մասսի-
լիա, և կամ նշխարք նր բերեալ են անդր.
Սակայն և վն նշխարաց վէճ մեծ է, զի ոմ
՚ի Սանմաքսիմեան վանս Պրովինցիայու, նոյն-
պէս և ՚ի Վեզիլեան վանս Բուրգոնդիոյ գոյ
ասեն մարմին Մագդաղենացւոյն վաւերա-
կան յիշատակագրովք և Հայրապետական
և Թագաւորական նամակօք. և յերկոսին
ևս անպակաս լինէին սքանչելիք. յայտ է
զի կամ մասն և մասն էր աստ և անդ, և կմ
մին էր մարմին բուն իսկ Մագդաղենացւոյն,
և միւսն մարմին այլոյ համանուն կուսի. զի
ոչ միայն յետ ժամանակաց եղեն այլ և այլ
սրբուհիք՝ Մարիամ, կմ Մագդաղենացի ան-
ուամբ, այլև եղեն երկու քորք Մարիամ և
Մարթա անուն նահատակեալք Է լիկարիո-

նի կրօնաւորի յաւուրս հալածանաց. զորս
յիշեն հայք և յոյնք 'ի յայսմաւուրս. փետր.
8. Թող և զայլ անուանակիցս։ Այլ ով յայտ
է բազմօք, որք ոչ պակաս առնեն զբարեխօ-
սութիւն իւրեանց ընդ նշխարօք այլոց համա-
նունն սրբոց։

Այլ արդարև անհամար են պատմութիւնք և յի-
շատակարանք զքանչելեաց սրբոց, այլ առա-
ւել ևս մագդաղենացւոյն. զորոյ և զգու-
ցակն համառօտեն բոլլանդեանք. ուր յիշէ
ազատութիւն ոմանց 'ի կախաղանէ և յայլ ա-
կածից մահու. յարութիւն մեռելոց ոմանց.
բժշկութիւն բազմաց 'ի մահաբեր խօթութեանց.
ազատութիւն 'ի կապանաց և 'ի բանտից, ով
և յալեաց ծովու. լուսաւորութիւն կուրաց,
լսելութիւն խլից, բժշկութիւն դիւահարաց. և
պարզաբար՝ փարատումն ամ̃ ցաւոց, և դար-
ման ամ̃ վշտաց հոգւոյ և մարմնոյ՝ որոց հա-
ւատով կարդան առ նա։

Այլ այնչափ հանդիսայեալ է ջերմ պաշտօն
հաւատացելոց առ մագդաղենացին՝ շինուել
վանորէից, եկեղեցեաց և խորանաց, և
կարգմամբ եղբայրութեանց յանուն նր̃, և այլ
ազգի ազգի յիշատակաց և մեծարանաց 'ի
պատիւ փառաւորութեան նր̃, մինչև տիրապէս
կատարիլ 'ի նմա տիրական խոստմանն եղե-
լոյ առ մարիամ քոյրն մարթայի և ղազարու՝
յօծանել անդ զնա 'ի տան սիմոնի բորոտի,
թէ ուր և քարոզեսցի աւետարանս այս՝ ընդ
ամ̃ աշխ̃ խօսեսցի և զոր արար դա վս̃ յիշատա-
կի դորա։ Այս և արդարացեալ է՝ զոր աստ
եր

երբեմն ոմն յիմաստուն ներբողաբանից. * Ի
մէջ ձմ̃ գոգցես որբուհեաց պսակելոց յերկ-
նից արքայութէ, զկնի մօրն երանութեց օգոս-
տափառուհի դշխոյին երկնի և երկրի՝ ա̃ծա-
ծին կուսին Մարիամու, ոչ ոք այլ առաւել
մեծահաչակ և մեծավայելուչ պատուով սրբ-
բութէ պաշտի առ հաւատացեալս՝ քան զսրբ-
բուհին Մարիամ Մագդաղենացի ||:

Նաև զի արևմտեայք հաստատութբ̄ համա-
րին զՄագդաղենացին քոյր լինել Մարթայի,
վ̃յ և զպատմական աւանդս 'ի նոյն յարեն՝
առեն, թէ Մարթա ասպնջական և վանա-
տուր փրկչին մերոյ եկեալ ը̄ քեռն իւրում
Մարիամու և ը̄ եղբօր իւրում Ղազարու 'ի
Մասսիլիա գաղղիացւոց՝ դարձոյց քարոզու-
թբ̄ զբազումս 'ի հաւատս ք̄ի. և ժողովեր
զհաւատաւոր կանայս՝ կառոյց կուսաստան,
և եղև նախկին առաջնորդ միանձնուհեաց
յարեւմուտս. ուր և 'ի հայս 'ի հոգւոց վանս
միւս Մարիամ և Մարթա հայկազունք ը̄ խո-
րհնացւոյն: Նա ասեն շինել և եկեղեցի յա-
ւէնիոն քաղաքի. ուր յարոյց և զմեռեալն չա-
րեքօրեայ զպատանի, որ հեղձեալ էր 'ի
գետն հռոդան. ապա և զվիշապ մի ահա-
գին (զերևեալն մագդաղենացւոյն), որ
բուներ էր յանտառի յափն գետոյն, և'ի
պաշտօն առեալ 'ի ռամկէն:

Ապա էանց 'ի մերձակայ աւանն, տ̄ր 'ի տա-
րասկոն քաղաք բրոմինցւոց՝ որ 'ի նարբոնեան
անուանեալ գաղղիա. և անդ ևս աշակեր-
տեաց զբազումս, և ետ շինել եկեղեցի և

կուսանաց՝ առնելով զբազազում հրաշս. և կա-
տարեալ զաւուրս իւր ըի արդեամբք՝ 'ի նմին
քաղաքի տարասկոնացւոց Թաղեցաւ պատ-
ուով 'ի հաւատացելոց. և եղեն ոչ սակաւ
նշանք 'ի տապանէ նր̃.

Իսկ 'ի զօրանալ մուսուլմանաց բարբարոսաց 'ի կողմանսն յայսոսիկ՝ ծածկեցաւ գերեզմանն սրբյն մարթայի Է̃ դարս յոլովս. մինչև յամի տն̃ 1187 կմ̃ 1188, գտաւ սքանչելեօք 'ի ստորերկրեայ վայրս տաճարին յիւրմէ կառուցելոյ. յորոյ վր̃ շինեցաւ այլ եկեղեցի յետ ամաց տասանց. և անդ ամփոփեցաւ յետոյ կուսէ բեմին յառանձին մատրան։

Իսկ յետ այլ և քանի մի դարուց՝ յմ̃ յամի տն̃ 1458 կմ̃ 1459. բացաւ տապան նորա. և գանձ նր̃ եղաւ յարծաթի գլուխ ոսկեզարդ՝ մեծաշուք հանդիսիւ, յաւուրս հռեննատոսի դքսի՝ կոմսին բրովենցիոյ, որ և կոչիւր արքայ եմ̃ի և սիկիլիոյ լ̃տ։ Իսկ զկնի սակաւուց՝ յամի 1478, եղաւ յայլ գլուխ ձոյլ ոսկի, զոր ետ շինել լուդովիկոս ժմ̃երորդ արքայ գաղղիացւոց շքեղ յօրինուածով. Թող և զայլ Թ̃ն̃րական յիշատակս ընծայից, զոր ձօնեցին զանազան Թագաւորք և իշխանք 'ի նոյն տաճար սրբյն մարթայի. ուր և զխորանն մեծաշէն՝ զոր հաստատեաց անդ հայրապետն հռովմայ գրիգոր ժմ̃երորդ, յորժամ նստէր յաւենիոն. և զբազմութիւն յոյժ ուխտականաց, այն են յիշատակք սքանչելեաց զորս կախեցին առ խորանաւ որբուհւոյն մարթայի հաւատացեալքն հեռ-

ըզ-

ղհետէ՝ այնչափ յաճախութ̄, որ ոչ ումեք 'ի մ̄ջ այլ կարծի լեալ յիմ̄ տեղիս քրիստոնէութե̄ . ո̄պ յայտ է և 'ի յիշատակագրաց հրաշից ն̄ր . զի զերծոյց բազում անգամ ըզտարասկոնացիս 'ի հրդեհէ, 'ի ժանտախտէ,
և յայլ անբաւ արկածից :

Կան և յայլ տեղիս ոչ սակաւ նշխարք յանուն ն̄ցին մարթայի, ք̄ մասին 'ի տարասկոնայ առեալ, և ք̄ մասին է̄ համանուն ս̄ջ շփոթեալ . այլ յամենեսին անթերի ներգործի բարեխօսութ̄ն ս̄յն մարթայի քեռն ղազարու և մարիամու : Կան և երևելի եկեղեցիք և վանորայք կուսանաց յանուն ն̄ր քաղաքէ քաղաքի . ո̄պ յայտ է յՃագրաց և 'ի տեղա-
գրաց :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ :

(1) 'Ի մէջ նախնի հարց և վարդապետաց, որք հասարակօրէն երկբայաբար խօսեցան՝ արդեօք մի՞ իցեն, եթէ ղանազան՝ մարիամ քոյր մարթայի, և մարիամ մագդաղենացի, և կինն մեղաւոր, որոգինէս յայտնապէս ասէ՝ թէ ինձ ընտրելի է յերիս զանազանել . զի անհաւատալի համարի՝ թէ քոյրն մարթայի իցէ մեղաւորն . նոյնպէս խօսին և ոսկեբերան և այլք յոլովք յարևելեան վարդապետաց . և յարևմտեայց ամբրոսիոս, հերոնիմոս, օգոստինոս, և այլք ոչ սակաւք անորոշ թողուն զխնդիրն . միայն մեծն գրիգոր նոյն համարեցաւ լինել զմարիամ զքոյրն մարթայի ըն մագդաղենացւոյն և ըն կնոջն մեղաւորի . և այս կարծիք հետզհետէ զօրացաւ առ եւրոպացիս առ հասարակ, մանաւանդ առ գաղղիացիս՝ ամս իբր հազար մինչև 'ի դարն ժէ̄ երորդ . մինչ զի յայնժամ 'ի դրել ոմանց 'ի գաղղիացի մատենագրաց ասեն, թէ որեշ են յերերաց մա-

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

*Սրբոյն Թէոդորիտեայ քահանայի անտիո-քացւոյ, որ և Թէոդղիտոն գրի։* (1)

Հ. Ճառընտ. Ա. Երես. Ճէ=Ճէը։ Յ. Ճաշոց. 2։ Ն. Հոկ. 23։ Սոփերմենս. Է. 7։ Բներգ։ Բնագ-րանէտ յամի 363. ԼԷԱ։ (2)

ՍՈՒՐԲ ԿԱՀԱՆԱՅՆ *Թէոդորիտոս, ըստ ածապարգևական կարգացեալ ընդ յունական նին, յորմէ 'ի մեզ ընդ հին օրինակաց Թէոդորիտոն, և ընդ վերջնոց՝ Թէոդղիտոն, էր մի յերիցանց սուրբ եկեղեցւոյ անտիոքայ ասորւոց, այր լի հաւատով և հոգւով, փայլեալ յաւուրց մեծին կոստանդիանոսի մինչև ցառաջին ամն եղբօրորդւոյ նր յուլիանոսի ուրացողին, այն՝ որ ապրեալն էր 'ի կոտորածէ տան հօր իւրոյ յերեսաց որդւոց կոստանդիանոսի. և յետ լինելոյ ընթերցօղ եկեղեցւոյ՝ Թողեալ զքրիստոնէութի՝ յարեցաւ 'ի հեթանոսութի. և նստեալ յաթոռ կայսերութե՝ եղև անողորմ բռնակալ և ոսոխ թշնամի քրիստոնէից, 'ի սկզբան դաւաճանութբ և դիւական հնարիւք ջանալով զնս որսալ յօրէնս անօրէնս;*

և

և ապա յայտնապ̃ դառն հալածիչ լինելով: Որ նորա և քեռի մի համանուն՝ յուլիանոս կոչեցեալ, զոր ուրացող կայսրն ձգեաց զկնի իւր՝ ապստամբեցուցեալ և զնա 'ի հաւատոցն և 'ի յուսոյն ա̃յ 'ի կռոցն մոլութի: Որ և կամակատար եղեալ չարին՝ գործակից և յորդորիչ եղև նմին յա̃մ վնասակարութիւնս ը̃դդէմ քրիստոնէից. և եկեալ երբեմն ը̃ն կայսերն 'ի մեծն անտիոք՝ զգացուցանէր նմա սա ինքն յուլիանոս քեռին իւր, թէ բազում նուէրս և սպասս ոսկւոյ և արծաթոյ ունի եկեղեցին անտիոքացւոց. և կարգեալ 'ի նմանէ իբրև ոստիկան և գործակալ 'ի վ̃ր իրացս՝ ոչ միայն զսպասս եկեղեցւոյն կողոպտեաց, այլև զքահանայսն ա̃մ փախստական արար. մինչ զի փակեցան դրունք եկեղեցեաց, և քահանայքն ցրուեցան և անկան յայլ տեղիս, ուր և ձեռնհաս ոչ լինէր ապրել և ծառայել ա̃յ:

Իսկ ս̃ն Թէոդորիտոս՝ երէց համՅական եկեղեցւոյն անտիոքացւոց՝ ոչ 'ի քաղաքէն գնաց, և ոչ խափանեաց երբէք զպաշտամունս՝ հանդերձ եղբարբք մտանել յեկեղեցին, և ժողովել ժողովուրդս՝ զպարտ և զպատշաճ աղօթսն մատուցանել: 'Ի վ̃ր եհաս իրացս յուլիանոս ոստիկանն. և առեալ իշխանութի 'ի թագաւորէն 'ի վ̃ր ս̃րբյն՝ հրաման ետ ունել զնա ա̃ռ դիմակաց հրամանաց կայսեր հպարտութ̃բ. և զառաջինն կապեալ շղթայիւք՝ յաղտեղի տեղիս բանտարգել առնելով ա̃ռ արկանէր. յետոյ և

արտաքս իսկ հրամայեաց հանել, և 'ի տան բանտին ցանգ թշնամանել և նախատել զնա 'ի ձեռն անօրէն և անա̃ծ պաշտօնէից նմանեաց իւրոց ։

Բայց ոմանք և 'ի սպասաւորաց բանտին գլխովլին հայեցեալ յայնպիսի անձն ա̃ծասէր՝ ոչ միայն 'ի մեծարանաց մեծաշուք երեսացն ակն ածէին, այլ և 'ի վե̃ր հասեալ գիտութե̃ն և քաղաքավարութե̃՝ զարմանային ը̃ ուղիղ կարգս և ը̃ պարկեշտ վարս առն պիտանւոյ ․ քանզի միշտ և հանապազ զա̃մ ժամանակս արգելանացն յաղօթս ծախէր ․ վ̃ոյ բազումք և խղճէին իսկ 'ի միտս զայնպիսի այր ա̃ծասէր թշնամանել, և չիշխէին երբէք անարգանս ինչ առնել ։

Յետ բազում աւուրց 'ի վե̃ր հասեալ յուլիանոս ոստիկանն՝ անպարտելի և անշարժ մտաց վկային, թէ որ քան զոր զօրանայ և վառի հաւատովք, խորհուրդ արար՝ առանց յատեան հանելոյ 'ի գիշերի սպանանել զնա ․ բայց յետոյ առաւել լաւ համարեցաւ վ̃ն այլոց առ ահ արկանելոյ՝ յայտնի հարուածովք տագնապել զայնպիսի այր երևելի ․ այլ սակայն և այն ը̃ շնորհացն ա̃յ էր, զի մի̃ այնպիսի այր մեծահաւատ՝ անփոխ և աննշանաւոր մահու վճարեսցէ զկեանս իւր, ոչ զի՝ թէ չէր լեալ յայտնի ամենեցուն, առաջի ա̃յ զվարձս փառատակոցն կորուսանէր, այլ զի յայտնի օրինակ զանձն 'ի մէջ կացուցանիցէ՝ հաստատուն լինել ա̃մ հաւատացելոց 'ի քս̃ ․

Իբրև

Իբրև ածին մուծին զերանելին յատեան՝ ձեռս յետս կապեալ, և ձող ինչ ը̅ թիկունսն անցուցեալ, ասէ անօրէն դատաւորն. դու՞ ես Թէոդորիտոսն՝ որ երբեմն առ կոստանդիանոսիւ կայսերաւ կործանէիր զպատկերս ռծոցն, և զմեհեանս դիցն աւերէիր, և շինէիր եկեղեցիս, և գերեզմանս մեռելոց, զորս և մատրանս իմն անուանէիք ( իմա՛ մարտիրոսանոցս, ք̅ն վկայարանս, որ և մատարուռնք ): Թէոդորիտոս ասաց. ես քրիստոնեայ եմ, և աղօթս առնեմ՝ զի մինչև 'ի վախճան զնոյն ունիցիմ, և հաւատարիմ մարտիրոս՝ այս է վկայ՝ գտանիցիմ. ես ոչ երբէք եկեղեցի շինեցի և ոչ մատրուռնս. ք̅զի 'ի նախնեացն իսկ հաստատեալ և շինեալ կան։ Յուլիանոս դատաւորն ասէ. զպատկերս ռծոցն կործանեցեր. և արդ ես 'ի չքմեղս կաս, և չտաս պ̅խնի: Թէոդորիտոս ասաց. ես ա̅ծս երբէք ոչ կործանեցի. քանզի ա̅ծ է անկործան. իսկ զչէսն զիա՞րդ մարթ էր կործանել. այլ զպատկերս անշունչս և զտունս նոցա կործանեցի, զի զոգիս մարդկան մոլորեալս 'ի կռապաշտութե կարացից ապրեցուցանել. քանզի զայն իսկ գիրք ս̅բ պատուիրեցին։ Յուլիանոս ասէ. որովհետև քեզէն խոստովանեցար, կրեա՛ պատիժս պատուհասից. զի իշխեցեր զայնպիսի գործ գործել։ Թէոդորիտոս ասաց. առ ա̅ծապաշտ և ա̅ծասէր թ̅գաւն կոստանդիանոսիւ կամ կոստանդնիւ արարի զայն, և ոչ ցասեաւ. որ և իշխանութի իսկ ունէր. և ոչ զայրացաւ ինչ

ը̅

Է այնպիսի գործ ․ այլ Է քեզ զարմացեալ եմ, զիա՞րդ որ 'ի նոյն օրէնս սնեալ էիր, այժմ կալոց վրէժխնդիր ամբարձար ։

Յուլիանոս ասէ ․ տո՛ւք, հարէ՛ք զկողս դորա, զի իշխեաց կուաս կոչել զԱծան ։ Իսկ յետ զան ըմպելեայն ասէ Թէոդորիտոս ․ յանցանես յո՛ւլիանոս, զի զՃշմարտի միայնոյ Այ և զամենակալի անուն՝ կալոց դնես, և Ածս անուանես զայժմու կեալսն և տարաբեալսն ։

Յուլիանոս ասէ ․ տո՛ւք հարէ՛ք զերեսս փխերիդ յանդգնելոյ ․ զի իշխեաց հայհոյել ։ Թէոդորիտոս ասաց ․ դարձեալ տակաւին ստուցանեմ քեզ յուլիանոս, զի պատկերքն՝ զոր դու Ածս անուանես, յետնեալ են քան զպատկերագործսն, և ընդ նմին իբրև զնոսին տապականելոց են ․ ոչ բարի և ոչ չար կարեն առնել առնելեացն իւրեանց ․ և դու հրամայես զիս զան հարկանել՝ որ զՃշմարիտն ցուցանեմ քեզ ։

Յուլիանոս ասէ ․ այժմ զան եւեթ արբեր, և ըմբռստացար ․ յետ սակաւ միոյ այնպիսի տանջանս կրեսցես, որոց ոչ կարասցես համդարտել, եթէ ոչ զարժանն և զօրէնն կատարեսցես Ածոցն ․ քանզի այնպէս հրաման ետ քաջ արանց արքայն յուլիանոս ։ Թէոդորիտոս ասաց ․ ես վաղ իսկ ասացի քեզ, և դարձեալ ասեմ, թէ մի՛ մեղանչեր, և մի՛ Ածս կոչեր զձեռագործս մարդկան ․ այլ 'ի բաց ընկեա զժամանակեայ ամբարհաւաճութիդ, որով յանդգնեցար Ածամարտ լինել, և ծանի՛ր զմինն միայն Ած, որ արար զերկինս

և

և զերկիր : Յուլիանոս ասէ . և դու զխա-
չեալն զՔն զիա՞րդ ած համարիս, և քրիստո-
նեայ զանձինդ կոչես : Աստուածաբանս ասաց .
Քն փրկիչ մարդկան է, զոր կարծես գիտել՝
և ոչ գիտես, բան և զօրութիւն և իմաստութիւն
հօր, միածին որդի այ . որ վն մարդկան փրկ-
կութեան առաքեցաւ ՚ի հօրէ, և զգեցաւ մար-
մին մարդկեղէն, զի նմանեաւն զնմանն պար-
մանեսցէ, և ազգականաւն մերձեցուսցէ
զմարդիկ առ ած . ՚ի մոլորութենէ և ՚ի կռա-
պաշտութենէ դարձուսցէ, և զճշմարիտն ած
ճանաչել ուսուսցէ :

Յուլիանոս ասէ . զճարտարութիւն բանից և
զճոռոմխօսելոյ ևեթ երթեալ ես զհետ ՚ի
մանկութենէ, և առասպելս յօդելոյ . որով
կարասցես պատրել զմարդիկ : Աստուածաբանս
ասաց . երբեմն և դու ճանաչէիր զած, և
խոստովանէիր զճշմարտութիւն . այլ այժմ
դարձար ՚ի խաբէութիւն, յորժամ յունական ամ-
բարտաւանութեամբ հպարտացար, և յանձին
կալար ածս համարել զկուռս, և զճշմար-
տութիւն խաբէութիւն անուանես : Յուլիանոս
ասէ . ո՛վ չարագործ և պատրողաբան, թուի
ինձ թէ այժմ յաթենացւոց քաղաքէն ելեալ
ես դու : Աստուածաբանս ասաց . ես յաթենաց-
ւոց քաղաքէն չեմ ելեալ, և ոչ յունական ինչ
վարժս կրթեցայ երբէք, այլ խրատու ածե-
ղէն գրոց առաջնորդեալ եմ . Քն քում հարցմա-
ծոյդ տամ պատասխանի, և աղօթս առնեմ քեզ
միւսանգամ գալ ՚ի լաւութի :

Ցասեաւ յուլիանոս, և հրամայեաց կապել

ԻԲ զնա

զնա ի ձող ինչ, և պրկել. և դահճիճքն վազ-
վազակի կապեցին զնա չուանօք, և անուօք
իմն պրկեցին զամենայն անդամս երանելւոյ վկայ-
ին. և այնչափ երկայնացան ջիլքն, մինչև
երևիլ նմա հսկայ ութկանգնեան: Իսկ իբրև
այնպէս եղև, ասէ յուլիանոս. գէթ արդ
զգացեր ինչ տանջանացդ Թէոդորիտոս, և
հաւանիս արդեօք զոհել աստուածոցն, եթէ տա-
կաւին ՚ի նմին յամառութեան կաս, և անար-
գեալ կախարդի միոյ մեռելոյ պագանես
երկիր:

Իսկ սուրբ վկայն լուրջ և զուարթ երեսօք ասէ
մեծաձայն. մոլագար յուլիանոս զգեղեցիկ
խրատն՝ զոր ետու քեզ, թէ զփայտեղէնս և
զքարեղէնս և զմեռելոտի ոսկերաց գործ-
ուածոյ պատկերս աստուածս մի անուաներ, այլ ճա-
նիր զաստուած՝ որ արար զերկինս և զերկիր և զամենայն
որ ՚ի նոսա. և զբանն նր զմիածին որդին յաքն՝ փր-
կիչ մարդկան, և Ձագործ ամենայն Ձի: Յուլիանոս
ասէ. զայր մի՝ որ խաչեցաւ և մեռաւ և թա-
ղեցաւ, արարիչ Ձի կոչես, ո՛վ մեծդ եկեղեց-
դիմագրաւ: Թէոդորիտոս ասաց. զխաչեալն
և զմեռեալն և զթաղեալն՝ որ հանդերձ
մարմնով յերկինս վերացաւ, ուսուցանեմ
քեզ պաշտել, զորդի անճառին հօր, որ է բանն
աստուծոյ. և ներմարդութեամբն քարոզ և գուշակ եղև
աստուածեղէն խորհրդոցն ի կամացն հօր, և պատ-
ուիրեաց արհամարհել զկուռս անմռունչս:
զորոց զանպիտանութիւն դիւրին է ինձ յանդի-
ման կացուցանել քեզ. զի թէ պատառ պա-
տառ կոտորեցից զնոսա քո իսկ առաջի, ո՛չ կարեն

ինչ ինձ վնաս առնել, ոչ ինքեանք՝ զի տա-
րերք են անզգայք և ոչ չար դևքն՝ որք նոքօք
ճռռնին զպաշտօն 'ի մարդկանէ. քանզի ու-
նիմ ինձ օգնական զԱստուածն ճշմարիտ:

Յուլիանոս ասէ. եթէ երկնչիս ինչ յԱստուծոյ, հնազանդ լեր հրամանաց թագաւորաց. քանզի գրեալ է, թէ սիրտ թագաւորաց 'ի ձեռին Աստուծոյ է: Թէոդորիտոս ասաց. եթէ ընթերցեալ իցես՝ զոր ասացերդ, պարտ է քեզ 'ի միտ առնուլ՝ զոր ընթերցայդ. ապա եթէ լուեալ իցես, և չիցես քաջ 'ի վերայ հասեալ, յինէն ուսի՛ր. արդարև իսկ ճշմարտին սիրտ թագաւորի 'ի ձեռին Աստուծոյ է՝ առաջնորդել մեզ նովաւ յուղիղն. բայց ոչ կռապաշտի և խոտորելոյ 'ի ճշմարտէն Աստուծոյ, այլ որ զԱստուած ճանաչէ. զի զայնպիսիսն՝ որ առ այնչափ մարդիկ անագորոյն է, և յԱստուծոյ անհաւատ, բռնաւոր և ոչ թագաւոր պարտ է կոչել. արդ գիրք ասեն, թագաւորի սիրտ 'ի ձեռին Աստուծոյ է, և ոչ եթէ բռնաւորի: Յուլիանոս ասէ. ո՞վ ժպիրհ դիմագրաւ, բռնաւո՞ր իշխեցեր կոչել զարքայ: Թէոդորիտոս ասաց. որ այսպիսի հրաման տայ գործել զանարժանս, և այնպէս իցէ՝ որպէս դու զքոյդ տաս 'ի դիմաց թագաւորին քո, ոչ միայն բռնաւոր, այլ և ամպարիշտ քան զամենայն մարդիկ է ասելի:

Լի եղև ցասմամբ Յուլիանոս, և իբրև մոլեգնեալ՝ հրաման ետ քերել զերանելին այծեմանն կճղակօք (որ էր կճղակաձև քերոց երկաթի). և այնչափ քերեցին զնա, մինչև առուք արեանցն յերկոցունց կողմանց կո-

ղիցն

ղեցն յերկիր իջանէին . և սակայն 'ի զուարթութենէ երեսք նորա ոչ տխրեցան : Եւ յետ քերելոյ զերիս ժամս , երբեւ ամենեւին ինչ ոչ ել ՟է՟ բերան նր , և ոչ գոյն երեսաց նորա շրջեցաւ , ասէ յուլիանոս . գէթ արդ ճանաչեն զօծան Թէոդորիտոս , որ յայդպիսի տանջանս մնացեր :

Թէոդորիտոս ասաց . զձեռագործս ոչ երբեք ընկալայ ՟ած՟ս , և ոչ ունիմ , և մի այլ լիցի ունել . դու զորս ՟ած՟ս համարիս , ՟է՟ նոսին ընկալցիս զքո բաժին . և ինձ լիցի ժառանգաւոր լինել խոստացելոց բարեացն՝ կատարեալ զընթացս իմ , և հաւատարիմ գտեալ այնմ՝ որ երեւեցաւն 'ի մարմնի : Յուլիանոս ասէ . այնպէս երեւիս , ոչ թէ բնաւ չզգացեր զտանջանսդ : Թէոդորիտոս ասաց . և միթէ խաղ ինչ համարէիր փորձել զծառայս քո , և իբրև զմանուկ պատրել . և տանջանօք երկեցուցանել :

Դարձեալ ցասեաւ յուլիանոս . և հրամայեաց նովին կճղակօք քերել զնա այլ ևս երկուս ժամս : Եւ այլ ոչինչ ելանէր ՟է՟ բերան սրբյն , բայց միայն մեծաձայն բարբառովս ստէպ աղօթէր , ՟տր՟ յՔ օգնեա ինձ : Իսկ յուլիանոս հիացեալ ՟է՟ բազում համբերութե ՟սբյ՟ վկային՝ հրամայեաց դահճացն հանդարտել . ասէ . թուի ինձ այր դու , թէ յարքունիս ինչ պարտիս , կամ այլ ումեք , և ոչ կարես հատուցանել . արդ ասա՛ ինձ , և եթէ յարքունիս ինչ պարտիս , թողութի առնէ քեզ ինքնակալն . և եթէ այլ ումեք , զձեռնագիրն անդրէն

հրամայեմ տալ՝ առանց վնասու ինչ տուգա-
նաց ։

Սայլ Թէոդորիտոս քաջութիւն առնէր պնդի, որպ Թէ ամենեւին լլկանս ինչ չիցէ կրեալ ․ ասէ ․ արծաթ ձեր է, ձեզ լիցի 'ի կորուստ ․ Ես ունեմ պարտս ինչ ոչ պարտիմ, բայց միայն զած ճանաչել ․ վասն այսորիկ առնեմ՝ ըզգուշութիւն զդաւանութիւն իմ պահել, և խոստացելոց բարեացն հասանել ։ Յուլիանոս ասէ ․ այս հէգ և թշուառական՝ ցածիր 'ի բարկութենէդ, և շահեա զանձնդ, զի զերծանիցիս յայլոցն և ս տանջանաց ։ Իսկ այս կրկնեաց Թէոդորիտոս ․ ով հէգ և թշուառական՝ ապաշխարեա, և շահեա զհոգի և զմարմինդ ։

Դարձեալ ցասեաւ յուլիանոս, և հրամայեաց զնա քերել ․ և յետ քերանացն ասէ ․ Ընէր այդչափ դիմադրաւեալ՝ չկամիս հնազանդիլ ինքնակալին, և զայր մի խաչեալ ած համարիս ։ Թէոդորիտոս ասաց ․ խաչեալն՝ զոր դու մարդ համարիս, և մեք ած ; զքեզ՝ ամպարիշտ և մարդախոշոշ բռնաւոր, յաւուր դատաստանի հրամայեսցէ արկանել 'ի գեհեան հրոյն ։ Յուլիանոս ասէ ․ դու առ այժմ աստէն առնուցուս զփորձ հրոյ․ և հրամայեաց երկուս կանթեղս լուցանել, և մատուցանել աստի և անտի զկողիւքն ։ Նա իբրև լուցին դահիճքն զկանթեղսն, երանելի վկայն ամբարձեալ զաչս իւր յերկինս՝ սկսաւ յաղօթս կալ և ասել ․ Տէր ած ամենակալ՝ որ արարեր զերկինս և զերկիր

և զա՟մ որ է 'ի նմ՟, Հայր կենարարին և ա՟մ-
ծայց, որ խոստացար պատուի՟ն հաւատացելոց
քոց, կատարեա՛ և յիս զողորմութի՟ն քո, և
ցոյց ամպարշտաց զքո իմաստութի՟ն և զօրութի՟ն.
զի ամենեքեան ծանիցեն, թէ որչափ 'ի մէջ
է ը՟ յուսացելոյս 'ի քեզ և ը՟ ամպարշտութի՟ն
անհաւատից :

Իսկ երբև կատարեաց զաղօթսն՝ վերառաքե-
լով զամէնն, յանկարծակի զարկան զգետնի
կանթեղաւորքն. քանզի տեսանէին չորս հրեշ-
տակս, զի կային զերանելեաւն և խօսէին
ը՟ նմա : Յայնժամ արտամեալ յոյժ յուլիա-
նոսի՝ հրամանս ետ այլոց զինուորաց, և յա-
րուցին զդահիճսն. և պատուիրէր նց՟ միւ-
սանգամ մատուցանել զկանթեղսն : Ասեն
կանթեղաւորքն. այլո՛ց հրամայեսցէ քո քա-
ջութի՟դ մատուցանել. քանզի մեք տեսա-
նեմք չորս հրեշտակս՝ որ կան և խօսին ընդ
պատժաւորին, և ոչ իշխեմք հուպ երթալ.
զի հաստատեալ գիտեմք զա՟ծն քրիստոնէից
ա՟ծ մեծ և հզօր : Ընդ այս յանհնարին ցա-
սուցմն բերեալ յուլիանոսի՝ հրամայեաց վաղ-
վաղակի զդահիճսն տանել ընկենուլ 'ի ծով:

Իսկ երբև յափշտակեցին զնա և առին գնա-
ցին, նա վկայն ձայնատու լինէր նց՟. յառա-
ջեցէք առ եղբարք, և ես ահա հասանելոց
եմ ձեզ. զի յետ սակաւուց նշան յաղթութե-
ը՟դէմ հակառակորդին կանգնել, և զպար-
գևականն ընկալեալ՝ ժամանեցից խրախու-
սելով զկնի ա՟մ ծառայից ա՟յ :

Յայնժամ առէ ցնա յուլիանոս. և ո՞ է հա-

կառավարողն քո՛ ։ Սբն ասէ ․ Հակառակորդն սատանայ է, որ քեւ այժմ զչարեաց արդիւնս գործէ ․ իսկ զյաղթութիւն և զպարգևականն տայ յս քս փրկիչ մարդկան, և արարիչ ամ ծի որդին միածին ․ որում փառք յաւիտեանս, ամէն ։ Այլ իբրև քաղումք ՚ի ժողովրդենէ և յամբոխէ անտի անտիրաքացւոց ձայնակ-ցեալ ոքին՝ զամէնն վերառաքեցին, ստէպ շուրջ հայեր յուլիանոս, թերևս զոք յայն-ցանէ՝ որք զամէնն առաքեցին, կարիցէ ճա-նաչել ։ Այլ ոչ զոք մարթացաւ նշմարել ․ և իբրև ցնորեալ մտօք և խառնարեալ աչօք ասէ ցոքն զայլրագին ․ ով հէգ և թշուառականդ Թէոդորիտոս ․ զոր ամենեքեան գիտեն՝ թէ յառաջ քան զերեք հարիւր ամ, կամ սակաւ ինչ՝ կմ աւելի, ՚ի կնոջէ ծնաւ, դու ասես՝ թէ զծս նա արար ։

Թէոդորիտոս ասաց ․ դու պիղծ և անօրէն՝ և արժանի իսկ չես զայնպիսի խորհուրդ ու-սանել ․ բայց զի մի համարեսցին ծառայքդ քոյ՝ որ շուրջ յամ կողմանց բակ առեալ կան, թէ չկարիցեմ բանիցդ ինչ առնել պխնի, միտ դիր՝ զոր ասեմս ։ Արդէն յառաջագոյն ասացի քեզ, ած՝ որ զամ արար բանիւ իւ-րով, ողորմեցաւ ազգի մարդկան, զի անօրէն և պիղծ դիւաց երկիր պագանէին ․ և առա-քեաց զբան իւր զմիածին որդին, զի մար-մին մարդկեղէն զգենուցու, և չարչարակ-ցաւն մերձեցուսցէ զմարդիկ առ ած ․ քան-զի զածեղէն զօրութիւն նրա յայտնի ոչ ոք ՚ի մարդկանէ կարէր տեսանել ․ ապ և զգեցաւ է,

է, թէ ոչ ոք մարդ կարէ տեսանել զերեսս իմ և ապրել. և արդ նոյն ինքն բանն անմարմին մարմնացոյց զանձն իւր, յորժամ ըզմարմինն յանարատ կուսէն զգեցաւ, և երևեցաւ մարդկան: Մարմնով երևէր, և ա̃ծային զօրութե̃ն գործէր զի̃մ մեծամեծս. որում արժանի եղեն ականատես լինել աշակերտքըն, զարմացան, և հաւատացին. որք և մեզ աւանդեցին զհաւատոն անպատում զօրութե̃ն նր̃. զնա ծանիր և դու գննեա անսա-

գան, զի կարիցես ապրել:

Յուլիանոս ասէ. քաջ իմն յամես 'ի ձոռոմաբանութիդ, այլ յինէն զայս լո՛ւր համառօտ. եթէ չառնուցուս յանձն ա̃ծոցն պաշտօն մատուցանել ըս̃ կամաց Թագաւորին, որով հրաման տաց սպանանել զքեզ. քանզի տեսանեմ զքեզ յանդուգն յոյժ, որ և չհամարիս ինչ զտանջանս: Թէոդորիտոս ասաց. դու մարդասպան լինելով ջանաս նմանել հօրն քո սատանայի, և ես աղօթս առնեմ՝ զի անարգել և անխափան կատարեսցից զընթացս իմ. բայց յիշեսջի՛ր դու՝ զոր կամիմ ասել քեզ յառաջագոյն, մինչչև եղեալ. զի վ̃ն այդր ա̃մի անզգամութեան բարկութիւն մեծ դայցէ քեզ յա̃յ. և զոր արարերդ և զոր առնիցես 'ի շնորհս քեռորդւոյ քո բռնաւորի, նա չլինիցի քեզ շնորհակալ: Իսկ մինչդեռ մկայն զայսոսիկ ասէր ը̃դ քօղով, ասէ Յուլիանոս. զոր կամիս ասել՝ ասա՛ յայտնա̃պ. Թո՛ղ տեսցուք, թէ լինիցի՞ զոր ասեսդ: Յայնժամ ասէ Թէոդորիտոս. դու չարաչար ախ-

տին ՚ի մահհիճս ծնգլիցիս , և անձամբ անձին լիցիս կերակուր , և որդնալից ծորեալ երանիցես յԾէս . և բռնաւորն քո ՚ի ճակատուն յորում ակն ունիցի արութիւն ինչ ցուցանել , չկարիցէ ինչ , այլ՝ յայլազգեաց մեռանիցի , և բնաւ չգիտիցէ՝ յումմէ խոցիցի . և չդառնայցէ այսրէն ՚ի հռովմայեցւոց Ծս ։ Զայս վայր ունէին եղեալ յուլիանոսի՝ ոչ ևս այլ կարաց հանդուրժել , այլ զահի հարէ̃ թէ գուցէ այլ ևս ինչ մեծամեծս և անբերելիս խօսեսցի , վաղվաղակի հրամայեաց տանել զնա , և սրով սպանանել ։ Իսկ սր̃բն երթայր ցնծալով ՚ի տեղի կատարման , և բազում ժողովուրդ զհետ նր̃ . ուր արօթս արարեալ՝ զա̃մ հաւատացեալս յանձն առնէր ա̃յ զմեծամեծս և զփոքունս , զպատուականս և զանարգս . մինչև հատին զգլուխ երանելւոյն . և այնպէս կատարեցաւ ՚ի քս̃ ( յամի տե̃ն . 362 . ՚ի Գ . կաղանդից նոյեմբերի . ցո̃ ՚ի հակտ . 23 ) ։

Իսկ յուլիանոս դատաւորն՝ քանզի անագան գնաց յատենէն , զմնացորդս աւուրն և զգիշերն ա̃մ տրտմութ̃ե հանէր յապարանս թագաւորութե̃ն ։ Իբրև առաւօտ եղև , յարեաւ փաղփաղակի եմուտ առ համանուն իւր յուլիանոս կայսրն ՚ի պալատն . և իբրև երկիր եպագ , հրամայեաց նմ̃ նստել թ̃գւորն . և նա եցոյց նմ̃ զգիր սր̃ց սպանուցն , զոր էառ ՚ի սր̃ց եկեղեցւոյն ա̃յ . և ասա ասէ ցնա . Թէպէտև անագան բերի զգիր համարայ կառաւոյն , այլ հաւատաւ գրեցի զա̃ն և

յանգ

յանձն հանի . զի գիտասցէ ձեռդ դիցանման մեծութիւն , թէ որչափ եկին անտի գանձք . և զայն ևս գիտասջիր , զի զխանգարիչն Թեոդորիտոս զոր խնդրէիր մեզ ընչից եկեղեցւոյն , հազիւ արկի 'ի բուռն , և սաստիկ տանջանօք տանջեցի , և սրով սպանի :

Այս իբրև լուաւ կայսրն՝ զոր ոչն գիտէր, ( զի կատարեսցի բանն սորին , ) աղաղակեաց մեծաձայն , և ասէ . Որ իմ կամք չէին , զայն արարեր . ես ջանացի՝ բազում պատճառանօք քակել զկրօնս քրիստոնէից , և չապանանել զոք միանգամայն սրով . դու չարիս գործեցեր , զի պատճառ եսուր ժանտից գալիլեացւոցն՝ գրել զինէն բազում չարիս , որպէս և ը̅ առաջին թագաւորսն արարին . զի ազգի ազգի պատճառս յօղեցին մեզ չարագործացն՝ որ կատարեցան . զորս և վկայս իմն անուանեն . ուստի և դու պարտիս խնայել , և մի՛ առաջի ամ̅ գալիլեացւոց սպանանել զոք . և այլոց ամենեցուն զնոյն պատուիրէր առնել :

Այլ իբրև զայս ասաց ուրացող կայսրն , հայեցաւ ը̅ քերովին և եսես՝ զի զամօթի հարաւ , և գոյն երեսաց նորա եղծաւ , և ամ̅ մարմինն իբրև մեռելոյ եղև . կամեցաւ խաղաղութե̃ արձակել զնա , և ասէ . երթիցուք դիցն զոհս մատուսցուք , զի զա̃ծպաշտութիւն կատարեսցուք . զի կարասցես սրսկել ինչ զքև , և ապրել 'ի չարաւոյ ժանտիցն : Իսկ ոստիկանն յուլիանոս Թէոպէստե 'ի մեծի տրտմութ̃ էր , սակայն յարեաւ ակամայ չոգաւ ը̅ կայսերն . և իբրև գործեցին զանարժան գործն , և մա-

տու-

տուցին զոհ դիւաց և զհաւ ինչ ընտիր, որ սագ հնդկաց կոչիւր 'ի քրմաց (3), զլեարդն հանին և կայծիւք խարշատեցին, և մատուցին նմա 'ի լերդէն. և նա առ ամօթոյ և ակամայ կամօք ճաշակեաց, և գնաց 'ի կայսերէն ։

Այլ իբրև չոգաւ 'ի վանս հաղարապետութեան իւրոյ, ոչ ուտել և ոչ ըմպել ինչ կամեցաւ, զղջացեալ ընդ չարիսն՝ զոր գործեաց. և 'ի գիշերի խիթք ինչ յորովայնին կացին, որով չարաչար տանջէր. զի լեարդն՝ զոր 'ի զոհից կռոցն ճաշակեաց, իջեալ նստաւ 'ի վերայ լերդի նորա, և մանր կոտորէր, և 'ի տագնապի մահու կացուցանէր ։ Այլ իբրև այգ եղև, յիւրմէ լերդէն ընդ բերանն 'ի վեր և 'ի վայր բերէր և ծամէր. զկէսն 'ի բաց թքանէր, և զկէսն անդրէն 'ի ներքս կլանէր. և այս եղև բազում անգամ 'ի բազում աւուրս ։

Իբրև ոչ կարէր հանդուրժել այնուհետև տանջանացն, խարեալ խնդրէր մտացն՝ զգացոյց կայսերն, և աղաչէր բանալ զեկեղեցին քրիստոնէից. և թագաւորն յղեաց պատասխանի, թէ որ դուռ փակեցեր, նոյնպէս և դու երթեալ բացցես ։ Այլ նա դարձեալ զգացոյց կայսեր զթշուառութիւն իւր, ասելով. վասն քո որքայ չարաչար տանջիմ և կորնչիմ. իսկ ուրացող կայսրն արար պատասխանի. թերևս հաւատեցեր ասէ 'ի դիւցն, և վասն այնորիկ չարչարիս այդպիսի տանջանօք ։

Այլ այնպէս տառապեցաւ մինչև ցփախճան հեգն և թշուառականն յաւիտենս տանջ-կան.

կան . այլ ինչ կերակուր չէր ձեռնհաս ճա-
շակել , բայց միայն իւր լեարդն էր նր̅ կերա-
կուր՝ ը̅ մարգարէութեան երանելւոյ վկային .
և յայնժամ վն̅ որդնալից եւս եղև , և ուտէին
որդունք զմարմին նր̅ . և ապա ուրեմն եհան
զդառնացեալ ոգին : Իբրև լուաւ անօրէն
Թագաւորն , ասէ . երկմիտ եղև առ դիսն ,
որպէս ասացի , և ոչ հաւատաց . վս̅ այնորիկ
կրեաց զայն : Նա իբրև Թաղեցին , գետինն
ոչ ընկալաւ զնա . բազում անգամ ծածկէին ,
և գայլին դարձեալ՝ ի վեր եկեալ գտանէին . մին-
չև Թռչնոց և գազանաց եղև կերակուր : (4)
Իսկ բռնաւորն յուլիանոս ուրացող յետ սա-
կաւ աւուրց չոգաւ 'ի պարսս՝ տալ ճակատս .
իբրև կռուեցաւ և յաղթեաց , և համարէր՝
Թէ այնուհետև արար և կատարեաց արուն-
ինչ , յանկարծակի երևեցան նմա զօրք հրեշ-
տակաց . հրաման ետ վառել իւրոց զօրացն ,
և իբրև ը̅ մարդկան 'ի ճակատս դիմեաց եր-
Թալ . և ոչ գիտէր հեգն և Թշուառականն ,
Թէ յերկնից բարկութն̅ եկեալ հասեալ է
նմա : Յանկարծակի ուրեմն նետ եկն յօ-
դիցն , և եհար զնա ներքոյ ստեանն , և սաս-
տիկ արիւն վիժեաց 'ի նմանէ , և 'ի տագնա-
պի կայր այնուհետև 'ի ցաւոցն վտանգէ .
և այնպէս Թուէր նմա , Թէ քս̅ եկեալ կացցէ
յանդիմանն նր̅ և պատուհասեսցէ զնա . հա-
մարէր չուառականն՝ Թէ առ նմա մօտ կայ-
ցէ . և զայն չիմանայր՝ Թէ կարող է յերկինս
լինել , և յերկիր 'ի մօտոյ երևիլ . էառ յա-
րենէն , և յօդն 'ի վեր ցանեաց . աղաղակեաց
և

քերուցոյ նճ յուլիանոսի յանտիոք · զնոյն ննթարգէ և մեռաթրաստես 'ի վարս արանց մեծաց վկայի ։ Այլ առաւել բառ առ բառ քաղէ զվկայաբանութիւն մեր պատմականն բերգա, թող զառաքելութիւն օրինակաց և թարգմանութեանց · ըր և պիտաստակարան մեր նա զայսօրինակ յառաջ բերէ 'ի վախճանի · * Մեք՝ որ յանտիոք 'ի
,, պաղատան էաք, և է նմա (թ է յուլիանոսի) յանդգա-
,, մութե կայաք, թէպէտև մեղաւորք, ծառայքս եմ ·
,, զայսոսիկ՝ ուր անցին է ծառային եմ թէոդորետոս 'ի
,, Ժ կաղանդեցն նոյեմբերի, ճշմարտուք գրեցաք ||։

Ա՛ռ այժմ չկարացաք 'ի ձեռս բերել պյունական օրինակ գործոյս, որ թերևս կայ մնայ 'ի խորշս ուրեք դրատանց · զոր բովանդակեանց միայն էր յերևան ածել, եթէ 'ի գլուխ հանեալ էր նոցա զամփոփ հոկտեմբերի ։ Ցընթացս բանին գրեթէ պարզապէս զճառընտիր մեր օրինակեալ է մեր · իսկ զանգրնաւորութիւն՝ զոր ե խմաստից ևեթ քաղեցաք ե մերում ոճոյ, գիցուք աստ շարագրութբ ճառընտրին, որ ունի այսպէս · * Առաքի-
,, նի և ամենակար յօժարութե՝ երանելոյն թէոդորիտո-
,, սի վկային ոչ միայն է յօժարուն և է կարծրուն համ-
,, բերութենն է զարմանալ, այլև է հաստատուն և է
,, անշարժ հաւատոյն՝ զոր ունէր առ ած ։ Նախ և միայն
,, առ յուլիանոսիւ արքայիւ, մանաւանդ թէ առ բըռ-
,, նաւորաւ, և ոչ արքայիւ, յանտիոքացւոց քաղաքին
,, վկայեաց · ոչ միայն զանձն օրինակ բարի ամ մարդ-
,, կան երևեցոյց՝ հաւատարիմ վկայ քնի երևեալ ('ի
,, լուսանցս · գտեալ), այլև սքանչելի և զարմանալի
,, առ ամենեսեան երևեցաւ, անպարտելի և յաղթող
,, ախոյեան էգէմ սատանայի եղեալ · որ և զանեզծու-
,, թե պսակն առ, և երկնից մուտցն արժանաւոր եղև,
,, և վերին քաղաքին քաղաքացի · սկիզբն և կատարած
,, հալածանացն կացոյց զինքն · և յայլոցն ամենեցուն
,, քնի ծառայիցն՝ պարապանալիան, որում ակնունէին,
,, չինչոյց · վկայ անպարտելի և յաղթող վասն թզրու-
,, թեն քնի երևեալ ։

,, Յառաջնումն ամի թզրութեն յուլիանոսի, մինչդեռ
,, նորընծայ էր 'ի թզրութեն, և կասկած 'ի կոստանդնի
,, արքայէ, որ ակն ունէր՝ թէ նովին արոմն, որով հայր
,, նր՝ մեռցի · որ այնչափ և այնպիսի երկոք արքեցաւ
,, երբեմն 'ի մահուանէ՝ թաքուցեալ է սբ եղբանոմն
,, եմ (զորմէ տես 'ի վարս սբյն մարկոսի արեթուսայ
,, եպսի), և ամենեքեն զըրոյ եղեալ դրօշէա և ընթեր-
,, ցեւ ։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆՔ

## Սրբոց Եւդոքսեանց և Զենոնեանց :

Յայսմ վայրի՝ ուր տօնացոյցք մեր նշանակեն առընթեր Թէոդորիտոսի քահանայի զյօրեսին անուանս, * զԶենոնի զինուո- ,, րին, և Մակարայ, և Եւդոքսեայ, և Ռա- ,, մելայ ‖, ը̃ միով անուամբ զԶենոնի՝ երկուս իմանամք վկայս զօրականս 'ի միում ժամանակի նահատակեալս . մին առանձին՝ փառաւոր վկայութե̃, և միւսն 'ի համար գնդին Եւդոքսիոսի ը̃ Մակարայ . իսկ Ռամելոս ոչ է 'ի գնդէ զԶենոնեանց կա̃մ Եւդոքսեանց, այլ յառաջ ժամանակաւ ուրոյն վկայեալ . բայց վա̃ կատարելոյ սորա և նց̃ 'ի մելիտինէ հայոց, և կամ 'ի մի և 'ի նոյն աւուր՝ որ օր ժե̃ էր հոկտեմբերի՝ յայլ և այլ դարս, 'ի մի յիշատակարան անցին վկայաբանութե̃ և տօնախմբութե̃ : Արդ 'ի պահել զկարգաբանութի̃ պատմական ը̃ Ճառընտրաց մերոց և այլոց ազգաց, հարկ է մեզ 'ի ստորև և 'ի վեր դասաւորել զանուանս նց̃ա այսպէս . * Ռամելայ, և Եւդոքսեայ, և Մակարայ, և զԶենոնի զինուորին, և զԶենոնի զօրականին ‖ . զոր քաջ իմանաս յառաջիկայ պատմութեց իւրաքանչիւր նց̃ մի ը̃ միոջէ : (1)

ՎԿԱՅ-



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Սրբոյն Սիմէովնի, որ և Ռամելոս
Հազարապետ:

Հ. սեպտ. 11: Յ. սեպտ. 6: Լ. սեպտ. 5:
Բոլլանդեանն վերջին՝ անդ: Ճառընտ. Ա. յու.
հոկտ. 19: Մեծափք. Ե. այլք:

ԻԺԱՄԱՆԱԿԻՆ ՅՈրում թագաւորեաց տրայիանոս կայսր հռովմայեցւոց (յամի տն 98, մինչև 'ի 117), բարիատեացն սատանայ եարկ 'ի սիրտ նր խորհուրդ չարութե՝ յարուցանել հալածանս 'ի վր եկեղեցւոյն այ. և նեղէին զամ սուրբս զհաւատացեալսն 'ի քս, և ստիպէին զոհել անշունչ դիւացն: Եւ նստեալ յաթոռնի ամբարիշտ թագաւորին՝ հրամանս տայր յամ քաղաքս և 'ի գեօղս զոհել դիւացն, մանաւանդ զայնոսիկ ստիպելով՝ որ 'ի քս կէին բարեպաշտութբ 'ի զինուորական կարգէ. վսյ և զհեծելազօրսն առաքէր ը ձս ամ 'ի ձեռն նամականաց, զի տանջանաց մատնեսցին քրիստոնեայքն՝ ուր և գտցին:

Էր յայնժամ 'ի դուռն արքունի ոմն յիշխանաց՝ Ռոմելոս կամ Ռամելոս անուն, որ ընդ

Հռովմայեցւոց ռոմուլոսս , և ՟Ը յունաց ռա-
միւլոս՝ յանուն հիմնադրի քաղաքին Հռով-
մայ ․ և ունէր զպատիւ պրեպոսիտութեան կմ
պրոպոսիտոսութեան , ՟Ռ արքունի հազարապե-
տութեան կամ վերակացութեան զօրաց (2) ։ Սա
մնատուցեալ առ Թագաւորն՝ ասէ ․ Հրաման
բարեպաշտութեան ձերոյ հզօր և պատուական
է ․ բայց զոմանս յերևելի պատուաւորաց
պաղատանն առաքեալ յարևելս 'ի գաւառն
գաղատացւոց ( որ և ասիական գաղղիացիք )
առ քաջամարտիկ և արիագոյն զօրսն ։ (3)
Յայնժամ ասէ Թագաւորն ցռոմելոս ․ երդ-
ուեալ 'ի փրկութիւն ածոցն , զի բարիոք են
խորհուրդք քո ․ և հրամայեաց գնալ հնգից
արանց 'ի մեծամեծաց պաղատանն , առաքե-
լով 'ի ձեռն նց̃ ինչս բաղումս , գրեաւ և հրո-
վարտակ ՟Է նոսա , որ ունէր օրինակ զայս ․
Տրայիանոս միշտ յաղթօղ Թագաւոր , կայսր
հռովմայեցւոց , պատուական դասուց զօրա-
գլխաց կոմսից երկոտասան ազգաց՝ ուրախ
լինել (4) ։ Հրամայէ մեր քաջութիւս 'ի ձեռն
պատուիրանաց մերոց երևելի և գլխաւոր իշ-
խանացդ պաղատանս մերոյ , զոր խորհեցաք
'ի միասին՝ ծանուցանել ձեզ վս̃ ածոցն բա-
րերարութեան , որք զարիական քաջութիւս և
զօրութիւս շնորհեն ամենեցուն ․ և վս̃ այնո-
րիկ պարտիմք հատուցանել նոցա ընծայս և
զոհս , և սիրել զնս̃ յմ̃մ մտաց և 'ի զօրութե̃ ։
զի յելանելն ձեր 'ի պատերազմ՝ վաղվաղա-
կի յաղթօղ երևեսջիք 'ի վր̃ թշնամեաց ձե-
րոց , որք են 'ի կողմանս արևելից ։

Իսկ նց առժամայն արհամարհել զհրամանս թագաւորին՝ ոչինչ փոյթ կալեալ բանից հրովարտակին. այլ վստահեալ յառաջիկայ մարտին՝ որ ընդ թշնամիս արքունի՝ ընդ օրինի քրիստոնէութեան, յաղթեցին հակառակորդաց, և դարձան փառօք ՚ի պատերազմէն։ Իբրև լուաւ զայս ուռմելաս ապրեպատիտոսն, գումարեաց զքաջամէն քրիստոնեայ զօրականին. զի քանի՛ զօրացեալք վանեցին զթշնամիս հոգւոյ և մարմնոյ միանգամայն. և ինքն՝ որ յառաջագոյն իսկ տեղեակ էր օրինաց քրիստոնէութեան, դարձաւ ՚ի հաւատս Քի։

Իսկ թագաւորն տեսեալ զհրամանս իւր արհամարհեալ ՚ի քրիստոնեայ զօրականէն, բարկացաւ յոյժ. և ոչ հայեցեալ ՚ի յաղթութիւն՝ զոր արարին, իբրև եկն անձամբ յաւելլու, հրամայեաց ելանել նց ՚ի հայրենի գաւառէն իւրեանց ՚ի Գաղատիոյ, և երթալ ՚ի կողմանս Հայոց ՚ի քաղաքն Մելիտենի. զի համարեցաւ այնու անարգել զնս իբրև վտարանդիս ՚ի հայրենեաց։ Իսկ նք զարհուրեալք ՚ի սպառնալեաց բռնաւորին Տրայիանոսի՝ եկին ՚ի նախասացեալ գաւառն. զի մի՛ բարկացեալ կոտորեսցէ զնս. և էր թիւ զօրաց նց՝ մետասան հազար արանց պատերազմողաց սուսերամերկաց։ Այլ թէ զի՞նչ անցք անցին զկնի ընդ նս, լռութի է ՚ի վկայաբանութեան ձառընտրացս. բայց են՝ որ ասեն, թէ նահատակեցան վն Քի զօրականքն այն բիւր մի և հազար մի. և ընդ բարոնիոսի կարծիս լինել նոյն այն տասն հազար կամ բիւր մի նահա-

հա

Հաստակք, ուր ասին յոմանց խաչեալ յայրա-րատ առ Ադրիանոսին, որ յաջորդեաց Տրայ-իանոսի : Այլ մեք ՚ի կարգ պատմութեան

դարձցուք :

Յայնժամ տեսեալ իշխանին Ռոմելոսի զձա-խողակ միտս Տրայիանոսի ընդդէմ Հաւատացել զօրականին վտարանդի եղելոյ, մեղադիր լի-նէր նմա ասելով. ով թագաւոր այնպէ՞ս կար-ծեցեր դու, թէ իմաստութիւն ինչ գործ գոր-ծեցեր՝ զայդ առնելով : Ասէ ցնա թագա-ւորն. ուրեմն և դու խաբեցար յաղանդոյ մո-լորութեան նոցա : Իսկ երանելին Ռոմելոս ոչ ծած-կեաց զլոյսն ընդ գրուանաւ, այլ ցանկացեալ վկայ լինել ճշմարտութեան՝ սկսաւ համարձակ յանդիմանել զբռնաւորն, և ասէ. յիմար և անզգայ՝ որքեալ չարին մոլորութեամբ, դու զքո մնոտի ջանսդ՝ զոր ունիս առ կուռս ան-մռունչս, պատմես ինձ. և մի քամահեր զիմ կատարելութիւն հաւատոյս :

Բարկացաւ թագաւորն, և հրամայեաց տա-րածել և մահակօք հարկանել զնա. և ասէ ցնա. տեսցուք այսուհետև, եթէ օգնէ՞ քեզ քնս քո՝ զոր ասես : Ասէ սրբն. անդնդային վիշապ և կեղծաւոր, ոչ իմացար, թէ չարչա-րանօք քո՝ որովք կարծես զարհուրեցուցա-նել, ճողոպրեն զիս և փրկեն ՚ի կռոցն պղծ-ծութենէ, և զգեցուցանեն ինձ զանապական զգեստն՝ զոր պարգևէ քս սիրելեաց իւրոց (5) : Տեսեալ թագաւորին՝ եթէ ոչինչ օգտի, այլ յամօթ լինի, հրամայեաց սրով բառնալ զգլուխ վկային : Իսկ այնպէս կատարեցաւ

Ձրին ուղղելոս բայլի խոստովանութ. յամենեանն հոկտեմբերի ԺԹ. յաւուր շաբաթու, ուր կարծի՝ 'ի մելիտինէ հայոց. ԶԸ որում և զՀետ բերէ Ճառընտիրն զկատարումն եւդոքսեանց 'ի նմին քաղաքի. զորոց ժամ է պատմելոյ ։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սբյն Եւդոքսիոսի կոմսի, Զենոնի զինաւորի, և Մակարայ ։

Հ. սեպտ. 11 ։ Յ. սեպտ. 6 ։ Լ. սեպտ 5 ։ Բոլլանդեանն վերլերոս՝ անդ ։ Ճառընտ. Ա. ջլ=ջլԷ. հոկտ. 19 ։ Մետափր. և այլք ։



ԻԲՐԵՒ ԹԱԳԱՒՈՐԵԱՑ դիոկղետիանոս հալածիչ քրիստոնէութե, սկիզբն արար հալածանաց նախ ԸԴէմ քրիստոնեայ զօրականին՝ յամի Տն 298 ։ քանզի նըստեալ 'ի բարձր բեմի՝ առաքեաց հրովարտակ ԸՆ ամ գաւառս՝ յիշխանս և 'ի դատաւորս և 'ի զօրագլուխս, դարձուցանել զամենեսեան 'ի հաւատոցն 'ի կռոցն խաբէութի, առաւել զորս կայցեն 'ի զօրս արքունի ։

Իսկ ընկալեալ զայսպիսի հրամանս իշխան մելիտինոյ, որում անուն էր պոնտիանոս (6),

զի

զի և նա հելլենացի էր ազգաւ, հրամայեաց քարոզ կարդալ ընդ ամենայն հրապարակս և ընդ գաւառս, եթէ որք ոչ կամիցին հաւանել հրամանաց ինքնակալին և զոհել կռոցն, անողորմ տանջանօք և սրով զրաւեսցին 'ի կենացս ։ Եւ ամենեցուն քրիստոնէից լուեալ զայսպիսի սպառնալիս բռնաւորին, փաղփաղակի խուճապեալք յերկիւղէ տագնապին՝ թաքուցանէին զանձինս իւրեանց, զի մի 'ի բուռն անկցին անօրէն դատաւորին․ զի ուր և գտանէին, նեղէին, և մեծամեծ տանջանս 'ի վերայ ածելով՝ ստիպէին զոհել կռոցն, և երկիրպագանել անշունչ պատկերաց ։

Յայնժամ եկեալ արք ոմանք՝ չարախօսութիւն առ իշխանն մատուցանէին վասն մարկինոսի, որ Եւդոքսիոսն կոչեցաւ, որ և էր 'ի դասէ պրիմիկեռացն այսինքն ատենադպրաց՝ որպէս դպրապետ, և էր պատուեալ իշխանութեամբ կոմսութեան 'ի կարգի զօրավարաց (7)․ և ասէին, եթէ ոչ հաւանի երբէք թագաւորական հրամանացն, և զկռոցն զոհս ոչ մատուցանէ․ այլ զխաչեալն խոստովանի աստուած, և 'ի նա հաւատացեալ է ։ Եւ զայս լուեալ դատաւորին՝ հրամայեաց արանց հնգից զօրականաց՝ խնդրել զնա ուր և գտանիցի, և բերել յատեան դատաստանին ։

Եւ եկեալ նոցա 'ի գեօղն՝ յորում բնակեալ էր նա, հարցանէին վասն նորա․ և ասեն արք տեղւոյն ցնոսա․ աւանիկ՝ զոր դուքն խնդրէք, շրջի 'ի դաշտի անդ՝ որ կոչի կուպատիա․ և գնացին առ նա ։ Իսկ նա յառաջագոյն իմացեալ

զգայլուստ նոցա՝ գնացեալ էր 'ի լեառն, և նստէր անդ՝ հայելով 'ի նոսա. և տեսեալ՝ զի ստիպաւ խնդրէին զնա, եկեալ 'ի տուն իւր փութանակի՝ փոխեաց զհանդերձս իւր, և զգեցաւ հանդերձ աղքատի, զի մի՛ ծանիցի. և եկեալ 'ի տեղի մի՝ հանդիպէր նոցա: Եւ ասեն ցնա զինուորքն. գիտիցես արդեօք՝ թէ ո՞ւր իցէ բնակեալ կոմսն Մարինոս, որ կոչի Եւդոքսիոս: Եւ նա ասէ ցնոսա. և վասն որո՞յ իրի խնդրէք զնա, կա՛մ զի՞նչ բանք իցեն ձեր ընդ նմա, ասացէ՛ք ինձ, և ես ցուցից ձեզ զնա: Եւ յասել նոցա՝ թէ իշխանն խնդրէ զնա, կրկին հարցանէր. վասն որո՞յ խնդրէ զնա. և նոքա ասեն. վասն զի ոչ հաւանի հրամանաց ինք նակսյլին, և կռոցն ոչ զոհէ:

Յայնժամ ասէ ցնոսա Եւդոքսիոս. եկա՛յք 'ի տուն իմ, և հանգերո՛ւք փոքր մի, և ես ցուցից զնա ձեզ. և տարաւ զնոսա 'ի տուն իւր. և ասէ ցամուսին իւր, որում անուն էր Մանտանա վասիլուհի. պատրաստեա՛ ճաշ եկելոցս առ մեզ. և եդ առաջի նոցա սեղան, և ճաշակեցին: Եւ ասեն ցնա. արդ ցո՛յց մեզ զկոմսն Եւդոքսիոս. և նա ասէ ցնոսա. զոր խնդրէքն՝ ես եմ: Զարմանք կալաւ զնոսա, և ասեն ցնա. ընդէ՞ր արարեր զայդ. ահաւասիկ գնամք մեք առ իշխանն, և ասեմք, ոչ գտաք զնա. և դու զանխլացի՛ր և թաքո՛ զանձն քո, զի մի՛ ըմբռնեսցիս և անկցիս 'ի ձեռս իշխանին:

Իսկ նորին ասէ. ոչ արարից զայդ, այլ եկից զկնի ձեր. բայց փոքր մի համբերեցէ՛ք ինձ: Եւ

Եւ կոչեաց զամուսինն իւր՝ պատուիրեաց նմա
վ̃ն տանն իւրոյ. և ասէ ցնա. ով կին՝ փոխե-
լոց եմ ես ՚ի սնոտի և յանցաւոր կենաց աստի
՚ի մշտնջենաւոր և յաւիտենական կեանսն,
և այլ ոչ ևս տեսանելոց ես զիս ՚ի մարմնի
աստ. արդ զոր ասեմ քեզ՝ լուր ինձ. և
յելանելն իմ ՚ի մարմնոյ աստի՝ մի ողբս
առեալ արտասուեսցես ՚ի վերայ իմ, այլ
զգեցիր զզգեստ զհարսանեացն քոց, և վա-
ռեա լապտերս և ջահս. և առեալ անօթ
մաքուր՝ ժողովեա զարիւն իմ. և առեալ
զգլուխ իմ և զմակարիոսի զորդւոյ իմոյ, ու-
րախ լեր ՚ի տ̃ր ա̃ծ հարսն քնի: Եւ զայս ա-
սացեալ՝ զգեցաւ Եւդոքսիոս զզգեստ ազնիւ
և պայծառ ը̃ն պատուոյ իւրոյ, և նստեալ
յերիվար իւր՝ գնաց զուարթութ̃բ ընդ զին-
ուորսն:

Եւ իբրև յանդիման եղև ատենին, ասէ ցնա
դատաւորն. ուրախ լեր փառաւորեալ կոմս
Եւդոքսիէ: Ետ պխ̃նի Եւդոքսիոս. ուրախ
լեր և դու ով դատաւոր: Եւ ասէ դատա-
ւորն. իմացա՞ր ով կոմս, եթէ վ̃ն որո՞յ գոր-
ծոյ խնդրեցաք զքեզ: Ասէ երանելին. պատ-
մեա ինձ ով դատաւոր՝ վ̃ն որո՞յ խնդրեիրն
զիս: Իշխանն ասէ. վ̃ն այնորիկ կոչեցաք
զքեզ, զի հաւանեսցիս հրամանաց ինքնա-
կալին, և զոհեսցես դիցն: Իսկ նր̃ վկայն
ծիծաղեցաւ ՚ի վ̃ր անմտութ̃ն դատաւորին,
և ասէ ցնա հեգնելով. և ես վասն այնորիկ
զգեցեալ եմ հանդերձս պատուականս և պայ-
ծառս, և նստեալ ՚ի վ̃ր սպիտակ երիվարիս՝

եկեալ եմ առաջի քո բեմբիս ։ Ասէ դատա-ւորն. երդուեալ յա՟ծս մեր, եթէ լուէ թա-գաւորն մի հնազանդութե՟ քո առ կայսերա-կան հրամանսն և զոհելոյ ա՟ծոցն, յերկրոր-դական աթոռ թգ՟րութեն իւրոյ նստուցանէ զքեզ ։ Ասէ երանելին. ես յուսացեալ եմ յաւիտենական կենացն արժանի լինել, վ՟յ և պատրաստ եմ երկիրպագանել ճշմարիտ ա՟ծութեն ։

Ընդ այս ուրախ լինէր բռնաւորն, կարծե-լով թէ մի դիցն ասիցէ զայն. վ՟յ ասէ ցեւ-դոքսիոս. փառաւորեալդ և քաջ կոմսդ՝ 'ի վաղիւ՟ եկեսջի՟ր 'ի տաճար ա՟ծոցն, և ը՟ մեզ երկիրպագցես նոցա ։ Ասէ կոմսն. և քանի՟ ատտուածոյ հրամայես զոհել ։ Իշխանն ասէ. դիոսի, ապողոնի, և մեծին արտեմեայ ։ Կոմսն ասէ. երից հրամայեցեր հաւատալ սուտ ա՟ծոց, թողեալ զմի ա՟ծ ճշմարիտ՝ որ յերիս անձինս. այլ ես հաւատամ 'ի հայր և յորդի և 'ի ս՟բ հոգին՝ յերրորդութիւն ան-բաժանելի. քանզի քրիստոնեայ եմ, ո՟պ և գիտես ։

Բարկացաւ իշխանն, և ասէ. ո՞րպէս իշխես ասել զայդ՝ արհամարհելով զհրաման ինք-նակալին ։ Յայնժամ վայրի ժողովեալ էին 'ի տեղի ատենին և բազումք 'ի հաւատացեալ զինուորակցաց ս՟բյն եւդոքսիոսի. և լուեալ զվկայական խոստովանութի՟ առաքինի զօրա-վարին իւրեանց՝ ձայնակից լինէին նմա ու-րախութ՟բ ։ Յորս զայրագին հայեցեալ բռնա-ւորին՝ ասէր. և արդ որ ոչ կամի 'ի ձէնջ հա-ւա-

ւանել հրամանաց ինքնակալին , լուծցէ զգօ-
տի իւր զքրիստոնէութիւն , և դիցէ առաջի իմ։
Յայնժամ երանելին մարինոս՝ եւդոքսիոսն
կոչեցեալ՝ նախ քան զնմ լուծանել զգօտին ,
և ձգէր առաջի բռնաւորին . զնոյն արարին
և այլ ընկերք նր՜ զկնի նր՜ . և էին նոքա արք
հարիւր և չորք , կմ՜ հազար հարիւր և չորք .
և ասեն ցբռնաւորն . մեք դասաւորեալ եմք
յերկնային զինուորութիւն հրեշտակաց։
Տեսեալ իշխանին զհամարձակութի՜ բազմութե՜
նց՜ սարսեաց ՚ի նոցանէ . և եդեալ զնոսա ՚ի
գլխահոլ՝ գրեաց ՚ի ձեռն նամակաց առ թագ-
աւորն , և յորդորէր զնա՝ հրաման տալ
կարճել ՚ի կենաց զամենեսին . եթէ զբազ-
մութիւս զայս կորուսանեմք ասէ , այլ ոք ոչ
կարէ կալ հակառակ հրամանաց ձերոց , և
անարգել զա՜ծսն։ Իսկ լուեալ թագաւորին՝
հրամայեաց զայնոսիկ , որք յառաջագոյն լու-
ծին զգօտիս իւրեանց , սրով կատարել , և
զայլսն անպատուհաս արձակել . և ընկա-
լեալ զհրաման թղ՜թին՝ արձակեաց զնոսա .
( ուր իմանան վկայաբանք արտաքոյ Ճառըն-
տրին մերոյ՝ զարձակումն այլոց զինուորաց
եղելոց արտաքոյ համարոյ ՌՃԴ՜ արանց .
զորս դնեն նահատակեալս սրով )։
Իսկ զերանելին եւդոքսիոս հրամայեաց դա-
տաւորն մատուցանել ՚ի բեմն իւր , և ասէ
ցնա . մարիանէ կոմս յայսմհետէ ՚ի բաց ա-
րա ՚ի քէն զխորհուրդս յիմարութե՜ , զի մի՛
պէսպէս չարչարանօք նեղեցից զքեզ։ Պ՜նի
ետ երանելին . որո՜վ չարչարանօք կարծես
զիս

զիս հաւանեցուցանել։ Դատաւորն ասէ. հրով և ձիւթով, բանտիւ և սրով։ Սբն ասէ. տուր ինձ ո՛վ բանաւոր, ո՞ր է բարի, փախչե՞լ յանանց հրոյն՝ զոր ծովք և գետք ոչ կարեն շիջուցանել, եթէ յայժմու հրոյս՝ զոր սակաւ ջուր շիջուցանէ. ՚ի ձիւթոյն՝ որ անանց հրոյն եռայ, թէ յայդմանէ՝ որ դոյզն մի փայտիւ հալի և անցանէ. յապատակէ՞ բացեղէն և հողեղէն զուարթնոցն, եթէ յապտակէ ապականացու և տկար արանց. ՚ի տառնամանեա՞ցն՝ որ ոչ ունի ջերմութի, և ՚ի կրծանելո՞յ տառամանցն, թէ ՚ի քո սպառնալեացդ. ՚ի բանտէ՞ յայսմանէ, թէ յայնմանէ՝ որ յաւիտենից ոչ անցանէ։ Արդ իմացի՛ր զայդոսիկ, զոր ասացի քեզ, և հաւատա՛ թէ ածոց քոց ես ոչ զոհեմ, և ոչ անշունչ կռոց երկիրպագանեմ. այլ զոր կոչես դու դիւս, դիւա՛ց է գլուխ. և այրողն՝ կորուստ և ապականութի խաբէութե, և արտաքս մայր կորստեան. և երեքեան դուք խաբօղք, թագաւորն դիւկղետիանոս, և դու բանաւոր, և հայրն ձեր սատանայ։

Լի եղև դատաւորն բարկութե, և ասէ. ըղպատուճականն ածն թշնամանեցեր. այլ մեք երեքեանս ո՞վ եմք, ասա՛ ինձ։ Լուդոքսիոս ասէ. ասացի քեզ, թէ դու և թագաւորն և հայրն ձեր սատանայ. այլ տես և ծանի՛ր ո՛վ անդնդային վիշապ, զոր քեզ և թագաւորին պատրաստեալ է հուրն յաւիտենական. խաւարն արտաքին, և հրեշտակք տանջողականք։ Դատաւորն ասէ. զիս թո՛ղ ա-

նար

նորոգեցեր այս կեղծաւոր, զԹագաւորն եւ զՔրիստոսն Տէր յանկ գնեցար հայհոյել: Սոյն ասէ. Լինիջիք դուք նման ծնողացն ձերոց, որք

անշունչք եւ անբանք են:

Իսկ բռնաւորն ցասուցեալ յոյժ, մինչեւ եղծանիլ գունոյ երեսաց նորա, հրամայեաց 'ի չորից կողմանց լարիւք պարզել զնա, եւ արջառաջլօք տանջել: Իսկ երանելին հայեցեալ յերկինս՝ ասէր 'ի հարուածսն. Շնորհեա՛ Տէր՝ որք 'ի քեզ են յուսացեալ, զխաղաղութիւն յերկինս եւ յերկրի. շնորհեա՛ Տէր զհայցուածս ամենեցուն, որք խնդրեն 'ի քէն՝ յիշելով զիս յօգնականութիւն 'ի նեղութեան, կամ 'ի պատերազմի, կամ 'ի ծովու, կամ 'ի մրրկեալ լերինս, կամ 'ի հոգւոյ մոլորութենէ չարչարեալք, կամ 'ի ճանապարհի, կամ 'ի բանտի. եւ այրեաց եւ աղքատաց, եւ 'ի ծերութեան վտանգելոց, եւ ծանրացելոց բեռամբ մեղաց. եւ որք գայցեն 'ի տեղի վկայութեան եւ հեղման արեանս իմոյ վասն անուանդ քո սրբոյ, եւ 'ի յիշատակի իմում ողբալով եւ արտասուօք խնդրեսցեն զողորմութիւն առ 'ի քէն, շնորհեա՛ նոցա Տէր վաղվաղակի ողորմութիւն եւ օգնութիւն, եւ կատարեալ առողջութիւն, եւ փրկեա՛ զնոսա յամենայն նեղութեանց նոցա: Յիշեա՛ Տէր եւ զծնօղսն իմ եւ զամենայն համազգիսն. զի մի՛ եղիցի առ նոսա մահ տարաժամ մարդոյ եւ անասնոյ, եւ պտղաբերեա՛ զայգիս եւ զանդաստանս նոցա. եւ կատարեա՛ զամենայն հայցուածս նոցա 'ի բարի: Շնորհեա՛ Տէր եւ զուգակցի իմոյ մասն բարի ժառանգութեանն ընդ իս 'ի հանդերձեալ յաւիտենին.

նոյն. զի մի՛ բաժանեսցուք 'ի միմեանց: Այլ իբրև կատարեաց զաղօթսն, հրամայեաց դատաւորն դադարել 'ի հարկանելոյ զնա, և տանել 'ի բանտ. զի թերևս զգաստասցի ասէ:

Այլ յետ աւուրց տասանց ետ բերել զառաջեաւ զերանելին, և հայեցաւ ընդ նա, և ասէ. եւդոքսիէ կամս այժմ գտանէ հաւանեցա՞ր երկրպագանել և զոհել դիցն, եթէ 'ի նոյն յամառութեան կացես: Պատասխանի ետ եւդոքսիա. ես հաւանեալ եմ ճշմարտութեան՝ հաւատացեալ 'ի հայր և յորդի և 'ի հոգին սուրբ՝ յանբաժանելի սուրբ երրորդութիւն. երբեմն՝ զի կուրացեալ էի յառաջին չարին խաբէութեան յանօրէն կռապաշտութեան, և հիւանդ էի հոգւով և հիւանդութեամբ մարմնոյ. իսկ յորժամ արժանի եղէ վերստին լուսացման աւազանին ծննդեանն սուրբ մկրտութեան, բացան աչք իմ, և իմաստնացայ ողջախոհ խորհրդովք սրտի իմոյ: Հապա զայս գիտասջիր ո՛վ անիրաւ բռնաւոր, թէ ո՛չ հաւանիմ քեզ, և ոսկիապատ և անշունչ պատկերի դիցն քոց ես ո՛չ զոհեմ, որք են գործք ձեռաց մարդոյ. զի նման լիցին նոցա որք արարին զնոսա, և ամենայն յուսացեալքն 'ի նոսա:

Այլ բարկացեալ դատաւորն հրամայեաց կապարեայ մրճով հարկանել զկուրծս նորա, (կամ ըստ այլոց՝ կապարեայ գնտովք հարկանել ըղպարանոցն, և խախտել զանդամս նորա). և ասէր, հաւանեա՛ հրամանաց ինքնակալին, և երկի՛ր պագ դիցն, զի ապրեսցիս 'ի տան-

ջա

ջանացդ ։ Իսկ սրբն զայս 'ի յերկինս համ-
բարձեալ՝ խնդրէր 'ի տնէ քաջութ 'ի գլուխ
տանել զառաջինկայ մրցումն տանջանացն, և
ուրախութբ կատարիլ ։

Յայնժամ տեսեալ դատաւորին զջերմե-
ռանդն հաւատս վկային և զյօժարութիւն,
վճիռ հաստատէր 'ի վր սրբյն այսպիսի օրի-
նակաւ. Օ մարինոս զանուանեալն եւդոք-
սիոս, զգերապատուեալն կոմսութն իշխա-
նութբ, և ոչ հաւանեալ հրամանաց ինքնա-
կալին, և անպատուեալ զբարերարութիւն
ածոցն մերոց, յետ բազում չարչարանացն
հաճոյ թուեցաւ մատնել 'ի ձեռս դահճաց,
զի սրով ընկալցի զվճիռ մահու ։

Իսկ ընկալեալ սրբյ վկային զայսպիսի դատակ-
նիք մահու՝ ուրախութբ հասանէր 'ի տեղի
վկայութեն. և հայեցեալ տեսանէր զբազ-
մութի զօրականացն 'ի դասուց զինուորութե
իւրոյ, զի լալով երթային զհետ նր. լային
և ամ ժողովուրդքն ընդ նմ ։ Իսկ սաէ ցդա-
հիճսն. թողացուցէք ինձ փոքր մի ժամ յա-
ղօթս կալ. և նայեցեալ յերկինս՝ տարա-
ծեաց զձեռս իւր, և աղօթեաց այսպէս. Տէր
ած յմ քմ, որ արարեր զերկինս և զերկիր,
զծով և զամ որ է 'ի նմ, լուր աղաչանաց ի-
մոց, և ունկն դիր խնդրուածաց իմոց. և օգ-
նեա ամ հաւատացելոցս 'ի քեզ, և ամենե-
ցուն քրիստոնէից շնորհեա զհայցուածս նց
որք կոչեն զքս յօգնականութի. և մի եկեղե-
ցէ 'ի վր երկրիս այսորիկ սով կմ սրածութի
կմ սասանութի, կմ նուաղութի ամ հարկաւոր

պէ

պիտոյից ․ այլ որք հաւատով գայցեն 'ի տե-ղի կատարման իմոյ, դու Տէր զխնդրուածս նոցին կատարեա՛ վաղվաղակի ։ Շնոր-հեա՛ Տէր և զինուորակցաց իմոց և ընկերաց զխաղաղութիւն ․ զի մի՛ յաղթեսցէ նոցա թշնա-մի, և մի՛ տեսցեն նոքա զամբոխ պատերազ-մաց ։

Եւ յետ այսորիկ ասէ ցամուսինն իւր՝ որ ա-ռաջիկայ էր հանդիսին ․ բե՛ր այսուհետև զաման անօթոյն՝ զոր ասացի քեզ, և ժողո-վեա՛ զարիւն իմ ․ և առցես զգլուխ իմ ուրա-խութեամբ, և մի՛ լալով և մի՛ տրտմութեամբ ․ և մի՛ արկցես արտօսր 'ի վերայ իմ վասն մեկնելոյ քո յինէն ․ և տարցես տապան ինձ 'ի տեղ-ւոջն՝ որ կոչի ամիմնոյ (կամ ամենիմեն, որ թարգմանի անյիշատակ), և դու նստջեա՛ ընդ աջմէ իմմէ ։

Եւ դարձեալ 'ի ժողովուրդն՝ ետես զոմն 'ի զինուորաց իւրոց զինոն կամ զենոն անուն, զի ողբայր վասն յոյժ ․ և ասէ ցնա սրբն ․ զի՛-նոնիէ մի՛ ողբար վասն բաժանելոյ քո յինէն ․ զի ո՛չ թողից զքեզ ․ այլ որպէս շրջէիր յերկրի զկնի իմ, նոյնպէս և շրջեսցիս ընդ իս յանանց կեանս ․ և եղև ընդ բանի սրբոյն, զի և երանե-լին զենոն սրով կատարեցաւ յաւուրսն յայ-նոսիկ կմ՛ 'ի նմին իսկ աւուր ։ (8)

Եւ զայս ասացեալ եւդոքսիոսի՝ եկն առ դա-հիճն, և ասէ ցնա ․ ո՛րդեակ այսուհետև կատարեցէք զհրամայեալն ձեզ ։ Յայնժամ եկն ձայն յերկնից առ նա՝ ասելով ․ եկ առ հայրն քո երկնաւոր ․ և եղիցին խնդրուածք

քո

քո կատարեալ մն̃ ամենեցուն՝ զոր խնդրե-
ցեր ։ Զայս իբրև լուաւ նահատակն, ուրա-
խութ̃ սրտի խոնարհեցոյց զպարանոցն իւր
առաջի դահճին . և նոյն ձգեալ զսուսերն՝ ե-
հատ զգլուխ նր̃յն ։ Իսկ բերեալ զանօթն ա-
մուսնոյ նորա՝ ժողովեաց զարիւնն . էառ և
զպատուական գլուխ նորա խնդալով և ու-
րախութ̃ . և տարեալ հանգոյց զնշխարս
սր̃յն 'ի տեղւոջն՝ ուր հրամայեաց երանելին ։
Կատարեցան ընթացք նահատակութեան Ճգնա-
ւորին քն̃ի եւդոքսիայ կոմսի յամսեանն հոկ-
տեմբերի ԺԲ, յաւուր կիւրակէի ։
Յետ այսորիկ եկեալ կնոջ նր̃ մանտանայի
ինքնակամ 'ի դուռն դատաւորին՝ անարգէր
զդիս, և զպաշտօնեայս նց̃ զթագաւորն և
զդատաւորն ։ Զայն լուեալ բռնաւորին՝ ա-
սէ ցնա . մն̃ այնորիկ զայդ առնես, զի և դու
վկայեսցիս, և պատուեսցին ոսկերք քո յան-
միտ քրիստոնէից . երդուեալ յա̃ծսն ն̃մ և 'ի
փառս նց̃, ոչ լցից զփափաքումն սրտի քո ։ (9)
Իսկ յետ աւուրց հնգից կմ̃ եօթանց 'ի մի̃
անցելոց՝ երևեալ նմին ամուսնոյ իւրում 'ի
տեսլեան գիշերոյ՝ ասէ ցնա . ընկեր իմ և
զուգակից՝ զմակարիոս յղեա՛ վաղվաղակի
յապարանսն իմ, զի ունիմ ինչ ասել նմա ։
Իսկ յարուցեալ մանտանայի առաւօտուն՝ կո-
չեաց զնա, և ասէ . որդեա՛կ իմ մակարիէ,
տե̃րն քո յապարանս իւր կոչէ զքեզ ։ Իսկ նա
ուրախութ̃ եկն յապարանս դատաւորին .
զոր տեսեալ ոմանց 'ի դասուց զինուորաց՝
կալան զնա և տարան առաջի դատաւորին,
ա-

առնելով . և սա է եւդոքսի իշխանութեան էր : Նա տեսեալ զնա բռնաւորին՝ ասէ ցնա . յոր- մէ՞ ազգէ իցես : Մակարիոս ասաց . քրիստո- նեայ եմ : Իշխանն ասէ . մի՛ յիմարիր և մի՛ փոխելանար , այլ հաւատա՛ յա̃ծն , և ապ- րեսցիս :

Սրբն ասաց . ես հաւատացեալ եմ և հաւա- տամ՝ ՚ի Թագաւորն մեծ և յա̃ծ հայր և յոր- դի նր̃ և ՚ի սր̃ հոգին . և յուսացեալ ՚ի մի- ածութիւնն , զի յաղթեցից Թշնամւոյն . և ակնունիմ հասանել կոչողին իմոյ փառփառա- կի : Նա լուեալ զայս դատաւորն պոնտիա- նոս՝ հրամայեաց սրով կատարել և զնա . և այնպէս ընկալաւ սրբն մակարիոս զվախճան սրոյ արեամբ ՚ի նմին ամսեանն հոկտեմբե- րի , ՚ի փառս և ՚ի գովութի̃ ա̃ծ մերոյ և փրկ- չին յս̃ի քս̃ի . որում փառք յաւիտեանս , ա- մէն : (10)

Օ երկոսին նախագրեալ վկայաբանութիւնս սրբոյն ռամելայ և եւդոքսեանց դտեալ ՚ի միա- սին ՚ի մելիտինէ հայոց մեծն գրիգոր վկայ- ասէրն մեր՝ Թարգմանէ ՚ի յունարէն գրոց ՚ի հայ բարբառ , ՚ի Թուին հայոց շխա . ըս̃ յա- մի տն̃ 1092 : Լ.անդեն և ոմանք ՚ի յոյն վկայագրաց , Թէ յիշատակ սրբոյս՝ հանդերձ ռձռ , կմ̃ ռձլդ նահատակակցօք կատարիւր ՚ի կոստանդնուպօլիս ՚ի վկայարանի սրբյն պրոկոպիոսի , որ ՚ի տաճարի սրբյն մինասայ շինելոյ՝ ՚ի մեծէն կոստանդիանոսէ : Այլք ասեն , Թէ շինեցաւ ՚ի Թագաւորեալ քաղա- քի անդ առանձին եկեղեցի յանուն սրբյն եւ-

դաքսիոսի յեւդոքսիանէ պատրիկէ մեծին կոս-տանդիանոսի կամ մեծին Թէոդոսի։ Մար-մինք ոմանց 'ի վկայից նահատակելոց 'ի Մե-լիտինէ Հայոց՝ կային 'ի Կոստանդնուպօլիս 'ի տաճարի սրբուհւոյն Եւփեմեայ՝ յաւուրս կայսերն Յուստինիանոսի. որ եւ բարեխօսութ. նոյն վկայից ազատեցաւ 'ի մահաբեր հիւան-դութէ յամի տն իբր 560։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սբյն Զենոնի զօրականի ը̃ Զենանու կիր զենեալ պատանեկի։

Հ. յունիս. 27. Յ. Լ. յունիս. 23. Ըստ Բոլ-լանդեանն Յայսմաւուրս. 'ի Դ̃ հատ. յունիսի. էջ 474 = 482։ (11)



ԵՐԿՐՈՐԴՍ ԱՅՍ ԶԵ-նոն զինուոր՝ ժամանակակից առաջնոյն, այլ առաւել հռչա-կեալ առանձին և պանծալի վկայութը, էր զօրական նշանաւոր յաւուրս Մաքսիմիանոսի կայսեր՝ մերձ 'ի գործակցաց Դիոկղետիանոսի, 'ի Փիղադեղփիա քաղաքի Ապառաժն Արաբիոյ՝ որ ը̃ վկայաբանին եմ-ման կիր թեման կոչեցեալ 'ի գիրս։ Սէր տե-

սեալ զանօրէն՝ գնացս կռապաշտից, և զՀալածումն նց ըդէմ քրիստոնէից, ցանկայր մեռանիլ վկայութբ ճշմարտութեն՝ ք Հանդուրժել և լսել ըն գործս անարժանութե. զի էր այր կատարեալ Հաւատով և սիրովն

Քի :

Սմին իրի թօթափեալ յանձնէ զՀոգս եր՝ բաշխեաց աղքատաց զստացուածս իւր, և զամ ծառայս իւր ազատեաց՝ տուեալ նոցա բաժինս յընչից իւրոց : Բայց պատանեակ մի 'ի ծառայից նր զինան կմ զենաս անուն՝ սիրեցեալ յաչս զենոնի վն իւրոյ առաքինի արութեն և իմաստութե 'ի տղայական Հասակի, ոչ կամեցաւ թողուլ զտր իւր, այլ՝ աղաչէր զնա ունել զինքն 'ի սպասու իւրում մինչ 'ի մաՀ . զի երկրաւոր ծառայութբ յերկնաւորն Հասցէ ազատութե : Ուրախ եղև զենոն ըն յօժարութին մնացն նր, և ևս քան զևս սիրեաց զնա, և քաջալերեաց պինդ կալ 'ի խորՀուրդս ածաՀաճոյս :

Սա եղև յառաջնում ամի մաքսիմիանոսի կայսեր ( Հերակլեայ, յամի տն 286, կամ գաղերիոսի արմենտարի, յամի 304 ), առ մաքսիմոս դատաւորաւ փիղադելփեայ, տօն կատարէր կռոց 'ի քաղաքի անդ յութերորդ աւուր ամսեանն յունիսի . և իբրև մատոյց դատաւորն զերկրպագութի և զզոՀս դիցն, Հրամայէր և որոց անդն կային՝ զնոյն գործել : Յայնժամ յառաջ մատեաւ քաջն զենոն, և վառեալ ածային նախանձու՝ ասէ ցմաքսիմոս . ով անօրէն և ժանտագ Հրոյ է

Հօր

հօր քում սատանայի , զի՞արդ հրամայես եր-
կիրպագանել և զոհել անշունչ և ձեռագործ
դրօշելոց . հի՞մ զհետ կրթեալ մոլորութե
թագաւորաց քոց՝ նց տաւել հաճոյ լինել
խնդրես , ք ոյ կենդանւոյ . և զանձես ան-
ձին և այլոց հուր մշտնջենաւոր և տանջանս
աններելիս ։

Օ այն լռեալ Մաքսիմոսի՝ լի եղև դառնու-
թե . հրաման ետ իւրոցն ունել զնա , և մեր-
կացուցանել 'ի ձեռոյ պատուոյն . ապա կո-
չեալ զնա յատեան ոմն մահապարտ՝ հարցա-
նէր օրինօք քննութե զանուն նր և զազգ և
զտեղի և զգործ . և ուստի՞ է քեզ ասէ յայդ
յանդգնութի ժպրհիլ ։ Օ ենոն ասէ . ազ-
գաւ հելլենացի գտանիմ , բայց հաւատով
քրիստոնեայ . և եթէ 'ի պատուէր ունիս զզին-
ուորութին , նախ զառաջինն նուէրական եմ
քո թագաւորին՝ փառս անձին գիտելով զի-
նւոր նորա լինել . և անուն իմ զենոն , ( որ
յունարէն կենդանի լսի ) , զի կենդանի լի-
նել ակնունիմ հաւատացելոցն 'ի քս . և բնա-
կութի իմ 'ի ղիզիուն ամուրն պաղեստինոյ ,
ուշինչ աննշան 'ի կարգի զօրականութեան և
ե̃ ցի ։

Մաքսիմոս ասէ . այլ թէև նախապատիւ
իցես 'ի դաս զինուորութե , անմարթ է քեզ
հակառակ ամբառնալ թգրաց իշխանութե ,
և իշխել խօսել առաջի իմ այդպիսի բանս .
քանզի և մեր 'ի թագաւորաց առեալ է պատ-
ուէր դատել զանհնազանդս . և կամիմք՝ զի
ոմն մեք հնազանդիմք նմա և պաշտեմք զդիս

նից, զնոյն գործեսցեն և այլք ։ Ակնի եմ զենոն․ մեք առաւել հնազանդիմք այ՝ քան մարդոյ․ ապաքէն և ես հնազանդիմ իշխանաց ձեր, բայց ոչ ըստ նմանութեան քո և ՚ի հրամանս գլխովին հակառակս այ․ այլ առաւել ՚ի պօղոսէ, որ յայ ասաց լինել զամ իշխանութի ։ Եւ սկսեալ ՚ի բանից աստի՝ բազմօք եցոյց յառաքելական քարոզութէ զողջմտութի վէպութէ քրիստոնէից, և զանմտութի հեթանոսական մոլորութէ ։

Իսկ դատաւորն անգոսնեալ զամծիմաստ բանիւք զենոնի՝ սկսաւ աղաչանօք հրապուրել զզենոն, զի ՚ի բաց կացցէ ՚ի բարեպաշտութէ ։ Եւ քաջ նահատակն այնուհետև ոչ ետ նմա պնդնի, այլ զայս միայն երկրորդէր, թէ քրիստոնեայ եմ ։ Եւ դահիճքն ըստ ակնարկելոյ դատաւորին հարկանէին զբերան նորա, և ասէին․ տուր պնի առ հարցուածս իշխանին ։ Դարձեալ ասէր մաքսիմոս դատաւորն․ ապաքէն անարժան գտար դու կենաց քոյով յանդգնութբ․ բայց արդ անսա ինձ, և երկի՛ր պագ դիցն, և յոլովից արժանասցիս շնորհաց և պատուոյ ՚ի թագաւորաց, որոց փոյթ է բարերարել ամ տիեզերաց ։ Զենոն ասէ․ զայդ ասես շնորհս և բարերարութի, մոլորեցուցանել զմարդիկ, և ձգել ընդ իւրեանս ՚ի կորուստ ։

Ընդ այս բան ցասուցեալ մաքսիմոսի՝ հրամայեն ետ պարզել զնա, և հարկանել նա արջառաջլօք․ և մինչդեռ տանջէին զերանելին, սաստիկ գոչէր մաքսիմոս․ զոհեա դիցն․ և

և վկայն ասէր · ամենիրազն ա̃ծ երկնից ոչ
արեամբ պաշտի զոհից, այլ ս̃բ սրտիւ : Ապա
ասաց դատաւորն բռնի ձգել տանել զնա 'ի
տաճար կռոց, զի ակամայ հարկեսցի երկիր-
պագանել : Իսկ երանելի վկայն զօրացեալ
'ի հոգւոյն ս̃բյ՝ արձակեաց զոտն իւր աջոյ 'ի
բագինն անդր, և տապալեալ խորտակեաց
զայն, և ասէ · անօրէնն յանօրէնութե̃ իւ-
րում մեռցի, և ձեռք իմ անպարտ լիցին :
Այն իբրև գիտաց դատաւորն՝ ետ կախել
զնահատակն, և քերել զկողսն անխնայ ·
ապա հարին աղ և քացախ 'ի վէրս ն̃ր : Իսկ
զԶենոն յաղօթս կայր 'ի տանջանս, և ասէր
մեծաձայն · ա̃ծ փրկութե̃ իմոյ՝ առ քեզ աղա-
ղակեցից · զի դու ասացեր, որ կորուսցէ
զանձն իւր վ̃ս իմ, գտցէ զնա · և ես լուայ
և հաւատացի ձայնի քում, թէ մի երկնչիք
'ի սպանողաց զմարմինն : Յետ այսորիկ ար-
ձակեցին զնա 'ի կախաղանէն, և արկեալ
ծանր շղթայ 'ի պարանոցն՝ տարան 'ի բանտ,
պնդեալ զոտս ն̃ր 'ի կոճեղս չորից ծակուց ·
և ն̃րն սաղմոսէր և ասէր · ա̃ծ յօգնել ինձ
նայեաց, և տ̃ր յընկերել ինձ փութա :
Յայնժամ եկն զինան պատուհական ծառայ
ն̃րյն, և մտեալ 'ի ներքս 'ի բանտն՝ համբու-
րէր զոտս նորա և զկապանսն, և աղաչէր ար-
տասուօք մի թողուլ զինքն, այլ առնել իւր
վիճակակից : Եւ երանելին զԶենոն սկսաւ
քաջալերել զզինան՝ չհայիլ 'ի մարմին իւր
ցաւատեալ 'ի հարուածոց · մի կարծեր զիս
ասէ այնչափ չարչարեալ՝ որչափ չարչարե-

ցինն . զի ա՟ծ իմ 'ի տանջիլն իմում մեղմէր զխստութիւն տանջանացն . և արդ զօրացիր որդեակ իմ զինան , քանզի հաւատամ , զի ա՟ծն բոլորից ընտրեաց զքեզ : Լուեալ բանտապանին զայսոսիկ՝ մատնեաց դատաւորին , Թէ զենան հրապուրէ և զծառայն իւր հաւատարիլ ինքեան յա՟ծ . և հրաման առեալ փակեաց և զզինան 'ի բանտի . և 'ի վաղիւն անդր տայր մաքսիմոս բերել զերկոսեանն յատեան :

Խօսել սկսաւ դատաւորն , և ասէ ցզենոն . զի՞նչ շահ եղև քեզ 'ի տանջանացդ , զի և զծառայ քո հրապուրես ի՟ւ փորձ նոցին անցանել : Զենոն ասէ . ոչ ես ինչ պատճառ եղէ պատանւոյս , այլ՝ հոգին ս՟բ , որ բնակեալն է 'ի նմա . վ՟ն զի բազում ծառայք էին իմ , և յազատել անդ զամենեսեան՝ սա զճշմարիտն մանաւանդ սիրեաց զազատութի , և յարեցաւ 'ի տ՟րն քո՝ ակնկալեալ զերկնից փոխարինաց այժմու ծառայութե՟ : Սրտեաց մաքսիմոս զպատասխանին , և ասէ ցնա . 'ի բաց լեր յանմտութե՟ դ՟ն քո , և զոհեա՛ ա՟ծոց . զոր եթէ առնիցես , քեզ տաց զպատիւն՝ զոր բարձի 'ի տ՟նէ քումմէ , և հանից 'ի մեծ եւս շուք պատուոյ առ 'ի Թ՟գրաց . ապա թէ ոչ՝ դառն տանջանք մնան քեզ :

Զենոն ետ զինան , և ասէ . ի՞բր արդեօք կամիս՝ զի երկրպագու եղէց բագնիդ ո՟մ պատուականի իմիք . ոչ ահա տ՟րն իմ առ ոտն հարեալ կործանեաց զայն . և ո՞րպիսում պաշտաման արժանի իցէ կուռքն՝ որ ոչն կարաց տա-

տանել հարման ուրիշ տկարացելոյ այնչափ տանջանօք : Զայս լուեալ Դերայն զենոնի՝ ու-րախ լինէր յոյժ , տեսանելով 'ի պատանին արութի ոգւոյ առաւել քան զտիս մանկութե .

զի դեռ մանկագոյն իսկ էր :

Պարծել զողորք բանից բուռն հարկանէր չա-րանենգն Մաքսիմոս առ որսալոյ զմանուկն . իսկ զինքն արար պնդնի . ոչ կամիմ շատաբա-նել յանդիման ձո իմոյ զենոնի , այլ խոստանամ ոչ յետս կալ 'ի գեղեցիկ զինուորութ-նորա ը̅ դրօշակաւ խաչին քի : Յայնժամ զօտեմտել դատաւորին՝ ետ պրկել զմանուկն , և գան հարկանել ուժգին : Եւ զինքն ասէ ցտէր իւր . խնդրեմ յքո տալ ինձ զօրութի , և օգնել ինձ : Ասէ զենոն . զօրացիր որդեակ իմ , և մի երկնչիր յառժամայն տանջանաց . զի զկեանսն յաւիտենից ժառանգեսցես : Եւ այնչափ հարին զԹիկունս երանելի ման-կանն , մինչև գզզել մարմնոյն . իսկ նա և ոչ բան մի խօսեցաւ 'ի ներքոյ հարուածոց : Եւ իբրև լուծին զնա , և ոչ կարէր յոտին կալ , ասէ անօրէն դատաւորն ցզենոն . տե-սեր , զի կորուսեր ընդ քեզ և զանձն ման-կանդ : Զենոն ասէ . ոչ կորուսի , այլ մա-նուանդ գտի և ստացայ զնա քի : Միւսան-գամ ապա հրամայէ դատաւորն յորսայս ար-կանել զզենոն , և հարկանել ը̅ փոր նը̅ և ը̅ կողս , և շամփուրս հրացեալս դնել 'ի վը̅ սրտի նը̅ : Բայց իբրև դահիճքն յոգնեցան և նահատակքն անպարտելի մնացին , անդ-րէն 'ի բանտ արկանէին զերանելին :

Յաւուրսն յայնոսիկ եկն 'ի փիղապետղփիլա իշխանին զօրավար, դուքս՝ Յն առաջնորդ զօրու կարգացեալ 'ի հռովմայեցւոց, և անուն նմա բոգոս. որում հանդիպեալ պատուհաւ մաքսիմոս դատաւորն՝ յետ ողջունին պատմեաց նմա զանցս զենոնի, եթէ զօրական ոմն ածաւ առ իս քրիստոնեայ, և ծառայ նմա է նմա. ողք բազմօք առ յինէն խրատեալք քաղցրութբ, ապա և դառնագոյնս խոշտանգեալք, աննաստ կան մնան՝ պնդեալք 'ի խոստովանել զքս ած. արդ եթէ մարթասցիս փոխել զմիտս արանցդ աշարկութբ կմ սիրով, բարւոք առնես ։

Հրաման ետ զօրավարն ածել զնոսա զառաջեաւ 'ի ձիարձակարանի. ուր յատեան նըստան 'ի միասին բոգոս և մաքսիմոս, և սկսաւ բոգոս փորձել զնբսն ողոքանօք և սպառնալեօք ։ Զենոնի ետուն վկայքն իբրև 'ի միջնէ բերանոյ, և ասեն. ոչինչ ուժեն բանք քո 'ի փոխել զմեզ յառողջ խորհրդոց. զի թէ անսալ կամէաք բանից, առ ի՞նչ էր մեզ մատնել զմարմինս յայդչափ հարուածս և 'ի կտտանս ։ Յայնժամ հրաման ետ դուքսն, և կախեցին զերկոսեանն 'ի բարձրաւանդակի, և սրկեցին փոկովք է անթովք, և վէմս ծանունս կապեցին յոտս նց, և հուր մատուցին 'ի ներքոյ. միանգամայն և արք չորք բրօք ծեծէին զմարմինս նց ։

Այլ իբրև արիաբար տարան այսմ ամի քաջ նահատակքն, և ոչ միում պիտոյ արժանի արարին զիշխանսն, գազանացեալ բռնաւորքն

սորքն ետուն իջուցանել զնա 'ի կախաղանէ անտի, և հրամայեցին փոսս հատանել 'ի տեղւոջն, և ընկենուլ անդր զնոսա, և 'ի վր խարոյկ լուցանել՝ արկեալ և ձէթ բազում 'ի բորբոքումն բոցոյն յոյժ յոյժ : Իսկ եղեն անդ սքանչելիք հնոցին բաբելոնի . քանզի հրամանաւն այ հուրն ոչ մերձենայր 'ի մարմինս վկայիցն, մինչև իսպառ շիջանելոյ . և ելին նշքն ամբողջ 'ի հրոյն . և բազմութիւն 'ի տեսողաց դառնայր 'ի քս :

Յայնուհետև թոդոս իբրև իշխան զօրու՝ ետ իշխանութիւն մաքսիմոսի դատաւորի հատանել զվճիռ մահու ընդդէմ որոյն զենոնի զինաւորի, և պատանեկին նր զինանու . և մաքսիմոս տայր դատակնիք գլխատել զնս 'ի տեղւոջն : Իսկ վկայքն կնքեալ զճակատս իւրեանց նշանաւ ամենայաղթ խաչին՝ զուարթութբ մատուցին զպարանոցս իւրեանց սրոյ, և այնպէս կատարեցան 'ի քս 'ի յունիսի, իզ : Իսկ հաւատացեալ կուսանս կանայք բարեպաշտք և երկիւղածք յայ դողացան ըզպատուական մարմինս նոցին, և թաղեցին յանքոյթ վայրի :

Իսկ 'ի դադարել անդ հալածանաց՝ ոմանք յազգականաց երանելի վկայիցն եկեալ 'ի խնդիր մարմնոց նոցա՝ գտին անապական 'ի գերեզմանի, և առեալ տանէին 'ի բնակութիւն իւրեանց . և այծ եցոյց ոչ սակաւ նշանս և սքանչելիս 'ի ձեռն նշխարաց նց ըստ ժամ ճանապարհն, մինչև տարան և հանգուցին զնս յարժանաւոր տեղւոջ 'ի փառս քի այ մերոյ :

Յ.ուան

Յաւուրսն յայնոսիկ եկն 'ի փիղադելփիա իշխանն զօրավար, դուքս՝ ոմն առաջնորդ զօրու կարգացել 'ի հռովմայեցւոց, և անուն նր Բոգոս. որում հանդիպել պատուով Մաքսիմոս դատաւորն՝ յետ ողջունելոյն պատմեաց նմ զանցս զենոնի, եթէ զօրական ոմն ածաւ առ իս քրիստոնեայ, և ծառայ նր է նմա. որք բազմօք առ յինէն խրատեալք քաղցրութբ, ապա և դառնագոյնս խոշտանգեալք, անսասան կան մնան՝ պնդեալք 'ի խոստովանել զքս ած. արդ եթէ մարթասցիս փոխել զմիտս արանցդ ահարկութբ կմ սիրով, բարւոք առնես:

Հրաման ետ զօրավարն ածել զնոսա զառաջեաւ 'ի ձիարձակարանի. ուր յատեան նստան 'ի միասին Բոգոս և Մաքսիմոս, և սկսաւ Բոգոս փորձել զնոսա ողոքանօք և սպառնալեօք: Զենոնի ետուն վկայքն իբրև 'ի միոջէ բերանոյ, և ասեն. ոչինչ ուժեն բանք քո 'ի փոխել զմեզ յառողջ խորհրդոց. զի թէ անսալ կամեցաք բանից, առ ի՞նչ էր մեզ մատնել զմարմինս յայդչափ հարուածս և 'ի կտտանս: Յայնժամ հրաման ետ դուքսն, և կախեցին զերկոսեանն 'ի բարձրաւանդակի, և պրկեցին փոկովք է անթովք, և վէմս ծանունս կապեցին յոտս նց, և հուր մատուցին 'ի ներքոյ. միանգամայն և արք չորք բրօք ծեծէին զսրունս նց:

Իսկ իբրև արիաբար տարան այսմ ամի քաջ նահատակքն, և ոչ միում պխնւոյ արժանի արարին զիշխանսն, գազանացեալ բռնա-

ւորքն

ւորքն եւ տուն իջուցանել զնա 'ի կախաղանէ անտի, և հրամայեցին փոսս հատանել 'ի տեղւոջն, և ընկենուլ անդր զորսն, և 'ի վր̄ խարոյկ լուցանել՝ արկեալ և ձէթ բազում 'ի բորբոքումն բոցոյն յոյժ յոյժ: Նա եւ եղեն անդ սքանչելիք հնոցին բաբելոնի. քանզի հրամանաւն այ̄ հուրն ոչ մերձենայր 'ի մարմինս վկայիցն, մինչև իսպառ շիջանելոյ. և ելին նշքն ամբողջ 'ի հրոյն. և բազմութի 'ի տեսողաց դառնայր 'ի տր̄:

Նոյնուհետև բազում իբրև իշխան զօրու՝ եւ իշխանութի. մաքսիմոսի դատաւորի հատանել զվճիռ մահու ըդ̄էմ նոյն զենոնի զինաւորի, և պատանեկին նր̄ զինանու. և մաքսիմոս տայր դատակնիք գլխատել զնա 'ի տեղւոջն: Իսկ վկայքն կնքեալ զճակատս իւրեանց նշանաւ ամենայաղթ խաչին՝ զուարթութբ̄ մատուցին զպարանոցս իւրեանց սրոյ, և այնպէս կատարեցան 'ի քս̄ 'ի յունիսի, իզ̄: Նա և հաւատացեալ կուսանն կանայք բարեպաշտք և երկիւղածք յայ̄ գողացան ըզպատուական մարմինս նոցին, և թաղեցին յանքոյթ վայրի:

Իսկ 'ի դադարել անդ հալածանաց՝ ոմանք յազգականաց երանելի վկայիցն եկեալ 'ի խնդիր մարմնոց նոցա՝ գտին անապական 'ի գերեզմանի, և առեալ տանէին 'ի բնակութիս իւրեանց. և ած̄ եցոյց ոչ սակաւ նշանս և սքանչելիս 'ի ձեռն նոբ̄ նշխարաց նց̄ ըդ̄ ամ̄ ճանապարհն, մինչև տարան և հանգուցին զնա յարժանաւոր տեղւոջ 'ի փառս քի̄ այ̄ մերոյ:

Նուան

Տասներին յիշատակ որպէս լինէր 'ի Կոստանդ-
նուպօլիս 'ի յունիսի ԻԶ 'ի վկայարանի
նորին գեորգեայ զօրավարի՝ 'ի տեղին կոչե-
ցեալ կիպարիսոն կմ՝ Նոճաստան, ուր կային
և մասունք որց զօրականաց՝ Թեոդորոսի
և պօղիքտոսի :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Արկին և երեքկին վկայաբանութիւնս՝ ոչ կարծեմ, գեղեցիկ յայտնաբանեալ տեսանի հանդէս խմբի ոճ զի-նուորաց տանելոց 'ի մեջն յայսմ վայրի՝ առ ընթեր Թէո-դորիտեայ քահանայի, նախ քան զնահատակութեանն . ուր եթէ համաձայնեալ մեզ լինէր, ասէաք՝ թէ լաւ ես էր զարտամիս մեծ վկայն գտանել ընդ Թէոդորիտեայ, քան տրամ յանուանս կատարեցան երկուքին առ յուլիանոսիւ . և զզատ զինուորաց՝ համդերձ բազմաթիւ նահատակակա-ցաց նոյ, որք Ե աւանդեալ հաշուին իբր ԺԶ և հարիւր մի, և Ե եւգորքեանն՝ իբր ռՃԴ, տանել Ե խարիթեանն՝ որ են վկայք ԺԶ և ԲՃ թուով:

Բայց զայդ թողեալ՝ տեսանեմք, զի արտաքոյ համա-րմանս մերոյ և արշալուսութեան՝ խառն է աւանդութիւն զդասուց սրբոց յիշատակարանչիւր յայսմաւուրս և 'ի վկայա-գիրս ազգաց . Տե՛ս Հ. 'ի ստորև 10, կմ 11, կմ 12 . ունի այսպէս . * 'ի սմին աւուր ( կմ յայսմ աւուր ) կատա-
„ րեցաւ սրբոց ոճ մարտիրոսն ռամիլոս 'ի տրայիանոսէ
„ արքայէն ( յորինակս ինչ, զատաւորէն ), յետ բա-
„ զում չարչարանաց և գանից առաջ գլխատեցաւ 'ի
„ փառս քի : Նոյնպէս եւգոքսիոս ոճ վկայն 'ի մելիտի-
„ նի քաղաքի հայոց կատարեցաւ սրբոց վճ անուանն քի
„ յամս գեոկղետիանոսի արքային || . յոր յաւելու ոճր
ինէլ . * և ընդ սմին եւգոքսի 'ի նմին քաղաքի կատարե-
„ ցան ռճ լՃ մարտիրոսք . և են բարեխօս առ ոճր վճ
„ մեր || . ուր չիք անուան զենոնի և մակարայ :

Ճառընտիրն մեր ունի 'ի վերնագրի այսպէս . * Վկայա-
„ բանութիւն սրբոյն եւգոքսիայ մաւրինոսն կոչեցելոյ, և
„ ռոմիլէլի, և նոյնի ( խմա, զենոնի ), և մակարայ, որ
„ եղէն յաւուրս տրայիանոսի ամբարիշտ թագաւորին || .
և

և տեսանի պատմել նախ զԸ գրեալս զվկայաբանութիւն
առաքելոյ առ Տրայիանոսիւ . և ապա 'ի վերայ բերէ
զվկայաբանութիւն Եւդոքսեանց սրբոյն՝ այսպէս . * Եւ
,, յետ այնորիկ մեռաւ Տրայիանոս . և յետ Ժամանակաց
,, ցեղաց յարեաւ այլ թգր Դիոկղետիանոս անուն , որ
,, ոչ ճանաչէր զԱծ || եւն . ուր յընթացս յիշէ զճնան՝ ա-
ռանց պատմութե կատարմանն , և մակարայ կատարութե
դրի զկնի Հարձակ վկայաբանութե Եւդոքսիոսի : Եւ
'ի վախճանի առե ընդհանրապէս . * Թարգմանեցան
,, պատմութիւնք սբց վկայից 'ի յունարէն գրոց 'ի հայ
,, բարբառ 'ի մայրաքաղաքին հայոց , որ կոչի Մելիտի-
,, նէ , 'ի թուականիս հայոց շխա : Ընդ որս . . . . ||.
ուր պակասին քանի մի թուղթք 'ի ճառընտրէն . և ոչ
գիտեմք՝ թէ զմիր արդեօք զկնի պատմութե առանձին
մը զենոնի առաջնոյ կմ երկրորդի : Այս ինչ յայտնի
է , զի ճառընտիրս այս մեծ՝ որ յօրինեալ է Ը կարգի
այբուբենի , 'ի կարգի անդ Ե տառի գնէ զԵւդոքսիոս
իբրև գլխաւոր , և 'ի պատճառս նը խօսի զառաքելոյ և
զայլոցն , և անցանէ յԵրկոտասան առաքելսն , յԵւ-
ստաթէոսն , եւն : Թող զոր չիւթ բանիւք բերէ
վերլուծոս բովանդակեան իբրև 'ի յայսմաւուրաց և 'ի ճառ-
ընտրաց հայոց՝ հաներալ 'ի ձեռն անհմուտ անձանց :
Զկարգ երկմանեայ պատմութե ճառընտրիս մերոյ 'ի
միում անդ վկայաբանութե իւրում , զի մը առաքելոյս առ
Տրայիանոսիւ , և մը Եւդոքսեանց առ Դիոկղետիանո-
սիւ , գեղեցիկ պահէ մետափրաստէս իմ սորա իւ-
րովք . որք և Լ . ունելով 'ի սերայս . ς . այսպէս . * 'Ի
,, ամին աւուր ( կատարումն ) սբյն առաքելոյն Նախա-
,, բարի պայծառանն Տրայիանոսի . որ մը յանդիմանելոյ
,, զդժնդակութի իւրենականին Քրիստոնէից՝ գա-
,, ւազանիք հարեալ՝ գլխատեցաւ : 'Ի մելիտինէ հայոց
,, նահատակութի սբց զօրականաց՝ Եւդոքսիոսի , զենո-
,, նի , մակարայ , և ընկերացն հազար հարիւր և չորից .
,, որոց ընկեցեալ զզօտի զինուորութե , խոստովանեցան մը
,, 'ի քն խոստովանութեամբ 'ի հալածանս դիոկղետիա-
,, նոսի || :

Որ Յ . բս . սերայ . 6 . թէպէտև զպատմութին քաղեալ
է 'ի նմին իսկ 'ի վկայաբանութէ ճառընտրին մերոյ , բայց
զամ վկայքս 'ի վեր սարեալ 'ի Ժամս Տրայիանոսի իբրև
նահատակակիցս առաքելոյ , գրելով խառն բանիւք այսպէս .
* Յայսմ աւուր նահատակութի սբց վկայիցն , Եւդոք-
,, սեայ , առաքելոյ , և խմբի նը : Եւդոքսիոս վկայն քնի
,, էր

„ էր առ արքայութեանն արքայից հանդիպեցելոց՝ կոմս էր
„ կարգին. և ունելով է իւրև զօրականս բիւրս և հա-
„ զարս՝ գնդերէր 'ի գաղղիա (իմն գաղղատիա) գաւա-
„ ռի: Իսկ ռոմիլոս պատերազմաւ արքայի՝ խորհուրդ
„ եառ նմա առաքել 'ի գաւառն գաղղիոյ (արս), և սակ-
„ պել զորս էինն զօրականք քրիստոնեայք՝ զոհել դից:
„ Իբրև այսոցիկ եղելոց՝ չառին յանձն զոհել. և վասն սո-
„ րագրեցան 'ի մելիտինէ զօրք հայոց: Ապա 'ի զղջումն
„ եկեալ ռոմելայ, և հաւատացեալ 'ի քս, և յանդիման-
„ նեալ զարքայութեան՝ գլխատեցաւ: Յետ այսորիկ կա-
„ լեալ զԹագաւորութիւն մաքսիմիանոս, և հրամայեալ առա-
„ նանել զքրիստոնեայս՝ պատուէր յղեաց գրով և առ
„ իշխանն մելիտինոյ բառնալ 'ի կենաց զերկրպագու-
„ քն. ուստի կալեալ զեւգրաքսիոս կոմսն, և զօրս է
„ նմա զօրականս, և տուժեալ երկիրպագանել կռոց,
„ յոչ հաւանիլ նց բազմօք չարչարեալ՝ եա գլխատել||:
Տեսանեմս, Թէ որպէս մեր 'ի վայր տանի զեւգրաքսեանս
յայտնի սխալանօք ժմկագրութե. զի Թէ առ արքայութե-
անն լինէին, զիա՞րդ ժամանէին 'ի ժմկ մաքսիմիանոսի՝
որ զկնի երկուց դարուց. և զի իրօք էին առ դիոկղե-
տիանոսիւ և մաքսիմիանոսիւ, ապա ոչ կարէին լինել
յաւուրս արքայութեանն: Եւ սակայն այսպէս եդին մեր-
ձակաւ և այլք ոմանք 'ի յոյն և 'ի լատին վկայագրաց
առ մոլանօսի և փերրարիոսի, զայսօրինակ գրելով.
* Նահատակութի սբց վկայիցն՝ եւգրաքսիոսի, որ և մա-
„ րիանոս, ռոմելայ, զենոնի, և մակարայ, որք առ
„ արքայութեանն ապատեցան||. կմ այսպէս. * 'Ի մելի-
„ տինէ հայոց կատարումն սբց վկայից. եւգրաքսի, ռո-
„ մելայ, և ընկերացն առ արքայութեանն ||. փոխ առե-
լոյ, ռոմելայ առ արքայութեանն, և եւգրաքսեայ և մա-
կարայ առ դիոկղետիանոսիւ. այլ և զենոնի առաջնոյ
առ Նովլին դիոկղետիանոսիւ. և զենոնի երկրորդի առ
դիոկղետիանոսիւ և մաքսիմիանոսիւ 'ի դատաւորութե
մաքսիմոսի. զորոց զանունն Թերևս չփոխեցին ոմանք
է կոյսեր, կմ զկայսերն է դատաւորի. Թէպէտև ոչ
ոք չփոխէ զզենոնն է զենոնի:

Գովեմք զմելքիոր բոլլանդեան, զի պինդ ունելով
զհետս Լ. և մետափր. ոչ անկանի 'ի չփոթս յայսոսիկ,
այլ միաբանի է որոշողութե մերում ըս Ճառընտրաց.
միայն սխալէ յայնմ, զի կարծէ՝ Թէ մետափրաստէս
գտեալ զհամառօտութի ինչ հանգոյն բառիլեան յայս-
մաւուրաց՝ ընդարձակեալ իցէ զպատարագս և զձեռս բա-
նից.

Թգ̃րէր յեթէովպիա. ջ̃ ՚ի Հապէշստան Հա-ւատացեալ և բարեպաշտ արքայն եղէզբա-հան կմ̃ եւլեսբովամ յարքայանիստն աւքսո-մի, Թագ կապեաց և նստաւ Հրէայ ոմն ժանտ, դովնաս կմ̃ դաւնաան անուն ՚ի քաղաքն փռա-ւէ յերկրին ոմերիտացւոց, ուր բազմութի̃ էր Հրէից և Հեթանոսաց. և էր պատերազմ ՚ի մէջ նորա և ՚ի մէջ արքային եթէովպաց-ւոց: (3)

Այս ՚ի միում նուագի զօրացեալ յոյժ նճա-նէր Թագաւորն եղէզբահան՝ եհար վանեաց զզօրս դովնասայ, և զնա հալածական ա-րար ՚ի լերինս և յամուրս. և թողեալ անդէն յերկրի նր̃ զզօրս և զզօրավարս ՚ի պահպա-նութի̃ ինքն դարձաւ յեթէովպիա. իսկ դով-նաս դումարեալ անդրէն զզօրս ՚ի Հրէից և ՚ի Հեթանոսաց՝ յարձակեցաւ յանպատրաս-տից ՚ի մուտս ձմերայնոյ ՚ի վր̃ զօրացն ե-թէովպացւոց մնացելոց յերկրի իւրում յոմե-րիտա, եհար և ցրուեաց զնս̃. և հալածումն մեծ յարույց ՚ի վր̃ քրիստոնէից: Այս յետ ըս-պանանելոյ զբազումս ՚ի նոցանէ ՚ի զանազան տեղիս՝ շարժեաց զզօրսն ՚ի վր̃ քաղաքին նեճգրանայ, զի անդ էր մեծ բազմութիւն քրիստոնէից: (4)

Արդ եկեալ հասանէր անդր անօրէնն դով-նաս զնդաւ իւրով՝ օձտել և ապականել զհաւատացեալսն, և բանակեցաւ զքաղաքաւն. և տեսեալ զնշան խաչին կանգնեալ ՚ի քա-ղաքին՝ վառեցաւ յառաւել սրտմտութի̃. Հրա-մայն ետ քարոզ կարդալ ՚ի լուր քաղաքին՝

գոչելով բարձր ձայնիւ՝ հայհոյութե այսպէս. Այժմ որք ոչ հայհոյեսցեն զխաչեալն, և կամ ոչ անարգեսցեն զայս մերձակայ նշանս և անի-ծից փայտս, սպանմամբ սրոյ և հրոյ կորի-ցեն. իսկ որ ոք համախորհուրդ եղիցի ինձ, և ուրասցի զգալիլեացւոց երրորդութիւն, բա-զում պատուոյ արժանի լիցի, և համարձա-կութի հանդիպեսցի իմում թագաւորութեան. և ահաւասիկ հասեալ եմ 'ի վր ձեր ով նեն-գրացիք բազում զօրօք և բարձր բազկաւ:

Իսկ քրիստոնեայքն մեր հռոմանի քաղաքա-պետին խարեթայ պինի ետուն 'ի պաղա-տէն, և ասեն. ով թագաւոր՝ ուսաք պաշ-տել զԱծն ամենակալ, և զբանն նր՝ որով ամ ինչ եղև, և զհոգին սբ կենդանարար ամե-նեցուն, ոչ զբազմածութիւն 'ի ներքս մու-ծանելով, այլ զմի ածութիւն երեք անձնաւո-րութեն դաւանեալ՝ նոյն ինքն միոյ զօրութեն երկրպագեմք. այլ և հարքն ձեր և մեր՝ աբ-րահամ, իսահակ, յակոբ, մովսէս և ահա-րոն, սամուէլ, դաւիթ, և ամ մարգարէքն պաշտէին:

Յայնժամ անօրէն թագաւորն բարկացեալ՝ պարփակեաց շուրջանակի զքաղաքն սաստիկ պաշարմամբ, հնարելով մեքենայս և անօթս պատերազմականս: Այլ իբրև ոչ կարաց խախտել զքաղաքն հիմնացեալ 'ի վր հաւա-տոցն քնի, հրաման ետ ժողովել զամենե-սեան՝ որ յանդս և յագարակս և 'ի բուրաս-տանս քաղաքին. զոմանս սպան, զոմանս 'ի ծառայութի շնորհեաց մեծամեծաց իւրոց.

Եւ

Այլ ծանուցել՝ եթէ ոչ ի՛նչ կարէ տանել զքաղաքն, ապա ակամաւ երդնուլ, և կոչել վկայ զա՟ծ օրհնացն, եթէ ո՛չ վնասեմ ումեք ՚ի քաղաքէդ, և ո՛չ հարկեմ զոք՝ թողուլ ըզ-կրօնս իւր. այլ միայն է հարկատուութ՟ի խնդրեմ կամիմ լինել զձեզ՝ տալով ինձ ամի ամի ոսկի տաղանդս հարիւր և երեսուն (5), և բանալ ինձ զքաղաքդ, զի մտից և տեսից զվայելչութի՟ն ն՟ր ։ Իսկ ժողովուրդն ն՟յ՝ որ ՚ի քաղաքին, իբրև միշտ հլու ս՟բ պատուի-րանաց փրկչին ք՟ի, ասեն ցԹագաւորն. մեք յօրինաց և ՚ի մարգարէից ուսաք և յառա-քելոց՝ հարկս հարկանել և հպատակիլ մար-մնաւոր տ՟րանց, որք ոչն խախտեցեն զմեզ ՚ի ծառայութ՟ենէն ն՟յ. և արդ ահա վստահա-ցեալ և անսասցեալ բանից քոց՝ բանամք ըզ-դրունս քաղաքիս. և մտցես և առցես քեզ զո՛ր և կամիս ինչ ։ Բայց քեզ յայտնի լիցի. եթէ ուխտազանց եղեալ ստես մեզ, է մեր ա՟ծ՝ որ օգնէ մեզ, և զա՟մ չարութ՟ի քո հա-նէ ՚ի գլուխ քո և ՚ի վ՟ր թ՟գրութ՟եդ քո. և մեք զերից մանկանցն զձայնն բարբառեսցուք քեզ, թէ զգլուխ քո ո՛չ պաշտեմք, և հայհո-յութ՟են քում ո՛չ հնազանդիմք. այլև զմե-ռանել շահ վարկանիմք վ՟ս ք՟ի, որ ՚ի վ՟ր մեր մեռաւ և յարեաւ ։

Այս զայս ասացեալ՝ բացին զդուռն քաղա-քին. և եմուտ նենգաւոր Թագաւորն ամե-րիտացւոց ։ Իսկ նախարարաց քաղաքին համա-գերձ խարեթիւ ընդառաջ ելեալ՝ երկիր-պագին նմա ՚ի վ՟ր երկրի ։ Այլ նա հրաման

եւ զամենեսեան ժողովել, և նախ զինչս նց̃ յափշտակել։ Այլ յետ այնորիկ խնդրեաց ցուցանել զպօղոս եպս̃ նց̃. և լուեալ՝ եթէ մեռաւ յառաջ քան զերկուս ամս, ոչ հաւատաց, այլ առաքեաց ուր կայրն պատուական ոսկերք նր̃, և հրամայեաց բերել զնշխարս նր̃, և հրով այրել, և զաճիւնն թիակօք ցանել յօդս։

Այլ 'ի միւսում աւուրն ետ հրաման ամ̃ զօրացն ժողովել փայտ յաճախ, և բոց մեծ առնել արտաքոյ քաղաքին, ուր զի ունիցի տեղի ասպարիսի միոջ. և ժողովեաց զամ̃ քհ̃նայսն նր̃ և զսարկաւագունս և զայլ սպասաւորս ամ̃ եկեղեցւոյն՝ որ 'ի քաղաքին և որ շուրջ զնովաւ. և զայնոսիկ՝ որք ունէին զձև միայնակեցութե̃ և զկուսանսն, և զորս երևէին յեկեղեցին նր̃. և զամենեսեան զնս̃ առանց հարցափորձի հրամայեաց արկանել 'ի հուրն բորբոքեալ, երկեցուցանել և զարհուրեցուցանել կամեցեալ զայլ ևս Յիկ քրիստոնեայսն. և էին՝ որք կատարեցան 'ի ժամուն հրով, ոգիք չորեքհարիւր քսան և եօթն։ (6)

Այլ յետ այնորիկ հրամայեաց երկաթի կապանօք կապել զխարեթաս և զորս Ը̃ նմ̃ էին նախարարք և իշխանք քղ̃քին. և քարոզն աղաղակէր ամբոխացւոց բարբառովն՝ ուրանալ զքս̃ և հրէանալ։ Մինչ ետուն սր̃քն, և ասեն. մի՛ լիցի մեզ ուրանալ զքս̃ ած̃ մեր, և զհաւատն՝ յոր մկրտեցաք։ Իսկ անօրէն հրէայն կարծելով պատրել զնս̃ բանիւք նենգութե̃՝ սկսաւ շարախօսել զհոռոմոց իբրև

զհա-

զհամախոհից հրէից և Նեստորի հրէամիտ աղանդապետի . զի 'ի ժամանակին բազմացեալ էին նեստորականք յազգին յունաց և ասորւոց և ասորեստանեայց . ասէ . Ո՜հ և հոռոմք ծանեան , եթէ մարդ խաչեցին հարքն մեր յեմ` քահանայքն և օրինացն վրդպքն . վն հայհոյելոյ նր զած` տանջեցին և սպանին մարդ , և ոչ ած . Ընդէ՞ր ապա մոլորիք զհետ այնպիսի մարդոյ . մինչ լաւագոյն ի՞նչ իցէք դուք քան զհոռոմս և զնեստորիոս , որք ասեն ցմեզ , թէ ոչ ունիմք զնա ած , այլ` մարգարէ այ : Ո՛չ պահանջեմ` 'ի ձէնջ ո՛վ նենգրացիք ուրանալ զարարիչն երկնի և երկրի , և ոչ պագանել երկիր արեգական լուսնի և աստեղց . այլ զայս միայն կամիմ , զի ուրանայցէք զանուանեալն յն ,
որ հայհոյեաց և կոչեաց զինքն ած :

Իսկ սբ վկայքն ասեն . ոչ ուրանամք զհաւատսն` յոր մկրտեցաք 'ի հայր և յորդի և 'ի հոգին . և մի յերրորդութենէն խոստովանիմք զտր մեր յս քս , որ 'ի քէն հայհոյի , որ է ած մարմնացեալ վն մերոյ փրկութե 'ի վերջին աւուրս 'ի մարիամայ կուսէն . այլ զքեզ ուրանամք զուխտազանցդ այ օրինացն . որ և ստեցեր ճշմարտութենն : Եւ յաւել սբն խարեթաս յայտ առնել , թէ չիք մեր բաժին ընդ Նեստորի , զոր նզովիւք դատապարտեցին դասք ուղղափառաց միաձայնութբ
հոռոմոց` զորոց դուդ չարախօսես : (7)

Ապա այնուհետև թագաւորն քաղցրութբ խօսել ընդ բազմութեն և ողոքական

բանիւք՝ ուրանալ զքեզ և աղաւտիլ յառա-
ջիկայ մահուանէ։ Իսկ նոքա ասեն. Եթէ
հրով ծախես զմեզ, կամ սրով մաշես, մեք
ոչ կարեմք ուրանալ զքեզ. զի մեր կեանք քո
է, և մեռանելն շահ. և էր նոցա առաջնորդ
խոստովանութեան՝ որ 'ի քեզ՝ սէրն խարեթեաս։
Յայնժամ հրամանաւ անօրինին դուժնասայ
ըմբռնեալք եղեն արք և կանայք, ծերք և
երիտասարդք միահամուռ թուով դասս
դասս՝ երկու հազար երեքհարիւր և յիսուն.
և չարահնար զազանն զկանայս և զորդիս
առն իւրաքանչիւր 'ի կապելոց հանդէպ կա-
ցոյց, և դաւաճանօղ բանիւք ողոքանաց և
սպառնալեաց խրատէր զնո՝ ուրանալ զքեզ։
Իսկ նոքա միաբանեալ որդւովքն և կանամբքն
ասեն. քաւ լիցի մեզ առնել զայդ. այլ և
զորդիս և զկանայս և զծնօղս և զինչս ուրա-
նամք, և այնպէս զխաչն քո բարձեալ՝ հե-
տևիմք այնմ, որ վկայեաց առաջի պոնտաց-
ւոյ պիղատոսի, և վասն նորա պատրաստ եմք 'ի
մեռանել. զի նա է ած մեր յս քո որդի այ
կենդանւոյ, և մեք ժողովուրդք նորա եմք, և
խաչի նորա երկրպագանեմք։
Զնոյն և կանայք համարձակ երկրորդէին.
Մի լիցի մեզ ուրանալ զքեզ, և տակաւին կե-
կալ յետ սպանման արանց մերոց։ Նաև ցնոր
թփուորն. և համեալ էք ով անզգամ կանայք
մեռանել վասն կախարդի միոյ մոլորեցուցչի։
Ապա 'ի նոցանէ տասն կին պնդի եսուն և
ասեն ցնա. խցցէ բերան քո, որ խօսի զանա-
րէնութի Ըղէմ թագաւորին անմահի։ Յայն-
ժամ

ժամ բարկացեալ Թագաւորն՝ հրամայեաց
տանել զայն ամ կանայս հանդերձ մատաղե֊
րամ մանկամբք 'ի տեղի ինչ խորխորատ , և
կոտորել սրով , քարշելով զնս դահճացն ըզ֊
ծամաց գլխոցն բռնաբար , ուր նք յօժար
էին ինքնին ընթանալ 'ի նահատակութի .
Իսկ ոչ կուսանքն՝ որք կային 'ի մէջ այլոց
կանանց , իբրև հասին 'ի տեղին , խնդրեցին
յամենեցուն՝ որ ը նս էին , յառաջագոյն մե֊
ռանիլ , ասելով . Թո՛յլ տուք մեզ ո՛վ կանայք
երկիւղածք յմյ ՝ նախ և առաջին մեզ առ֊
նուլ զպսակս յմյ վկայութե , զի զկնիք կու֊
սութե և զձև ստացեալ ունիմք . գիտէք իսկ՝
զի և 'ի ժամ հաղորդելոյ նք խորհրդոյն՝ յա֊
ռաջ զմեզ կոչէին 'ի հաղորդիլ , և ապա զձեզ
զժողովրդականսդ . և այժմ եւս մեզ պա՛րտ
է քան զձեզ և զարգն ձեր յառաջ ճաշակել
զբաժակս մարտիրոսութե : Իսկ նք պնդինի
ետուն և ասեն . ո՛չ այդպէս , այլ մն զի կա֊
նայք եմք մարտիրոսաց և մարք , մեք յա֊
ռաջ մեռանիմք . որպ զի մի տեսցուք զմահ
արանց և որդւոց մերոց : Եւ այսպէս իւրա֊
քանչիւր 'ի նոցանէ աղաչէր զդահիճսն՝ վա֊
ղագոյն մահ ածել 'ի վր նց . և նոյնժամայն
գլխատեցան ամ կանայքն՝ կարդալով զա֊
նունն հօր և որդւոյ և հոգւոյն սբյ : Նոյնպէս
և տղայք նց ը նս՝ ուստերք և դստերք , որք
ըս օրինակի մարցն ձայն տային դահճաց նա֊
հատակել և զինքեանս : Յայնժամ ասէ Թա֊
գաւորն ցմեծամեծս իւր . տեսանէ՞ք , զի՛արդ
ազդեցութի մոլորութե կարաց տալ կախարդն

այն խաչեալ յանմ՞ :

Յետ այսորիկ ըմբռնեալ եղև և այլք ոմնկին մի երևելի յամ՞ քաղաքին . զոր հրամայեաց բռնաւորն շքով և պատուով ածել առաջի իւր , կարծեցեալ զնա բանիւք և խոստմամբք պատրել . և իբրև ոչինչ օգտեցաւ , ետ հրամանն պահել զնա 'ի բանտի երկու դստերօքն իւրովք . երեթայլին 'ի միասին տուրեալք յոյժ և նեղեալք , զի ոչ սպանանն ըն առաջին 'նը կամայն : Յւ յաւուրն երրորդի առաքեաց թագաւորն զոմն իշխան առ նա 'ի բանտն՝ ասել . թէ հաւանեսցիս ինձ , և ուրասցիս զխաչեալն քո , կեցցէ անձն քո և դստերաց քոց , և գտջիք շնորհս յինէն . իսկ եթէ ոչ հաւանեսջիք ինձ , գիտասջիք՝ զի չարաչար փախձանելոց էք յինէն : Իսկ նա իբրև լուաւ զայս , ասէ հեգնելով . տարէք զիս առ թագաւորն . և ես հաւանիմ նմա, զինչ և ասիցէ : Յայնժամ սպասաւորք բռնաւորին ածին զնա հոխանաւոր դեսպակաւ ընդ իւրումն պատուոյ . քանզի ո՛չ երբէք տեսեալ էր նը զարեգակն 'ի բացի , բայց միայն զնշոյլս լուսոյ ըն պատուհանն . և եկն եկաց երկու դստերօքն առաջի գազանաբարոյ թգրին : Ասէ ցնա թգւորն . կին դու մի՛ մոլորեցուսցեն զքեզ կախարդութիւք խաչելոյն , և մի՛ կամեսցիս կորնչել ընդ մոլորութե քաղաքացեացս քոց սպանելոց . քանզի դու պատուական և բարձրազգի ես . մանաւանդ վն պատուոյ քո և ազգի և ընչից , և վասն քոյին իսկ գեղոյ և դստերաց քոց եհաս 'ի լսելիս իմ , եթէ ո՛չ

էր

երբեք երեւեցար առն՝ բայց յառնել քումմէ. արդ հաւանեա՛ ինձ, եւ եղիցիս պատուեալ յինէն եւ 'ի Թագուհւոյն պալատին։ Իսկ նա կնոջն պղծոյ տուեալ ասէ. ո՛չ պատուիմ 'ի մարդոյ՝ ուխտազանց եղեալ յԱյ, եւ ո՛չ ընկեմ ընդ հայհոյչի՝ որ հարկէ զամենեսեան հայհոյել, եւ զԱծ կախարդ կոչել։

Յայնժամ հրամայեաց անօրէնն մերկացուցանել զգլուխ նորա եւ զդստերաց նորա, եւ հերարձակս կացուցանել յանդիման ամենեցուն, Իսկ նոյն դարձեալ 'ի Թիկունս կոյս, եւ տեսեալ զբազմութիւն կանանցն յամ ազգէ՝ որք լային եւ ողբային, ասէ. կանայք զգաստք եւ համահաւատք իմ, եւ որ 'ի ձեզ հրէայք են կմ հեթանոսք, լո՛ւարո՛ւք բանից իմոց. դուք ձեզէն գիտէք, զի ես քրիստոնեայ եմ եւ ամ ազգն իմ. եւ զի բազում ստացուա՛ծք են իմ՝ ոսկւոյ եւ արծաթոյ եւ պղնձեաց, եւ ծառայից եւ աղախնեայց, եւ անդոց եւ անասնոց. եւ ի՞նչ կարօտ ոչ եմ. եւ եթէ կամեցեալ էի Է առն զուգիլ յետ մահուա՛ն կենակցին իմոյ, ոչ ոք զմանկութ իմով ծաղր առնէր իբրեւ զանօրինեցելով. Քզի վդպութ նըյ առաքելոյն հրամայէ ամուսնանալ որինօք՝ քան ջեռնուլ։ Այլ ահա ասեմ ձեզ. յայսմ աւուր կան իմ աւելի քան զտասն հազար ոսկւոյ եւ արծաթոյ կնքելոյ. եւ գիտէք՝ եթէ ոչ է կնոջ ուրախութի, բայց յաւուր հարսանեաց իւրոց. յայնմ օրէ եւ առ յապա նեղութիք եւ վիշտք եւ տրտմութիք եւ հեծութիք են. մանաւանդ յորժամ ծնանին մանա

կունս,

կունս, և յորժամ տեսանեմ զնոսա վախճանեալս։ Որդ այսուհետև զձատեղ աղաւթիմ յայնցանէ, և լինիմ յուրախութիւն իբրև յաւուրս հարսանեաց իմոց. և ահաւասիկ երկու դստերքս իմ այսօրիկ կուսանք գոլով՝ լծակցեղ զուգիմք 'ի միաւին 'ի ձեռն վկայութեանս այսօրիկ՝ ճշմարիտ փեսային քՍի որդւոյն այ հարսն. որ պատրաստեաց առագաստ կուսանաց բարձելոց զիւղն հանդերձ ջահիւք։ Այլ գիտէք, եթէ այս երկրորդ անդամ տեսիք զերեսս իմ դուք մերկացեալ՝ յետ հարսանեաց իմոց յապականացու և յանժամանակեայ կեանս. իսկ այժմ 'ի հոգևոր և 'ի յաւիտենական հարսանիս ցանկամ մտանել, պահելով զանապականութիւն կուսութե դստերաց իմոց, և զանձին իմոյ զսրբութիւն՝ բաց 'ի զուգակցէն իմոյ քի այ։ Վկայ է ինձ ած, զի ոչ կարացէ այլոս այս պատրել զմեզ ուրանալ զքՍ. իսկ ոսկի իմ և արծաթ վկայեն ինձ 'ի հանդերձեղէն, զի ոչ սիրեցի զնա, այլ բաժանեցի զայն՝ ում պիտոյ լինէր։

Իբրև լուաւ թագաւորն զայս ամ, ասէ ցնա. ահա որչափ ինչ երկայնամտեցի քեզ, և խօսեցար որչափ կամեցար ը բազումս՝ որ կան արտասուճալից 'ի վր քո. գոնեա յետոյ ուրեմն և դու ցաւակից քեզ եղեալ՝ հաւանեացիս ինձ։ Ասէ ցնա սբ կինն. խրատ տուր ինձ ով թագաւոր՝ ուրանալ զքՍ, և կեալ զաժամանակեայս. այլ ես երկնչիմ 'ի հրոյն յաւիտենից և յանքուն որդանցն և յամօթոյն յաւիտենից ուրացութեան. լաւագոյն է մեզ

մե-

մեռանել՝ քան քեզ հաւանել ։ Այլ 'ի Թէ-
կունոս կոյս դարձեալ՝ արտասուեաց ը̄ կու-
րութեն բանաւորին , այսպէս ասելով . Մի՛ լի-
ցի մեզ ուրանալ զՔս որդի այ կենդանւոյ ,
որ նստի 'ի վր քերովբէից , և փառաբանի 'ի
սրովբէից ։

Յայնժամ Թագաւորն բարկացեալ՝ ասէ .
Ով կին դու անիծեալ հայհոյես ։ Իսկ կրսեր
դուստրն՝ որ էր երկոտասան ամաց (8) , զայ-
րագնեալ ելից զբերան իւր խորխով , և մերձ
եղեալ եթուք յերեսս անօրինին ։ Յայնժամ
որք բարձեալ ունէին մերկ զսուսերսն առա-
ջի Թագաւորին , հարին զգլուխ դստերաց
նոյն . և հրամայեաց Թագաւորն ժողովել
յարենէ նց 'ի ձեռս , և մատուցանել բանի
'ի բերան մօր նց ։ Իսկ նա զճաշակն առեալ՝
ասաց . գոհանամ զքէն քս որդի այ կենդան-
ւոյ , զի արժանի արարեր զիս ճաշակել 'ի զա-
հից պատուական և անարատ դստերաց իմոց ։
Ապա հրամայեաց և զնա գլխատել . և երդ-
մամբ ասէր անօրէնն ցմեծամեծս իւր , թէ
յոյժ տրտմեալ է անձն իմ վն կնոջս այսորիկ
և սորին դստերացս . զի ոչ երբէք տեսի այս-
պիսի նկարագիր պատկերի . և ուստի՞ սեր-
մանեցաւ անզգամութիւն քրիստոնէից՝ ոչ գի-
տեմ , զի մոլորին 'ի մարդ բռնամահ , որ կա-
չէր զինքն այ ։

Այլ 'ի միւսում աւուրն ետ հրամանն ածել
զառաջեաւ զմրն խարեթաս հանդերձ այլ
եօ կապելովք , որոց էր թիւ երեք հարիւր
և քառասուն (9) . և ասէ ցնա . Քեզ ասեմ
խա-

խարեւթեաւ՝ ժամու եւ հնացեալ աւուրբք չա-
րաւք , ընդէ՞ր ոչ նմանեցար հօրն քում՝ որ էր
իշխան քաղաքիս այսորիկ . այլ կամեցար բռ-
նաւոր միահեծան ունել զնենգրան քաղաք ,
յուսացեալ եւ վստահացեալ 'ի մարդ կա-
խարդ՝ որ կոչեաց զինքն ած̄ . եւ հնարեցար
փախչել 'ի ձեռաց իմոց . խնայեա՛ այսուհե-
տեւ 'ի ծերութիդ քո , եւ գթա՛ յալիս քո ոպ̄
ծեր պատուական . եւ լե՛ր պատճառ կենաց
քոց եւ որոց ընդ քեզ են , եւ ուրացի՛ր զանուա-
նեալն քս̄ . ապաթէ ոչ՝ դժնդակ մահու մեռա-
ցիս ոպ̄ զառաջինսն . զի ոչ կարաց որդին մա-
րիամու ապրեցուցանել զսպանեալսն : Յայն
ժամ փառաւորեալն խարեւթեաւ պնդի եւ ,
եւ ասէ ցթգ̄րն . Ստուգութե̄ 'ի տրտմութէ
մեծի եմ վն̄ քրիստոնէիցս՝ որ 'ի քաղաքիս
են . Քզի ասացի նց̄՝ ո՛չ բանալ քեզ զդուռն
քաղաքիս , եւ ո՛չ անսացին ինձ . եւ դարձեալ
ետու նց̄ այլ խրատ՝ ելանել պատերազմել
ընդ քեզ 'ի վն̄ ժողովրդեանն ոյ̄ , եւ ո՛չ լուա՛ն
ինձ . վն̄ զի վստահ էի ես 'ի թագաւորն իմ
քս̄ , որ յաղթէր եւ հարկանէր զքեզ՝ որ ըղ-
տասն բիւրդ ունիս , ոպ̄ գեդէոնն այն երեք
հարիւրովքն եւ բանիւ՛ քն̄ի . բայց արդ կամքն
ոյ̄ կատարեցին . զի գիտեմք՝ որ վն̄ մեղաց
մերոց կրեմք զմատնիլն 'ի ձեռս քո , հաւա-
տալով քո սուտ երդմանդ . քանզի ո՛չ երբէք
ել ճշմարտութի 'ի բերանոյ քո :

Ասէ ցնա աթոռակալ թգ̄րին . այդպէ՞ս ա-
տուցանեն գիրք քրիստոնէից զձեզ՝ թշնամա-
նել զթագաւորս . ո՞չ գիտէք՝ եթէ թագաւորք
երբայ-

եբրայեցւոց օծեալք են ։ Նաև ցնա Տէրն խա-
րեթաս ․ յաւէտ եւս ով Տէր պատրիկ զասա-
ցեղն առ եղիա յաքայաբ թշփրէն իէլի, թէ
գտի զքեզ խանգարիչդ իէլի ․ առ որ պխնել
ասաց ․ ոչ ես, այլ դու և տուն հօր քո ․ զի
ոչ ոք մեղանչէ յանդիմանելով զթգւոր անօ-
րինեալ ․ քանզի դա ոչ պատկառեաց յասե-
լոյ ուրանալ զբանն այ, որով ամն եղև որ ինչ
յերկինս և որ ինչ յերկրի ․ որոյ տեսեալ
զստեղծուածն իւր պատրեալ յօձէն սատա-
նայէ՝ ոչ անտես արար, այլ ետ օրէնս պա-
տուիրանաց՝ խրատել զամ մարդ ․ զի հրա-
ժարելով հեռասցին յամ չարեաց ․ ոմ զինէ-
արդարութիւն խրատեաց, և դարձեալ ողոր-
մութիւն անդրէն կոչեաց 'ի բաբելոնէ ։ Նաև
վն զի ապականեցաւ գեղեցիկ պատկերն յօ-
րինեալ ՟Ա պատկերի կերպարանաց ստեղծու-
զին՝ յարհամարհանաց պատուիրանին այ,
ինքն ածորդին իջեալ կամաւ հօր՝ իւրացոյց
զանկեալն, և զմեղսն յիւր մարմինն խաչեաց,
պատարագեալ այ հօր զառեցեալն 'ի մէնջ
վն ամ մարդկան ազգի ։ (10)

Նաև արդ՝ որոյ զայսպիսի բարերարութիւն վն
մերոյ փրկութե արարեալ է, զիա՞րդ ուրա-
ցուք զնա ․ կամ զիա՞րդ թողեալ զճշմարտու-
թիւն՝ զհետ երթիցուք ստուե ուխտադրուժ
արքայիդ, որ երդուեալ մեզ բանս՝ ինչ ոչ պա-
հեցեր ։ Տեսի թագաւորս և ազգապետս մե-
րագոյն քան զքեզ 'ի հնդիկս և 'ի պարսս և
յեթովպիա ․ և ոչ այսպիսի ինչ գտաւ 'ի նս,
այլ բան նց ճշմարտապէս էր ։ Բայց ես ոչ
հե-

հեռանամ յանծայրին խոստովանութենէս, այլ տուգապէս երանեմ զծերութիւն իմ անցեալ քան զիննսուն և հինգ ամ, զի արժանի արար զիս Տէր յաՏ ձգնիլ և մեռանել վասն անուան իւրոյ. արդ այժմ գիտացի՝ թէ սիրէ զիս Տէր: Մանզի բազումք եղեն ամք կենաց իմոց յ[illegible]իս յայսմիկ, և ծնայ որդիս, և տեսի զորդիս որդւոց իմոց մինչև 'ի չորրորդ ազգս, և այժմ ուրախ եմ ով Թագաւոր, զի ծերութիւն իմ կատարի ընդ վկայսն. և վստահ եմ, թէ ոչ պակասեացի յիշատակ իմ 'ի քաղաքէս յայսմանէ: Հաւատամ ինձ, զի ոչ այգի յօտեալ 'ի ժամանակս գարնայնոյ՝ առաւել պտղաբերէ, այնպէս բազմանայ այսուհետև ժողովուրդ 'ի քաղաքիս յայսմիկ քրիստոնէից և յանուն Տն ումերիտացւոց. քանզի ահա առաջի Տն Այ ասեմ քեզ. ունի բարձրանալ եկեղեցին այրեցեալ 'ի քէն, և կայցէ թագաւորութիւն այլ յ[illegible]իս յայսմիկ, և կա[illegible]ին զաս քրիստոնէայք. իսկ քո թագաւորութիւնդ վաղվաղակի ընկլնեսցի, և քարոզութիւն չար կրօնից քոց խափանեսցի:

Այլ դարձեալ 'ի Թիկունս կոյս՝ աղաղակեաց ձայնիւ մեծաւ, և ասէ ցնոսա վկայսն. լուարուք եղբարք զասացեալս յինէն առ Թագաւորս: Իսկ նոքա միաբան ասացին. լուաք ով հայր պատուական: Այլ դարձեալ ասէ ցնոսա. զիարդ թուի ձեզ վկայաբանութիւնս այս. մի ոք 'ի ձէնջ յերկուանցեալ 'ի սպառնալեաց անօրինին այսորիկ, և մեկնեալ որոշեսցի: Իսկ նոքին ասացին. զօրացիր հայր մեր, զօ-

րա

բացեր 'ի ձգնութեան յայսմիկ․ քանզի ամե-
նեքեան մեք ընդ քեզ պատրաստ եմք 'ի մեռա-
նել, և ոչ որոշիմք 'ի քէն ։

Իսկ Տէրն խարեթաւս ասաց․ լուարուք քրիս-
տոնեայք, հրեայք և հեթանոսք․ որ ոք յիմ
ազգականաց կամ 'ի մերձաւորաց ուրասցի
զքեզ, ուրանայ զնա և այն՝ որ դատելոց է
զկենդանիս և զմեռեալս․ և ոչ է իմ մասն
և հաղորդութի ընդ նմա յաւուր յարութե․
Կամ է իմ, և հրամայեմ, տալ զամ ինչս իմ
սրբոյ եկեղեցւոյն, որ յետ մահուան իմոյ
հանդերձեալ է շինիլ․ իսկ եթէ ոք յորդւոց
իմոց կամ յազգականաց մնասցէ կենդանի՝
կալով յամբիծ հաւատս, և ոչ ուրասցի, ե-
ղիցի իմ ժառանգորդ, և զխոստասցէ՝ զի երիս
գեօղս լաւագոյնս քան զայլսն կամիմ տալ
սրբոյ եկեղեցւոյն ։

Այս դարձեալ ծերոյն Տր ասէ ցթգրն․ գովե-
ցի զքեզ միայն յայսմ, զի զհին թագաւո-
րացն և զազգապետացն զաւանդութիւն պա-
հեցեր՝ երկայնամտել, և ոչ հատեր զբանս
իմ(11) ։ Բայց սակայն ահա լուր զբանս իմ,
և մի յաւելցես հարցանել զմեզ, զի ես հաս
ժամ կատարման մերոյ ։ Ամ որ ուրանայ
զայս վկայութիւնս, ուրացեալ լիցի յարարչէն
ամյ, և կորիցէ յերկրէն կենդանեաց․ և որ
ուրանայ զխաչն քո, մերժեսցի 'ի յաւիտե-
նից բարեացն․ և որ հաղորդի քեզ ով թա-
գաւոր, և համախոհից քոց հրէից, եղիցի
ընդ դադան և աբիրոն․ որոց բացեալ երկիր՝
եկուլ զնս ։ Այս ահա ասեմ քեզ, զի ընդ 'ի
բազ-

բազմելն իմ ը̅ այսպիսի պատուհական եղ-
բարս , ինձ նախ և առաջին տուեալ լինէր
բաժակն , նոյնգունակ և այժմ զբաժակ մար-
տիւրոսութե ես նախ ըմպեմ յօժարութ̅բ ․ և
կնքեմ այսուհետև և զժողովուրդս՝ որ ընդ
իս , նշանաւ ս̅բ խաչին՝ յանուն հօր և որդւոյ
և հոգւոյն ս̅բյ ։ Ըստ նմին և իւրաքանչիւր
ոք 'ի ս̅բցն կնքեաց զինքն նշանաւ խաչի ։

Դարձեալ շարժեաց երանելին խարեթաս
զգլուխ իւր խաչատեսակ 'ի չորեսին կող-
մանս ․ վ̅ն զի ձեռք ն̅ր կապեալ էին յետս
կոյս ․ աղաղակեաց և ասէ ․ ընդունելի լիցին
հոգիք մեր՝ ոչ̅ իւղ արկեալ 'ի գլուխ քահա-
նայից ն̅յ , և արիւն մեր ոչ̅ պատարագ օրհ-
նութե 'ի վ̅ր եղջերաց սեղանոյն ։ Եւ դար-
ձեալ աղաղակեցին բազմութ̅բ ․ հայր պատ-
ուհական և նախամարտիկ ձգնութե մերոյ ,
ահա հայրապետն աբրահամ մնայ քեզ ․ մի
լիցի մեզ մնալ յետ մահուան քո ։

Օ այս ա̅մ իբրև ետես ամպարիշտ և անօ-
րէն թագաւորն , ծանեաւ՝ եթէ անկարելի
է զն̅ս հաւանեցուցանել ․ հրամայեաց տա-
նել զն̅ս 'ի ձորն երկանց , կմ̅ 'ի հեղեղատն
ոտիաս կոչեցեալ , ուր խորխորատն փորեցաւ
յառաջագոյն վկայիցն սպանելոց ․ և զգլուխ
ն̅ց հատանել և յերկիր ընկենուլ , և զնշխարս
ն̅ց տալ 'ի կերակուր թռչնոց երկնից և գա-
զանաց երկրի ։

Արդ իբրև հասին ս̅բ վկայքն 'ի տեղի կա-
տարմանն , համբարձեալ 'ի բարձունս զաչս
սրտիցն՝ գոչելով ասէին ․ Տ̅ն ք̅ս հասիր մեզ

յօգնականութիւն ։ Ո՛ն քն, եղիցի՛ արիւն մեր 'ի թողութիւն և 'ի հանգիստ հալածելոցս և սպանելոցս յամպարշտէս ։ Ո՛ն քն, ահա խոստովանեցաք մեք զքեզ առաջի մարդկան, խոստովանեա՛ց և դու զմեզ առաջի ընտրելոց քոց, և նոցա հրեշտակաց ։ Ո՛ն քն բարձրացո՛ զտաճար քո այրեցեալ և կործանեալ յամպարշտէս ։ Ո՛ն քն ողորմեա՛ ոյնոցիկ, որք յիշեն զմեզ ․ և օրհնեա՛ զամենեսեան՝ որք պատուէն զվկայութիւս մեր, պարգևելով նցա զթողութի մեղաց ։ Ո՛ն քն բարձրացո՛ զեղջիւր քրիստոնէից, և զթագաւորս հռովմայեցւոց և զեթեովպացւոց ․ և զթշնամութիւնս զայս ամբարտացւոց տո՛ւր քրիստոնէից, որք արասցեն զկամս քո ։ Ո՛ն քն հա՛ր զանօրէնս զայս, և խլեա՛ զարմատ սորա՝ որպէս զփարաւովնին և զամաղեկայն և զսենհովին ։ Ո՛ն քն արժանի՛ արա զմեզ հայել 'ի տեսիլ փառաց քոց, և լսել աւետարանութե՛ 'ի նոցա հրեշտակաց զվաղվաղակի անկումն անօրինիս և զսատակումն ընդիմանն ամպարշտութեն հրէից ։

Եւ յետ աղօթելոյ զայս ՟ամ՝ աղաղակեցին առ միմեանս ասելով․ խաղաղութիւն ընդ ձեզ 'ի համբոյր սրբութե ։ Եւ նոքն խարեթաս ասէ ցնն․ խաղաղութիւն տուեալ առ 'ի խաչելոյն նոցա աշակերտաց իւրոց եղիցի՛ ընդ ձեզ ամենեսին եղբարք, ամէն ։ Եւ խոնարհեցուցեալ զմբ գլուխն՝ մատոյց սրոյ յառաջադոյն զպարանոց իւր ․ և ՟ամ վկայքն ծունր եդին ընդ նմ․ բայց չորեքին 'ի նոցանէ առըն-

Թեր կալով զՄբ. ծերունւոյն խարեթայ ( որ ոչ կարէր 'ի ծունկս կալ առ ծերութեն ), 'ի վեր բառնայրն զբազուկս նր, զի մեծին մովսեսի 'ի լերինն (12). յայնժամ մատուցել մի ոմն 'ի զինուորացն՝ եհատ զՄբ. գլուխ նր : Իսկ բազմութի Մբ. նահատակացն՝ որ շուրջն կային, ընթացան և առին զՄբ. արիւն խարեթայ, և օծանէին զմարմինս իւրեանց. մինչև զարմանալ դահճացն և արտասուել : Իսկ ապա ԾՄ Մբցն խոնարհեցուցել զպարանոցս իւրեանց՝ կատարեցան 'ի Տր. յամսեանն հիւպերպերիտոսի, որ օր տասն էր, յերկրորդում ընդիկտիոնի. այն է ամ Տն 524, յերկրորդ ամի հնգետասաներորդ ընդիկտիոնին յունաց, և 'ի Թուին անտիոքացւոց կմ սելևկիացւոց 835. որ և էր եօթներորդ կամ հինգերորդ ամ յուստինոսի կայսեր Թրակացւոյ :

Այն մի 'ի քրիստոնէից՝ ունելով Է կնքեան որդի մի ամաց չորից կմ հնգից, կացեալ 'ի կողմանէն՝ միտ եդեալ տեսանէր, Թէ որպէս առնուին Մբքն և օծանէին զերեսս իւրեանց արեամբ Մբյն խարեթայ. ընթացեալ առ նա՝ եառ յարենէն, եօծ զինքն և զորդին իւր : աղաղակեաց ասելով. Եղիցի Թագաւորդ եբրայեցւոց ոչ փարաւոն : Իսկ և իսկ կալեալ զնա ածին առ Թագաւորն. և ետ հրաման խորխորատ առնել, և կուտել փայտ, և ածել 'ի նա ձէթ և ծծումբ, և լուցանել 'ի նա հուր. և արարին զայն հնոց մեծ, զի ընկեսցեն անդր զկինն :

Իւ

Իսկ մինչդեռ կապեալ էին զնք վկայուհին ,
տեսեալ տղայն զԹագաւորն նստեալ 'ի բարձ-
րագահ տեղւոջ , փութանակի ընթացաւ
առ նա , և պատեցաւ զոտիւք նր՝ համբուրե-
լով զնա , որպ թէ միջնորդել կամեցեալ վս
ազատութեն մօր իւրոյ : Իսկ Թգրն ձգեալ
զձեռն իւր՝ ընկալաւ զնա 'ի գիրկս իւր , և
գգուելով ասէ ցնա . ասա մանուկ դու՝ զի՞նչ
լաւ է քեզ . գնա՞լ , թէ մնալ առ իս , և լի-
նել ինձ յորդեգիր : Իսկ մանուկն ասէ . ընդ
մօրն իմում լաւ է ինձ . վս զի ասաց ցիս ,
եկ որդեակ և մարտիրոսանամք՝ որպ և ամե-
նեքեան . և ասեմ ցնա . մայր իմ զի՞նչ է
մարտիրոսանալն . և նա ասէ . մեռանել և
դարձեալ կենդանանալ : Իսկ 'ի սաստել Թա-
գաւորին ցնա՝ ասէ մանուկն . թո՛յլ տուր
ինձ երթալ առ ծնօղն իմ . քզի տեսանեմ
զի կապեն զնա . և աղաղակեաց ասելով ,
մայր մայր : Ասէ ցնա Թագաւորն . Ճանա-
չե՞ս զանուանեալն քո . Պղինի եմ . այո :
Ասէ Թգրն . ուստի՞ ճանաչես զնա : Ասէ
ցնա մանուկն . ճշմարտապս համապազ տե-
սանէի յեկեղեցւոջ , յորժամ երթայի ընդ մօր
իմում . և եթէ կամիս , եկ ընդ իս , և ցուցից
քեզ զնա (13) : Դարձեալ ասէ ցնա Թգրն .
զի՞ս սիրես , թէ զոր կոչեսն քո : Ասէ մա-
նուկն . ստուգապէս զքո :
Յաւել հարցանել Թգրն . զո՞ սիրես . զի՞ս ;
թէ զմայրն քո : Ասէ մանուկն . զմայրն իմ :
Ասէ ցնա Թգրն . և վս էր թողեր զմայրն
քո , և եկիր առ իս համբուրել զոտս իմ :

Մանուկն ասէ. կարծէի զքեզ քրիստոնեայ, և եկի աղաչել՝ զի արձակեսցես զմայրն իմ։ Եւ նա ասէ. ես հրէայ եմ. այլ եթէ կամիս մնալ առ իս, տամ քեզ ընկոյզ և նուշ և թուզ, և այլ զինչ և կամիս։ Ասէ մանուկն. թո՛ղ զիս՝ երթամ առ մայրն իմ. ո՛չ առնում ինչ ՚ի քէն, զի հրէայ ես։ Ասէ թշ՟րն ցմեծամեծսն իւր. տեսէ՛ք զչարարուճեսս, զի-ա՞րդ իմաստութ՟ տայ պ՟տնի։

Յայնժամ ասէ մի ո՟մն ՚ի մերձակայից թագաւորին ցմանուկն. եկ ը՟ իս, և տանիմ զքեզ առ թագուհին։ Իսկ նա ոչ ետ նմա պ՟տնի. այլ իբրև ետես ՚ի հեռաստանէ, եթէ ընկեցաւ մայր նո՟ ՚ի հուրն, լայր և ասէր. զմայրն իմ կամիմ տեսանել. և բռնազբօսեալ հնարէր յառնել և գնալ. իսկ թագաւորն արգելոյր զնա. յայնժամ բուռն եհար զբարձից թշ՟րին, և եխած զնա. իսկ նա ետ զնա միում ՚ի մեծամեծաց իւրոց՝ ասելով ցնա. ա՛ռ զդա և սնո՛, և ուսո՛ հրէանալ։ Արդ մինչդեռ առեալ տանէր այրն զմանուկն՝ կալեալ զձեռանէ նո՟, պատահեաց այլոց իշխանաց, և սկսաւ պատմել նց՟ զբանս՝ զոր խօսեցաւ մանուկն, և թէ որպէս եխած զթշ՟րն։ Եւ զի ոչինչ հեռի կային ՚ի հնոցէն, յանկանիլ նո՟ զբանիւք և ՚ի թողացուցանել զձեռս մանկանն, դիմեաց մանուկն երջանիկ, և ընկէց վազվաղակի զինքն ՚ի հուրն. և այնպէս կատարեցաւ ը՟ մօրն իւրում։ Իսկ թի՛ համօրէն նահատակելոց յաւուրսն յայնոսիկ ՚ի քաղաքի և արտաքոյ՝ եղեն աւելի

քան

քան զբիւր մի . ըստ յայսմաւուրաց ժ՟ռ ոգիք
յՇականաց , և մին անձինք յեկեղեցական-
նաց . իսկ 'ի տօնացուցին յիշին տասն հազար
և երկերիւր վկայք ը՟ս հանրապէս : (14)

Յայնժամ իշխանքն մեծամեծօքն անկանէին
առաջի թագաւորին՝ խնդրելով զդիւրութի՟ն
մնացելոց քրիստոնէիցն : Յանձն էառ բռնա-
ւորն . բայց ժողովեալ զմանկունս քաղաքին
և զագարակացն՝ յազատաց և 'ի ծառայից ,
յերկրագործաց և յարուեստականաց , 'ի
հնգետասան ամաց 'ի խոնարհ՝ զա՟մ արու և
էգ 'ի քրիստոնէիցն , որոց էր թիւն հազար
երկերիւր իննսուն և եօթն , բաժանեաց զն՟ս
և շնորհեաց 'ի ծառայութի՟ն ա՟մ մեծամեծացն
իւրոց . և ինքն գնաց 'ի քաղաքն իւր 'ի փա-
ռէ : Իսկ եղև յաւուրսն յայնոսիկ երևոյթ
հրատեսիլ գիշերային յօդս 'ի հիւսիսա-
կողմն , զոր բնախօսք հիւսիսային արշալոյս
կոչեն , որ յերկարէր յերեկորեայ մինչև 'ի
մէջ գիշերի զաւուրս քառասուն . արդ այս
տեսիլ թէպէտև բնաւորական՝ ունէր յայն-
ժամ և զգործ 'ի վեր քան զբնութի՟ն , զի իբրև
զհնոց ջերմ հեղեղ 'ի վ՟ր երկրի՝ յահ և յեր-
կիւղ և 'ի յանդիմանութի՟ն լինէր հրէից , որք
պատերազմէին ընդ ն՟ս . և հաւատացելոցն
տեսեալ՝ տային օրհնութի՟ն ա՟յ , ասէ վկայա-
բանն Ճառընտրաց մերոց իբրև ականա-
տես (15) . յոր յաւելու մետափրաստէս , թէ
ապա և հուր 'ի վերուստ տեղաց յերկիր , որ
էր հարուած կատարեալ . սակայն և ոչ այն-
պէս խրատեցաւ ամպարշտութի՟ն հրէից . կ՟մ

ըստ աւելոյ յայսմաւուրաց՝ յետ գիշերային ծրեւութին ը՟ առաւօտն հուրն իբրեւ զփողի հնչէր 'ի վ՟ր երկրին ։ Բայց ըստ այլով եւս ա- ըննակաւ էառ զվրէժ 'ի հրեից, եւ բարձրա- ցոյց զքրիստոնեայս ։

• Քանզի յորժամ դարձ արար անօրէնն դով- նաս 'ի քաղաք Թ՟գրութե իւրոյ 'ի փառէ, յաւել գրգռել 'ի ձեռն դեսպանաց իւրոց եւ զարքայն պարսից զկաւատ ը՟դէմ քրիստո- նէից առ հասարակ, նոյնպէս եւ զալամանդին կմ՟ զալամունդար իշխանն սարակինոսաց՝ որ էին ը՟ ձեռամբ պարսից, խոստանալով նոցա կաշառս բազումս՝ եթէ յարուսցեն հալա- ծանս 'ի վ՟ր հաւատացելոց ք՟ի ։ Նարեւ լու- եղեւ այս առ յուստինոս կայսր, յղեաց զաբ- րահամ երէց գիտնաւոր առ ալամանդին՝ հաստել դաշն միաբանութե ը՟ սարակինո- սաց եղելոց 'ի մասին յունաց ։ 'Ի հասանել սորա առ իշխանն՝ եհաս անդր եւ 'ի կողմա- նէ արքային պարսից սահակ երէց կմ՟ եպիսա- պետ, որ էր գլուխ քրիստոնէից ուղղափա- ռաց եղելոց 'ի պարսս ։ Եկն եւ շիղա եպ՟ս նեստորականաց 'ի դիմաց դոմինասայ հրէի ։ եւ 'ի պայքար մտեալ սորա ը՟ ուղղափառս՝ հնարէր հրէական վ՟պութ ցուցանել զք՟ս սոսկ մարդ ։ այլ յաղթահարեալ յուղղափա- ռաց՝ դարձաւ յետս ամօթով ։ Իսկ աբրա- համ յետ վճարելոյ զգործն՝ յոր եկեալ էր, դարձաւ առ կայսրն, եւ պատմեաց նմ՟ զանցս քրիստոնէից յամերիտս յերեւաց դոմինասայ հրէի ։

Յայնժամ գրեաց յուստինիանոս առ եփրեմ ա-
ղեքսանդրիոյ՝ յորդորել զելեսբահան արքայ
եթէովպացւոց՝ առնուլ զվրէժ արեան ս՟րբց
խարեթեանց 'ի տիրասպան ազգէն հրէից ։
Բայց ելեսբահան վաղագոյն ևս պատրաս-
տեալ էր 'ի նոյն՝ վառեալ 'ի նախանձն ա՟յ .
վ՟րյ ժողովեալ զօրս յիւրոցն և յօտարաց Ճ և
իԵ, խաղաց ը՟դէմ դոմինասայ ը՟ ծով և ընդ
ցամաք ։ Այլ քանզի զառաջինն ճախողակի
իրքն պատահեցին, մինչև ծախիլ ժ՟ե հազար
արանց 'ի զօրաց նորա յամայի և յանջրդի
վայրս, ապա դիմեալ ելեսբահանայ առ ա՟ծ՝
եառ յայտնութի՟ն 'ի կրօնաւորէ ումեմնէ ս՟բյ
վ՟ս յաղթութե՟ն . և յետ բազում աշխատու-
թե՟ց եհար զհրէայս 'ի հարուա՛ծս մեծա-
մեծս 'ի ծովու և 'ի ցամաքի . վ՟ն զի եղեն և
յայտնի սքանչելիք 'ի տ՟նէ, և երևումն հր-
րեշտակաց յօգնականութի՟ն ք՟ստական բանա-
կին . և լսելի եղև ձայն 'ի բարձանց՝ որ ա-
սէր երիցս . գա՛բրիէլ, գա՛բրիէլ, գա՛բրիէլ ։
Մինչև յետ ա՟մի ինքնին ելեսբահան ձեռամբ
իւրով սպան զանօրէնն դոմնաս . և առեալ
զոմերիտացւոց տ՟ն, և զարքայանիստ քաղաք
ն՟ր փառէ՝ շինեաց եկեղեցիս, և ելից զտե-
ղին քրիստոնէութ՟բ . զի և ոչ սակաւք 'ի հր-
րէից մնացելոց 'ի կոտորածէ դարձան առ ք՟ս ։
Նկեալ այնուհետև բարեպաշտ արքային
ելեսբահանայ 'ի նեննգրան քաղաք՝ շինեաց
և անդ եկեղեցի, և պատուե՛աց զտեղի կա-
տարման ս՟րբց խարիթեանց . կատարեաց և
զկտակս ս՟րբյն խարեթայ . և զմի յորդւոց
նո-

Նորա կարգեաց զօրավար Երկրին . կացոյց Թագաւոր ոմերիտացւոց զոմն 'ի քրիստոնէից աբրամ անուն . եւ բերել և եդս մի յաղեքսանդրիոյ հանդերձ քահանայիւք և սարկաւագօք ։ Եւ այնպէս 'ի կարգի եդեալ զամ դարձաւ 'ի տեղի իւր յեթովպիա . և ինքն հրաժարեալ յիշխանութէ, և թ̃րեցուցեալ զորդին 'ի տեղի իւր , առաքեաց զթագ իւր յեկեղեցին Հայրապետն յովհանն՝ կախել 'ի վ̃ր գերեզմանին ք̃նի . և այնուհետև առանձնացեալ 'ի լերին 'ի վանս միայնակեցաց՝ եկաց 'ի խցի միում միանձնական վարուք և խստակրօն ճգնութ̃բ . և կատարեալ զկեանս իւր 'ի հաճոյս ա̃յ՝ փոխեցաւ յանանց թագաւորութի ։ Եւ այս ա̃մ յաջողեալ լինէր 'ի տ̃նէ բարեխօսութ̃բ արեան սր̃ց խարիթեանց , և ա̃ծ յայտապատում գուշակութե նորին իսկ սր̃յն խարեթայ , 'ի փառս անուանն ք̃նի ա̃յ մերոյ ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Ամբողջական վկայաբանութիւս առնումք 'ի մեծ ճառընտրէ անտի մերմէ իբրև յաղբերէ այլ եւս վկայագրաց և յայսմաւուրաց . ո̃չ և մետափրաստէս զնոյն քաղէ պատմութի դոյզն տարբերութ̃բ ոճոյ, կարճելով և ընդլայնելով . զորոյ զլատին թարգմանութի 'ի կից առնուն սուրիոս և բարոնիոս . այլ իցէ՞ թէ գտեալ էր ն̃ց զօրինակ մեր , զի յայնժամ ոչ 'ի վեր երևէին և այն վրիպակք պատմականք , զորս ձեռն արկանէ ուղղագրել պագիոս ծանօթարար բարոնեաի ։ Մեք ոչինչ կա-

կարօտացաք առնուլ 'ի Մետափրաստեան օրինակէ, բաց 'ի վերջաբանութենէ, յորում լինին բանք զկնի կատարման խարիթեանց՝ զի նուաճելոյ քրիստոնէից զհրէայս յեթովպիա կմ յոմերիտս. որ համառօտիւ գտանի և 'ի Հ. այլ ընդարձակագոյն առ Մետափր. և ոչ գիտեմք զըստոյգն, արդեօք թարգմանիչն՝ եթէ գրիչն Ճառընտրաց զանց արար զայնու յաւելուածով. զի է արտաքոյ վկայաբանութեան. բայց պէտք եղեն մեզ քաղել 'ի լրումն մարգարէութեան սրբոյն խարեթայ, և 'ի յայտնութիւն վիճակի Յին այնորիկ զկնի խարիթեանց։

(2) Ըստ ամ հանգամանք պատմութեան յայտ առնեն, թէ եթէովպիա յիշատակեալն աստանօր՝ է հապէշստան, նոյնպէս և քաղ համատար զնոյն՝ անուն թգրական քաղաքին, որ 'ի Ճ. գրի ոքսումի, 'ի Ց. աւքսոմի. և 'ի լտ. աւքսումէ, կմ աւքսումա. զորմէ տես լիով յՅագրութեան. 'ի Ֆ ճառն ափրէկոյ. 'ի Հոպէշ. էշէւ. 555։ Իսկ զի Յին ոմերիտայ միաբան ասեն Ճ. և Մետափր. թէ այն է՝ որ յածեալէն գրոց սաբա կոչի, և յարտաքնոցն երջանիկ արաբիա. տես և յաղագս սաբայ 'ի նոյն հատոր Յագր. էշէւ. 577։ 'ի Ճ. փոխանակ երջանիկ անուան արաբիոյ, գրի եւգոմն արաբիայ. որ պարտի լինել եւդեմոն. այն է Յն. էւտէմօն, որ թարգմանի երջանիկ կմ երջանիկ։ Ըստ և որ 'ի Ճ. և 'ի Հ. գրի նենգրան կմ նենգրա, 'ի Ց. գրի նեգրա. և առ սուրիոսի նագրան։ Անուն թգրին հրէի չէք 'ի Ճ. և 'ի Ց. այլ 'ի Հ. գրի դունաս. և առ սուրիոսի դունաան։ Իսկ անուն արքային եթովպիոյ 'ի Ճ. գրի. եղեպբահաղ. 'ի Հ. ելեսբովամ. և 'ի Յն. և լտ. ելէսբաան, կմ ելեսբաա։

(3) Ճիշդ և անվրէպ ժամանակագրութի գնի 'ի սկիզբն Ճառընտրիս մերոյ այսպէս. * Յամս հինգերորդ՝ քմա-
,, սէր թգրին յուստինոսի, որ թգրեաց յՅին հռո-
,, մոց. Ցերկրորդում ամին գիքարոնին. իսկ ԺԸ ան-
,, տիոքացւոց թուոյն յութհարիւրորդի երեսներորդի
,, հինգերորդի, յամսեան հիւպերբերիտոս. յեպսուէն
,, եՃմի յովհաննու, յանտիոք եփրասիու, յաղեքսանդր
,, տիմոթեայ ||. և նոյն թիւ ընդիկտիոնի՝ հանդերձ տասներորդ աւուրբ նոյն ամսոյն կրկնի և 'ի վախճանի կատարման սրբոց խարիթեանց։ Արդ այս ամ հաշիւք անվրէպ յայտ առնեն զամ Տն 524. միայն թէ հինգերորդ ամն յուստինոսի՝ եօթներորդ առաւել պիտէր ԺԸ սովորական հաշուի Ճմկագրաց. որ չէ ինչ. զի փա-

ղա-

զատուցումն եօթներորդն՝ բացառութիւն հնգերորդ մաս-
թի ասել։

Իսկ ստկայն՝ քանզի մեսսափրատես թօթափեալ զայլ հաշիւս՝ պահեալ է միայն զհինգերորդ ամն կայսեր, զոր և բարոնիոս՝ երկու ամօք յառաջ դնէ զնահատակութեան սորա, ի յամի տն 522. 'ի նոյն հայի և զնեղն թէոփանեայ ը հաշուէ յունաց 'ի 515 ամի մարդեղութ., որ միշտ յառաջէ եօթն ամօք քան զհասարակ թուականն քրիստ. Զի՛նչ և այս խառնակութիւն մեսսափրատեսի կամ այլոց. բայց ստուգանելի է գիւտն այն նոր, զի 'ի բաց թողեալ զանուանս պատրիարգաց յիշատակելոց 'ի վկայաբանեն՝ եդեալ է ո՛չ և իցէ (մեսսափր. կամ սուրիոս) զպատրիարգն աղեքսանդրու աստերիոս անուն. և զի տիմոթէոս կոչեցն էր պատրիարգ 'ի ժամին, կարծեցին ոմանք՝ թէ տիմոթէոսն այն կոչիւր նաև աստերիոս. կամ թէ ը սուրիոսի և ը բարոնիոսի՝ կայսրն կարգեալ իցէ զուգընթաց ոչ աստերիոս անուն 'ի տեղի տիմոթէոսի կուզի սան հերձուածողի. բայց այդպիսիք են մտացածին հնարք, զոր իբրաւամբք ստէ պագիոս 'ի ծան. բարոն. յամի 521։

(4) Անվրէպ է և հանրական աստցուած Ծ. յաղագս քրիստոնէութեան բնակչաց նեգրանայ՝ առանց որոշելոյ զժամանակ. զի ասէ. * Այս քաղաք յերկնուստ (կամ „ յորմէ հետէ) լուսաւորեցաւ, պաշտէր տակաւին զնո „ և զմիասնական երրորդութիւն, ընկալեալ զայս հա„ ւատաւ զմիապետութիւն 'ի նոր և յածագզեաց հարցն„ յերկայն և 'ի հին ժամանակաց ||։ Սոր կամ մեսսափրատես, և կամ լատին թարգմանն նր յաւելեալ է, թէ երկայն ժամանակն այն հայի յաւուրս կոստանդեայ որդւոյ կոստանդիանոսի. որոյ յղեալ ասէ դեսպան առ արքայն սաբայ կամ ամերիտացւոց՝ եա շինել 'ի նեգրան քաղաքի եկեղեցիս, և կարգեաց նդ հովիւ բարեպաշտութեան միայնակեաց. որ և հրաշիւք գործուցեալ իցէ զբազումս, են։

Բայց դնդէ պագիոս յամի 522, թէ այդ է յայտնի սխալ. զի նոքա յառաջնմէ իսկ առ կոստանդիանոսիւ յամի 327. լեալ էին ասէ քրիստոնեայ. իսկ միայնակեացն այն մեծանուն թէոփիլոս անուամբ՝ արքանեակ կոստանդեայ կայսեր հակամիտելոյ զհետ հերետիկոսն արիոսի՝ էր արիոսական և մոլորեցուցիչ բնակչաց տեղւոյն՝ յամի 354. յորոյ վր սուտ հրաշս յօդէ աղանդաւորն փիլոստորգիոս. այլ յետոյ շնորհօք տն 'ի ձեռն

ուղղափառ քարոզչաց մարգրեցաւ անզլին յաղանդոյ արիա-
նոսաց : Եւ այսպէս ուր ուրեք խառորի 'ի մէնջ ըն-
Թերցուածն մեսասփրասեան կամ սուրբիոսեան , ոչ ար-
գարանայ առ քննիչս :

(5) Մեսասփր · այսչափ միայն գրէ վասն հարկաց , Թէ
ձեռնայր խնդրել այնչափ ինչ՝ որչափ յառաջագոյն առ-
նոյր : Իսկ Ճ · լիով բացատրէ զերան մԹին բանիւքս ,
զորովք զանց արարաք · * Եւ զի հաւաքելոյ տարւոյս
,, միակ ը սովորութե տուեալ ը գլխոյ իւրաքանչիւր
,, անձին առն և կնոջ , ծառայի և ազատի , աղայի և
,, ծերոյ , երկրագործի և ձեռնարուեստ(ի) յաղկաղէ
,, միոջէ · և այս պատկեր Թզրական եԹէովպայեցւոց
,, կշռովն , որ ունի ը յունաց Թուոյն երկոտասան · ոպ
,, զի ժողովել ամի ամի զասհմանեալ հասն յատացեալ
,, քաղաքէն նենգրանայ ոսկի տաղանդս հարիւր և երե-
,, սուն · և է տաղանդն եԹովպայեցւոց և ամբրիտաց-
,, ւոց Ցին երեքտասան լիտր || : Այս բանք պիտոյ լե-
նին բանասէրաց :

Պիտոյ է և վասն Ցադրաց գրեալն անդանօր 'ի Ճ ·
* Եւ էր Ցն ամբրիտացւոց 'ի հարաւոյ կուսէ կոչե-
,, ցեալ այժմ 'ի փիւնիկոսէ հեռի երեսուն օԹեւանօք ·
,, որ ունի ը ևորձակուն օԹեւանս քսան և հինգ՝ կալեալ
,, ը նմանութե հոսանուտ աղբերական : Իսկ հնդկային
,, Ցն՝ ուստի գային անուշահոտ խունկք , պղպեղ , և
,, մետաքս , և մեծագին մարգարիտս , է հեռի եօԹա-
,, նասուն օԹեւանաւ : Իսկ յոյնք ը կողմանս հիւսիսոյ
,, յամբրիտացւոց Ցէն վաԹսուն օԹեւանաւ՝ ը ցամաք
,, Ցին գնացից Ճանապարհաւ · և ձգի 'ի ծովն կարմիր
,, յամբրիտացւոց Ցին մինչև 'ի հնդիկս և 'ի պարսս || :
Ուր մեսասփր · Թողեալ զայսոսիկ՝ զայլ ինչ նշանակէ ·
Թէ ամբրիտացիք կամ սաբացիք ծագեալ էին յաբրահա-
մէ 'ի քետուրական ծննդոց :

(6) Զինչ առ մեսասփր · և այս Թիւ որոշ զը նահատա-
կելոց եկեղեցականաց , ուր Հ · փոխանակ գնելոյ նիէ·
գնէ մնե :

(7) Կարեւոր է զուտաջինկայս բան ամբողջ գնել և ըստ
ոճոյ մեսասփրատեսի · զոր Ջօրինակեն և այլք ը բա-
րոնիոսի կարդինալի՝ առանց ը բանս ինչ անելոյ , կամ
յիշելոյ՝ Թէ որպիսի հանգաւ չար ափոխեալ էր զհոռո-
մոց յայնմ ժամանակի յարեւելս իբրեւ զհամախոհից նեա-
տորի · ոպ և առանց իմանալոյ՝ Թէ զեմրդ խոհեմուԹ
ըարձակէ մեսասփրատեսս զմոլորութի նեստորի 'ի բե-
րա-

րանոյ հրէին, և զուղղափառութի 'ի բերանոյ խարի-
թեանց՝ առաւել յայսմ վայրի։ Բան նր̄ է այս ըՍ լա-
տին թարգմանութե (զի դյուրնականն չունիմք 'ի ձե-
ռին)· * Այպա և նմին իսկ խարեթայ ինքնին թղ̄րն
,, զնոյն խրատ տայր (հրէանալ), 'ի մէ̄ջ ածելով, թէ
,, ահա և նոքին իսկ հոռոմք ծանեան՝ եթէ մարդ խա-
,, չեցին հարք նր̄· քանզի զիմ̄րդ մարթ է ասել ձաղ-
,, կիլ գաւազանաւ՝ զայ, որ բնութբ̄ անմարմին է· և
,, զիմ̄րդ մահ ճաշակել չարաչար և անարգական՝ ան-
,, մահն բնութեամբ· այպա թէ ոչ՝ բազումք և 'ի հռ-
,, ռոմոց, որք առ ձեզս են, պարծելով վշ̄ս ունել
,, անձանց զնեստորիոս՝ ինքեանք եւս յաւելուն ասել,
,, թէ ոչ իբրև Այ, այլ որպէս մարդ և մարգարէ ած
,, պարտ է մեզ մեծարել զՔ̄ս։ Որ եթէ չլինէր ճշմա-
,, րիտ, և ոչ եւս յայնչափ անմտութի բերեալ լինէի,
,, զի ուրացայց զ'ի քս̄ հաւատս, և զձեզ 'ի նոյնպիսի
,, ուրացութի հրաւիրեցից· (ուր 'ի զուր կարծէ բա-
րոնիոս՝ թէ գումնաս բնիկ քրիստոնեայ իցէ ուրա-
,, ցող·) քանզի զորօրինակ զօրէնսն պինդ ունիմ և
,, պաշտպանեմ, և զհայրենի սովորութի և զաւանդս
,, ողջագուրեմ, և զԱմ նորաձևութի մերժեմ, ըՍ նմին
,, և զսն̄ առնեմ, մարդ մի՝ որ ածութե թեկն էած։
,, Զի ոչ եթէ արեգական և լուսնի, և ոչ այլ արարա-
,, ծոց, և ոչ գից հեթանոսաց հարկեմ զձեզ պաշտօն
,, մատուցանել· քաւ լիցի ինձ այդչափ անմտանալ·
,, այլ միայն Այ, որ զԱմ արար, և հայր է իրաց ծնե-
,, լոց (կա̄մ եղելոց)· որ անախտական գոլով և աննիւ-
,, թական՝ ոչ գիտէ ծնանիլ ախտաբար։
,, Առ այս ասէ քաղէն խարեթաս ընկերօքն հանդերձ·
,, առ 'ի մե̄ր զայգպիսիս խօսեցար ա՛րքայ· մեք իսկ չա-
,, սեմք, թէ ած ախտաբար ծնանի, այլ անախտաբար,
,, ա̄ռ միոյ ծնանելին զբան։ Եւ խոստովանիմք, թէ նա
,, գթացեալ 'ի մերս բնութի՝ առաքեաց զորդին 'ի մարդ-
,, կան բարութի, մինչև մարմին զգենուլ 'ի կոյս օրիոր-
,, դէ· և ամիճ նմանի մեզ եղեալ՝ բաց 'ի մեղաց, զԱմ
,, ելից՝ որ ինչ զնմանէ ասացան 'ի մարգարէից յառաջ
,, քան զամս յոլովս· որոց և դու գիտակ իսկ ես՝ ըն-
,, թերցեալ զնց̄ գիրս։ Որ և բազում անգամ 'ի ձեան
,, պքանչելեաց՝ որ 'ի վեր են քան զմարդոյ կար, եցոյց
,, զԱծութի իւր· և ոչ ժխտեաց զառնուլն իւր զմար-
,, մին։ Զի՞նչ եւս յաւելից· մեք զնա ած և որդի Այ
,, դաւանեմք, և զԹ̄ բովանդակ քաղաքիս տամք զԲ̄նէ,
,, և

,, և վն այլոց ևս քրիստոնէից՝ որ են ի մեօք. և չիք
,, այդ տանջանաց, զոր չէցեալք պատրաստ կրել վն նր.
,, զի ո՛վ մեկնեսցէ զմեզ 'ի սիրոյն քի : Եւ չիք մեր բա_
,, ժին ի նեստորի, կամ ի այլոց՝ ոյք նովին ախտիւք
,, վարակին. որք զմարդն՝ որ առանց բաժանման և են_
,, թակայութ միացաւ ի բանին այ, յետին անմտութ
,, քակտեալ յածային ենթակայութէ բանին, ը ինքեան
,, ենթակացող և սոսկ մարդ յանդգնեցան ասել զբանն
,, 'ի մարմնի երևեալ. որք և ըստ արժանւոյն 'ի ձեռն
,, ածազգեաց հարց 'ի բաց ընկեցան 'ի դասէ ուղղա_
,, փառաց, և մատնեցան 'ի մշտնջենաւոր նզովս : Բայց
,, զայս քաջ գիտեմ, զի ոչ ներեսցէ ած, զոր դուք
,, թշնամանես, այլ արագ արագ ածցէ զպատուհաս
,, յանդուգն գործոց քոց. ոպ և միւսումն հայհոյուե
,, քո, և երգմանդ՝ զոր առ ոտն հարեր և սանցեր ով
,, անօրէն և ամպարիշտ ||:

Այսպէսն որ միանգամ բաղդատէ զայս ած ի գրելոյն 'ի մեծն բանիւ Ճառընտրին, թէպէտև զմի և զնոյն իմաստ գտանէ, բայց թէ խորագոյնս զննեսցէ՝ 'ի միտ առնու, թէ էր վն այսպէս այլաձևէ մետափրաստէս. ց նախ 'ի ցուցանել զողջմտութի հոռոմոց, զորոց չարախօսէր գոճեաս իբրև զնեստորականաց. երկդ 'ի ցուցանել զուղղափառութի սրբց խարխթեանց, թէպէտև էին յազգէ եթէովպացւոց ց հապէշից : Բայց պարտ էր մետափրաստեսի և զայն իմաստասիրել, թէ տիմոթէոս կուզ պատրիարգ աղեքսանդրու էր սերմանող չարախօսութե ի դէմ հոռոմոց 'ի լուր եթէովպացւոց քրիստոնէից և հրէից. և սակայն քրիստոնեայք ոչ անսային այնպիսի բանից. այլ ի հանրապէս ասէին, թէ * չիք մեր բաժին ի նեստորի, կմ ի այլոց՝ ոյք նովին ,, ախտիւք վարակին ||. և երանի թէ միշտ 'ի նմին բանի կային, և ոչ հովանային զկնի 'ի բարեկամութէ հոռոմոց. ոպ հետ զհետէ հովացուցին աղեքսանդրացիք թեկնածուք կուզին : Եւ ոչ է դեղ դարմանոյ ի դէմ այդմ ցաւոյ՝ դնել մետափրաստեսի, թէ սատերիոս ոմն ուղղափառ պատրիարգ էր յայնժամ յաղեքսանդրիա : Զայսոսիկ ևս նշանակեցաք 'ի պէտս ածաբանից, և ոչ 'ի պէտս ռամկաց, որք անգէտ են եկեղեցական պատամութեց ժամանակին :

(8) Մետափր. առաջին դուստր ասէ, որ է երէցն, ժթ ամաց. այլ մեզ հաճոյ է մերս ընթերցուած :
(9) Հ. դնէ սաս. իծ և խ. բայց համաձայն Ճառընտրի

րի գնեն և Լ. և Մեսրովբ. գծն:

(10) Մեսրովբ. քանզի վերագոյն յերկարեաց զվկայութ ՚ի բերանոյ սոյն խորենացւոյ վն գալստեան բանին յՊ. տառանոր կարծէ:

(11) Սովին ընթերցուածով Ճառընտրին մերոյ ուղղագրելի է համաձայնութիւն, որ կայ ՚ի լատին թարգմանութեան սուրիոսի, * գովեմ զքեզ ով Թեր, զի երկայ-
,, նամտեցեր, և ոչ չփոթեցար կամ հատեր զբանս իմ,
,, այլ սովորութիւն էր երբեմն թէքրաց ||. որ պհակառակ միտս թուէր ընծայեցուցանել:

(12) Այս պարագայ ծերութեան սոյն խորենացւոյ պատկառելի առ Մեսրովբ. բայց զոյգ ընդ Ծ. գրէ և Յ. բայանելն. * Սէն խորենացւոս ծեր գոլով, և ոչ կարելով
,, քայլել, անկեալ դնէր. վն ՚ի տանելն զնա գլխատել
,, յայլոց բարձեալ լինէր. և ածեալ գլխատեցաւ ||:

(13) Յայտ է թէ բանն է զպատկերէն քնի՞ որ յեկեղեցւոջ. որպէս և Հ. պարզէ այսպէս. * մայր իմ ցուցանէր յեկեղեցին յամ օր զպատկերն նը ||: ՚ի նոյն միտս և բարոնիոս յաւելու պարզաբանութիւն յայսնի հրացս՝ այսպէս. * Ան. նբ պատկեր փրկչին՝ որ ըստ աս-
,, տուածութեան նկարեալ կայր յեկեղեցւոջ, անմարկելով
,, մանկանն, զայսօրինակ խօսի մանուկն իբրև մանուկ ||:

(14) Ծ. յիշեաց նախ վկայս 421. ապա և 340. այլ և 10 գլխաւոր կանայս, և տիկին այրի երկու դստերօք. և կին մի հանդերձ մանկամբն. որոց գումարն լինի 776. իսկ զայլ բազմութիւն արանց և կանանց, ծերոց և տղայոց առանց համարոյ նշանակեաց. մինչ զի ոչ պակաս, այլ աւելի քան զբիւր մի յայտ առնէ. վն և ՚ի տօնից օրինակաց առեալ երեւի թիւն ԺՌ և ՖԾ նշանակեալ ՚ի տօնացուցի: Թող զթիւ գերելոցն՝ որ միօրինակ գրի ՚ի Ծ. և ՚ի Հ. ասէ. ուր Մեսրովբ. ոչ դնէ թիւ որոշ, այլ՝ բազում հազարս ասէ:

(15) Ծ. գրէ զերևութէս այսպէս. * Իբր. ահա յան-
• կարծակի հուր բազում երևեցաւ յոյժ յերկնից ՚ի վն
• եօթնասանեղաց հայկինն, և ելից զբոլոր երկինս. և
• յահ և յերկիւղ և ՚ի յանդիմանութիւն նոցն՝ որք պա-
• տերազմին ընդ նն, առուրս քառասուն յերկարեալ
• յերեկորեայ մինչև ՚ի մէջ գիշերի, իբրև զհնոց ջերմ
• եղեալ (կամ հեղեալ) ՚ի վն երկրի. զոր տեսեն նոցն՝
• սայլին օրհնութին նը, փառաւորելով զհայր և զորդի
• և զսբ հոգին այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտե-
• նից ||. և այնպէս աւարտէ զպատմութիւնն: Իսկ Մե-
սրովբ.

տափր. առ սուր. առէ. * Երևեցաւ հուր զաւուրս ինչ զմեծ գիրերն լցեալ զօգս, որ ահացուցանէր ընդունայն և զզօրս նր. և յայտ առնէր զբարկութիւն նյ՝ որ գալոց էր 'ի մօտոյ 'ի վերայ ամպարշտաց. և այս նշան հուր 'ի վերուստ տեղաց յերկիր, որ էր հարուած կատարեալ. սակայն և ոչ այնպէս խրատեցաւ ամպարշտութիւն || . են: Մեք և Հ. * Եւ յայնմ օրէ ճ գիրէր մեծ և ահեղ նշանս երևեցաւ յերկինս մերձ 'ի թագաւորութեան. և ընդ առաւօտն հուրն իբրև զփոշի հոսէր 'ի վերայ երկրին. և յոյժ զարհուրեցոյց զհրէայսն || : Զմնացեալ գործս ընդարձակ գրէ Մետափր. և Հ. համառօտիւ. կայ և առ սաղիկայ պատմութիւն ինչ նման նմին :



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Արտեմեայ նշանագործ վկային :

Հ. հոկտ. 19: Յ. Լ. հոկտ. 20: Ճաշընթ. Մ. ուճ = ուղ : Մնացորդք. առ սուրիոսի. հատ. Է. երես. 969 = 983 : Բարոնիոս յամի Տն. 362: (1)



ԱՏԱՐԵԱԼՆ ԱՐՈՒթբ և առաքինութբ հոգւոյ և մարմնոյ քաջն արտեմիոս կմ՛ արտեմիոս ( որ թարգմանի ամբողջ կմ ողջանդամ ), էր 'ի զուարթածաղիկ հասակէ զինուորեալ 'ի զօրս մեծին կոստանդիանոսի. ընդ որում առաջնակայ գտաւ և 'ի պատերազմին ընդդէմ մաքսենտիոսի, ընդ նմին և

և ականատես լուսանիշ խաչին երևութա-
ցելոյ յօդս ։ Այլ յետ այնորիկ յամի յառա-
ջադէմ գտեալ 'ի քրիստոնէական բարեպաշ-
տութե և յարքունի ծառայութե դորան ինք-
նակալին՝ ընկալաւ 'ի նմանէ զպատիւ պատր-
կութե ։ և էր սիրելի յաչս նր և նմ աւա-
գանւոյն վն անարատ վարուցն և մեծամեծ
հանդիսից քաջութե ։ և եռայր հոգւով 'ի քա-
կել զպաշտամունս հեթանոսաց, և 'ի հաս-
տատել զկրօնս ածպաշտութե ։

Այլ եղև յաւուրս կոստանդեայ որդւոյ կոս-
տանդիանոսի՝ կարգեցաւ զկնի բասոսի ե-
պարքոսի՝ եպարքոս թգրել քղքին, որ քաղա-
քապետ հռովմայ կմ կոստանդնուպօլսոյ ։ և
ապա 'ի ծերութե՝ օգոստական դուքս աղեք-
սանդրիոյ, այն է իշխան հրամանատար ար-
քունի զօրաց յամ երկիրն եգիպտացւոց ։
Որ և եկաց արին արտեմիս նմ գովելի կար-
գօք մինչև ցթգրութի յուլիանոսի ուրացողին՝
եղբօրորդւոյ կոստանդիանոսի ։

Նորա 'ի խաղալ յուլիանոսի 'ի վր պարսից՝
յորժամ եհաս յանտիոք, յղեաց պատուէր
և առ արտեմիս դուքս՝ գալ հասանել առ
ինքն 'ի քաղաքն անտիոքացւոց ։ Այլ քանզի
ինքն իսկ արտեմիս խորհէր գալ առ նա, զի
խրատեսցէ զնա յետս կալ 'ի նեղելոյ զհա-
ւատացեալս քնի, անյապաղ փութով անկաւ
'ի ճանապարհ ։ և եղև նմա ժամանել անդր
յաւուրսն յայնոսիկ՝ յորս ուրացող կայսրն
տանջէր վն 'ի քն հաւատոյ զպատուական
քահանայսն նյ զեւգինէոս և զմակարիոս՝

տմարդի պատժովք ․ ոչ աստայաւ յանձնէին վարս նց ('ի վերջն ապայից) ։

Ընդ այս չկարաց ժոյժ ունել երանելի և քաջեպաշտ դուքսն , այլ համարձակութբ յառաջ մատուցեալ՝ ասէ ցթռնաւորն ․ գիտացե՛ր ո՛վ Թագաւոր զայն՝ որ պարգևեաց քեզ զթգրութիւնդ , և մի ածընդդէմ ոգորիր՝ չարչարելով զհաւատարիմ պաշտօնեայս նր ։ Ես իսկ այսպէս համարիմ , եթէ որպս զյովբ խնդրեաց սատանայ , և ետ զնա տր 'ի ձեռս նր 'ի յանդիման կացուցանել զհամբերութիւն առաքինւոյն , այսպէս և զքեզ տր հակառակն խնդրեաց 'ի վր մեր սատանայ , զի զնմանօղսն քո զանմիտսն մշակս իւր կացուսցէ ։

Իբրև լուաւ զայս յուլիանոս՝ 'ի մեծէ դքսէն, լի եղև անտանելի սրտմտութբ՛ և բարկութբ ․ և զի մի առ չարութե իւրոյ երևեսցի պատուհասել զյանդիմանիչն իւր զայնպիսի այր երևելի , յարոյց 'ի վր նր չարախօսս 'ի հեթանոսաց աղէքսանդրացւոց , ոչ թէ զըտեալ ինչ զնա յանցաւոր և մնասակար յիրս արքունի ․ և այնպիսի պատճառանօք սկսաւ թափել 'ի նա զամ ցասումն , զի կամ ուրասցի զքս , և կմ չարաչար կորիցէ (2) ։ Բայց տեսեալ զանյեղլի միտս նորա 'ի քս , և զաներկիւղ պխնատօութիս 'ի յանդիմանութն իւր , հրամայեաց 'ի բաց մերկացուցանել զնա յիշխանական պատուոյն , և հարկանել զնա դալար արջառաջլօք ․ մինչև փոխեցան ութ այր 'ի հարկանելն ։

Դու իբրև դադարեցի՛ն, ասէ ցնա բռնաւորն. ո՛վ արտեմիս 'ի ձեռն յանդգնութե͞ քո ստիպեցեր զիս՝ անարգել զքեզ և զազգն քո. արդ հնազանդեա՛ ինձ և զոհեա՛ ապողոնի. և արարից զքեզ դարձեալ եպարքոս ապարանիցն արքունի. ապա եթէ ոչ հաւանիս, որով հատից զգլուխ քո վաղվաղակի. և տեսից, եթէ զի՞նչ օգնեսցէ քեզ խաչելեալն, զոր դու ասես՝ թէ ա͞ծ է:

Դու արտեմիս ծիծաղեալ ը͞ բանս ուրացողին, և այսպէս արարեալ զնա՝ ասէ. պի՛ղծ և տմարդի՛ շար՝ զմտաւ ած, թէ ո՞վ պահպանեաց զքեզ 'ի կոչեցեալ քո͞քիս անտի՛ք՝ յաւուրս հակառակութե͞ քո և քոյոցդ. ը͞դէմ կռոտանդեայ, և կատորածի եղբարց քոց և ազգականաց լուսագունից ք͞ զքեզ. ո՞չ ապաքէն քո ա͞ծ փրկիչ այնորիկ, որ յուսան 'ի նա, ա͞պ 'ի ժամուն ապաւինեցար յեկեղեցին ը͞ հովանեաւ ք͞հնայիցն ա͞յ. և որ յայնժամ երկայնամիտ եղև առ քեզ, նոյնպէս և այժմ մնայ դարձի քում երկայնամիտ եղեալ 'ի վ͞ր չարեաց քոց. ծանի՛ր զբարերարն քո, հայեաց 'ի սքանչելիսն ն͞ր՝ որ յերկինս 'ի վեր և յերկիր 'ի խոնարհ. նայեա՛ և տես զբարձրութի երկնից, որ ո՛չ ժամանակօք և ո՛չ ամօք հրաշագործեցան, այլ միայն յական թօթափել՝ ա͞պ խորան ձգեցան 'ի հրամանէ արարչին. տարտարոսք սարսեն յակնարկելոյ ն͞ր. դաղայ և ծովահի՛ մեծաւ, որ 'ի վ͞ր իւր բառնայ զմրրիկսն, որ շարժի 'ի խորոց անդնդոց, և ը͞ս վ͞ճռոյ զորոյն ո՛չ ազահէ ծածկել

զցամաքս . եւ դու քոյին յիմարութեամբդ՝ որ
զանձն առ իմաստունս ունիս , անարգես
զա̄ծ զարարօղն ամենեցուն , եւ տանջես ըղ-
ս̄թա ն̄ր . յիմար եւ կոյր՝ ծանիր զՀրաշագոր-
ծօղն ամենեցուն . եւ նմա միայնոյ երկրպա-
գեա , եւ պաշտեա ը̄ս գրոյն :

Օ այս ա̄մ իբրեւ լուաւ յուլիանոս , Հրա-
մայեաց երկաթի եղեգամբք Հրացեալովք
խոցատել զթիկունս ն̄ր մինչեւ յերիկամունսն,
եւ որեալ բեւեռս փորել ը̄ն գարշապարս ն̄ր ,
եւ երկաթի եղնգամբք քերել զկողս նորա եւ
զարտեւանունս : Յայնժամ աղաղակեաց բազ-
մութ̄ն ամբոխին անտիոքացւոց , եւ ասէ . ով
թագաւոր՝ ոչ զբազմութ̄ն բարբարոսաց Հնա-
զանդեցուցեր՝ ո̄պ խորՀեիր , եւ ոչ այլ ինչ
բարի քաղաքիս այսմիկ արարեր՝ ո̄պ խոստա-
նայիր . եւ այժմ զազնուական եւ զս̄բ այրդ-
զայդ տանջես անօրէնութ̄բ :

Իբրեւ լուաւ զայս անմարդին այն , Հրամայ-
եաց 'ի բաց առնուլ զտանջանսն 'ի նմանէ .
եւ կոչեցեալ առ ինքն զս̄րն՝ ասէ ցնա . աՀա
ւասիկ բնակիչք քաղաքիս Հեծեն վ̄ս քո որա-
ցաւութ̄ , եւ ես այսուՀետեւ գթացայց 'ի
քեզ . արդ զոՀեա դիայ եւ ասկղեպիոսի . եւ
ն̄ք բժշկեն զքեզ 'ի ցաւոցդ : Ս̄բն արտեմիոս
ասէ . 'ի Հուր գեՀեննին երթիցէ ը̄ն քեզ ով
ուրացող եւ տաճարակապուտ, որ լուիցէ քեզ
եւ թողցէ զարարօղն երկնի եւ երկրի , եւ եր-
կրպագանիցէ ամենագարշ ա̄ծոց քոց . Իմա
ով ամբարիշտ , զի ոչ Հաւանեցայց բանից
քոց , եւ ոչ կռոց քոց խլից եւ Համրոց զոՀե-
ցից .

ցից. քանզի զա՟ծն երկնից պաշտեմ, և նմա միայն հաւատամ. և նա է բժիշկ կենաց իմոց և փրկութիւն։

Իսկ բռնաւորն հրամայեաց արկանել զնա 'ի բանտ խաւարին մինչև յաւուրս հնգետասան, և ոչ հաց մատուցանել նմա և ոչ ջուր։ Եւ 'ի բանտի անդ առաքեցաւ նմա կերակուր 'ի տնէ 'ի ձեռն հրեշտակի, որ և ողջացոյց զվէրս անձին նորա. և 'ի վերջին աւուր բանտարկութեան երևեալ նմա 'ի նմանութիւն փրկչին՝ ասէ. քաջալերեա՛ և զօրացի՛ր 'ի վ՟ն սատանայի՛, զի ես ը՟ն քեզ եմ. և վ՟ն զի խոստովանեցար զիս առաջի թագաւորաց և իշխանաց, ես պսակեցից զքեզ առաջի հրեշտակաց և հրեշտակապետաց. քաջալերեա՛, զի այսօր ը՟ն իս իցես 'ի դրախտին։

Իսկ թագաւորն նստեալ 'ի վ՟ն բեմի զկնի հնգետասան աւուր՝ հրամայեաց ածել առաջի իւր զս՟բ վկայն, և սկսաւ ողոքանօք խօսել զնա. և ասէ. մինչև ցե՞րբ յիմարեցուցանես զայդքան իմաստութիդ, և հեղուս անարգանս զմեծութ՟ք քո, և ոչ զոհես ա՟ծոցն։ Իսկ ս՟բն արտեմիս կշտամբեաց զլրբենի քաղցրութիւն ուրացողին՝ որ լին էր ա՟մ դառնութ՟ք, և ասէ ցնա. Ը՟նէ՞ր կատաղիս գործելլ՛ և անօ՟ր. զի թողեալ զմարտնչել ընդ հեթանոսս, և զմարտնչաւոր պատերազմն առաջիկայ, պարապեցեր 'ի ծառայս ա՟յ՝ մարտ դնելով ընդ հոգիս։ Նայց ա՛ղէ դու տո՛ւր վճիռ 'ի վ՟ն իմ, ո՛րպէս և կամքդ յօժարեսցին. ես՝ այնմ, որ յերկինս է, և ծնելոյ նո՟ր յ՟ի ք՟ի, և համա-

դոյակ–

գոյակցի նր՟ ընդ հոգւոյն երկիրպագանեմ ։
Իբրև լուաւ զայս յուլիանոս, հրամայեաց
կոչել քարակոփս, և ասէ ցնս՟. պատրաստե-
ցէք վէմ մի ըստ կամաց իմոց, և խզեցէք յեր-
կուս, և արկէք զարտեմիս 'ի մէջ նորա ։ Իսկ
նք՟ փութապէս կատարեցին զհրամայեալն.
և ծածկեցին վէմքն զերանելին, մինչև չե-
րևիլ նմա արտաքոյ պատառուածոյ վիմին.
այլ կարծել ամենեցուն՝ թէ խորտակեցան
ոսկ՟ անդամք նր՟, և փորոտիք նր՟ 'ի վայր վայ-
թեցան ։ Իսկ նա աղօթէր և ասէր. 'ի վիմի
բարձր արարեր զիս. և ահա բարձրացաւ
գլուխ իմ 'ի վր՟ թշնամեաց իմոց. և հաս-
տատեցեր 'ի վր՟ վիմի զոտս իմ, և ուղղեցեր
զշաւիղս իմ. և արկեր 'ի բերան իմ օրհնու-
թի նոր. և արդ ընկալ զոգի իմ միածին որ-
դի այ՟ ։
Իսկ բռնաւորն համարեալ՝ թէ վաղ իսկ մե-
ռաւ, հրամայեաց քարակոփացն բանալ զվէ-
մն. և իբրև հանին զսբն, յոտն եկաց և
սաղմոսէր ասելով. տր՟ է իմ օգնական, և
ես ոչ երկեայց, զի՞նչ արասցէ ինձ մարդ ։
Իսկ քանզի 'ի ծանրութէ վիմին արտաքս ու-
տուցեալ էին աչք սբյն, ասէ ցնա յուլիանոս.
զի՞նչ օգտեցար այդ թշուառական. ահաւա-
սիկ զրկեցար յաչաց քոց, և բովանդակ յան-
պիտանութի փոխեցար. արդ հաւանեաց ինձ,
և զոհեա՛ դիցն. և լիցիս բարեկամ նմ, և
ազատեսցիս 'ի տանջանաց ։
Պատասխանի ետ սբն արտեմիս, և ասէ. անամօթ
և վայրենի՝ զմտաւ ած զոր ինչ և կամիս տան-

ջանարանս, և տանջեալ. զի ես պսակեցայց, և դու անկանիցիս 'ի հուր գեհեննին: Յայնժամ հրամայեաց բռնաւորն տանել գլխատել զնա. և նորա յերթալ իւրում 'ի տեղի կատարման՝ աղօթէր և ասէր. Տ̃ յս̃, լոյս 'ի լուսոյ, միայն 'ի միայնոյ, թագաւոր թագաւորաց, որ ես 'ի յերկինս ընդ աջմէ ծնողին քում՝ այ̃ և հօր, և յերկրի բնակեցար մեր փրկութեան ամենեցուն. որ ես պսակ այնոցիկ՝ որ բարեպաշտութեամբ նահատակին մեր քո. Լուր ինձ տնանկիս, և ընկալ խաղաղութեամբ զոգի իմ. և հանգո՛ ընդ նոսա քո՝ որք բարիոք հաճոյացան առաջի փառաց քոց: Եւ եղև ձայն առ նա, և ասէ. լսելի եղեն աղօթք քո, և տուեալ քեզ շնորհք բժշկութեան. փութա՛ այսուհետև յասպարէզդ. և ընկալ զբրաբիոնն փառաց, որ պատրաստեալ է այնոցիկ՝ որ սիրեցին զյայտնութի փրկչին: Եւ անդէն հատաւ սրով գլուխ երանելւոյն 'ի հոկտեմբերի ի, յաւուր ուրբաթու, յամի տն 362, յանտիոք քաղաքի, 'ի տեղւոջն՝ որ կոչի դափնի: Իսկ զմարմին երանելւոյ վկային խնդրեալ էառ կին ոմն բարեպաշտ և երկիւղած յայ՝ Արիստէ անուն, որ ասի լինել սարկաւագուհի եկեղեցւոյն անտիոքացւոց (3). և առաքեալ տապան կապարեայ, և զմռեալ զնշխարն հանդերձ իւղովք անուշիւք՝ առաքեաց 'ի հոյակապ քաղաքն բիւզանդիա, հանգուցանել զնա 'ի նշանաւոր տեղւոջ. քանզի խորհէր երթալ շինել անդ վկայարան 'ի պատիւ փառաց նորա վկային. և զի եղև ձեռնհաս,

հան

„ գրացուց' զի ծանր ծանր յանցանաց զգլխապարտուն
„ ընկալաւ զպատուհաս||: Զի՞նչ այլ յուսալի էր 'ի կատարեալ պատմագրէ 'ի վկայութիւն մարտիրոսուն կատարեալ քրիստոնէի կործանողի զբազգինս կաց. գուցէ և [illegible] կարծելոյ մետափրաստեսի' նաև պատճառս յօգեաց յուշխանս, որպէս թէ նորին արուեստս համախոհ լեալ իցէ 'ի մահ եղբօր նորա գաղտնի սպանելոյ հրամանաւ կոստանդեայ. բայց ոչ կարէր առել զայդ. ուր նորին արուեստիս քաջ գիտէր' թէ մեք եղեն սպանօղք այլոց, և մեք ապրեցուցիչք յուլիանոսի. որպէս և յուշ առնէր նմա յայտյայտնագիրման: Այսպա յանցանքս սորին էր անծպաշտութիւն նոր, որ է սկիզբն և աւարտ ամ ուրացութիւն: Յայս հայի առելն թէոդորետոսի. գիրք. Գ. գլ. 17. Յուլիանոսէ, և զհեթանոսաց' որք գովութիւն խօսեցան զնմանէ. * Սոյն սա բանաւոր զարուեստիս գուցքս զօրաց և-
„ զելոց յեգիպտոս, զի խորասկելոյ նոր զբազուն գրո-
„ չեալ յորժամ էառ զայն վերականգնութիւն առ կոստան-
„ դեաւ, ոչ միայն մերկացոյց 'ի պատուոյ և յընչից.
„ այլև գլխատեաց: Այս են ամենահեզոյն այնորիկ
„ և սանձողի բարկութեան, որպէս անուանեն զնա այսպի-
„ սեօք ամպարիշտք. պանծալի գործք||, թէ արիւնհե-
ղութիւնք:

(3) Ծ. Լոկ կին բարեպաշտ առէ. խոկ մետափր. առխոստոս սարկաւագուհի անուանէ. որ 'ի Հ. եգեալ է առխոստոս սարկաւագ:

(4) Հ. գրէ 'ի մանաւորի զբժշկութիւն փոշտանեկաց առտապանի սորին արուեստեայ. զոր բազմաց Հարգանէ ժամագիրք յունաց անուսի հանդամանաւք: Նաև եւս է գրեալ Ճշմարտութիւն 'ի բառնկեան յայսմաւուրս նշ. * պարգեւէ զբժշկութիւն' որոց հաւատով մատչին առ նա||: Անաստաս գրապետ' ընդ նշխարս սրբոյ ամփոփեալ 'ի հռովմ 'ի տաճար նորին սեղբեստրոսի 'ի սերգիոս պապէն յամի տն իբր 746. յիշէ զնշխարս նորին արուեստեայ վկայի. որ կարէ լինել և յոսկերաց այլոյ համանուն վկայի հռովմայեցւոյ: 'Ի յն. և 'ի լտ. անուն վկայիս կոչի արտեմիոս. իսկ արտեմիոն առ յոյնս է անուն իգական. այն իսկ է անահիտ. բայց 'ի մեզ անխտիր արտեմիոս գրի' փխկ արտեմիոսի, և արտեմիգեայ կամ անահտայ: Որպէս և դեմետրէ իգական, և դեմետրիոս արական' անխտիր դեմետր կոչի 'ի մեզ:

ՎԿԱՑ.

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Դեմետրեայ նշանագործ վկային :

Հ. Հոկտ. 25 : Յ. Հոկ. 26 : Լ. Հոկ. 8 : Ճառընտ. Ռ. ՆԾԶ = ԳՉ : Մետափր. առ սուր. Հատ. Է. երես. 701 = 706 : (1)

ՄԵԾ ԵՒ ՓԱՌԱՒՈրեալ սքանչելագործ վկայն Քրիստոսի Դեմետրիոս ( որոյ անունն Թարգմանի մայր երկրի, կամ արմտիք, ) էր 'ի ժամանակս Թագաւորութեան Դիոկղետիանոսի և Մաքսիմիանոսի, ծննդեամբ 'ի Թեսաղոնիկեայ՝ յազնուական և 'ի բարեպաշտ ծնողաց, համբարեալ քրիստոնեայ՝ առ որս հանդիսացեալ էր յոյժ յոյժ, գոլ 'ի սերնդոց նախնի մակեդոնացւոց փիլիպպեանց և աղեքսանդրեանց, այր քաջ և առաքինի՝ զուարթ դիմօք և բարուք. որ 'ի տղայ տիոց ցարբունս հասակի բազմօք արտափայլէր զբարեմասնութիւնս հոգւոյ և մարմնոյ՝ գերազանցեալ զբազում առաքինեօք, կիրթ յաստուածպաշտութեան և յաջողակ յամենայնի. քանզի և 'ի կարգի զօրականութեան յառաջադէմ գտեալ՝ ընկալաւ և զաւագութիւն երևելի, կարգեալ առ ժամանակ մի և անթիպատոս յԵլլադա, որ փոխանակ

նաւկ բդեշխի ՚ի յունաստան ։

Սա եղև ՚ի յառնել հալածանաց ընդդէմ քրիս-տոնէից՝ յորժամ եկն Մաքսիմիանոս հերակ-լէս կայսր ՚ի քաղաքն Թեսաղոնիկեցւոց, քաջն զԴեմետրիոս ոչ ՚ի քաղաքէն փախեաւ, և ոչ զանձն ծածկեաց. այլ առաւել սրտապնդէր զհաւատացեալս, և քարոզ լինէր ճշմարտու-թեան առ հակառակորդս ։ Ո՞ր ոչ թէ ուրեք զանգիտէր յերկիւղէ մահու՝ որ անկեալ է ՚ի բնութիս, անտես արարեալ զահագին սպառ-նալիս թագաւորին՝ յայտնապէս քարոզէր զանձն քրիստոնեայ գոլ. և զփրկչական ա-նունն՝ զոր յանձին իւրում բարձեալ ունէր, բազում համարձակութեամբ ՚ի ժամու և ՚ի տա-րաժամու՝ ամենեցուն մերձեցելոցն ՚ի նա աւանդէր. մինչև ձգել և զբազումս ՚ի խա-ւարէ հեթանոսութեան ՚ի լոյս աստուածգիտութեան ։ Սա յոյժ խելամուտ գոլով եղանելիս այս աստուածեղէն գործոյ, զծածկեալ կենդանաբար խոր-հուրդսն՝ որ ՚ի նմա առաջի ամենեցուն թարգ-մանէր ։ Այսպէս վճարէր զայսոսիկ կարևորա-բանս, թէ զմարդն առաջին անհնազանդու-թիւն մոլորեցոյց ՚ի ճշմարտութենէ. ուստի և մահկանացու եղաք, և կռապաշտութեան եմուտ յԱշխ. յաղագս այսորիկ ամենիմաստ բանն Ած յետ հօրէ անձառաբար ծնեալն՝ եկն յԱշխ և մարմին զգեցաւ, և զինքն լոյս Ածի ծա-գեաց. կանգնեաց զանկեալսն, և յարոյց բղ-գլորեալսն. եգիտ զկորուսեալսն, և սրբեաց յամ աղտոյ մեղաց ։ Սա ոչ միայն զայս բա-րեգործեաց, այլ և ուսոյց մեզ ընդունողաց

զբանն

զբանն Տն՝ զարդարուն սրբուն, զՀեզուն և զՀանդարտուն, զսէր և զխաղաղութիւն. արհամարհել զառժամանակեայս, և յուսով Հանդերձելոցն ը̄նունել զառՀաւատչեայ մշտնջենաւոր և անժամանակեայ կենաց: Այսպիսի բանիւք մխիթարէր երանելին զբազմութիւն, որք ընթանային 'ի լուր Համբաւոյ նր. և զօրութե̄ ա̄ն առնէր և նշանս և բժշկութիս. վ̄յ և դիւրաւ զձեռամբ ածին զնա խնդրակքն արքունի, և առեալ տանէին յատեան ա̄ծամարտին մաքսիմիանոսի իբրև մեծ ինչ որս ըմբռնեալ:

Իսկ Թագաւորին դէպ եղև յայնմ ժամու ելանել նստիլ 'ի տեղի ասպարիսի քաղաքին, ուր Համդերձեալ էին ըմբիշք մենամարտիլ 'ի տես ա̄մ ռամկին. և տեղին իսկ տախտակամած կազմեալ էր և քարակոփ շինեալ առ 'ի յընդունել զայնոսիկ՝ որք անդ եկեալ նստէին: Արդ յայն ասպարէս ածին զաՀիձքն՝ առաջի կացուցին արքայի զդեմետրիոս. և Թագաւորն քանզի լուեալ էր զՀամբաւ նր, կամեցեալ որսալ զայրն երևելի, և նովաւ զայլսն, անդէն սկսաւ Հարցանել զնա, և մեծամեծ խոստմամբք Հրապուրել 'ի մոլորութի իւր. և մեծամեծս սպառնալ՝ եթէ ոչ Հաւանեսցի պաշտել զդիս:

Յայնժամ առաքինի վկայն ա̄յ, միոյ միոյ 'ի Հարցուածոց արար պ̄խնի աներկիւղ. և 'ի վ̄ր եդած. ես յայնժամ դժուարիմ ասէ ընդ չարչարանսս, յորժամ զաՀիձքս քո խնայելով տանջիցեն, իբրև Հեղգացեալք յայն ինչ զոր.

զոր ես ուխտիւք խնդրեմ. իսկ պատիւ քո և մեծութիւն զոր ասես տալ որոց քեզն հնազանդին, զիւրդ ամոքեսցեն զիս. որ և զնախանձելի կարծեցեալ ծիրանիս և զթագ արքայութեան ընդ նմին գանձիւք հանդերձ՝ ոչինչ ընդ հատ 'ի փոշւոյ համարիմ և քամահեմ. այլ զմահն՝ որ վասն Քրիստոսի, մեծապէս տենչմամբ ողջունեմ՝ իբրև պատճառք ճշմարիտ կենացյանանց արքայութեան երկնաւոր թագաւորին։

Օտարմացեալ մաքսիմիանոսի ընդ համարձակութիւն և ընդ իմաստութիւն վկային՝ ոչ կամեցաւ 'ի պայքար մտանել ընդ նմա առաջի ամբոխին, զի մի զամօթ կրեսցէ. և դարձեալ զի մի խափան ինչ լինիցի առաջիկայ հանդիսի մենամարտութեան. այլ որպէս թէ պարապ տալով նմա խորհելոյ 'ի զգաստանալ՝ հրամայեաց տանել զնա 'ի կամար հնոցի բաղանեացն, որ մերձ էր 'ի տեղի ասպարիսին. և դնել իբրև 'ի դիպահող բանտի, մինչև ժողովն արձակեսցի։

Մինչդեռ անդ էր երանելին՝ երևեցաւ առ տամբք նորա կարիճ մի. որոյ ձգեալ զտուտն՝ կամէր հարկանել զնա. այլ ընդ խաչակնքել նորա՝ առժամայն սատակեցաւ, 'ի նշանակ յաղթութեան նահատակին ընդդէմ աներևոյթ գազանին։ Եւ անդէն վաղվաղակի երևեցաւ հրեշտակ տեառն՝ պսակ 'ի ձեռին. զոր եդեալ 'ի գլուխ դեմետրիոսի՝ ասէր, խաղաղութիւն ընդ քեզ նահատակդ Քրիստոսի. քաջալերեաց և զօրացիր, զի փութով ընկալցիս զպսակն վկայական. և նա զուարթութեամբ խօսէր ընդ նմա

ծա

ծարաւեալ ըմպել զբաժակն մարտիրոսութեան ։ Յայնմ վայրի քարոզն աղաղակէր , եթէ ով կամիցի մենամարտիլ ընդ Լեւոնի հսկայի առաջի թագաւորին , բազում պարգեւս ընկալցի ՚ի նմանէ ։ Վասնզի էր Լեւոնն այն ( որ և Լիւյոս կամ Ղեւիոս ) ըմբիշ անուանի ՚ի մէջ հեթանոսաց յազգէ վանդալաց՝ յաղթանդամ և սկայազօր ․ որ յոյժ զարհուրեալ դողացուցանէր զամենեսեան , և անագորոյն բարուք սպանանէր զամ ախոյեան իւր ․ վոյ սիրեցեալ էր յաչս մաքսիմիանոսի իբրև գլուխ գօտեմարտից կամ աննման պատերազմող յասպարիզի ։ Այլ տէր յարոյց ընդդէմ նր իբրև զԴաւիթ ընդդէմ գողիաթու մանուկ մի ՚ի քրիստոնէից՝ նեստոր կամ նեստորիոս անուն , համարեալ ընդ աշակերտս քաջին դեմետրեայ ․ քանզի սա վստահացեալ տն յաղթել առն հեթանոսի՝ եկն փութապէս առ երանելին դեմետրիոս , և խնդրեաց զաղօթս նր ․ և նր օրհնեալ զնա՝ մարգարէացաւ , թէ անուամբ տն մերոյ յի քի յաղթեսցես լէոնի , և վն նր մարտիրոսասցես ։ (2)

Արդ յարուցեալ նեստորիոսի պատանւոյն ՚ի մէջ ատենին՝ ՚ի բաց եդ զհանդերձս իւր , և զգեցեալ զինքն միով պատմուճանաւ՝ վազեաց ՚ի տափարակ անդր հանդիսին յանդիման կայսեր ․ ձայն ետ առ լէոն՝ մենամարտիլ ընդ նմա ։ Իսկ թագաւորն տեսեալ զտղայութի հասակի նր՝ զարմացաւ ․ կոչեաց առ ինքն զնեստորիոս , թելադիր լինէր նմա՝ այսպէս ասելով ․ գիտեմ որդեակ , թէ վն առաւել

ինչ

քինչս ստանալոյ՝ յերեսաց աղքատութեան քո՝ այդպէս ցանկաս վերապրել ՚ի կենացս ՚ի ձեռն զզուանաց և յաղթանդամ առնն լեռնի . արդ եւ գթամ ՚ի վայելչութիւն մանկութեան քո , որ զարդարեալ ես ամ գեղեցկութբ . տամ քեզ խնչս բազումս . միայն ՚ի բաց կաց ՚ի ցանկութենէդ առ ՚ի մարտնչելոյ ընդ սկայազօր և յաղթօղ այրն . և նորթ խնդա և ուրախ լեր ընդ գեղեցկութիւն քո :

Իսկ Նեստորիոս ոչ ետ տեղի բանից թագաւորին , այլ վստահացեալ ՚ի մարգարէութիւն դեմետրիոսի , և ոյժ առեալ ՚ի զօրութենէ քնի , ասաց պէմնի այսպէս . ես ով թագաւոր ոչ վն ընչից և կմ անցաւոր կենացս եկեալ եմ այսր . այլ զի ընտիր կացուցանեմ զիս քս զլէոս , և լուսագոյն կենացն հասանիցեմ : Իբրև լուաւ զայս թագն և որ շուրջ զնովաւ մեծամեծք ամ , լի եղեն սրտմտութբ՝ հպարտութիւն զասացեալսն ՚ի Նեստորիոսէ վարկանելով . և դրդուէին զլէոս մենամարտել ընդ նմա և կարեվէր խոցել , որպ զի առժամայն մեռցի :

Յայնժամ ՚ի դիմի հարկանէին միմեանց . և մանուկն Նեստորիոս զօրացեալ հոգւով գոչեաց և ասէ . Ած դեմետրիոսի՝ տուր ինձ , որ փոքր եմ հասակաւ . իբրև զդաւիթ , նշաւակել զլէոս որպ զգողիաթ . և անդէն թափ տուեալ զդեռնեաց զլէոս . որ և առժամայն սատակեցաւ (3) : Այն տեսեալ թագաւորին՝ բարկացաւ յոյժ . մանաւանդ յորժամ ստուգեաց՝ թէ քրիստոնեայ եւս իցէ Նեստորիոս .

րիոս. և փոխանակ խոստմանցն եղելոց պա-
յաղթողն՝ հրամայեաց գլխատել զմանուկն
երանելի 'ի ձեռն մինուտիանոսի դահճապե-
տի, որ հանդիսադիրն էր մենամարտկաց։
Բայց 'ի խոր խոցեցաւ Թագաւորն, և տրտ-
մեցաւ յոյժ ՟Է եղեալսն. զի և երկոցունց
մենամարտից մահն ցաւ էր նմա. և յարու-
ցեալ 'ի տեղւոջէն տխուր դիմօք՝ կամեցաւ
գնալ յապարանս։ Յայնժամ չարախօսք ո-
մանք բանսարկու եղեն առ նա, իբրև այն
թէ Դեմետրիոս եղև պատճառք այսր ամի։
Իսկ նա զայրագնեալ իբրև զգազան ինչ
վայրենի՝ անդէն յատենին անդ հրամայեաց
երթալ գեղարդեամբ հարկանել զնա 'ի
տեղւոջն արգելանաց. և այսպէս կատարեցաւ
սուրբն Դեմետրիոս բարի խոստովանութբ 'ի Քս,
որ օր քսան և վեց էր հոկտեմբերի ամսոյ,
յամի տն իբր 300։

Մարտիրոսութիւն Նեստորայ և Թեսաղոնիկեցւոց սրբոյն Դեմետրի։

Յետ կատարման սրբոյն Դեմետրի՝ յորժամ
ընկեցին 'ի գետնի կայր մարմին նորա,
ոմանք երկիւղածք և վկայասէրք երթեալ
գիշերայն՝ բարձին զայն և պատեցին. և ար-
կեալ զնովաւ մոխիր՝ թաղեցին 'ի տան միում
մօտ 'ի տեղի կատարման նր 'ի Թեսաղոնի-
կէ. Նոյնպէս և զնշխարս Նեստորիոսի թա-
ղեցին յայլում վայրի, մինչև այց արասցէ
Տր և յայտնեսցէ զնշխարս սրբցն։ Իսկ մի ոմն
'ի

'ի ծառայից սբյն Դեմետրեայ լուսոյ անուն՝ առաջիկայ գտեալ մահու նր, ու կարի ժա-ղովեաց զպատուական արիւն նր յուսանոց նորին սբյ. եառ և զմատանին՝ որ էր 'ի մա-տին սբյն. և զայն ևս ծծեալ արեամբ նր, առնէր նովաւ բազում նշանս բժշկութեանց. մինչև հնչեաց համբաւն սքանչելեաց ը̅ ա̅մ քաղաքն Թեսաղոնիկեցւոց, և եհաս յա-կանջս Մաքսիմիանոսի. վ̅յ ըմբռնեցաւ իսկ և իսկ սքանչելին լուպոս, և սպանաւ 'ի հրա-մանէ բռնաւորին:

Յետ այսորիկ յաւուրս քրիստոնէութե՛ յոր-ժամ տարածեցաւ նշանագործութի սբյն Դե-մետրեայ 'ի Մակեդոնիա և 'ի Թեսսաղիա, Ղեոնդիոս ոմն այր պայծառափառ և ջերմ յոյժ 'ի հաւատս քնի, որ էր եպարքոս Իւրիւ-կեցւոց, 'ի գալ իւրում 'ի Թեսաղոնիկ՝ խօ-թացաւ ու 'ի մահ. և իբրև լքին զնա բժ-շիշկք, ապաւինեցաւ այրն 'ի սբն Դեմետ-րիոս, և հրամայեաց տանել զինքն 'ի տե-ղի գերեզմանի նր. ուր և իսկ և իսկ ընկա-լաւ զկատարեալ առողջութի: Եւ 'ի յիշա-տակ շնորհաց՝ զոր ընկալաւ, ետ քակել ըզ-տունն փոքրիկ և անձուկ՝ յորում էր տապան սրբյն 'ի միջոցի անդ բաղանեաց և ասպարի-սին, և կանգնեաց 'ի հիմանց տաճար գեղե-ցիկ 'ի քաղաքի անդ Թեսաղոնիկեցւոց յա-նուն սրբյն Դեմետրեայ: Եւ 'ի կամիլ առ-նուլ մասն յոսկերաց սբյն՝ արգելաւ տես-լեամբ. ապա առեալ զքղամիդ վկային ներ-կեալ պատուական արեամբ սբյն, և մասն

մի յուսանոցէ նր՝ որ և ուրար կոչիւր, խոր-հեր դարձ առնել 'ի լիւրիկէ. և 'ի ձմերայնի ձպհ արարեալ է ը երկիրն սիրմիոյ, և անցել ը գետն մեծ առանձին սքանչելեօք սրբյն՝ որ երևեցաւ նմա 'ի տեսլեան, շինեաց միւս ևս եկեղեցի 'ի սիրմիոն 'ի պատիւ դեմետրեայ վկային մօտ 'ի տաճար սրբուհւոյն անաստա-սիայ։

Նաև վն այսր ամի փոյթ եղև յայնմ հետէ եպսացն թեսաղոնիկեայ՝ չթողուլ ումեք առնուլ մասն ինչ 'ի նշխարաց սրբյն. որոյ վն և համբաւեցին՝ թէ թէպէտև 'ի տաճարի անդ է տապան վկային, այլ անյայտ է տեղի ոսկերաց նր. մինչև յուստինիանոս կայսրն՝ որ շինեաց 'ի կոստանդինուպօլիս զսբն սո-փի և զայլ բազում եկեղեցիս, առաքեաց արս 'ի թեսաղոնիկ հանդերձ արքունի հրո-վարտակաւ առ եպս տեղւոյն, և խնդրեաց մասն ինչ 'ի նշխարաց մեծին դեմետրեայ։ Նաև մինչդեռ որք 'ի նմանէ առաքեալ էին արուեստաւորք՝ հանդերձ երիցամբք ե-պիսկոպոսին՝ ձեռն 'ի գործ առնէին, 'ի բր-րել և 'ի մերձենալ նոցա 'ի մարտիրոսական տապանին՝ հուր ահագին լուսափիւռ ցոլա-ցաւ ընդառաջ նց. և ձայն 'ի հրոյ անտի ահ-ընկէց և ընդարմացուցիչ յայտնապէս բար-բառեալ՝ ասէր. դադարեցէք յայդ ևս փոր-ձելոյ. յորմէ սոսափեալ արանցն՝ մածուցին զերեսս իւրեանց 'ի գետին. և միայն հող առեալ անտի՝ կէս մի եդին 'ի պահարանի, և կէս մի առաքեցին առ թագաւորն 'ի սրբ

բուն, նշանակեալ զանունս նմ։

Այս եղև յորժամ Թգրեաց մաւրիկիոս, որ և մօրիկ հայկազն, բարեպաշտ և տնտեսէր կամօք խնդիր արարեալ բազմաց սրց՝ որ 'ի Թեսաղոնիկեցւոց քաղաքին կատարեալ էին, և'ս առաւել երանելւոյն դեմետրիոսի՝ վն առաւել համբաւոյ սքանչելեացն, գրեաց Թուղթ առ եւսեբիոս եպս Թեսաղոնիկեայ, ոնց զի առաքեսցէ նմա մասն ինչ 'ի նշխարաց նըյն դեմետրիոսի։ Յայնժամ գրեաց եւսեբիոս պխնի Թգրին այսպէս։

* Կայսերմք և մեք ով Թագաւոր, զի վն Ճշմարիտ հաւատոյ է խնդիրդ քո, զոր ունիս առ սր վկայսն քնի. բայց լուր և պատմեցից քում բարեպաշտութեդ զհաւատս Թեսաղոնիկեցւոց և զեղեալ սքանչելիսն. վն զի ոչ այսպիսի հաւատս ունի քաղաքս այս, եթէ զգալի իրօք կամիցի պաշտել զնն և պատուել զնշխս նր, այլ զներքին հաւատականն իմանալի աչօք հաստատեալ են 'ի սէրն նյ և նըց նր, ընկալեալ զհաւատս 'ի նոն նըց վկայութէն, եթէ հոգի է նն, և երկրպագուաց նր պարտ է հոգւով և Ճշմարտութբ երկրպագանել. և վն այնորիկ ծածկեալ են 'ի քաղաքիս յայսմիկ մասմնք նըցն՝ աննեխն անյայտ 'ի մարդկանէ։

Զոր և տնտեսէր հայրն ձեր (տր նախորդն) յուստինիանոս, որ ձերայն բարեպաշտութե նախանձուդ էր լցեալ, դոյնպէս փորձեալ եգիտ. վն զի և նա վկայասէր կամօք գրեաց Թուղթ առ որ յառաջ քան զմեզ այսր քհյ

եպս

եպս էր, ուր և քո բարեպաշտութիդ առ մեզ,
մասն ինչ հայցելով՝ ՚ի նշխարաց փառաւորել
վկային դեմետրիոսի . զոր և կամեցաւ եպսն
լինել զմեծահամբոյ տարփութեան սիրոյն թագա-
ւորին . և մտեալ ՚ի վկայարանն սրբոյն՝ բերցին
զյատակ եկեղեցւոյն, ուր կարծէին՝ թէ
անդ եդեալ է նշխարք սրբոյ վկային . և զայս-
պիսի գործ՝ երկիւղածաց քահանայից հրա-
մայէր եպսն ; զորոց հաստատուն գիտէր
զարժանաւորութին նց : Իսկ իբրև խոր ինչ
առնէին զբրածն, շուրջ կալով այլոցն սաղ-
մոսիւք և օրհնութբք և մոմեղինօք լուցե-
լովք և անուշահոտ խնկօք, կամէին այլ ևս
բրել . յայնժամ յանկարծակի հուր ելեալ ՚ի
ներքուստ՝ ելից զամ խորս բրածին . և շուրջ
պատեալ զնոքօք՝ ոչ այրէր զնս : Նշան ձայն՝
որ ասէր . արդ դադարեցէք յայսմ հետէ յա-
ռաւել փորձելոյ զզօրութին քնի, որ միա-
ցեալ է յոսկերս սրբոցն : Իսկ նց ահիւ և դո-
ղութբ լցեալ միանգամայն, առեալ ՚ի հո-
ղոյ բրածին առաքեցին առ թգրն . և գրով
ծանուցին նմա զեղեալ սքանչելիսն .

Արդ այսուքիկ ով թագաւոր՝ առ բարեպաշ-
տօն յուստինիանոսիւ հարբն քոյով եղև . և
մեք նոյնօրինակ առաքեցաք քում ածսիրու-
թեդ ՚ի նոյն օրհնութե հողոյ, որ եդեալ կայ
՚ի պահարանի յայսմ եկեղեցւոջս՝ ՚ի պէտս
բժշկութե ախտաժետաց : Որ և դու ընկա-
լեալ՝ ուրախութբ մեծաւ առցցես առանց
երկմտութե իբրև զնոյն ինքն զբովանդակ
վկայն ունելով առ քեզ, որ վայել է քում

հաւատոցդ. այլեւ 'ի փորձոյ անտի ծանիցես զսքանչելիսն. եւ ոչ անհնազանդ վարկցիս զմեզ ձեր ամենասէր Թգրութեդ։ (4)

Առեալ բարեպաշտին մօրկայ զայս գիր եպիսկոպոսին ընդ հողոյն օրհնութեան՝ փառս ետ այ, որ սքանչելին է 'ի սուրբս իւր. եւ այնպէս Թէպէտեւ ոչ 'ի վեր ելին նշխարք սրբոյն դեմետրի, բայց անպակաս էին սքանչելիք նորա. եւ զի կայր սալ մարմարիոնեայ իբրեւ տապանաքար 'ի վերայ գերեզմանին, անդր դային ուխտաւորք առհասարակ, եւ ընդունէին ըղխնդիր իւրաքանչիւր ըստ հաւատոց իւրեանց. Թող զբժշկական եւ զանուշահոտ ձէթն՝ որ բղխէր 'ի տապանէ անտի. ուստի կոչի սրբն դեմետրիոս 'ի յունաց՝ մեծ վկայ միւռոնաբուղխ եւ սքանչելագործ։ Այլ ախորժելի է լսել զսքանչելիս սրբյն։

Այր ոմն ազնուական Մարիանոս անուն՝ յառաջագոյն սենեկապետ եղեալ 'ի պալատան Թգրութե, եւ ապա առեալ զեպարքոսութի լիւրիկեցւոց (ըստ Ճառընտրիս մերոյ, զոր ժամագիրք յունաց կոչէ Մարինոս եպս լիւրիկեցւոց), եկն եւ նստաւ 'ի Թեսաղոնիկէ։ Սա զառաջինն բարեպաշտ եւ արդար կամօք ուղղէր զերասանակ իշխանութեն, այլ յետոյ յղփացեալ 'ի մեծութիս եւ 'ի փափկութիս՝ ծուլացաւ 'ի պատուիրանս այ. եւ անկաւ յախտ անդամալուծութե՝ անդարմանելի 'ի հնարից բժշկութե զամս բազումս. ապա իւր ուրեմն զմտաւ ածէր յաւուր միում զսքանչելագործ վկայն քի զսրբն դեմետրիոս։

Նա

Եւ մինչդեռ յայսմ մնաց խորհրդի էր, ներ-
հեաց. և յանկարծակի երևեցաւ նմա ոգի
վկային 'ի կերպարանս բարեկամի. հարցա-
նէր՝ թէ զի՞նչ յայնչափ ժամանակս ան-
կեալ դնի յախտ անդր. իսկ նա հեծեծելով
ասէ. տէ՛ր իմ ո՛չ կարեմ պատմել զտանջանս,
զոր կրեն անդամք մարմնոյ իմոյ. վս զի ե-
թէ 'ի ջերմ մերձենամ, սառն թուի մարմ-
նոյս. և յորժամ 'ի սառն, այնպէս կարծեմ
եթէ ջերմ է. և ամ յօդուածք անդամոցս
կալեալ կան առանց զօրութե. և յորժամ
շարժել կամիցիմ, ո՛չ ոտք կամիմ տարուբե-
րիմ. վս զի կարծիմ միայն՝ թէ անդամք իմ
իցեն, այլ 'ի զօրութե ամենևին ճարմացեալք
կան։ Եւ դու զի՞նչ արդեօք ունիս ասել
ինձ ո՛վ սիրելի բարեկամ, որ այդքան գթու-
թբ հարցանես զիս. և կմ զի՞նչ թելադրու-
թի մատուցանես վշտագնեալ անձին իմոյ.
Պատասխանի ետ ոգին դեմետրիոս, և ասէ. Լո՛ւր
ինձ եղբայր, և ասացից քեզ զարժանն, թէ
որպէս կարասցես թողութե մեղաց հասա-
նել և բժշկութե մարմնոյդ։ Նախ զայս խրատ
տամ. պա՛րտ է քեզ բարեմիտ լինել, և ա-
ռանց տրտնջման և գոհացողութբ զցաւս
մարմնոյդ ընդունել, և մի՛ ընկղմել զանձնդ ան-
յուսութբ 'ի խորս տրտմութե հոգւոյ։ Եւ
ապա 'ի միտ առնուլ, թէ ամ ինչ նախախ-
նամութբ ներգործի 'ի մարդիկ՝ յամենեցունց
հրաշագործողէն այ առ իւրաքանչիւր օգուտ.
զի թէպէտև ոչ արժանեաց ինչ կիրս կրեսցէ
ոք, սակայն և զայն՝ մարդասիրութբն այ 'ի

մեղաց թողութի համարեսցի. քանզի աստ տալով վրէժս մեղացն՝ 'ի հանդերձեալ դատաստանին մարդասիրութի գտցէ, զի մնարգարէին նաւուման, եթէ՝ ոչ կրկին վրէժ խնդրեսցէ ած. միայն թէ գոհութբ ըցաւս անձին յօգուտ շահիցի, այլ ոչ տրտմութբ և տրտնջմամբ կրկին տանջանս խնքեան ստացի։ Նաև եթէ արդար իցէ՝ որ զկիրս ցաւացն ընդունիցի, և գոհանայցէ՝ բազում զգեշութբ առ 'ի պահել զարդարութին, աստ ընկալցի զհատուցումն բարի, և 'ի հանդերձեալն մեծապայծառ փառօք պսակեսցի, իբրև զոսկի 'ի հուր մաքրեալ՝ ոսկ զերանելին յոբ։

Իսկ փոխանդեալ եպարքոսն սկսաւ հարցանել զօրն, և ասէ. ո՞վ ես դու այր, և զի՞նչ անուն է քո, և ու՞ր իցէ տեղի բնակութե քո, որ զայդքան գեղեցիկ մխիթարութի մատուցանես ինձ։ Ասէ ցնա սբն. իմ տեղի բնակութե թագաւորական քաղաքն է. անդր եկեալ գտցես զիս, և ուսցիս զանուն իմ։ Յայնժամ զարթուցեալ մարխանոսի՝ պատմեաց զտեսիլն մերձաւորաց իւրոց. և զի ոչ իմացաւ զբանս նըյն վս թգրական քաղաքին, կարծելով՝ թէ զկոստանդինուպօլիս ասաց; աւաղէր զանձն և ասէր. վա՜յ ինձ թշուառականիս. ես աստանօր անկեալ դընիմ անդամալոյծ 'ի թեսաղոնիկեցւոց քաղաքիս, զքեզ ո՞րպէս կարիցեմ գտանել 'ի կոստանդինուպօլիս, ո՛վ այր իմ և մերձաւոր բարեկամ։

Յայն-

Յայնժամ մի ոմն յանցանէ՝ որ մերձ առ նա
կային, տեղեկացեալ 'ի նմանէ՝ եթէ յա-
ռաջ քան զտեսիլն զդեմետրիոս խորհէր զնշա-
նագործ վկայն, ասէ ցմարկիանոս. մի՛ վհա-
տիր տէր իմ եպարքոս, ես առեալ տարայց
զքեզ առ բարեկամն քո. և ընդէ՞ր ոչ իմանաս՝
թէ նա ինքն է գովելի վկայն քրիստոսի դեմետ-
րիոս. որ ո՛չ թէ յերկրաւոր թագաւորական քա-
ղաք բնակէ, այլ 'ի վերինն եդեմ՝ որ քաղաք
անմահ թագաւորին է. և ոսկերք նորա 'ի մերում
քաղաքիս հանգչին, վասն զի աստ կատարե-
ցաւ. և ո՛չ պակասի 'ի նախախնամութենէ քա-
ղաքացեաց իւրոց, զի կենդանի է քրիստոսիւ յոս-
կերս նորա. արդ եկ տարայց զքեզ 'ի տաճար
նորայն, և անդ փայլեսցես 'ի շնորհս վկային ։
Յայնժամ բարձին զնա մահճօք, և տարան
եդին 'ի յատակս եկեղեցւոյն՝ որ գեղեցկա-
պէս շինեալ էր յանուն նորայն ։ Իսկ նորա նկա-
տեալ 'ի տաճար անդր զպատկեր երանելոյն,
և յառեալ 'ի նա զաչս՝ ասէր թախանձելով.
Ո՛վ տէր և ամենատէր ճգնազգեաց նահատակ
և հարազատ ծառայ քրիստոսի, դու մատուցեր
զանձինս բազմաց անուշահոտ պատարագ աստուծոյ,
և 'ի վերայ ամենեցուն զքեզ ինքնին բոլորա-
պտուղ ընծայեցեր նմա. դու վասն բազում ա-
շակերտելոց՝ խոցեցար 'ի սէր այնորիկ, որ
վասն մեր [illegible] փրկութեան ետ կամաւորաբար զկող
իւր գեղարդեանն. դու ամենեցուն բարե-
րար եղեր 'ի կենդանութեան քում, և՛ս առաւել
յետ մահու՝ յորժամ զճշմարիտ կենդանու-
թիւն ընկալար 'ի քրիստոսէ. արդ աղաչեմ զքեզ

կենդանի վկայ քնի՝ հեղլիս 'ի տառապելս
զշնորհս բժշկութեան քո, պնդեալ զլուծեալ
անդամս իմ։ Ահաւասիկ անդամալուծս մերձ
յաւազանս քո անկեալ դնիմ, սպասելով քեզ
փառաւորեալ հրեշտակիդ՝ առ 'ի շարժել
զողորմութիւն իջման կենարար ջրոյդ բժշկու-
թեան 'ի վրա իմ. որ թէպէտ և երեսուն և ութ
ամ ոչ ունիմ հիւանդութեան մարմնոյ, սակայն
երեսնեկին երեսուն և ութիցս առաւելուն
մեղաց անկեալ դնիմ։

Զայս և առաւել քան զսոյն պաղատեալ՝
նիրհէր այրն յաշխատութենէն 'ի մէջ տաճա-
րին։ Եւ ահա երևեալ նմա փառաւորեալ
վկայն քնի դեմետրիոս 'ի կերպարանս առա-
ջին տեսլեանն՝ ասէ ցնա. Արիք լուար
ինձ, և եկիր այսր տէր եպարքոս. և ես վաղ-
վաղակի ամ կատարեցից զոր խոստացայ առ-
նել քեզ. բայց և զայս տն իմոյ պատուիրան
աւանդեցից քեզ. ահաւադիկ ողջացար, մի
դարձեալ մեղանչեր. զի մի չար ևս լինիցի
քեզ. քանզի սովորութի է լուծելոց անձանց,
զի յորժամ որոտմական ինչ տեսցեն, խոստո-
վանին 'ի բաց կալ 'ի մեղաց. և 'ի հեշտա-
կանսն թուլանան 'ի բարեաց. Ըստ այնմ, թէ
յորժամ սպանանէր զնս, դառնային խնդ-
րէին և առաւօտ առնէին առ ած. և դար-
ձեալ՝ եկեր յակոբ և յագեցաւ, յանդգնեցաւ
զսիրելին. գիրացաւ ստուարացաւ լայնա-
ցաւ՝ եթող զած արարիչ իւր, և յետս
եկաց յայ փրկչէն իւրմէ. արդ՝ եթէ բստա-
դապես հաստատեցիս 'ի ճշմարտութենէն,

ողջա-

ողորմութիւն քո՟ի բժշկեսցէ զքեզ բարեխօսութ՟բ իմով ։

Յինսի ես մարիանոս, և ասէ. հաւատամ ա՟ծր՝ եթէ ոչ անցից զպատուիրանաւ քով. միայն եթէ ողորմեսցի ինձ ք՟ս բարերարն, և ընկալայց զբժշկութի՟ անդամոց իմոց ։ Եւ նո՟ր վկայն ձգեալ զձեռն իւր՝ շօշափեաց զա՟մ լուծեալ անդամսն նո՟ր, և ասէ. Յ՟ս ա՟ծ ճշմարիտ բժիշկն հոգւոց և մարմնոց բժշկեսցէ զքեզ, և զախտացեալ անդամսն քո. այն՝ որ յարուցանէ զմեռեալսն, և կանգնէ զգլորեալսն ։ Եւ զարթուցեալ մարիանոս ՚ի տեսալենէ անտի՝ եկաց կանգուն՝ առողջացեալ ա՟մ. անդամօք իւրովք. և սկսաւ գոհանալ զա՟յ և զնո՟ր վկայէն. և ասէր արտասուօք. ով որքան խնդութի էր քաղցր բարբառ քո ՚ի հոգին իմ վկայ քո՟ի. մինչ գրեթէ արդ ևս հնչէ ՚ի լսելիս իմ, և ցնծացեալ պարարէ զա՟մ ոսկերս իմ ։ Եւ այնուհետև կրթեալ մարիանոսի զինքն յա՟մ հրահանգս առաքինութե՟՝ բարեպաշտութ՟բ զարդարէր զիշխանութի իւր ։ ։

Իսկ նախանձոտ բանսարկուն տեսեալ զգովելի քաղաքավարութի նո՟ր՝ յարեաւ ՚ի վ՟ր նո՟ր իբրև ՚ի վ՟ր յովբայ ե՟ւ թոյլ տալոյն ա՟յ. զի յետ սակաւուց հարաւ մարմին եպարքոսին չարաչար կեղօք. մինչ գրեթէ ա՟մ անդամք նորա փտեալք և քակտեալք լինէին. և ոչ ոք ՚ի բժշկաց օգտեաց ինչ նմա. և իբրև յա՟մէ յուսահատ լինէին՝ որ իւրքն էին, սակայն նա ևս առաւել գոհութ՟բ տանէր զչարչարանսն ։ Յայնժամ մի ոմն ՚ի ծառայից նո՟ր շարժեալ ՚ի բանս.

բանսարկուին ընդ օրինակի կնոջն յոբայ՝ խոր-
հուրդ չար և անօրէն թելադրէր յունկն նմա
իւրոյ. և սոյն ասէ այր մի, որ գիտէ հմայս
բժշկութեան՝ գրեալ 'ի մագաղաթի եբրայեցի
բարբառով անուանս հրեշտակաց, այլ և
արեգակունս, և այլ բազմախուռն անուանս՝
որ ոչ է ումեք յայտնի. և մագաղաթն՝ յո-
րում այս անուն է, 'ի գրապանս վերարկուի ձևա-
ցուցեալ է՝ զի որ ունելով յինքեան ներքոյ և
արտաքոյ. և ասէ, թէ որ զգենու զայս,
բուժել լինի յամ ախտից. արդ առ դու զնա
և զգեցի'ր. և աղաչեմ զքեզ 'ի սրտմտութէ
վիրաւորս՝ որ հասին 'ի վ՟ր քո. զի և մեք իբ-
րև 'ի խորս դժոխոց այնպէս թաղեալ կամք
վ՟ս քո:

Պատասխանի ետ համբերող այրն և ասէ. ով մոլեգ-
նեալ թելադրիդ, որ այդքան յանդգնեալ՝
ապստամբել ուսուցանես զմեզ յԱ՟յ, և ա-
ղխութեամբ և կախարդս և դևս ձգես զմարմինս
առողջացուցանել, որով և զհոգիս փութաս
սպանանել. ոչ այդպէս. այլ լաւ է ինձ մե-
ռանել այսպէս, քան թէ հեռանալ յԱ՟յ ճշմար-
տէ: Իսկ այնչափ 'ի բաց վարեաց զնա յիւրմէ
իբրև զմի ոք յարանց անզգամաց խօսեցեալ.
և սոսա սակաւ մի զետեղեն 'ի բազում վտա-
տակոց մարմնոյն նիրհէր: Իսկ ահա երևե-
ցաւ նմա անդրէն տ՟ր վկայն ք՟ի դեմետրիոս.
հարցանէր զնա վշտակցաբար, թէ ո՞րպէս
իցէ: Իսկ նա յոյժ հեծեծելով ասէ ցնա.
այդպէս՝ որպէս տեսանես տ՟ր: Իսկ տ՟ր վկայն
խանդաղատելով զնովաւ՝ ասէր. մի երկնչիր

ոչ

սիրելի ․ բժշկեսցէ զքեզ տէր յա՛ քո տանս խմ․
և զայս ասացեալ գնաց ։

Յայս զարթուցեալ Մարիանոս՝ ՚ի քնոյ անտի՝ յարեաւ եկաց ՚ի վ(եր)այ ոտից իւրոց ․ և աճէր և խնդութ(եամ)բ լցեալ՝ ՚ի բաց եդ զհանդերձս հիւանդութեան, և առեալ նոր զգեցաւ ․ և ածեալ գօտի ընդ մէջ , և կօշիկս յոտս , յարուցեալ գնաց ՚ի վկայարան (նո)ցին ․ և եկեալ ՚ի տեղին՝ ուր կային ծածկեալ նշխարք նց(ա) , ընկեց զինքն ՚ի վ(եր)այ արծաթապատ կազմածին , որ տապանաձև յօրինեալ կայր առաջի նկարագիր պատկերի վկային ․ և սկսաւ արտասուօք գոհանալ , և հայցէր շնորհս յ(ա)յ բարեխօսութ(եամ)բ (նո)ցին ․ ո(րպէս) զի անարատ պահեսցի առաքինութ(եամ)բ նց(ա) յ(ա)մ մերձենայից բանսարկուէին ․ և գնացեալ ՚ի տուն իւր՝ ետ զ(ա)մ ինչս իւր ՚ի ձեռս աղքատաց ․ իսկ զհանդերձս մեծագինս , և այլ ևս բազում գանձս ոսկւոյ և արծաթոյ առեալ տարաւ ՚ի սպաս պաշտաման տաճարի (նո)ցին ։

Դարձեալ ՚ի ժամանակս Մօրկայ կայսեր՝ իշխանն աբարաց յինքն գումարեաց զ(ա)մ ազգս բարբարոսաց՝ տալ պատերազմ ը(նդ) տէրութե յունաց ․ դիմեաց յ(եր)ն Թրակացւոց և լիւրիկացւոց յաւարի առնուլ զն(ո)ս ․ և եկեալ եհաս յ(ա)մապահ քաղաքն Թեսաղոնիկեցւոց , որ էր քան զամենեսեան բարգաւաճեալ բազմայարմար փարթամութ(եամ)բ ․ քանզի զայս խորհէր բարբարոսն ՚ի միտս իւր ․ թէ զնա առից, այնուհետև դիւրաւ դիմեցից ՚ի վ(եր)այ Թ(ագաւո)րական քաղաքին , և զառաւել ածից զթ(ագաւո)րն յունաց ։

նաց ։ Արդ եկն եհաս յանպատրաստից 'ի վ՞ր Թեսաղոնիկեայ անհուն բազմութ՟բ յաւուր կիրակէի նախ քան զժամն առաւօտու՝ յամենայնն սեպտեմբերի, որ օր իը՟ էր ամսոյն ։ և գաղտ 'ի գիշերի պատեալ պաշարեաց զքաղաքն ։ և զօրք նր՟ սողելով մեղմագնաց քայլիւք մերձեցան 'ի պարիսպն, իւրաքանչիւր սանդուխս ըն՟ անձին բարձեալ ։ և քանզի ոչ գոյին պարսպապահք, սկսան 'ի վեր ելանել, մինչև էր այգոյն քաջ մերկացեալ ։ և իբրև ելին բազումք և քաջամարտիկք 'ի նոցանէ, սուսերամերկ եղեալ կամէին 'ի քաղաքն յարձակիլ ։

Յայնժամ յանկարծակի ոմն վկայն Դեմետրիոս ել ընդ առաջ նց՟ 'ի կերպարանս զինուորի, եհար զմի ոմն 'ի նց՟է գեղարդեամբ, և Թափանց արարեալ ընկեց յայնկոյս պարսպին ։ և զայն տեսեալ այլոցն, և զարհուրեալք 'ի տեսլենէ նր՟, առհասարակ 'ի վայր հոսեալք՝ արտաքս անկանէին ։ այս նախ առաջին հրաշագործեցաւ 'ի ձեռն նր՟ մարտիրոսին ։ Իսկ 'ի լուսանալ աւուրն իբրև գիտացին բարբարոսքն՝ թէ ոչ գոյ զօրք 'ի քաղաքին, յարևելեան կողմանէ պարսպին մինչև յարևմտից դուռնն՝ որչափ ինչ տեղի կայր 'ի ցամաքին 'ի ծովէ մինչև 'ի ծով՝ սապարափակ արարեալ լցին զարտաքին խանդակսն պարսպին ։ և անհամար բազմութ՟ին իբր 'ի վերայ միմեանց կուտեալ՝ մօտ էին 'ի ներքս հոսիլ ։ մինչև անյոյս լինել ամ՟ բնակչաց քաղաքին, և հեղուլ միաբան արտասուս

իբրև

իբրև զվտակս ջուրց ։ Իսկ տէր վկայն քոյ դե-
մետրիոս առանձինն ընդ էմ զինեալ բարբա-
րոսաց՝ ոչ թողացուցանէր նմա 'ի ներքս մտա-
նել . և զայսպիսի նախախնամողական տես-
չութեան երևումն՝ միայն արժանաւորք ոմանք
'ի Հաւատացելոցն տեսանէին ։

Իսկ յայսպիսի պաշարման եկաց քաղաքն՝
սկսեալ 'ի քսանևերկուցն սեպտեմբերի մին-
չև 'ի յուլիս ամիս յաջորդ տարւոյն . և 'ի ժա-
մանակս պտղոյ երկրին ցանեալ ցրուեցան
զօրքն բարբարոսաց յամ գաւառն , և սպա-
ռեցին զամ ցորեան և զգինի և զամ միրգս .
և թեսաղոնիկեցիք՝ որ ոչն ունէին զպատ-
րաստութիւն , յերկարութեան պաշարմանն 'ի յե-
տին վտանգ սովու անկանէին ։ Յայնժամ վայ-
րի կամեցաւ այծ ցուցանել ամենեցուն , թէ
միայն բարերարութեամբ իւրով՝ որ 'ի բարեխօ-
սութէ նորայ վկային , եգիտ քաղաքն զփրկութիւն ։
Եւ զի այր ոմն էր 'ի քաղաքին 'ի պատուա-
կան ազգէ՝ յոյժ երկիւղած 'ի ամնէ , և զար-
դարեալ ամ գործովք բարեաց . սա տեսա-
նէր յաւուր միում յորժամ ննջէր 'ի տանն
իւրում , տեսիլ ինչ սքանչելի . իբրու զի արք
երկու լուսազգեստք եկին մտին 'ի վկայա-
րան նորին դեմետրի , ընդ թէ պատգամաւոր
եկեալ իցեն յայն առ նոյն . և ասեն ցնա . տէր
յոյ քո առաքեաց զմեզ ով դեմետրէ , ընդ զի
թողցես զքաղաքս զայս , և եկեսցես առ
նա . վն զի մատնելոց է զսա 'ի ձեռս բարբա-
րոսացն ։ Իսկ նա Հարուստ ժամ մի տխուր
գիմօք 'ի վայր նայեցեալ՝ ոչ տայր պատասխանի նմա .

ապա

տապա յետ այսորիկ ասէ ցնոսա. ոչ այդպէս առեալք իմ և ծառայակիցք, ոչ երթամ աստի, և ոչ թողում զհայրենի բնակութիւնս իմ. վն զի աստ կատարեցայ, և աստ հովուեցից զհոտ իմ. այլ այսպէս ասասջիք ցփրկիչն իմ և Ածն, թէ ով տր զիա՞րդ կորուսանես զայսքան ժողովուրդ՝ զոր գնեցեր պատուական արեամբդ քով. այո տր՝ մի աններ տր մեղաց մարդկանս այսորիկ, այլ՝ ըստ բազում ողորմութեան քում. վն զի ցասումն քո ոչ եթէ զկորուստ խնդրէ, այլ՝ զդարձ և զապաշխարութիւն. այլ թէպէտև խրատես տր, քաղցրութբ արասցես, և մի բարկութբ: Եւ յասել զայս վկային մարդասէր գթով, ողջունեալք 'ի նմանէ արքն պատգամաւորք՝ դարձան անդրէն, ուստի եկեալն էին:

Իսկ այրն երկիւղած զարթուցեալ 'ի քնոյ անտի՝ ել վաղվաղակի 'ի պարիսպն. շրջէր քաջալերէր զմարդիկն. մի երկնչիք ասէ եղբարք, վն զի ոք վկայն Քի Դեմետրիոս ընդ մեզ է. և նա խոնարհեցուցանէ զբազմագութն Ած յողորմութի՝ չկորուսանել ըզքաղաքս զայս վն անօրէնութեանց մերոց. միայն փութասջիք խոստովանել և ապաշխարել զմեղս մեր. և քաղցրութիւն Այ վաղվաղակի ժամանեսցէ առ մեզ: Որ եղև իսկ, և կատարեցաւ, և յանդ ելին աղօթք սբյն. վն զի բարբարոսքն ինքնին չուեալ գնացին յՑն իւրեանց, և քաղաքն և գաւառն ամ դարձեալ յառաջին ազնուականութեն պայծառանայիւն:

Առ այս յաւելաւ միւս ևս սքանչելիք ողոր-մութեն քո 'ի տեսչութէ նոյն ․ զի յետ հնչե-լոյ համբաւոյն՝ թէ պաշարեալ կայ Թեսա-ղոնիկէ , ոչ գային անդ նաւք վաճառականք հացի և այլ կերակրոց ․ վսն և յետ ազատու-թեան պաշարման կայր քաղաքն և գաւառն նեղեալ 'ի սովոյ ։ Եւ ահա նաւք բազումք ելեալ յՅէն իտալացւոց՝ նաւէին 'ի բիւզան-դիոն , բարձեալ ունելով յինքեանս ցորեան բազում ․ յայնժամ երևեալ նմ որքն դեմե-տրիոս 'ի սահմանս քիոսին կղզւոյ ( այն է կիւ , կմ սախըզ ) , ասէ ցնաւապետ նաւացն այ-նոցիկ՝ որում անուն էր ստեփաննոս , և ցըն-կերս նր ․ յո՞ նաւէք դուք եղբարք ․ և նք ա-սեն ․ 'ի բիւզանդիոն ։ Ասէ ցնա ․ ոչ այդ-պէս ․ այլ եկա՛յք զկնի իմ 'ի Թեսաղոնիկէ , և անդ բազում շահս շնորհեցից ։ Ասէ նաւա-պետն ․ լուեալ է մեր , եթէ աւերեալ է քա-ղաքն այն 'ի բարբարոսացն ․ զիա՞րդ երթի-ցուք անդր ։ Պխննի եա տեսիլն , և ասէ ․ ես եմ դեմետրիոս վկայն քո՝ որ անդ կառա-վարեցայ ; և անդ քաղաքապետ եմ ․ մի՛ երկըն-չիք , եկա՛յք զկնի իմ ․ վն զի յոյ առաքեցայ ես առ ձեզ ։ Եւ յուղղեալ վկային զառա-գաստն ըստ շաւիղս հողմոյն՝ աջողակ եղեալ՝ վաղվաղակի հասին 'ի Թեսաղոնիկէն ։ Յայս-մանէ և այլ բազում նաւք եկին անդր ․ և ամն քաղաքն և գաւառն լցեալք հացիւ , փա-ռաւոր առնէին զած , որ այսպէս հրաշագոր-ծեաց առ նս 'ի ձեռն վկային իւրոյ դեմե-տրիոսի ։ Թո՛ղ և զայլ բազմապատիկ նշանս

բա-

(4) Հ. առ համառօտութեն չփութէ զանցս հրաշից եղե-
լոց առ յուստինիանոսիւ ի գործոց աւուրցն մօրկայ։
Յ. Ժմ. որոշ գրէ զեղեալսն յաւուրս յուստինիանոսի,
և հարևանցի զեղեալսն առ մօրկաւ. իսկ Ճ. Ճոխա-
գոյն բերէ զպատմութիւն աւուրցն մօրկայ 'ի Թղթոյ
եւսեբի եպիսին, յորում փակին անցք ժմկին յուստինիա-
նոսի. և ապա երևի առն՝ որ ինչ յայլոց գրի։ Նոյն-
պէս Ճ. միայն՝ լռով անանցէ ի գրելոցս զպատմութիւն
մարկիանոսի, և պաշարման Թեսաղոնիկեայ. զոր այլք
քանի մի տողիւք հարևանցի նշանակեն։ Լաւ է լսել
զվերջաբանութիւն Ճ. որ ունի այսպէս. * Արդ զայս
,, քրիստոսակարանս յարմարեցաք եղբարք ի վկայութիւն
,, սրբյն. զի մեր հաւատացեալք ընթերցեալ զսա՝ մտա-
,, գիւրութ կատարեսցեն զքրիստոսակ սէրն. մեզ զի նո-
,, քօք կարեմք ողորմութիւն գտանել յեյ յայսմ յի և 'ի
,, հանդերձելումն, նաև մեղաց թողութիւն և 'ի պատու-
,, հասից զերծումն, և մեր ունաեք (սք, և այլն մեր ուսու-
,, ցիչ) իցէ մեղ, եթէ ոչ նոցին մք աղօթիւքն. զի մեր
,, իրօք զհեզութիւն և զմարդասիրութիւնն այլեանքեանց
,, կրեցին՝ մինչ տատէին, և յորժամ անդր չոգան. այլև
,, առա խաչակցեալք ի քսի, և անդր Թղթեալք ի նմ,
,, բազում համարձակութե պատ ինչ զոր և հայցեն մեր
,, մեր, ընդունին 'ի նմանէ։ Այլ և մեք բազում փութով
,, զքրիստոսակս նց կատարեսցուք. զի և փառաց նց առ-
,, ժանի լիցուք, և ի նոսին յարադրեմ բերկրանօք
,, փառաւորեսցուք զհայր և զորդի և զսբ հոգին՝ այժմ
,, և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն||։





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբյն Բասիլիսկոսի զօրականի, և Բասիլիոսի քահանայի ։

'Ի մի զօդ կատարման միաւորեմք զերկասին փառաւորեալ վկայքս, որք միով կոչմամբ հոմանձայնութեամբ ընկերեալ գնեն ընդ դեմետրեայ վկային 'ի տօնացուցի մերում այսպէս. * դեմետրեայ վկային, և բասիլիսկոսի քահանային ‖. ուր ոչ բարւոք առի ըղդեմետրեայ 'ի Թեսաղոնիկէ կատարեալ, չփոխումն առի զբասիլիսկոսէ քահանայէ յամասիա կատարեալ. կայ և օրինակ՝ յորում գրի բասիլիոս քահանայ, որ յամասիա կատարեցաւ. փոխանակ ասելոյ, * բասիլիսկոսի զօրականին ամասիացւոյ՝ որ 'ի կոմանա, և բասիլիոսի քահանային՝ որ յանկիւրիա կատարեցաւ ‖. Սոյն զի զօրականն ամասիացի 'ի ճառընտիրս կոչի բասիլիկոս, և քահանայն անկիւրացի 'ի յայսմաւուրս կոչի բասիլիսկոս. և դժծլ են որ զզօրականն եմս կոչեն, և են որ զքահանայն 'ի կեսարիա ասեն նահատակեալ ։ Սպատճառս շփոթութեան յայտնի կացուսցուք 'ի ծանօթութիս (1). ժամէ աստանօր զհարազատ վկայաբանութիւ աւանդել, որովք բառնի ամ շփոթ ։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Բասիլիսկոսի ամասիացւոյ, զօրականի :

Հ. Մայ. 25. և Մարտ. 3 : Յ. Լ. Մայ. 22. և Մարտ. 3 Ճառընտ. Բ. Ն = Նէղ. և Օ. Մղջ = յջ : Բոլլանդեանք. 'ի Մարտի. 3. եր. 235 = 241. և օգոստ. 14. 'ի հայս ամէնէ. երես. 665. 666 : (2)



Բ ԱՐԵՅԱՂԹ ՎԿԱՅՆ քի և առաքելոյն զօրականն բասիլիսկոս կմ՝ բասիլիկոս էր ամասիացի, 'ի քումելայ կամ 'ի խուլմիաղոնէ գեղջէ ամասիայ քղքին պոնտոսի կապադովկացւոց, 'ի գաւառէն արմենիակաց, եղբօրորդի մեծ վկային Թէոդորոսի. և առ նովաւ իսկ կարգեալ էր 'ի կայսերական զինուորութն յաւուրս Մաքսիմիանոսի արքայի՝ գաղերիոս արմենտարիոս կոչեցելոյ՝ 'ի միում գնդի Է այլ երկուս յազգականաց իւրոց, որոց անուանք էին Եւտրոպիոս և Կղէոնիկոս : Իսկ եղև զի երեքին սոքա 'ի միասին արկան 'ի բանտ վս անուանն քի հրամանաւ ասկղեպիադեայ դատաւորին պոնտոսի. և նքն Եւտրոպիոս և Կղէոնիկոս վա-

զաւազոյն յատեանն ածեալ՝ կատարեցին զընթացս իւրեանց արիական նահատակութեամբ յամսեանս սոյն. զորոց լինի յիշատակ 'ի կարգի յայսմաւուրաց մերոց և այլոց 'ի մարտի. Զ:
Բայց երանելին Բասիլիսկոս յերկար պահեցաւ յարգելանս. և ապա առաւելագոյն հանդիսիւ կատարեցաւ 'ի կոմանա. ոպ գրեաց ականատես վկայն եւսիգնիոս. յորմէ առեալ են և ամ վկայաբանք ըստ ժառընտիրս մեր. և ունի պատմութիւն այսպէս:

Իբրև մեռաւ ասկղեպիադէս դատաւորն պոնտոսի, առաքեցաւ անդր 'ի մաքսիմիանոսէ 'ի տեղի նր ագրիպպաս դատաւոր, առեալ իշխանութի հրաման տալոյ ըստ ամ կողմանս արեւելից՝ ժողովել զամ հաւատացեալս 'ի քս, զի զոհեսցեն դիցն նր. և զորս ոչ հնազանդին՝ կորուսանել ազգի ազգի տանջանօք: Արդ յաւուրսն յայնոսիկ՝ յորժամ 'ի բանտի էր երանելին բասիլիսկոս յամսեանս, լալով յաղօթս կայր և ասէր. Տէր իմ յս քս յիշեա զիս զմեղաւորս, և մի մոռանար զիս իսպառ. այլ և զիմ կոչն յայտնեա, զի մի մեկնեցայց 'ի դր վկայից քոց յընկերաց իմոց:
Եւ երևեցաւ նմա փրկիչն 'ի գիշերին յայնմիկ, և ասէ ցնա. յիշեցի զքեզ և ոչ մոռացայ. և ահա գրեցի զանուն քո ըստ առաջին վկայսն. դու տրտմեցար՝ եթէ զկնի նոցա մախձանիս, բայց ես յառաջ քան զնս արարից զանուն քո, և արարից զքեզ անուանի. այլ այժմ երթ հրաժարեա յազգատոհմէն քումմէ. (զի թերևս ըստ յամենալն նորա 'ի բանտ

բանտի՝ ծփելին խորհուրդք նր̃․ ) և եկեալ կատարեսցես փութով զընթացս քո, և եղիցիս կատարեալ․ և մի երկիցես 'ի տանջանաց, զի ես ը̃ քեզ եմ։

Իսկ երանելի նր̃ վկայն իբրև զարթեաւ 'ի քնոյ, ետես զդուրս բանտին բացեալ, ք̃զի առաւօտ իսկ էր․ սկսաւ աղաչել զպահապանսն, և ասէ․ շնորհեցէք ինձ աւուրս չորս՝ երթալ հրաժարել յազգատոհմէ իմմէ, և 'ի գեղջէն Քումելայ, և յետ այնորիկ եկից վաղվաղակի, և երթայց առ Ճշմարիտ հայրն իմ յս̃ քս̃, որպէս հրամայեաց ինքնին ինձ նր̃ ։ Իսկ զինուորքն ասեն ցնա․ կենդանի է տր̃ն քո, եթէ ոչ երկնչէաք 'ի դատաւորէն՝ որ 'ի մօտոյ ունի մտանել 'ի քաղաքս, բնաւ իսկ արձակէաք զքեզ․ այլ երկնչիմք, գուցէ 'ի թողուլն զքեզ՝ խնդիր ինչ առնիցէ քեզ։ Ասէ Բասիլիսկոս․ թողէք զիս հանդերձ պահապանաւ․ և ես փութով դառնամ այսօրէն․ և հաւատացին զինուորքն, և արձակեցին զնա և զերիս զինուորս ը̃ նմա։

Եւ չոգաւ նոքօք մինչև 'ի գիւղն, և եգիտ զընտանիս իւր․ քանզի ունէր երիս եղբարս և մայր․ կարդաց առ ինքն և զամ̃ ազգատոհմն և զբարեկամս իւր․ և խօսեցաւ առ նս̃ բազմօք վս̃ հոգւոյ փրկութե̃ և յաղագս վճ̃պութե̃ն քի̃, և մխիթարեաց զնս̃․ և 'ի հրաժարելն իւրում ասէ ցնս̃․ հա́րք իմ և եղբարք հաստատուն կացէք դուք 'ի հաւատսն քի̃, և վս̃ իմ աղօթս արարէք, զի արժանի եղէց վկայութեան․ զի ահա հրաժա-

րեմ 'ի ձեռն , և այլ ոչ ևս տեսանէք զիս մարմնով ։ Զայնժամ ասեն ցնա արտասուօք ․ Երթ և բարեխօսեա վն մեր և վն ամ ազգաց , զի բարձցի կռապաշտութի յերկրէս , և կացցեն շնորհքն քո 'ի վերայ երկրի ․ զայս աղաչէին նք զնմն ․ և նա փութայր դառնալ 'ի տեղի իւր ։

Իսկ դատաւորն ագրիպպաս եկն եմուտ 'ի քաղաքն ամասիա ․ և կոչեաց զաւագս քաղաքին , և չոգան 'ի տուն կռոցն , 'ի տեղի ասպարիզին' որ կոչիւր պատոսս կմ պետասան ․ և կամէր զոհս մատուցանել ․ վնյ խընդիր արար կապելոցն' որոց անուանք կային 'ի գրի , զի եկեսցեն և զոհեսցեն ․ ապա թէ ոչ' դատաստան մահու ընկալցին ։ Այլ իբրև ածին զկապեալսն , և բասիլիսկոս ոչ էր ընդ նս , եկն դահճապետն 'ի բանտն' խնդրել զնա ․ և ոչ գտեալ' կապեաց զբանտապետն , և տարաւ առ դատաւորն ․ որ և չարչարեաց զնա տանջանօք , և ասէ ցնա ․ Ընդէր փախուցեր զմահապարտն ։

Այլ բանտապետն խնդրեալ ժամադրութի' ետ երաշխաւոր , զի 'ի չորս աւուրս ածցէ զնա ․ քանզի երկու աւուրք էին' յորմէ հետէ երթեալ էր 'ի գեղն ․ և արձակեցին ընդ նմա մագիստրիանոս զոմն անագորոյն իբրև սատակայն , և զօրականս ։ Այլ դատաւորն չուեաց անտի 'ի կոմանա' որ և կոմանի , և զբասիլիսկոս անդր հրամայեաց ածել ․ զի անդ դատելոց էր զկապեալս ․ և պատուէր տուեալ ցմագիստրիանոսն և ցզօրականսն' ասէ ․ կա-

պեալ

պետս ածէք զայրն տանջանօք և լլկանօք ,
մի՛ գուցէ խաբիցէ զձեզ , և կորնչիլ ածիք

դուք :

Իսկ եղեալ գնացին 'ի գեօղն քումելայ 'ի
խնդրել զորբսն . գնաց Է նոր ինքնակամ և եւսեգ-
նիոս դպիր յիշատակաց՝ դրօշ բանիցս . և
գտին զորսն . և կապեցին զնա կրկին շղթայ-
իւք , և արկին անուր 'ի պարանոց նր . արա-
րին նմա և կօշիկս պղնձիս , և ագուցին նմա ,
և հարին հեղուսս երկայնս . մինչ զի եր-
կաթնքն Է դարշապարան 'ի վեր անցանէին ,
և 'ի գնալ նր գետք արեան խաղային յոտից
նորա . և այնպէս դառն տանջանօք դատէին

զերանելին :

Իսկ զայս իբրև տեսանէին ազգատոհմքն և
բարեկամքն և գեօղ նր , ամենեքեան լային .
և յղարկեցին զորսն՝ գնալով Է նմա յերկար .
և մայրն մոռացեալ զկակիծ զաւակին՝ քա-
ջալերս տայր նմա արիանալ 'ի հանդէս նա-
հատակութե վն փառաց անուանն քի : Ապա
երանելւյն հրաժարեաց 'ի մօրէն և յեղբարցն
և յամ բազմութենէն . ասէ . մի՛ լայք զիս , այլ
աղօթս արարէք վն իմ . և համբուրեաց զամ
մերձաւորս իւր , և աղաչէր զնս դառնալ , և
ասէր . դարձէք ունիմ տեսանել զձեզ յԴին
կենաց . և մագիստրիանոսն՝ որ գնայր հե-
ծեալ յէշ , իջեալ 'ի վայր՝ սաստիկ դարձոյց
զնս 'ի նմանէ : Իսկ երանելին սկսաւ սաղմո-
սել զձայնապարհայն , և ասել . եթէ յարիցէ
'ի վր իմ պատերազմ , ոչ երկիցէ սիրտ իմ .
Տր է իմ օգնական , և ես տեսից 'ի թշնամիս
իմ .

իմ. տ͞ր ապրեցո զիս 'ի բերանոյ առիւծուց,
և խառնեա զիս 'ի գունդս նոցա քոց:
Իբրև հասին 'ի գեօղ մի՝ որում անուն էր գո-
կազարին կմ դակոզարոն (ը͞ ∴. որեակն),
անդ կամեցան հանգչել վայր մի 'ի տօթաժա-
մուն. և տիկին գեղջն այնորիկ հեթանոս
էր; և անուն նր տիանէ կմ տրոյիանէ. սա
արար. ճաշ մագիստրիանոսի և որոց ը͞ նմա.
բայց դպիրն ոչ գնաց, այլ կայր ը͞ բասիլիս-
կոսի. և էր նորն կապեալ ձեռս յետս, և
կայր առ ծառոյ միոջ. և բազում մարդիկ
ժողովեալ էին առ նա. և գիտէր տմ ոք, զի
ծառն գոս էր. և 'ի մերձենալ նորյն անդէն
դալարացաւ և ծաղկեցաւ. եղև և շարժումն
և ձայն ահեղ. և աղբիւր մի ել 'ի տեղւոջն:
Իսկ տեսեալ բազմութե զսքանչելիսն՝ ան-
կանէին յոտս նորյն բասիլիսկոսի, և ասէին.
այրս այս յա͞յ եկեալ է, և չէ սա 'ի մարդկա-
նէս: Յայնժամ բերին առաջի նր դիւահար
մի, և անդամալոյծ մի, եւս և բորոտս և այլ
ախտաժետս, և ընկեցին առ ոտս սրբյն բա-
սիլիսկոսի. և նա անուամբ տն բժշկեաց զնս.
և որք տեսանէինն՝ փառաւոր առնէին զա͞ծ,
և բազումք հաւատացին 'ի տր. ը͞ որս և տի-
կին գեղջն հաւատաց յա͞ծ հանդերձ որդւովք
իւրով տրոյիանոսիւ. և տմ տուն նր մկրտե-
ցան յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սբյ:
Իսկ զօրականքն իսկ 'ի լերանց դիմեցին և եր-
կիրպագին նորյն, և խոնարհեցուցեն զծունր՝
ցուցանէին գոհանալ զնմանէ թերևս վասն
բղխման ջրոյն. մինչև զարմանալ մագիս-
տրիա

տրիանոսի և որոց ը̄ նմա , և զղջանալ ընդ-
չարիսն՝ զոր անցուցին ը̄ վկայն . և յայնմ
հետէ դիւր առնէին նմա ։

Այլ 'ի վաղիւ՞ անդր առաւօտուն յարեաւ մա-
գիստրիանոսն , էառ զն̃ըն բասիլիսկոս , և
եկն 'ի կամրջախելս գետոյն՝ որ կոչիւր իրաս
կմ իրիս , զի ոչ գոյր նորա այլ հուն . և կա-
մուրջն շարժեցաւ 'ի հիմանէ 'ի գալ ն̃ըյն .
վս̃ զի անտեսաբար ճանապարհակից էր ք̃ս̃
իւրումն վկայի՝ ասէ՛ եւսիգնիոս , ով և ինքն
իսկ բասիլիսկոս յետոյ պատմեաց ինձ . յայն-
ժամ յաղօթս եկաց ն̃ըն , և արձակեաց զամ-
բոխն՝ որք զհետ ընթանային ն̃ր 'ի գեղջէից .
և ուր և անցանէր ը̄ անդս երկրին կմ ընդ-
բարձր տեղիս , ծունր եդեալ յաղօթս կայր
և ասէր . ը̄ ա̃մ տեղիս տ̃րուն քո ա̃ծ . օրհնեա՛
ա՛նձն իմ զտ̃ր ։

Այլ իբրև հասին 'ի գիւղ մի կոչեցեալ սուա
կմ սասոն , և կամէին ճաշակել , ստիպէին և
զն̃ը վկայն առնուլ կերակուր . և նա ո՛չ կա-
մեցաւ , այլ՝ ասէ . զիս կերակրէ ա̃ծն իմ և
տ̃ր յս̃ ք̃ս̃ ։ Այլ ասեն ցնա . ո՛յր դու գուցէ 'ի
սովոյ մեռանիցիս , և կորնչիմք մեք վս̃ քո .
զի ահա այս երեք աւուրք են , զի ոչինչ ճա-
շակեցեր ։ Իսկ երանելին սկսաւ ուսուցանել
զն̃ս , և ասէ . լցեալ եմ անմահ խորտկօքն ,
և ո՛չ գոյ տեղի այս մահկանացուին . զձեզ
պարարէ կերակուր , և զիս բանն ա̃յ . զձեզ
ուրախ առնէ գինի , և զիս շնորհք հոգւոյն
ն̃րյ . զձեզ կերակրէ միս , և զիս աղօթք . զձեզ
ծածկեն հանդերձք ձեր , և զիս արդարութին
ք̃սի .

քնի. դուք ցնծայք յերգս, և ես յաղօթս. դուք վայելէք յուսկւոջ, և ես յորդլին տյ։ Դուք յուսայք 'ի թգաւորն՝ որ առժամանակ մի է, և ես յուսամ՝ որ յաւիտենից է. դուք յուսայք 'ի պատիւ երկրիս, և ես յուսամ յերկինս. դուք յուսայք 'ի գովութիւն առ 'ի մարդկանէ, և ես յուսամ 'ի գովութիւն յաւուր յայնմիկ՝ յորժամ ասիցէ տր մեր. Եկա՛յք օրհնեալք հօր իմոյ՝ ժառանգեցէ՛ք զարքայութիւն երկնից։

Եւ իբրև կատարեաց սրբն զխօսսն, հրամայեաց մագիստրիանոսն կազմել նմա գրաստ, զի նստցի 'ի վն իշոյ միոյ։ Եւ իբրև ածին զգրաստն, ոչ կամեցաւ նստել. այլ ասէ. զձեզ հանգուցանեն երիվարք ձեր, և զիս հանգուցանէ տր յս քս։ Ասէ մագիստրիանոսն. զերիս աւուրս նօթի ընթանաս, նիստ փոքր մի 'ի գրաստ. իսկ սրբն ասէ. զքմ հանգիստ և զդիւրութի տայ ինձ տր հոգին։ Եւ 'ի փողո՛ց անդր հասին 'ի քաղաքն կոմանա. ուր լուա՛ն վն բազմաց, եթէ չարչարեցին զնա դառնութ՝ որ ոչն կամէին զոհել կռոց։ Եւ տր երևեցաւ բասիլիսկոսի, և ասէ. զօրացի՛ր և մի երկնչիր 'ի սպառնալեաց անօրինաց, զի ես ընդ քեզ եմ։

Եւ 'ի մտանել նց 'ի քաղաքն և 'ի հարցանել, թէ ո՞ւր իցէ դատաւորն, լուա՛ն՝ եթէ 'ի տաճար ապողոնի երթեալ է՝ զոհս մատուցանել. և ամենայն քաղաքն անդր էին ժողովեալ. և եկն եմուտ մագիստրիանոսն առ դատաւորն, և ասէ. ահա ածի զբասիլիսկոսն.

կոսն ։ Իսկ դատաւորն ուրախ եղև, իբրև լուաւ զայս․ և հրամայեաց ածել 'ի ներքս զնր վկայն, զի զոհեսցէ․ և եթէ ոչ կամեսցի, չար մահու սպառեսցի ։ Իսկ եկին զին-ուորքն և գրգռեցին զնա, և ասէին․ երթ 'ի ներքս, զի դատաւորն հրամայեաց քեզ զո-հել, զի կեցցես․ և եթէ ոչ, չար տանջա-նօք կորնչիս․ խնեամ զքեզ, զի մի անժամ մեռցիս՝ հաւատալով անպատշաճ յանտես Ածն ։ Իսկ նր վկայն ասէ․ իմ Ածն յամ ժամ տեսանէ զընթրեալս իւր, և արժանաւորք իւր տեսանեն զնա 'ի ձեռն նշանաց և սքան-չելեաց նորին․ եթէ ես լռեմ, դոքա ասեն ձեզ՝ որ է̄ խօսք էին 'ի ճանապարհին, և տե-սանէին զսքանչելիսն քո՝ ուր և անցանէաք ։ Յայնժամ զօրականքն սկսան պատմել զոր տեսինն․ և ասեն․ արդարև մեծ սքանչելիս տեսաք, ուր ոչ գոյր մոգուն ինչ ։ Իսկ ասեն ցնա զինուորք դատաւորին․ միայն միանգամ զոհեա, և արձակիս․ և այնուհետև զինչ կամիս՝ արա ։

Իսկ մինչդեռ զայս խօսէին, եկն նուիրակա-պետ մի, և ասէ ցնա․ կոչէ զքեզ դատա-ւորն, զի զոհեսցես Ածոցն նր ։ Յայնժամ եմուտ բասիլիսկոս առաջի դատաւորին լի ուրախութեամբ վն մերձենալոյ ժամուն նա-հատակութեան․ և երեսք իւր պայծառացեալ էին, և մարմինն ծաղկեալ ։ Իսկ ասէ ցնա դատաւորն․ դու ես բասիլիսկոսն․ և նա ասէ․ այո ես եմ ։ Դատաւորն ասէ․ ընդէր ոչ զոհես ։ Բասիլիսկոս ասաց․ քեզ ո՞վ ա-սաց,

տաց, եթէ ոչ զոհեմ. զի ես իմոյ ա̃յն յա̃մ ժամ մատուցանեմ պատարագ օրհնութեան։
Առ այս զուարճացաւ դատաւորն, և ասէ. շնորհք ա̃ծոցն, զի բասիլիսկոսն ասաց, թէ ես յա̃մ ժամ զոհեմ ա̃ծոցն։ Իսկ բասիլիսկոս մերձեցաւ առ բեմն, և ասէ ցպաշտօնեայս կռոցն. զի՞նչ անուն է ա̃յն ձերոյ. ասեն ցնա. ապողոն։ Եւ ասէ ցնո. բարիոք ասացիք, թէ ապողոն ասի (որ է յունարէն՝ կորուսանող), քանզի կորուսանէ զայնոսիկ՝ որ հաւատան 'ի դա. այլ զոր գիտեմն ես զփառաւորեալն ա̃ծ, նմա մատուցանեմ պատարագ օրհնութեան։ Եւ դատաւորն ասէ. որո՞ւմ կամիս՝ զոհեա՛, և երթ թափեա՛ ընդ մեզ 'ի քէն։

Իսկ ս̃րբն բասիլիսկոս սկսաւ մատուցանել զիւր բանաւոր պատարագս, և ասէ. Ա̃ծ որ արարիչդ ես երկնի և երկրի, Տ̃ր ամենակալ՝ դու միայն ես ճշմարիտ ա̃ծ հանդերձ միածնիւ̂ քով և հոգւովդ ս̃րբ. ա̃ծ անտեսանելի և անհասանելի, անպարագրելի և անբովանդակելի. ա̃ծ՝ որ քաւիչդ ես մեղաց, որ բազումողորմդ ես, ա̃ծ՝ որ անսպառ ես, ա̃ծ՝ որ մշտնջենաւորդ ես. և ոչ գոյ առաջի քո ակնառուի. դու ես ս̃րց քոց յա̃մ ժամ օգնական. դու միայն ս̃բ և բարերար ա̃ծ ես, և արդար յա̃մի. և յիս ցոյց զքո գթութիւնդ։ Որ զերկինս ձգեցեր իբրև զօթոց, և զերկիր հաստատեցեր 'ի վերայ ջուրց. որ զերկնական ջահն զարեգակն արարեր լուսաւորիչ երկնի և երկրի, և նո-

վաւ

վաւ երեւեցուցեր զաւուրս, զտարիս, զա-
միսս և զժամս, և զբուսոց աճմունս։ Տէր
ամենակալ, որ զլուսինն արարեր, և բա-
զումպէտս 'ի նմանէ պատրաստեցեր մարդ-
կան. և զաստեղաց բազմութիւն։ Որ ետուր
երկրիս գեղեցկութիւն ծառովք և բուսովք.
որ պսակեալ զարդարեցեր գոյնագոյն ծաղ-
կօք. որ զպտուղսն 'ի կերակուր շնորհեցեր
մեզ։ Որ զծով արարեր, և սանձեցեր զյան-
դգնութիւն ալեաց նր դուզնաքեայ աւազով.
որ ցուցեր 'ի նմա շաւիղս նաւի։ Որ արարեր
զմեզ և ստեղծեր 'ի քն ոք պատկերդ. կեր-
պարանեցեր անմահութբ և անձնիշխանու-
թբ. որ փչեցեր 'ի մեզ զհոգին սրբութե.
որ յադամայ մինչև ցայժմ, և յայսմ հետէ և
առյապայն պահես զսիրելիս քո, և փառա-
ւորես զերկրպագուս քո. որ բառնաս զմեղս
և փոխարկես զանօրէնութիւս. տր դու միայն
ես սբ և անբիծ։ Տէր ամենակալ լուր ձայ-
նի խնդրողիս քո, և արկ զահդ քո 'ի վր կը-
ռոցս այսոցիկ, որ խուլ և համր են. և յան-
դիմանեա զանօրէնութիւն սոցա, և ցրուեա
զստեղծեալ հաստատուածս սոցա. զի ծանի-
ցեն՝ թէ դու միայն ես ած. ցոյց զզօրութի զի-
տութե քո։

Եւ անդէն վաղվաղակի եղեն ահագին շարժ-
մունք և որոտմունք, և անկաւ հուր յերկ-
նից 'ի տնէ 'ի վր տաճարին, և այրեաց և
փշրեաց զդիս նոցա, և աւերեաց զերեւելի
մասն տեղւոյն։ Իսկ դատաւորն իբրև ետես
զայն, փախեաւ. և ամ բազմութին և զօրա-
կանքն

կանքն զահի հարանն յոյժ, և խոյս ետուն արտաքս. և մնաց միայն 'ի նեղքս Տէրն, և սկսաւ սաղմոսել և ասել. յարիցէ Աստուած, և ցրուեսցին ամ թշնամիք նր. փախիցեն ատելիք նր յերեսաց նր. որպէս պակասէ ծուխ՝ պակասեսցին. որպէս հալի մոմ առաջի հրոյ, այնպէս կորիցեն մեղաւորք յերեսաց այ:

Իբրեւ էանց ցասուամն, կոչեաց անօրէն դատաւորն ագրիպպաս զՏէրն առաջի իւր, և կրճտելով զատամունս իւր 'ի վն նր՝ ասէ. ով թշնամի մծոց՝ ընդէ՞ր ընդ իս զայլ ինչ խոստացար, և դու այլ ինչ արարեր. զի փոխանակ զոհելոյ՝ զտաճարն հանդերձ մծովքն այրեցեր. և եթէ ոչ էիր դու կախարդ, ապաքէն և դու այրեալ էիր 'ի տաճարին. զի դու միայն մնացեր անդ, և ոչ վնասեաց քեզ հուրն. և արդ ասա ինձ, զոհեմս մծոց. ապաթէ ոչ՝ սպանեցից զքեզ իբրև զայր մի մահապարտ: Պատասխանի ետ Տէրն. ես ո՛չ զոհեմ անօրէն և սխիղծ կռոցդ քոց. այլ մատուցանեմ պատարագ օրհնութեն հօր և որդւոյ և հոգւոյն Սրբոյ. Բարկացեալ ասէ ագրիպպաս. զոհեա՛ անմահ դից, զի մի մատնեցից զքեզ 'ի դառն մահ: Բասիլիսկոս ասէ. վայրենի՛ ժանտ, զի՞ զիս խափանես. քանզի փութամ ես կատարել զընթացս իմ:

Բարկացաւ դատաւորն յոյժ, և հրամայեաց տանել գլխատել զնա. և հանին զՏէրն արտաքս. և յետ կալոյ նր յաղօթս՝ գլխատեցին 'ի տեղւոջն, որ անուանեալ է դէոսկորոսն կամ դիոսկուրացւոց: Իսկ քահանայքն

պաշտ

պատառէր եւ զմարմին նորին գետընկէց առ-
նել. եւ ասէր. եթէ գտանիցի ոք առեալ ըզ-
մարմին նորա, զնորա մարմինն գէշ գազա-
նաց արկից. այլ որ խափանեաց զխորհուրդս
նոր. մինչեւ աղօթիւք նորին գալ եւ դատաւորին
՚ի հաւատս. զոր եւ սկսանի գրել ականատես
վկայաբանս ըստ օրինակիս ըստ այսմիկ ։

* Իսկ այլ եւս բազում օրհնութիւնք են սորին.
եւ գիտեմք զսրբութիւն նորա. եւ տեսաք զհոգի
նորա, զի վերացաւ յերկինս. եւ զօրք հրեշտա-
կաց եկին ընդառաջ նորա, եւ ընկալան զհոգին սրբ
վկային ։ Իսկ տէր մեր յս քս ասէր. եկ աշխա-
տեալ եւ վաստակեալ, եւ ես հանգուցանեմ
զքեզ. եկ Բասիլիսկէ մուտ յերկնից արքայ-
ութիւն յերանեան արդարոց, ուր ենն եւ որք ըմ-
բռնեցան ընդ քեզ ՚ի վկայութիւն վն իմ ։ Իսկ
մեք առհասարակ՝ որք միանգամ տեսօղք ե-
ղեաք խորհրդոյս, եւ լուաք զայս բարբառ-
ոյն, անկեալ ՚ի վր երեսաց՝ երկրպագեցաք
ոյն, գոհանալով զնմանէ՝ որ արժանի արար
զմեզ տեսանել զխորհուրդս զայս ։

Իսկ ՚ի տանել պրիսկոսի դահճապետի զմար-
մինն նորին ընկենուլ ՚ի գետ, աղաչեցաք զնա
տալ փոքր մի, եւ տուաք նմա գաղտ յըն-
կերաց նորա երեսուն դահեկան ոսկի. յայն-
ժամ ասէ այլոց ընկերաց իւր. երթայք դուք,
եւ ես գետընկէց արարեալ զդա՝ գամ առ ձեզ.
եւ նք հաւատացին նմա, եւ ՚ի բաց չոգան. եւ
պրիսկոս եւս մեզ զմարմինն նորին Բասիլիսկո-
սի ողջոյն, ասելով. մի ոք գիտասցէ, զի մի
վտանգ ինձ հասանիցէ ձեզ հանդերձ ։ Իսկ
՚ի

'ի մեկնիլն նր առեալ մեր զմարմին նր վկային՝ եղաք 'ի Թաքստի. և 'ի գիշերի բերեալ Թաղեցաք յարտավարի միոջ ('ի վարեալ արտի), և սերմանեցաք 'ի վր նր ոսպն. և 'ի նոյն գիշերի բուսաւ արտն. և 'ի վաղիւն անդր ծաղկեալ պտղաբերեաց:

Եւ ծարաւեաց մշակ տեղւոյն՝ որ էր հեթանոս. և 'ի խնդրել մեր յանուն սբյն ջուր 'ի տնէ՝ նոյնժամայն ել աղբիւր մի 'ի տեղւոջն; և արբ մշակն, և հաւատաց յած. արբաք և մեք, և զովացեալ գոհացաք զած. և մինչև ցայսօր ջուր յորդառատ բղխէ յաղբերէ անտի 'ի գովեստ փառացն ած, և վկային քնի բասիլիսկոսի. և առողջութի լինի հիւանդաց՝ որք հաւատով արբցեն 'ի նմանէ:

Եւ Է աւուրսն Է այնոսիկ այս պիղծ հարաւ 'ի դատաւորն ագրիպպաս, և խնդրէր նա զմարմին սբյն, և ասէր. միայն թէ մերձենամ 'ի նա, անդէն ողջանամ. և ոչ ոք իշխէր ցուցանել նմա: Զոգաւ 'ի տեղին՝ ուր սբյն գլխատեցաւ. և եգիտ նշան կաթ արեան, և քերեաց հանդերձ հողովն, և ծրարեաց 'ի նր կտաւս, և արկ Է պարանոց իւր (որպէս ուսանոց). և սրբեցաւ յայսոյն պղծոյ. և հաւատաց 'ի տր մեր յս քս. և մեռաւ բարեաւ ագրիպպաս||:

Յետ այսորիկ յաւուրս քրիստոնէութե առ մեծն կոստանդիանոսի շինեաց մարինոս կոմս մօտ 'ի քղքն կոմանայ մատուռն 'ի վր գերեզմանի սբյն բասիլիսկոսի. և առնէր ժողով տօնախմբութե յանուն սբյն. և նոյն

Եւ վկա

վկայարան է՝ ուր հանգեաւ յետ ժամանա-
կաց նշխն յովհան ոսկեբերան յաւուրս աք-
սորանաց իւրոց, յորժամ երևեցաւ նմն բա-
սիլիսկոս ընդ նշյն ղուկիանոսի քահանայի ան-
տիոքացւոյ, և ասաց ցոսկեբերանն. զօրա-
ցի՛ր և քա՛ջ լեր եղբա՛յր յովհաննէս, զի վա-
ղիւն ՚ի միասին լինիցիմք. ուր և երիցու վը-
կայարանին երևեալ՝ ասացեալ էր նմ. պատ-
րաստեա՛ տեղի եղբօր մերում յովհաննու.
զոր և յետոյ պատմէր ամենեցուն քահանայն
այն, որպ և եպս տեղւոյն : Իսկ յայսպիսի
բանից կարծեցին գրիչք ոմանք, թէ նա ինքն
բասիլիսկոս և ս իցէ քահանայ կմ եպս. որ
ըստ ստոյգ պատմութեն էր զօրական : Իսկ եղև
կատարումն նշյն բասիլիսկոսի յամի տն իբր
307 կմ 308, յաւուր կիւրակէի, յամսեանն
մայիսի՝ որ օր իԲ էր ամսոյն, ըստ Ճառընտ-
րաց :





# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Բասիլիոսի կմ՚ Բասիլիակոսի քահանայի անկիւրացւոյ :

Հ. յունուար. 2. և 14 : Յ. յունիսի . 2. և մարտ . 22 : Լ . մարտ. 22. Ռուս. փետր. 14 : Ռոբէ . մարտ. 22 : Բոլլանդեանք 'ի յուն. 2. և 'ի մարտի . 22. էջ. 15 = 18. և 379 = 383 : (1)



ՍՈՒՐԲ ՔԱՀԱՆԱՅՆ Բասիլիոս ( կմ՚ թէ մեզ Բասիլիակոս ) էր մի յերիցանց եկեղեցւոյն այ՝ որ յանկիւրիա գաղատացւոց , առ թ̃րութ̃ն կոստանդեայ կայսեր և յուլիանոսի ուրացողի , ուսուցիչ ե̃ղ մարդոյ զճանապարհն ճշմարտութ̃՝ որ 'ի տ̃ր մեր յ̃ս ք̃ս , և դարձուցիչ 'ի ճանապարհաց սատանայի և յամ՝ ներգործութեանց նր̃ , իբրև ախոյեան հզօր ը̃դդէմ արիանոսաց և արքանեկացն ց̃ , ոչ և ը̃դդէմ հեթանոսաց և ուրացողաց : Քանզի ասէր . խիստ ժամանակ կայ առաջի , և բազմապատիկ են զօրավարք բանսարկուին . վ̃ն զի պաշտօնեայս ունի զանազգեստս , որք 'ի ներքոյ են գայլք յափշտակօղք , և յածին որսալ զհոգիս անզգոյշ ընթանալեաց . զորոց զկատարածն ժամա-

նակս

նակս յայտնի արասցէ ամենեցուն ։ Եւ արդ միաբան 'ի խորհուրդս քնի կրթեալքս պընդապէս՝ զառաջնորդ հաւատոյ մերոյ մեծարեալ, և զանապական զգանձն յանմատոյց ամուրս հոգւոց պահեալ, առ ոտն կոխեսցուք զհոյլս մոլորութեց բանսարկուին, և փախիցուք 'ի պիղծ հրապուրանաց նր, զքս ունելով օգնական զյաւիտենից վարձահատոյց ։

Եւ զայս առնէր ոչ քահանայն զօրհանապազ՝ շրջելով Է քաղաքն նմ, և յանձանձելով զնմ մարդ՝ պինդ ունել զհաւատս ճըշմարտութե զոյգ Է գործոց բարութե, և փախչել 'ի հանդերձելոցն չարեաց ։ Արգելուլ կամեցան արիոսեանք և մակեդոնեանք ըզքարոզութի սբյն, բայց եպսունք ուղղափառաց հրամանն ետուն նմա համարձակ քարոզել զբանն այ. քանզի և ինքն իսկ աշակերտեալ էր Ածիմաստ արանց, և էր մի 'ի ծանուցելոց յարքունի պալատան. և զի ունէր վարս անպարսաւս և գովելիս առաջի այ և մարդկան, ոչ ոք իշխէր ստնանել ինչ նմա ։ Եղև զնմանէ ամբաստանութի առաջի կոստանդեայ կայսեր իբրև քարոզ լինել նորաձայնութե. այլ այրն այ հաւատարմացոյց, եթէ Ածմի հաստատուն պահէ զաւանդ հարցն սբց առաջնոց, և անմեկնելի կայ մնայ յուղիղ դաւանութե ։

Իսկ յորժամ թգրեաց ուրացօղն յուլիանոս, և եհան հրաման դառնութե պաշտելոյ ըզկուռս հեթանոսաց յամ տեղիս, նոյնպէս և

'ի գաղատիա, Որ քահանայն բասիլիոս հրա-պարակաւ օրհնելով զԱծ 'ի մէջ քաղաքին անկիւրիոյ՝ ասէր. Փրկի՛չ Տր քս, անշիջանելի՛ լոյս, յաւիտենից մեծութեց գանձ, կամօք հօր փարատիչ խաւարի, և հայրական հոգւով ամն հաստիչ, հայեա՛ց ոք և ահաւոր ակամբ քով, և ցրեա՛ զպիղծ կրօնս հաւատակորդաց ճշմարտութե քո, արգե՛լ զնս 'ի ցանկութէ սրտից նց. զի խորտակեսցի փուտ խորհուրդ նց, և մի՛ լինիցին խափան անձին հաստատելոյ 'ի քեզ Ած կենդանի յաւիտենից:

Իբրև զայն լուան հեթանոսք, բարկացան յոյժ. և մին 'ի նոցանէ մակարիոս անուն քուրմ եհար զքահանայէն՝ և ասէ. ո՞վ ես դու, որ շրջիս յարուցանես զամբոխն, և քակես զառ յինքնակալէն գեղեցիկ պատուիրեալ կրօնս ածոց: Բասիլիոս ասէ. ո՛չ եթէ ես ինչ խափանեմ, այլ Ած յերկնից աներևոյթ զօրութբ խափանեաց զայն. նայն և այժմ ցրուեսցէ և կորուսցէ զնմ խորհուրդս ձեր. զի 'ի յետին ակարութե վատթարեալ քակտեսջիք, և ժառանգեսջիք զպատրաստեալն ձեզ մահ անհնազանդութե:

Յայնժամ բարբառեցան Ըդդէմնք անօրէնք. և առեալ տարան զնա առ դատաւորն սատուռնինոս, և ասեն. այրս այս ամբոխ յարուցանէ 'ի քաղաքիս, և մոլորեցուցանէ զբազումս. և այժմ եկեալ կամէր և զբագինս կործանել, հայհոյելով զինքնակալն: Սատու-

տուռնինոս դատաւորն ասէ. ո՞ ես դու՝ որ
ցայդ վայր յանդգնիս: Բասիլիոս ասէ. ըղ-
մեծն քան զամ ասացից, քրիստոնեայ եմ:
Սատուռնինոս ասէ. եթէ քրիստոնեայ ի-
ցես. զի՞նչ է՝ զի զքրիստոնէի գործ չգործես:
Բասիլիոս ասէ. բարիոք ասես ով դատա-
ւոր, զի պարտ է գործոց քրիստոնէի՝ ամե-
նեցուն յայտնի լինել. զայդ արդար ասացեր:
Սատուռնինոս ասէ, և զի՞արդ խռովես զքա-
ղաքդ, և զինքնակալն հայհոյես որպէս ուրա-
ցող և յանցաւոր: Բասիլիոս ասէ. ո՛չ զինք-
նակալն հայհոյեմ, և ո՛չ զառ ՚ի նմանէ հաւա-
տացեալ կրօնն. մն զի ստուգապէս ինքնակալ
նա ինքն է ամենակալն ած, որ բնակեալն
է յերկինս. և արժանաւոր պաշտօնեայք նր
կրօնաւորք՝ հարքն մեր, որք յամ ժամ երկիր
պագանեն նմ ՚ի մք սրտէ. նա փութով կարող
է քակել զառ ՚ի ձէնջն սահմանեալ անհնա-
րին անօրէնութի. իսկ թագաւորն ձեր ած-
ամարտ՝ ինքնակալ ձայնեալ, ՚ի վաղիւն ան-
կանի ՚ի ձեռս թագաւորին մեծի երկնաւո-
րի, զի մարդ է երկրաւոր:

Զայս լուեալ դատաւորին՝ խռովեցաւ. հրա-
ման ետ կախել զնա և քերել. իսկ նորն ՚ի
կախաղանի անդ ասաց. գոհանամ զքէն տր
ած յաւիտենից, զի արժանի արարեր զիս ՚ի
ձեռն կտտանացս տեսանել զճանապարհ կե-
նաց. զի եկեալ է այն առ քեզ՝ տեսից ըղ-
խոստմանցդ ժառանգութի: Իսկ մինչդեռ
քերէին զնա, ասէ դատաւորն. զի՞ ասես
բասիլիէ, առնո՞ւր ՚ի միտ՝ թէ կարող է ինք-

նակալն զստամբակեալս յիւրմէ արար տանջել․ արդ հնազանդեա նմա, զի է փորձ անցեր չարեաց։ Նախկինն ասէ․ ասացի քեզ ստոյգ 'ի յուսոյն քում, թէ հնազանդեալ եմ Ճշմարիտ Թադէոսին․ և փոխիլ յայնմ

խորհրդոյ չկարեմ։

Նա յետ կրկին հարցափորձի՝ իբրև չէառ վկայն յանձն զոհել, յղեաց զնա դատաւորն 'ի բանտ․ և 'ի Ճանապարհի ընթացս ելեալ նմա փեկլիքս ոմն․ պիղծ՝ ասէ․ բասխլիէ ընէր կամիս ը կորուստ անձինդ․ մանաւանդ ապրեցո զանձն քո, և բարեկամ լեր մեզ․ արով և խոստմանց հասցես ինքնակալին․ ապա թէ ոչ՝ յիրաւի տանջիս։ Նա ասէ ցնա վկայն․ 'ի բաց գնա ով ապիրատ և անմաքուր օտարացեալդ 'ի Ճշմարիտ խոստմանց․ քանզի զիմ որդդու ինքն 'ի խաւարի գոլով կարող իցես անարկել 'ի Ճշմարտութենէ, ուր ոչ տեսանես զլուսաւորն որ մածեալ է զքեւ։ Օ այս ասա-

ցեալ՝ չոքաւ եմուտ 'ի բանտն։

Իսկ դատաւորն զեկայց ինքնակալին յուլիանոսի վն բասիլիոսի, զի երևելի էր այրն և համբաւեալ իմաստութբ և առաքինութբ։ Նա Թադէոսն առաքեաց զեւլպիդիոս ոմն կորստեան որդի, և զպեգասիոս զկապատեղյն յերկնաւոր գանձուց (քանզի ուրացօղք էին)․ և նա եկեալ նախ 'ի Նիկոմիդիա՝ գտանեն զասկղեպիոս քուրմ չարին ասկղեպեայ․ և առեալ զնա ը ուրեանս գան երեքեան որդիք զօրավորք սատանայի պատերազմել ը սրբոյն։ Իբրև հասին յանկիւրիա՝ հարցին և գիտա-

ցին,

ցին, եթէ 'ի բանտի անդ ոչ դադարէ բասի-
լիոս յօրհնելոյ և 'ի փառաւորելոյ զած զտէր
և զփրկիչն ։

'Ի վաղիւ անդր եկն պեգասիոս 'ի բանտն, ողջոյն ետ սրբոյն և ասէ. ուրախ լեր բասիլիէ ։ Պատասխանի ետ սբ քահանայն. ոչ է քեզ ուրախ լինել ուրացօղդ և մատնիչդ ճշմարտութեան. որ երբեմն հաղորդ էիր աղբերն քոի, իսկ այժմ լի ժահահոտութեամբ լոճալեաց. երբեմն խորհրդոյն քոի մասնակից, և այժմ ատելի քոի. երբեմն սեղանոյն քոի բաժանորդ, և այժմ սեղանոյ դիւաց կցորդ. երբեմն առաջնորդ լուսոյ, և այժմ խաւարի ժառանգորդ. երբեմն վկայ ճշմարտութեան, և այժմ առաջնորդ կորստեան. երբեմն տանակից սբց, և այժմ պարակից զինուորութե դիւաց. երբեմն առաջնորդ մոլորելոց 'ի խաւարի, և այժմ խաւարամած. զիարդ կորուսեր զլոյսն քո, որպէս կապտեցաւ 'ի քէն պանձն հոգւոյ. զինչ ունիս առնել, յորժամ այց արասցէ քեզ տր ։

Եւ զայս ասացեալ՝ յաղօթս եկաց այսպէս. Փառք քեզ ած՝ որ ճանաչիս 'ի քոց ծառայից, և լուսաւոր առնես զցանկացօղս ածութեդ քո, և մեծարես զյուսացեալս 'ի քեզ. և յամօթ առնես զատեցօղս պատուիրանաց քոց. որ աւետարանես հեռաւորաց զփրկութի, փառաւորեալդ 'ի յերկինս, և երկրպագեալդ 'ի յերկրի. կամեցայ ած բարձրել զամ աղխս չարին 'ի բաց խզել յանձնէ ծառայի քո, զի մարթացայց ճողոպրել 'ի հաղբից բարբա-

տեաց բանաւորկոճին , և վանել զզօրութիւն
խիզախողաց ։

Նա զայսոսիկ լուեալ պեգասիոսի՝ ել՚ի բանտէն տրտմութեամբ , և չոքաւ պատմեաց զամենն ընկերաց իւրոց ։ Իսկ նք դժուարեալ ընդ տրտմութիւն նր՝ եկին և պատմեցին դատաւորին ։ և դատաւորն կամեցեալ բժշկել զպեգասիոս՝ հրաման ետ ածել զարդարն զառաջեաւ ։ Որ եկեալ նորին յառաջեան՝ կրկնեաց զանձն նշանաւ Քի խաչին , և ասէ ցդատաւորն ։ զոր ինչ կամիս՝ արա ։ Իբրև լուաւ եղպիդիոս զհամարձակախօսութիւն նր , ասէ ։ Թափեալ է ՚ի մտաց անձնասպիղծդ այդ ։ և արդ եթէ ՚ի հնազանդութիւն գայցէ տանջանօք , շահեցաւ զանձն ։ ապա թէ ոչ՝ քաջէ արանցն պահեսցի ։

Յայնժամ դատաւորն միւսանգամ ետ կախել զնա , և պրկել փոկովք ուժգին ։ զի առ չժուժելոյ տանջանաց հաւանեսցի ասէ զօհել ։ Բասիլիոս ասէ ։ ով անօրէն՝ արա զոր կամիսդ , ընդ քեզ ունելով զհակառակորդ զօրութեան զօրագլուխս ։ զի ոչ դու ինչ զօրեսցես առ իս , և ոչ խորհրդակիցք քո ։ քանզի ունիմ ինձ օգնական զքս ։ Սատոռնինոս ասէ ։ առէք երկաթս ծանունս , և արկէք զպարանոցաւ դորա և զձեռօք ։ զի այսպէս երևեսցի յանդիման ինքնակալին ։ այլ այժմ՚ի բանտն երթիցէ ։

Իբրև անցին աւուրք սակաւ , դէպ եղև թագաւորին խաղալ յարևելս ։ և իբրև եկն նա յանկիւրիա , ընդառաջ եղեն նմա պաշտօնեայք սա-

սատանայի՝ ունելով ընդ իւրեանս զկուռս եկատեայ ( ժթ անահտայ ) . և այն օր մօտեալ յապարանսն՝ բաշխեաց պարգևս քրմաց ։ Եւ 'ի վաղիւն անդր յետ կատարման հանդիսից տեսարանին՝ պատմեաց ելպիդիոս արքայի զգործս բասիլիոսի քահանայի . և նա հրաման ետ ածել զնա յապարանսն ։ Եւ եկաց դրն բասիլիոս զուարթ դիմօք . և ասէ ցնա յուլիանոս . զի՞նչ անուն է քո ։ Նա ասէ . նխ կարգի ասացից ա՛րքայ, թէ ո՞ւ իցեմ . առաջին անուն իմ քրիստոնեայ է . իսկ քնին անուն՝ նախայաւիտեան , որ 'ի վեր է քն զմարդկան խորհուրդս . և երկրորդ՝ բասիլիոս 'ի մարդկանէ կոչիմ . արդ եթէ անունն քնի անարատ պահեսցի 'ի մեզ , յաւուրն դատաստանի վարձս անմահութե ընկալցուք առ 'ի նմանէ ։ Յուլիանոս ասէ . մի՛ խաբիր բասիլիէ , զի չեմ անտեղեակ որոց առ ձեզ են խորհուրդք . 'ի նմա՞ հաւատաս , որ մահու մատնեցաւ առ պիղատոս դատաւորաւ ։ Բասիլիոս ասէ . ո՛չ խաբիմ արքայ . զի դու ուրացող լեալ՝ մերժեցեր զարքայութին այ 'ի բաց . ուստի հաւատամ քնի իմոյ , զի զոր փութով արհամարհեցեր զտուօղն քեզ զթգրութի , նա ինքն դարձեալ փութապէս բարձցէ զայն 'ի քէն . զի ծանիցես , թէ զո՛րպիսի ած թողեր լքեր ։ Գիտաց յուլիանոս , եթէ սաստիկս բարբառի վկայն՝ զի մարտիրոսասցի փութով . վայ ասէ . մոլիս , և ո՛չ արարից զքո կամս , ո՛վ անմիտ ։ Բասիլիոս ասէ . և ո՛չ զհատուցումն նր յիշեցեր . և ո՛չ զնքա սեղանն՝ որով ապրե-

ցար, պատուհեցեր. և ոչ զօրհնեալն՝ զոր բերա-
նով բազում անգամ քարոզէիր, պահեցեր.
և ոչ ինքն մեծ արքայն քո յիշեցոյց զքեզ.
այլ արագ արագ բարձցէ ՚ի քէն զառժամա-
նակեայ թագուհի. և անհնարին ցաւօք վախ-
ճանեցիս զմահ, և մարմին քո ոչ լիցի ար-
ժանի հողոյ:

Յուլիանոս ասէ. եւ ով անձն կամիցի զքեզ
արձակել. բայց քանզի յաճախագոյն անա-
մօթութեամբ բերեալ՝ ոչ հնազանդիս ինձ, և
բազմօք իսկ թշնամանեցեր զիս, վասն հրա-
մայէ ինքնակալութեանս իմ ջլակոտոր առնել
զքեզ՝ հանելով ՚ի մարմնոյ քումմէ օր ըստ օրէ
փոքս եօթն: Եւ անդէն հրամայեաց փրուբե-
տիմոսի կամ փրումենտիանոսի կոմսի տանել
զնա ՚ի բաց, և տալ կտրատել զմորթ նորա:
Եւ յորժամ կրէր երանելին քաջութեամբ զայն
անմարդի տանջանս քստմնելիս, ասէ ցկոմսն.
կամիցի այժմ հանդիպել արքայի, և խօսել
ընդ նմա: Եւ նա ուրախացեալ՝ ոչ թէ հաւա-
նի զոհել, եմուտ և պատմեաց արքայի՝ ասե-
լով. տէր իմ ինքնակալ, բասիլիոս հնազանդու-
թեալ տանջանաց՝ կամի յանդիմանս լինել
ինքնակալութեան քում: Սայն իբրև լուաւ
թագաւորն, եւ գնաց ՚ի տաճարն ասկղեպեայ,
հրաման տուեալ անդր բերել զարդարն:
Արդ եկեալ բասիլիոսի ՚ի տեղին՝ ասէ ցթագաւորն.
ո՞ւր են արքայ քուրմք քո և դէտք քո, որ
ոչն մեկնէին ՚ի քէն. եթէ պատմելով պատմե-
ցին քեզ զպատճառս գալստեան իմոյ առ
քեզ: Յուլիանոս ասէ. ինձ այսպէս թուի,
եթէ

եթէ զգօն եղեր, և իմաստնացեալ՝ խորհիս կցորդ մեզ լինել, և ճանաչել քեզէն այսու- հետև զդծման ։ Բասիլիոս ասէ. այլ զի գի- տասցես արքայ, թէ ոչինչ են՝ զորս կոչես դծս. զի կուռք են խուլք և կոյրք, որք 'ի դժոխս իջուցանեն՝ զորս հաւատանն 'ի նոս ։ Զայս ասացեալ՝ եհան զմի 'ի փոկից հատե- լոց 'ի մարմնոյ իւրմէ, և ընկէց զայն յե- րեսս ուրացողին՝ ասելով. առ Յուլիանէ, այս են քո փափուկ կերակուրք. այլ ինձ կեանք քո է, և մեռանելն շահ. իմ օգնա- կանութիւն քո է, յոր հաւատամ, վն որոյ և չարչարիմ ։ Յայնժամ յամօթ եղև ուրա- ցողն, և հրամայեաց տանել զնա 'ի բաց. իսկ քրիստոնեայք երանի՛ տային նմա վն 'ի քջ խոստովանութ և անտանելի կրից չարչարա- նաց. մինչև հեթանոսաց անգամ ողորմիլ 'ի վն նր ։

Բայց կոմսն ել յերեսաց արքայի շառագու- նեալ. քանզի գիտաց՝ եթէ բարկացաւ ընդ նա վն պատճառս տալոյ թշնամանացն ։ Եւ մը- տեալ կոմսին յապարանսն՝ ետ անխնայ կտրա- տել զմորթ նորա դժնդակ ևս քան զօրըստ- օրէն. մինչև երևիլ և յօրինուածոյ աղեաց նորա ։ Իսկ երանելին աղօթէր 'ի տանջանս անդ, և ասէր. Օրհնեալ ես տր ած՝ յոյսդ քրիստոնէից, որ հաստատես զանկեալս և կանգնես զգլորեալս. որ փրկես յապակա- նութէ զյուսացեալսն 'ի քեզ, և բժշկես զա- կութիւնս մեր, բարերար և բարեգութ, ողոր- մած և երկայնամիտ. նայեաց 'ի տրքութէ

փա-

փառաց քոց, և տուր ինձ հաւատովք կատարե-
րել զընթացս իմ, և հաստատուն պահեալ
'ի հաւատս հարանց՝ արժանաւոր լինել յա-
ւիտենական և անեղծական արքայութեան
քում։ Այս 'ի մերձենալ երեկոյի հրամայ-
եաց կոմսն արկանել զնա 'ի բանտ։

'Ի վաղիւն անդր եւ յուլիանոս՝ ճանապարհ
առնել յանտիոք, ընկալեալ 'ի տես երեսաց
իւրոց զկոմսն. վասն դառնացեալ յոյժ կոմսին՝
հրամայեաց դահճին ածել զարդարն առաջի
իւր. և ասէ ցնա. զի՞նչ ասես ով անմիտ.
զոհես՝ ով պատուիրեաց ինքնակալն, եթէ
ոչ. ընտրես արդեօք չհաւանիլ մեզ, և կորն-
չիլ դառն չարչարանօք։ Բասիլիոս ասէ. ով
դու անմիտ և անմիտք, ո՞չ գիտես՝ քանի՞ փոկս
հաներ յանցեալ աւուր 'ի թիկանց իմոց,
մինչև ո՛մ տեսողաց ողորմիլ և գորովիլ. և
այժմ կամօքն քո՛ ողջանդամ յանդիման եղէ
քեզ. և զիա՞րդ չառնուս 'ի միտ ով անմար-
դի։ Ա՛ղէ տուր գիտել բռնաւորին քում
յուլիանոսի, թէ որչափ կարող է ած, զոր
նա 'ի բաց եթող, և կորոյս զհոգի իւր՝ խա-
բեալ 'ի սատանայէ. ոչ յիշեաց, թէ որպէս
ապրեցոյց զնա տր 'ի մահուանէ 'ի ձեռն ոք
քծաղզեցից իւրոց քահանայից՝ թաքուցել
'ի նոք և 'ի սքանչելի սեղանի եկեղեցւոյ նոյ.
որում անյիշողն լեալ՝ արտաքս վազեաց, և օգ-
տելով՝ հալածեաց զփրկիչ իւր։ Հաւատամ
'ի քնն իմ, զի և ինքն հալածեացի յեկեղեց-
ւոյ, և գտցէ զհատուցումն ըստ գործոց իւրոց.
և այնպէս 'ի բռնաւորութեան իւրում կորիցէ։

Կոմսն

Կոմսն ասէ . մոլե՛ս ցնորեալդ . զի և տէրն տիեզերաց անյաղթելին յաւիտեանս համբերէ քեզ . քանզի մարդասիրութիւն յոյժ ցուցեալ՝ հրաման ետ քեզ տօնակից մեզ լինել յեփեալ միսս և յանուշահոտութիւնս կնդրկաց . բայց դու չկամեցար հաւանել , և Թշնամանեցեր ո՛չ փոքր՝ նախ զինքնակալն , երկրորդ՝ և զիս ատելի արարեր . արդ և ես հատուցից քեզ այնպիսի տանջանօք , որով վաղվաղակի կորձնեմ զքեզ 'ի կենաց ո՛վ պիղծ . քանզի հրամայեմ այժմ շամփուրս հրացեալս մխել յաղիս քո ։

Ռուստիկոս ասէ . 'ի բուն իսկ 'ի բանաւորէդ քումմէ ո՛չ երկեայ , այլ և դու ինքնին քաջ գիտես . և դու համարիցիս բանիւք քո այդոքիւք երկեղածս ինձ արկանել ։ Յայնժամ հրաման ետ կոմսն բերել երկաթս և հրացուցանել , և նովիմբք խոցոտել զնա ընդ թիկունս ։ Մինչդեռ յայն տանջանս էր երանելին՝ տարածեալ 'ի գետին , 'ի ձայն բարձր կարդայր առ տր , և ասէ . Ո՛վ իմ քս , յո՛յս իմ յս , ալեկոծելոց նաւահանգիստ ։ Գոհանամ զքէն հայր , տր ած հարցն իմոց , զի հաներ զանձն իմ 'ի դժոխոց ներքնոց . անարա՛տ պահեա զանուն քո յիս . զի զյաղթութիւն 'ի գլուխ տարեալ , և զընթացս իմ կատարեալ 'ի քեզ՝ ժառանգորդ եղէց յաւիտենիցն հանգստեան ըստ խոստմանցն՝ որ առհաւրս մեր 'ի ձեռն քահանայապետին մեծի յի քի տն մերոյ . նովաւ 'ի խաղաղութեն ընկա՛լ զհոգի իմ՝ յետ կալոյ մնալոյ 'ի խոստավա-

վանութեան յայսմիկ․ զի դու ողորմած ես, և երկայնամիտ և բազումողորմ․ և կենդանի ես և կաս և մնաս յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Եւ իբրև կատարեաց երանելին զաղօթս, իբրև 'ի քաղցր քուն եղեալ՝ աւանդեաց զոգին Ը խոցոտիչ շամփրովք, յամի տն 363, 'ի իթ աւուր յունիսի, կմ յունվարի, 'ի փառս քրի ածյ մերոյ, և 'ի պարծանս սբյ եկեղեցւոյ ։

Այլ է և բասիլիոս վկայ Տէրն 'ի քաղաքէ անտի անկիւրացւոց, որ յաւուրս նորին յուլիանոսի դատեալ 'ի նմին սատոռնինոսէ, կամ 'ի տարբեղոսէ դատաւորէ վս անուանն քրի քերանօք, առաքեցաւ կապանօք յանկիւրիոյ 'ի կոստանդնուպօլիս․ և անդ ևս փորձեալ յեպարքոսէ բազմօք՝ մինչև անցանել և ընդհուր, առաքի և անտի կապանօք 'ի կեսարիա կապադովկացւոց․ ուր արկեալ առաջի գազանաց 'ի թէատրոնի՝ գիշատեցաւ 'ի մատակ առիւծէ․ զորոյ զպատուական նշխարս ժողովեալ ազգականաց նր և ծանօթից՝ շինեցին վկայարան յանուն սբյ նահատակին․ և սորա ևս յիշատակ լինի 'ի հին օրինակս յայսմաւուրաց մերոց 'ի յունվարի 14․ այլ և ա-յոյնս 'ի յունվարի․ 2 ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Ո՛չ ուրեք արտաքոյ տօնացուցի մերոյ գտանեմք զբասիլիսկոս ամասիացին քահանայ անուանեալ. այլ առ ամենայն բասիլիսկոս վկայ կոչի, և այն 'ի կարգէ զօրականութեն՝ եղբօրորդի սրբոյն թէոդորոսի տիւրօ_նի զինուորի։ Զօգտէ և այն, զի 'ի վարս ոսկեբերանի գրեալ է եպս գոլ, յասելն. ※ եկին հասին 'ի տեղի մի՝
• որ կոչէր կոմանայ. և անդ արտաքոյ պարսպին օթե_
• ւանս կալան 'ի վկայարանի սրբոյն բասիլիկոսի։ Իսկ
• բասիլիկոսս այս էր լեալ եպս կոմանայ, և 'ի նիկո_
• միդիա քաղաքի կատարեցաւ վկայութ՝ պսակաւորեալ
• 'ի քս 'ի ժամանակս մաքսիմիանոսի բռնաւորի. որ
• և նշխարք նորին բերաւ անդրէն 'ի կոմանա. և անդ
• շինեալ վկայարան՝ եդին զնա անդ մեծաւ պատուով ||։
Զօգտէ առեմ այս բան՝ մերումս տօնացուցի. նախ՝ զի Ը այգմ ոչ էր պարտ բասիլիսկոս քահանայ գնել, այլ եպս. երկրորդ՝ զի գէորգ երէց գրիչ վարուց ոսկեբե_րանի խառնէ զնահատակութին ղուկիանոսի քահանայի անտիոքացւոյ 'ի նիկոմիդիա՝ Ը կատարման բասիլիսկո_սի վկայի 'ի կոմանա. և այս առեալ է 'ի չիրաթ գրոմա_ծոյ պալլադիոսի, ուր եպս կոմանայ առ ոսկեբերա_նին խառնի Ը անուան բասիլիսկոսի. որպ բազմաք քննեն բոլլանդեանք Ըգէմ տիլլէմոնի. վսյ պարտ է զայսպի_սի խառնակութիւնս բանից ուղղագրել 'ի նորբօղինէ լեանի կայսեր 'ի վր ոսկեբերանի, ուր ուղիղ ասի. ※ և ահա երեւին նմա գիշերի բասիլիսկոս և ղուկիա_նոս վկայք ||. և ն. որպ և 'ի բանից սոկրատայ և թէոդո_րետոսի, որք 'ի պատմելն զնոյն բան՝ զբասիլիսկոս մի_այն յիշեն՝ պարզապէս վկայ կոչմամբ, և ո՛չ է դք՝ որ ասիցէ զնա եպս, և ո՛չ քահանայ։

Միայն 'ի ճառընտիրս մեր 'ի վարս բասիլիկոսի կմ բա_սիլիսկոսի ամասիացւոյ եդեալ են բարք ինչ, և բանք՝ 'ի ցուցանել զնա եպս. որ թէ յողջունելն զազգականս իւր՝ օրհնեաց զնս. որ առ այլս գրի՝ մխիթարեաց. և թէ 'ի գեղջ միում կամէին՝ զի նա չինեսցէ եկեղեցիս, և կացուսցէ քահանայս. բայց առ այլս բանն է վս պատերլոյ ղաւանն պարապաւ. վսյ և կասկածելի է՝ թէ այնպիսի բանք յաւելեալ են յօրինակագրաց, որք

եպս

նեղս զնա կարծէին վրիպակաւ։ Բայց ՚ի Հ. ՚ի վերս բասիլեակոսի չկան այսպիսի վրիպակք. ունս ՚ի մայիսի 15. որ ասկանի, * Սբ վկային քնի բասիլեակոս ||, կամ ի՟ որ իւլի։ * Մարտիրոսն քնի բասիլեսկոս ||. ուր է քաղուած վկայաբանութեան՝ այլով մասամբ համաձայն Ճառընտրաց. նոյնպէս և ՚ի յայսմաւուրս այլոց ազգաց.

Այլ շփոթութիւն է ՚ի Հ. յնմք. 2. ուր գրի. * յայսմաւուր վկայաբանութիւն ... սրբոյն բասիլեսկոսի բազմաչարչար նահատակի ( կմ՟ վկայի ) ՚ի կեսարիա, որ ՚ի յուլիանոսէ չարչարեցաւն մծ քնի ||. փոխել գրելոյ * բասիլեոսի կմ՟ բասիլեակոսի քրոհանայի յանկիւրիա ||. են. յայտ է թէ շփոթելով ընդ միւս բասիլեոսի վկայի անկիւրացւոյ, որ ՚ի կեսարիա կատարեցաւ առ նովին յուլիանոսիւ. որոյ և յիշատակ կայ ՚ի յունվարի 14. ի՟ հին օրինակաց այսպէս. * յայսմաւուր կատարեցաւ ... յառաջնէ նք. վկային բասիլեոս յամս յուլիանոսի ՚ի կեսարիա կապադովկացւոց ||։ Իսկ առհա ՚ի բարձումն շփոթութեանցս ամի եդաք զուրոյն ուրոյն վկայաբանութիւս միոյ միոյ ՚ի նոցա։

(2) Հեղինակ պանծալի վկայաբանութեան Ճանաչի եւսեբիոս ամս գպիր տեսանատես. զոր և նոյն համարել բոլլանդեանց ընդ նոյն եւսեբիոսի վկայի նահատակելոյ առ նովին յուլիանոսիւ, և յիշատակելոյ ՚ի Լ. յօգոստ. 5. առանց ընդ բանս ինչ ածելոյ հաստատուն զբովանդակ գրութիւն նր. միայն ցաւին երաւամբք, զի չէին գտեալ զբնագիրն յունականն, այլ միայն զլատին թարգմանութիւն ՚ի հին մատեանս վանաց սրբոյն մաքսիմիանոսի ՚ի տրեվիր։ Նոյն ցաւ և մեզ ՚ի Ճառ պատահէ. զի թէպէտ և ունիմք զհայերէն հին թարգմանութիւն ՚ի Ճառընտիրս մեր, այլ ՚ի չգոյէ յունարէն օրինակի անգիտանամք, մի առաւել ընտրելի իցէ. օրինակն մեր՝ եթէ բոլլանդեանցն։ Իսկ խտիր երկոցունցն այս է։

Նախ՝ մերս է բաղմօք համառօտ, նոցայն բաղմօք ընդարձակագոյն, և այն նաև ի՟ երևելի հանգամանաց պատամութեան. թէպէտև բաղում մասամբ բառ առ բառ ընթանան. մինչ զի անխտիր մարթ է ասել, թէ մերս է ծաղկաքաղ միւսոյն, կամ թէ այն է մեկնաբանեալ ընդլայնումն մերոյն։ Երկրորդ՝ թէպէտև ՚ի տեղիս տեղիս ընթերցուած մեր երևի ուղղագոյն քան զլատինն, բայց կան և յայտնի վրիպակք անուանց ՚ի մերումս՝ խառնելով զղատապաւոր ընդ թագաւորի, և այլ ևս բանք մթինք

կմ կեղակարծելիք․ զորս իրաւամբք ուղղագրել պէտք եղեն․ բայց մի առ մի ծանուցանել ասա զամ տարբերութիւս (զորս հաւաքեալ էր մեր երկայնմտութ̃) երկար լինէր և աւելորդ․ չամա լիցի ասել, թէ մեք հասարակորէն զմեր ընթերցուած պահեցաք, և գուն ուրեք ինչ ինչ յարմարեցաք ըստ ընթերցուածոյ բոլլանդեանց․ մինչև յունական սկզբնագիր 'ի վեր երևեսցի․

և յայնժամ քաջիկ ևս ընտրութի լինիցի։

(3) Իսկ զերկրորդ վկայաբանութիւն՝ զորոյ զհայերէն թարգմանութիւն չունէաք 'ի ձեռին, մեք նորոգ թարգմանեցաք՝ փոքր մի համառօտելով՝ 'ի յունական բնագրէ․ զոր բերեն բոլլանդեանք 'ի ոծե մատենէ վատիկանեան գրատան։ Բաղդատած նորին է և 'ի Յ․ մարտի․ 22․ ուր և արարացին 'ի նմին աւուր յիշեն * զբասիլիոս քահանայ և վկայ ||։ Ծանուցանեն բոլլանդեանք 'ի յնվ․ 2․ թէ * վկայաբանութիւն գաղղիբելգիական 'ի նոյն օր վերածէ զբասիլիոս քահանայն, և զանց առնէ 'ի 22․ մարտի ||։ Զնոյն ունիմք ասել և մեք զհայսմաւուրաց մերոց․ մինչև կարծել մեզ, թէ 'ի վաղուց հետե կայր յամ ազգս շփոթութի ինչ 'ի մէջ երից վկայից, զբասիլիսկոսի ամասիացւոյ, բասիլիոսի քահանայի անկիւրացւոյ, և միւս բասիլիոսի վկայի անկիւրացւոյ․ այլ յուսամք թէ որոշողութ̃ վկայաբանութեց կարօղ եմ իմաստունք քաջ զանազանել զնս յիրերաց․ և ընմին հետևեցուցանել, թէ 'ի տօնել մեր զբասիլիսկոս քահանայ՝ զորութ̃ իմացեալ լինին երկու վկայք մերձաւորք անուամբ, բասիլիսկոս զօրական, և բասիլիոս քահանայ։ Վասիլեօս յունարէն նշանակէ արքունի կմ թագաւորական, և վասիլիսկոս՝ արքայիկ, կմ թգաւորակ․ երկոցունց ևս կցորդի ձայնս վասիլիսկոս, զի արքայական․ ըստ որոյ բասիլիսկոսն կոչի 'ի մեզ նաև բասիլիկոս․ ուր է տեսանել 'ի ճաշոցս, 'ի վարս սակերբերոնի, և յօրինակս ինչ տօնացուցի։

Դ․ վասնզի զարմանալի թուի մեզ և այն, զի որպէս առընթեր բասիլիսկոսի դնի 'ի տօնացոյցս մեր անուն քահանայ՝ արտաքոյ սովորութ̃ այլոց ազգաց․ նոյնպէս և 'ի հետևորդ տօնի՝ (որում ունի սկսանիլ յաջորդ հատոր գործոյս) նաև անաստաս վկայն, որ երբեմն զօրական էր, և ապա կրօնաւորեցաւ, կոչի քահանայ․ զոր այլք պարզապէս աբեղայ կմ միայնակեաց կոչեն՝ առանց յիշելոյ զքահանայութիւն․ ուր տեսցի յիւրում տեղւոջ։

ՑԱ՛ՆԿ

# ՑՈՒՆԿ

## ՎԱՐՈՒՑ ՍՐԲՈՑ

### որ 'ի հատորն. Ժ.

Երես.



(Նր.

# ՎԱԽՃԱՆ

Հատորիս :

